# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՑ

Որք կան 'ի հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց:

Յօրինեալ հաւաքական բանիւք ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբք:

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտութենէ մեծին Մխիթարայ Աբբայհօր:

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց՝ Աբբայի և Արքեպիսկոպոսի:

Արդեամբք ա͞ծասէր Մանուկ Աղայի կարնեցւոյ մահտեսի Ածատուրեան:

## ՀԱՏՈՐ. Թ:

Միջոց Յիսնակաց բ̄ կիսոյն:

'Ի Գրիգորէ սքանչելագործէ մինչև ցՅեւստատաւ տիտոսեանս:



1813. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԲ.

'Ի Վանս Սրբոյն Ղազարու:



ՍԷ Գրիգոր Սքանչելագործ Եպիսկոպոս
Նէոկեսարիոյ ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Գրիգորի Սքանչելագործի՝ Նէոկեսարու Հայրապետին ։

Հ. Նոյեմբ. 24 ։ Յ. Ա. Նոյ. 17 ։ Ճառընտիր Ա. մծէ = գէ ։ Գր. Նիւսացի 'ի ներբող սքանչելագործին. յն. եւ լտ. որպէս եւ հյ. 'ի Ճառընտ. Ա. պծէ. ըստ մասին. եւ 'ի Ճ. Կ. եէր ամբողջ. երես. տխը = տհղ. Նոյեմբ. ծէ, չամ ծէ ։ Լայ-ոսէ. ղ. 34. եւ է. 14 ։ Մեծն Բարսեղ. հերոնէմաս. եւ այլք ։ (1)



ՍՔԱՆՉԵԼԻՆ Ի ՀԱՐՍ, սքանչելագործ մր. Հայրապետն Գրիգորիոս էր 'ի քաղաքէն Նէոկեսարու, որ Թարգմանի Նոր կամ փոքր կեսարիա, յՈւէն պոնտոսի 'ի սահմանակցութե կապադովկիոյ, յերրորդ դարու փրկչին՝ Հասեալ մինչև 'ի ժամանակս աւրեղիանոսի կայսեր՝ որ նստաւ յամի տն. 270 ։ Հեթանոս ծնողաց էր որդի, 'ի տանէ ազնըուականաց տեղւոյն. զի 'ի սորա նախնեաց լինէր իշխան և վերակացու պոնտացւոց, որ



կար-

կարգաւորէր զաշխարհն մինչև 'ի գաւառս, որոյ նախագահ քաղաք էր կեսարիա կապադովկացւոց. ուր եղև և ծնունդ սքանչելւոյն գրիգորի՝ որ նախ Թէոդորոս կոչիւր, ըստ աստուածապարգև. այլ զկնի կոչեցաւ Թաւմադուրգոս, ըստ սքանչելագործ. զոր Աստուած յորովայնէ ընտրեաց, և որոշեաց զնա՝ ոչ վասն աշխարհական մեծութեան, այլ վասն երկնաւորին ։

Սոյն 'ի զարգացմանէ հասակին տղայութեան՝ իբրև բնաւորական բերմամբ ըստ իւրոյ տեսչութեան՝ անսայատի ընտանեցաւ, և քանի ընծայեցաւ, ցուցեալ փաղփաղակի յառաջին հասակին ոչ 'ի կատարեալ հասակի եղեալ՝ բարւոք վարս և գնացս. քանզի էր հրաժարեալ յամենայն երկրաքարշ մտածութեանց, և 'ի բաց կացեալ 'ի նորահասակ սովորութեանց հասակակցացն, 'ի զբօսանաց, 'ի տեսարանաց, 'ի պաճուճեալ պատմուճանաց, 'ի փափկութեանց, 'ի գինարբուաց. և փոյթ ամենայն յաճախումն բարելաւութեանց հոգւոյ ։ Ունէր նա առաջին ստացուած առաքինութեան՝ հաստատեալ յերկիւղն Աստուծոյ. և նոյին լծակից՝ իմաստութեան, և ուսումնասիրութեան փոյթ. և սոցա դաստիարակ զժուժկալութիւն ունէր. իսկ անհպարտութեան և անբարկացողութեան և ընչից արհամարհանք՝ ընդաբոյս էր նորա ։

Որդ ոչ նահապետն աբրահամ երևելի արարածովքս զաներևոյթ արարիչն իմաստասիրէր, և 'ի զգալեացս յիմանալին թևակոխէր, մինչև թողուլ զերկիր ծննդեան իւրոյ և զհետ երթալ կոչողին, նոյնպէս և

մեծն

մեծն գրիգորիոս 'ի ձեռն արտաքին իմաստութեան զներքինն արծարծանէր , և հելլենական վարժիւք առ քրիստոնէութեան իմացմունս առաջնորդէր , զանհաստատութիւն արտաքնոցն իմաստից՝ շնորհօք կոչողին 'ի հաստատուն ճշմարտութիւն փոխաբերել . մինչև թողեալ զմոլորական հարց իւրոց աղանդն՝ խնդրեաց զուղիղ և զճշմարիտ հաւատս . և եկեալ 'ի խորհրդական և յանմարմնական ծնունդն մկրտութեամբ ըստ աւազանին , ուր ոչինչ աղտ ունելով յանձնական մեղաց առ 'ի մեղացն լուացարան 'ի ներքս մատուցանել , զնոյն ինքն զքրիստոս զգեցեալ լինէր 'ի մկրտութեան ։ Նա այս եղև յարբունս հասակի . յորում ժամանակի յարուցեալ գնաց յաղեքսանդրիա եգիպտացւոց յուսումն իմաստասիրութեան . ուր առատապէս միօք եղև կատարեալ փիլիսոփայական արուեստի . ընդ նմին և հմուտ յոյժ հին և նոր կտակարանաց . քանզի ունէր միտս անհամեմատս այլոց մանկանց , որք էին ընդ նմ ուսանէք հաւաքեալք 'ի հելլենացւոց ուսմունս յիմաստասիրական և 'ի բժշկական ։ Նա նախանձեցան ուսումնակիցք ընդ գրիգորի անարատ վարուն . զի առաւել քան զալիս ծերութեան զգաստութեամբ էր զարդարեալ . վասն դժպհի երևէր նոցա այնպէս տեսանել զերանելին գովելի յաչս ամենեցուն . զի մաքրագունիցն գովեստ՝ աղտեղացելոցն նախատինք լինի ։ Նա զի տեսանէին զնա սրբամիտ յոյժ , խորհեցան արատ ինչ յարել յանարատն գրիգորիոս . վարձեցին կին մի պոռ-

 նիկ ,

նիկ, և ածին յանդիման նր. որ եկեղ ասէր ցնա 'ի հրապարակ բազմութե, թէ տո՛ւր ինձ զոր խոստացարն զվարձ պոռնկութե:

Զայնմ վայրի ամենեքեան՝ որ քաջ գիտակ էին պարկեշտութե նրյն, բարկանային կնոջն. իսկ նրն գրիգորիոս ոչ շարժեցաւ, և ոչ ասացինչ ընդդէմ պոռնկին կմ դաւաճանողացն. ոչ վկայս կոչեաց, և ոչ երդմամբ զբիծն 'ի բաց մերժեաց. այլ առ ոմն՝ (որ հոմանի էր պոռնկին, և նենգութեն առաջնորդ,) ասէ. ա՛ռ զարծաթս, և հատո՛ պոռնկին. զի մի իսպառ եկեալ թախանձեցուսցէ զիս:

Եւ մինչդեռ դայր կինն՝ ունելով զարծաթն 'ի ձեռին զգինն զրպարտութե, լինէր յոյժ արդարոյն վկայութի, և զրպարտչացն յանդիմանութի. զի իսկոյն ըմբռնեալ 'ի դիւէն՝ դալարէր, և օտար 'ի մարդկեղէն ձայնէ ոռնալով որպէս զանասուն՝ անկանէր առաջի բազմութե քաղաքին՝ ահաւոր և քստմնելի տեսլեամբ, հերացն ցցուելով, և ձեռօքն ցանելով. աչացն շրջելով, և 'ի բերանոյն փրփուր թորեցուցանելով:

Եւ իբրև կամէր խեղդել զնա դևն, եկեալ նրյն գրիգորի՝ կարդայ զանուն տն 'ի վր նր. և անդէն բժշկէր 'ի դիւէն. ընդ որ հիացան ամենեքեան: Այս առաջին մանկութե նր 'ի ծաղիկ հասակի սքանչելիք՝ առաւել քան զողջախոհին յովսեփայ:

Արդ ընդ արտաքին իմաստութեցն անցեալ ընդ ուսումն՝ հանդիպեցաւ ումեմն փիլիմիղիանոսի կմ պերմելիանոսի, որ հայրենակից էր նր 'ի

'ի կապադովկիոյ, և զուգակրօն ընդ սովորու-
թեն. այն՝ որ եղև յետոյ եպս կեսարու կա-
պադովկացւոց, և զարդ այնր եկեղեցւոյ. և
հանդերձ նովաւ աշակերտեալ լինէր որոգի-
նէսի մեծի վրդպի. յորմէ ուսան նքն գրի-
գորիոս և փիրմիղիանոս, և եղբայրն գրիգո-
րի աթենոդորոս՝ որ նոյնպէս եպս եղև 'ի
պոնտոս, զամ ուսմունս քրիստոնէական ի-
մաստութե զամս հինգ. զի էր լի և կատա-
րեալ ամ գիտութբ զարմանալին որոգինէս.
այլ 'ի շարագրելն նր գիրս բազումս՝ գթեաց
և 'ի բազումլիրս ։

Նա որոյ և երանելին գրիգոր հոգևոր իմաս-
տութբ և համձարով առաւելեալ յամձային
ուսմունսն՝ ոչ արժանի վարկանէր զյամելն
յաշակերտանոցին նր, 'ի ժամանակին՝ յորում
եւտես զնա օտարաձայն յեկեղեցւոյ. այլ ընդ
բաւականին իբրև զգանձս ոսկւոյ և ականց
պատուականաց ժողովել ընտրանաւ զամե-
նակատար շնորհս իմաստութե՝ դառնայր յՁն
իւր ։ Նա որ ժողովեալ ամ ազգն՝ հրապու-
րէին զնա 'ի վարս Ձիս արկանել ամուսնու-
թե. զոր և ոչ լսել յանձն էառ, այլ հրա-
ժարեալ՝ եա զինքն այ ։

Ընդ այն ժամանակս փիդիմոս եպս՝ ամա-
սիոյ մետրապօլիտ՝ յանձուստ առեալ հրաման՝
կամէր ձեռնադրել զգրիգոր 'ի քահանայու-
թի. իսկ նր լուեալ՝ փախեաւ 'ի հեռաւոր
տեղիս երից աւուրց. և փիդիմոս խնդրէր
զնա, և ոչ գտանէր. և յայսոսիկ յերկարէր
բարւոք մարտն. զի ոչն ունել ցանկայր սի-
րով,

րով, իսկ ոմն փախչէր և թաքչէր յանապատէ յանապատ. ոմն մատուցանէր ա՟յ զհայցուածս, զի յաջողեսցի փոյթն զօրութ՟ շնորհացն ա՟յ. որպ՟ս զի մի՛ այնքան բարւոք անձն դատարկ և անշահ մնասցէ 'ի կենցաղումս. և ոմն աշխ՛ ընթանեալ 'ի բարձր պաշտամանէ քահանայութե՟՝ ոչ՟ յահաւոր և 'ի սարսափելի խորհրդոյ, ո՛չ թոյլ տայր խորհրդոցն հաւանել զալ յայն պատիւ՛ : Այլ ա՟ծ՝ որ փառաւորէ զորս փախչինն 'ի փառաց, տեսլեամբ ձգէր զնա 'ի նոյն հաւանութի՟ :

Քանզի տեսանէր մեծն գրիգորիոս 'ի տեսլեանն, զի փիղիմոս ըստ օրինի քահանայապետի ձեռնադրէր զնա 'ի քահանայութի՟ և յեպ՟սութի՟՝ եդեալ զձեռն 'ի վ՟ր գլխոյ նր՟. և ձայն եղև առ նա, կացջի՛ր գրի՛գորիոս 'ի տեղւոջդ, զի ձեռնադրեսցէ զքեզ փիղիմոս : Որ և վաղվաղակի անդր հասանէր՝ ուր գրիգորիոսն էր, և ձեռնադրէր զնա ե՟ս տեսչութե՟ն ա՟յ՝ 'ի քաղաքին, ուր հանդիպեցաւ. ու՟ 'ի նէոկեսարիա, (ռամկօրէն՝ նիկսար). որոյ բնակիչք էին կռապաշտք. բայց միայն եօթնևտասն ոգիք գտանէին անդ քրիստոնեայք :

Արդ ն՟ այնպիսի լծով մտեալ գրիգորի՝ ո՛չ համարձակէր զառաջինն 'ի բանին քարոզութի՟, մինչև ոչ յայտնեսցի նմա 'ի ա՟ծնէ առաւելութի՟ շնորհաց իմաստութե՟ և հանճարոյ. և ա՟մի՛ հաստատէր զխորհուրդն 'ի յոյս կենդանի՝ 'ի վերուստ ստուգել նմա զբան վարդապետութե՟. քանզի էին յայնժամ ոմանք,

որք

որք զԱստուածպաշտութեան խորհուրդ այլեւայլ պատմէին, եւ 'ի ձեռն կեղծաւորութեան խոսից որոգայթելով զպարզամիտսն՝ զանց առնէին զճշմարտութիւն. վասն հայցէր յոյժ ուսանել որոշ կանոն ինչ ուղիղ հաւատոյ խոստովանութեան. զի զնոյն քարոզեսցէ եւ յայտնապանեսցէ 'ի լուր ամենեցուն ։

Յայնժամ 'ի հսկել նորա եւ 'ի հոգալ՝ տեսանէր 'ի տեսլեանն ծեր ոմն քահանայ վայելուչ, շնորհալից երեսօք, եւ հրեշտակական կարգաւոր ձեւով ։ Հրաշացեալ էր տեսիլն եւ հիացեալ գրիգորիոս՝ կամէր ուսանել, թէ ով իցէ, եւ կամ վասն էր երեւեցաւ ։ Իսկ նա հեզ ձայնիւ ասէր. յԱստուածային հրամանէն երեւեցայ քեզ՝ ուսուցանել զկանոն վարդապետութեան ճշմարիտ հաւատոյ. եւ նա խնդութեամբ եւ երկիւղիւ լցեալ՝ միայն տեսանել զկատարածն ։ Այս սքանչելի ծերն մատամբ ցուցանէր նմա այլ տեսիլ ահեղահրաշ. կին մի բարի եւ բարեզգեաց՝ ահաւոր յոյժ շուրջ փակեալ պայծառ լուսով, որ փարատեաց զմթութիւն խորին գիշերոյ. մինչ զի անբերելի երեւէր աչաց երեւումն հրաշափառ տեսլեանն, թող թէ 'ի միտ առնուլ՝ ո՞ ոք իցէ ։ Յայնժամ միտ եղեալ ձայնի խօսակցութեան նոցա 'ի մէջ իւրեանց, զի յանուանէ կոչէին զմիմեանս, մայր Տեառն, եւ յովհաննէս աւետարանիչ, ծանեաւ զնոսա, թէ կինն գեղեցիկ՝ մայր Տեառն է՝ ամենաօրհնեալ կոյսն. եւ ծերն կին երեւցն՝ յովհաննէս աւետարանիչն ։

Իւ լուաւ, զի ասէր մայր Տեառն է յովհաննէս.

ու-

ուսո՛ գլխա զճշմարտութե խորհուրդն . և յով-
հաննէս առնէր պէննի , պատրաստ եմ առ-
նել զ՟ քումդ հրամանի : Այս ասաց աւետա-
րանիչն զբանսն . և գրիգորիոս 'ի միտ էառ .
և եղև տեսիլն աներևոյթ : Այս նոյն այն
վկայութիւն է ( ասէ՝ ոմն գրիգոր նիւսացի՝
պատմօղ բանիցս ) , զոր գրով եղանակեաց և
քարոզեաց երանելին գրիգորիոս յիւրում ե-
կեղեցւոջն զառաջինն . ուր և պահեցաւ այն
ձև վկայութե իբրև յոյ . որով և մնաց տե-
ղին անփորձ 'ի հերձուածոց : Այս բան խոր-
հրդածութեն այս է :

* Մի ած՝ հայր բանին կենդանւոյ , իմաս-
տութե անձնաւորի , և զօրութե և կերպա-
րանի մշտնջենաւորի . կատարեալ՝ կատարե-
լոյ ծնօղ , հայր որդւոյ միածնի : Մի տր ,
միայն 'ի միայնոյ , ած յոյ , կերպարան ( կմ
կնիք ) և պատկեր ածութե , բանն ( ած )
ներգործական ամի , և իմաստութի՝ եղելոցս
ամի բովանդակիչ , զօրութի ( սնոսահմանե-
լի՝ ) ամ ստացականացս արարիչ ( կմ համօ-
րէն արարածոյ արարչական ) . որդի ճշմա-
րիտ՝ ճշմարտի հօր , անտես՝ անտեսի , և ա-
նապական՝ անապականին , անմահ անմա-
հին , և մշտնջենաւոր մշտնջենաւորի : Այս
Մի հոգի որ , առ 'ի յոյ զէութին ( կամ
զգոյութին ) ունելով , և 'ի ձեռն որդւոյ ե-
րևեալ , ( և յայտնեալ մարդկան . ) պատկեր
որդւոյ , կատարելոյ կատարեալ , ( կամ կա-
տարեալ 'ի կատարելոյ ) , կեանք՝ ( և ) կեն-
դանեաց պատճառ . աղբիւր որ , և սրբութի
սր-

որութիւն պարգևիչ ( կամ բաշխօղ ) · որով յայտնի ա՟ծ հայր՝ որ 'ի վ՟ր ա՟մի և յա՟մի , և ա՟յ ( կ՟մ ա՟ծ ) որդին , որ 'ի ձեռն նորա ամենայնք ։ Երրորդութիւն կատարեալ՝ փառօք և մշտնջենաւորութ՟բ և արքայութ՟բ · ո՛չ բաժանեալ և ո՛չ օտարացեալ , ( կ՟մ անբաժանելիք և անօտարանալիք ) ։ Ո՛չ ապա ըստացական ինչ , և ո՛չ ծառայ յերրորդութեան , և ո՛չ 'ի ներքսածական ( կ՟մ ներածական ) · ո՟պ թէ յառաջագոյն ոչ գոլով և յետոյ 'ի ներքս մտեալ ։ Ո՛չ պակասեաց երբէք որդի հօր , և ո՛չ որդւոյ հոգի · ( կ՟մ ո՛չ նուազեաց որդի 'ի հօրէ , և ո՛չ յորդւոյ հոգի ) · այլ՝ անայլայլելի և անփոփոխելի ( նոյն ) ինքն երրորդութիւն միշտ ‖ ։ (2)

Այս սքանչելի ա՟ծաբանութիւն է յա՟ծաբան աւետարանչէ աւանդեալ սքանչելւոյն գրիգորի , զոր հանդիսացուցին ա՟մ ժողովք և հարք՝ որ զկնի · առաւելա՟պս ս՟բ ժողովն նիկիոյ , և գրիգոր ա՟ծաբանն , և մեծն բարսեղ , որք գաւառակից և սահմանակից էին սքանչելագործին գրիգորի ։ Ամին իրի 'ի վ՟ր բերէ աստանօր նիւսացին · այսպէս յաղագս այսորիկ պա՛րտ է հաւատալ · ը՛ստ յեկեղեցւոյն՝ յորում բանս քարոզի · ա՟յ 'ի նէոկեսարիա · յորոց նոյն ինքն տպաւորութ՟ ( ա՟յ բուն գրչութ՟ ) երանելւոյն այնորիկ ձեռին մինչև ցայսօր պահի 'ի փառս ա՟յ՝ որ՟պս տախտակս ա՟ծագիծս ։

Յարուցեալ ապա երանելւոյն գրիգորի 'ի տեղւոջէն՝ ուր զտեսիլն ետես , համարձա-

կու-

կուսութբ իմն և քաջալերութբ առ յոյս՝ որպէս
քաջ նահատակ 'ի քաղաքն դիմէր, և խոր֊
հէր եկեղեցի շինել. քանզի ամ գաւառն և
քաղաքն և որ շուրջ զնովաւ գիւղք՝ բազմօք
և մեհենօք և արձանօք դիւաց Ճոխանային.
զի ամենեքեան փոյթ ունէին 'ի կռամոլութն
ծանականս, և զտաճարս կռոցն պաճուճէին.
իսկ Ճշմարտին այ տաճար պատրաստեալ ոչ
ուրեք. այնպէս զօրացեալ էր անդ բռնութն
դիւաց: Այլ զոր օրինակ զօրավար թագա֊
ւորի հզօրի հալածէ զթշնամիսն, նոյնպէս և
մեծն այն զդիւացն զգունդս հալածէր:
Քանզի գոլով 'ի Ճանապարհի՝ մինչև հա֊
սեալ 'ի քաղաքն, երեկոյն 'ի վր հասանէր.
և անձրև սաստիկ եղեւ՝ 'ի մեհեան մի մտա֊
նէր հանգերձ ընդ իւր եղելովքն. և մեհեանն
այն նշանաւոր էր, և բազում դևք 'ի նմա
բնակէին. և դիւացն կամարայ աշակերտ և
սպասաւոր կայր անդ մեհենազարդ քուրմն,
և 'ի ձեռն նր դիւթական և հարցական ներ֊
գործութիւք 'ի նմա լինէին: Իսկ մտեալ 'ի
մեհեանն մեծն գրիգորիոս հանդերձ իւրայ֊
ովքն՝ սաստեաց դիւացն՝ կոչելով զանունն
քի. և նշանաւ խաչին զարհուրեցոյց ըզ֊
դևսն և 'ի բաց հալածեաց. և հանէր ընդ սո֊
վորութն իւրում զգիշերն 'ի գլուխ յաղօթսն
և յօրհնութիս այ արթնութբ. և եղեալ ա֊
ռաւօտին գնայր զառաջեդեալ Ճանապարհ
իւր:

Իսկ եկն քուրմն վաղին ընդ սովորութն մա֊
տուցանել զոհս դիւացն, և ասէր. երևեցա֊
րուք

րուք ինձ ա̄ծք և խոստացարուք ։ Իսկ դուքն արտաքոյ մեհենին ձայնեալ՝ ասէին . անհնար է մեզ 'ի մեհեանդ յայդ մտանել՝ վ̄ն 'ի դիմա օթեւելոյ գրիգորի սքանչելագործի . զի նորա մաքրութիւն զմեզ հալածեաց . իսկ քուրմն մեհենական զն̄մ հնարս հնարէր զոհիւք և պաշտամամբք ը̄ն ախորժմանս դիւացն . այլ ոչ լուան դեւքն սովորական դիւթութեանց և կոչմանց ։ Յայնժամ բարկութ̄բ լցեալ մեհենականն՝ գայր հասանէր մեծին գրիգորիոսի . և սպառնայր մատնել զնա իշխանացն, և թագաւորին զուշակել, թէ քրիստոնեայ է՝ և ա̄ծոցն թշնամի, և յանդգնեցաւ յա̄ծային մեհեանն մտանել և հալածել զա̄ծսն ,
և խափանեաց զզօրութի̄ ն̄ց ։

Իսկ գրիգորիոս զանմիտ բարկութ̄ի քրմին ցածուցանէր ասելով . վստահ եմ 'ի ճշմարիտ ա̄ծն՝ որ ունի հալածել զդեւս ուստի և կամի, և բնակեցուցանել ուր և կամի . որ և քեզ եղիցի . զի 'ի միտ առցես զզօրութի̄ ա̄յ իմոյ, և զտկարութի̄ դիւաց՝ զորս պաշտես 'ի սնոտիս ։ Զայս լուեալ քրմին՝ կայր հիացեալ, թէ զի՞նչ ունի առնել ։ Յայնժամ գրէ երանելին 'ի քարտիսի հրամանական դիր առ դեւսն . և էր գիրն այս ինչ ը̄ն նոցա բարբառոյն . * Գրիգորիոս առ սատանայ . Մուտ ‖ . ա̄յ՝ որպէս մեկին գրէ ճառընտիրն , մուտ 'ի բագինդ ը̄ն հրամանի իմոյ քոյին ընկերօքդ ։ Իբրեւ առեալ քրմին զգիրն՝ երթայր կարդայր 'ի վերայ բագնին . և նոյնժամայն մտին դեւքն 'ի մեհեանն՝ որպէս զառաջինն ։

Իբ

Այս տեսեալ և գիտացեալ մեհենակալին հաւատարիմ լինել զգիրն և զբանն գրիգորի՝ ՚ի զարմացման մեծի եղև ը̄ սքանչելիսն , և ը̄ իշխանութի ն̄ր ՚ի վ̄ր դիւացն :

Դարձեալ պնդեցաւ զկնի գրիգորի . աղաչէր ուսուցանել՝ թէ ո՛վ է ա̄ծն այն , որ զգիճաց բնութի ՚ի ձեռն ունի : Այս յասել սակաւուք մեծին գրիգորի զբարեպաշտութե խորհուրդն , խնդրէր քուրմն ՚ի նմանէ այլ սքանչելիս տեսանել , զի եկեսցէ ՚ի ճշմարիտ հաւատն : Քար մի կայր լեռնացեալ հանդէպ ն̄ց , զոր ոչ էր հնար ումեք շարժել , այլ միայն ա̄յ զօրութեն . արդ ասէր քուրմն ցգրիգորիոս , թէ հրամայեսջիր փոխիլ յայլ տեղի : Իսկ նա ոչինչ յապաղէր , այլ հրամայեաց որ̄պս անձնաւորի՝ քարին , փոխիլ յայլ տեղի՝ ուր քուրմն եցոյց . և նոյնժամայն փոխեցաւ ը̄ բանին գրիգորի . զոր տեսեալ քրմին՝ հաւատաց յա̄ծ ճշմարիտ :

Այս թողեալ զքրմութի , զտուն , զազգ , զինչս և զստացուածս , գնաց զկնի մեծին գրիգորի . և առեալ տանէր զնա ՚ի քաղաքն՝ վերահռչակելով զայրն , և զսքանչելիսն պատմելով : Հեղաւ ա̄մ քաղաքն ՚ի լուր սքանչելեացն . և տեսանէին զմեհենազարդ քուրմն և զսքանչելագործն ՚ի միասին . ո՞վ իցէ ասեն գրիգորիոսդ այդ , զի մարդ գոլով՝ ա̄ծոց իշխէ ո̄պ ծառայից , և զսպասաւոր ն̄ց ունի զկնի իւր . և կամէին մեծարել զնա բազմօք , և պատուասիրել ՚ի տան ուրումն մեծի . և էր խնդիր ՚ի մէջ ն̄ց , թէ ո՞ւր ագանիցի :

Ր. Ր.յլ

Այլ նա ոչ կամելով ծանրանալ ումեք՝ իբրև 'ի ծանրութենէ իմեքէ զանձն ապատէր . և ոչ իմիք պիտոյանալ ասէր , ոչ ընչից , ոչ տեղւոյ , և ոչ տան . զի զնմ ինչ զկենցաղական ուրուք համարէր , միայն թէ զնց փրկութին շահեսցի : Այլ զի՞նչ է ասէ տարակուսանքդ այդ զանդըւոյ . մծ է մեր տուն , որ 'ի ձեռն նր կեամք և շարժիմք . կամ թէ նեղիցիմք ընդ երկնային յարկն , և խնդրիցեմք հանգչել 'ի վր երկրի . այլ տուն մեր դուք էք 'ի քս յս , ուր 'ի ձեռն փութոյ իւրաքանչիւր ոք առաքինութին շինի և ուղղափառ հաւատով 'ի ձեռն առաքելոց և մարգարէից . զայս փոյթ նմ ոք հոգացի , զի մի՞ այսպիսիքս մեզ կարևորք անպատրաստ լինիցին :

'Ի խօսել նր զայսոսիկ առ բազմութին՝ վառեցաւ 'ի սէր նր մուսոնիոս ոմն անուն երևելի 'ի քաղաքին , և փութացաւ լինել սպնջական մեծին գրիգորի . և հասեալ յափշտակէր յայլոց զշնորհն . և մեծաւ աղաչանօք հրաւիրէր զայրն այ 'ի տան իւրում օթևանել . և նա ընդ բազում թախանձանաց նր և հաւատոյ՝ յանձն էառ պատուել զայրն մտանելով 'ի տուն նր . ուր ժողովեցան և այլ բազմութիք . և երանելոյն սակաւ ինչ խօսեցեալ , զի արևն 'ի մուտս էր , հրամայէր այգուն ժողովել 'ի լսել զբանն այ :

Այլ 'ի վաղիւն ժողովեցաւ քաղաքն ամ , արք և կանայք , ծերք և մանկունք , երիտասարդք և կուսանք . ամ և վտանգեալք 'ի պէսպէս ախտից և 'ի դիւաց . զի եւ համբաւ նր ընդ

Բ. B ամ

ամ երկիրն ։ Իսկ նա ՚ի մէջ հրապարակին արձանացեալ զօրութբ սբ հոգւոյն՝ զպետս շնորհին բաշխէր իւրաքանչիւրոյն պատշաճապէս ․ քարոզէր զաւետարանն արքայութեն երկնից , ուսուցանէր , խրատէր , և բժշկէր զախտաժէտս ։ Եւ նք խնդութբ ընկալեալ զբանն , և է սքանչելիսն հրաշացեալ՝ դարձան ՚ի ճանապարհաց իւրեանց չարաց և ՚ի սնոտեաց կռոցն ․ և այսպէս յօրինէր զամենեսեան փառաբանիչս այ , և երկրպագուս

սբ երրորդութեն ։

Շինէր այնուհետև տուն աղօթից ․ և սեղան ուղղեալ՝ կատարէր զկենսաբեր խորհուրդն ․ և ամենեքեան ընչիւք և մարմնով առ փոյթն սպասաւորէին ՚ի կանգնել զտաճար այ կենդանւոյ ․ և ածային շնորհիւ իմն կատարէր զգործն ։ Այս տաճար մինչև ցայժըմ ցուցեալ լինի ( ասէ Նիւսացին ) ․ որ և յետ ժամանակաց վկայեցաւ յայ՝ մեծին այն լինել գործ ․ քանզի ՚ի սաստիկ շարժման քաղաքին՝ որ առ մերովք եղև ժամանակօք , յորժամ անպիտանացան արքունական ապարանքն , և տապալեցան այլ շինուածք քաղաքին , միայն մնաց տաճարն այն անսասանելի և անխախտելի , ոպ զի յայտնի երևեսցի զօրութին այ և նորին աղօթիցն գործ ։ Իսկ մեծն գրիգորիոս՝ յորժամ մկրտեաց ըզժողովուրդն , ձեռնադրեաց և զքուրմն ՚ի սարկաւագ ․ և արար բազում ուղղութիս ՚ի

քաղաքին և է ամ գաւառն ։

Յաւուրսն յայնոսիկ երկուց ոմանց եղբարց

ե-

Երիտասարդաց զհայրենի ժառանգութիւն բաժանելով 'ի մէջ իւրեանց՝ հակառակէին վասն ծովակի միոյ, զոր իւրաքանչիւր ոք իւր սիրէր առնել. լինէր դատաստանին առ սքանչելագործն. երթեալ 'ի տեղին՝ զառաջինն աղաչէ 'ի խաղաղութիւն, և յայտնէ զիրաւունսն՝ նախապատիւ առնել զսէրն քան զշահս ծովակին. և ոչ լինէր լսելի աղաչանք նորա. քանզի բարբարոսք էին, և 'ի բարկութենէ յուսով շահիցն կիզուին, և 'ի պատերազմ բորբոքէին. մինչև զօր ժողովեալ իւրաքանչիւր յլն ձեռամբ եղելոցն՝ բազմաձեռնութեամբ 'ի սպանումն միմեանց խորհէին. և 'ի վաղիւն հանդերձեալ էին յիրեարս յարձակիլ պատերազմաւ ։ Ագայր յեզր ծովուն այրն Աստուծոյ, և հսկէր զգիշերն, և զմովսեսի սքանչելագործութիւնն 'ի ջուրսն ցուցանէր. ոչ հարմամբ գաւազանի յերկուս բաժանեաց զծովն, այլ ամենևին ցամաքեցոյց. զի գտաւ յառաւօտուն ծովն չոր անթաց. մինչ զի և ոչ 'ի փորուածսն ունէր մասն խոնաւութեան. զի խորք էին ծովու ։ Իսկ այսպէս 'ի խաղաղութիւն զպատերազմն փոխեաց, և ծանոյց զեղբայրութիւն բնութեան 'ի բարիս սքանչելեօք. և որ երբեմն ծով էր, յաւուրս նիւսացւոյն փոխարինեալ էր 'ի բնակութիւն, յանդաստանս և յարտավարս դաշտաց և 'ի խորաձորս՝ նշանակօք սահմանաց ծովակին ։

Գետ մի հոսէր 'ի գաւառի անդ յաղբերաց Հայոց լերանց՝ ընդ ձորս վայրաբերեալ յորձանօք ահաւոր հոսմամբ. գայր անոճանի 'ի

բնակչաց Տին . որ ընդ որ անցանէր՝ մերձա-
կայիցն քաղաքում առնէր վտանգս . առնոյր և
ագարակս և արտավարս և մարգս . և թէ-
պէտև քաղաքում զարմանս և հնարս առնէին ,
այլ օգտէին և ոչինչ . քանզի իբրև հեղեղատ
յորդեալ էր ժամանակին՝ քանդէր զամ ամ-
բութիս , և ապականէր զՏն : Սոյ միաբա-
նեալ մարդկան՝ եկին առ Տրն գրիգորիոս ,
և աղաչէին զնա , զի լուծցէ զվնաս գետոյն՝
որպէս և կամեսցի . և կամ հրամայեսցէ նմ
թողուլ զսահմանն , և գնալ յայլ Տ :
Յարուցեալ ապա նորօք հանդերձ գնաց յեզր
գետոյն . քանզի ոչ արգելուին զնա աշխա-
տութեն գնացք առ մարդկան օգտի . ոչ ձիով
կամ իշով կամ իշակխով գնաց երբէք , այլ հե-
տևակ 'ի գաւազանն յեցեալ՝ զամ ճանա-
պարհ վճարէր : Հասեալ յեզր գետոյն , և
իմացեալ՝ թէ անհնար է մարդկան իմաստու-
թեն կամ ուժոյ ելս առնել վնասուցն , բայց
եթէ այլ զօրութեն , յիշեաց զբան մարգա-
րէին , թէ սահման եդիր՝ որ ոչ անցանէ :
Զայս ասաց , և զգաւազանն 'ի խոնարհ
ցցեաց յափն գետոյն , ուր յորձանկութեն հո-
սանացն առնէր զվնասն :

Եւ 'ի կալնուլ յաղօթս առ Տր հանդերձ ար-
տասուօք՝ անդէն վաղվաղակի արմատացեալ
լինէր գաւազանն , և դալարութի ցուցանէր
ոպ զգաւազանն ահարոնի . յայնժամ ասէ ե-
րանելին ցամբոխն . մի երկնչիք , զի Տր հա-
ճեցաւ փակ իմն և սահման դնել յարգելուն
ջուրց . և այնպէս դառնայր ամենեքումբք
հան-

Համդերձ 'ի քաղաքն՝ փառաւորելով զՀրա-
շագործ Տէրն ։ Եւ արդարև ծառացեալ գա-
ւազանն այն՝ սահման հաստատեցաւ հոտա-
նաց ․ զի յայնմհետէ 'ի յորդել անձրևաց և
ուղխից գարնայնոյ՝ ոչ իշխէին անցանել ը̃
արմատ ծառոյն ․ և անուն ծառոյն է մինչև
ցայժմ գաւազան Գրիգորի ։ Եւ հռչակէր
ևս քան զևս անուն երանելւոյն ․ և ա̃մ ու-
րեք ընթանայր քաղցրութ՚ին, գործակից լի-
նելով խորհրդոյն սքանչելիքն ․ և փոյթն առ
բարին տարածէր առ ամենեսին, և հաւա-
տացելոցն հաւատ աճէր և բազմանայր ։
Լինէին աղաչանք առ Գրիգորիոս 'ի քաղա-
քէն Կոմանայ՝ գալ առ նոսա ձեռնադրել նոցա
եպ̃ս ․ և նա ունկնդիր եղև աղաչանաց ն̃ց ․
գնաց զկնի ․ և եղեալ առ ն̃ս՝ ետես, զի ա̃մն
զայս, և ա̃մն զայն ընտրէր ․ այլ նա ոչ տայր
զընտրութ՚ին՝ խնդրելով յա̃յ յայտնել նմա
զարժանաւորն ․ և քարոզէր ամենեցուն, թէ
ոչ դեղ և հասակ, և ոչ մեծութ՚ի ազգի կա̃մ
ճոխութ՚ի բանի պարտ է խնդրել, այլ հոգի
պայծառ յայս ա̃յ՝ առաքինութ՚ զարդարեալ ։
Իսկ ա̃մն՝ որ կարծէր զինքն ընտիր կամ գլխա-
ւոր 'ի խորհրդի, սա առաջին եղև 'ի ստգտա-
նել զայլն ա̃յ ․ քանզի յառաջ մատուցեալ
ասէ եպերանօք ․ զի եթէ բնաւ յառաջագոյն
ընտրեալքս և երևելիքս ոչ են արժանի, և
զանարգսն կամիս կոչել 'ի քահանայութ՚ի,
ապա կոչեսցի աղէքսանդրոս դարբին կամ
ածխագործ ․ եթէ նա հաճոյ է քեզ, զու-
գաձայն եմք նմին քաղաքս ա̃մ ։

Իսկ նոյն ոչ արհամարհեալ զայրն յիշատա-
կեալ, ո՞չ է ասէ այս աղեքսանդրոս՝ զոր ա-
սէքդ. յայնժամ մի ոմն յորոց մերձն կային,
կատականօք 'ի մէջ ածէ զաղեքսանդրոս,
փերեւեթեալ զգեստուք եւ անշուք կերպա-
րանօք, եւ ձեռքն եւ երեսքն եւ այլ մարմինն
աղտեղեալ 'ի գործելեաց եւ 'ի կայծականց
հրոյն. եւ էր ծիծաղելի ամենեցուն եւ գձուձ:
Իսկ մեծն գրիգորիոս ծանեաւ ազդեցութբ̃
հոգւոյն՝ թէ որպիսի ոք էր այրն. որ ո՛չ առ-
վտանգի անանկութե̃ կենցաղոյս եկեալ էր
յայն արուեստ, այլ վս̃ առաքինութե̃ եւ օգտի
տնանկաց. ապա թէ ոչ՝ իմաստասէր էր
այրն, ոպ̃ եւ յետոյ իրքն ծանուցին:
Յայնժամ նա զանխլանալ ջանայր, եւ 'ի
վերջ քարշէր զինքն. զի ոպ̃ զառաքինութի̃ն
ծածկէր անարգ կերպարանօք, այսպէս եւ
անարժան վարկանէր զինքն: Այլ գրիգո-
րիոս հրամայէր յառաջ ածել զայրն, եւ յայտ-
նէր զնր̃ ծածուկ վարսն յայտնեալ նմա յայ̃.
ապա ակնարկէր սպասաւորացն, որք տարեալ
լուացին զաղեքսանդրոս, եւ մեծին հանդեր-
ձիւք վերարկեալ ածին առ̃ հրամանին. յայն-
ժամ հայեցեալ ամենեցուն հանդերձ նոքօք՝
որք ընտրեալքն կարծէին, զարմանք կալան
զամենեսեան վս̃ ընտրութե̃ առնն:
Ասէ ցնս̃ գրիգորիոս. զի՞ զարմանայք. ոչ-
ինչ նորագոյնս հանդիպեցայք աղեքսանդրի,
որ ծանօթ է ամենեցուն ձեզ. այլ զգայութ̃
խաբեալք ոչ գիտէիք յիրաւունս բարւոյն
դարձուցանել զդատաստանն այ̃. զի մարդ-
հայի

հայի յերեսս, իսկ ա՟ծ 'ի սիրտն ։ Օ այս ա-
սացեալ՝ մատուցանէ զայրն 'ի քահանայու-
թիւն և 'ի քահանայապետութիւն ձեռնա-
դրութեամբ ա՟յ կատարեալ շնորհի խորհր-
դածուե՟ն. և այսպէս որ յառաջագոյն ծած-
կեղէր 'ի քե՟, 'ի ձեռն մեծին գրիգորի յայտ-
նեցաւ ։ Այլ որ մեծն է, զի 'ի ժամու անդ
ձեռնադրութե՟, կի՟զկնի 'ի ձեռն տեսլեան
եղելոյ առ այլս՝ երևեցաւ 'ի վ՟ր ն՟ր շնորհք
հոգւոյն ս՟բյ նմանութ՟բ աղաւնոյ. և որք տե-
սինն զայն՝ օրհնէին զա՟ծ, և ահիւ՛ մեծաւ
ըմբռնեցան. և հրամայէ ն՟ր հնազանդ լինել
նմա ա՟մ քահանայի ա՟յ և հովուի իւրեանց ։
Այլ տուաւ նմա շնորհք գիտութե՟, և ուսու-
ցանէր զբանն ա՟յ առաւել քան զուսեալքն.
և զարմանայի՛ն ամե՛նեքեան. որ և յետոյ
յանօրինաց կռապաշտից մարտիրոսացաւ՝
հրովլ կատարեալ վ՟ն անուա՛նն ք՟ի ։
Երկուք ոմանք հրէայք կամեցան խաղ առ-
նել և խաբել զսքանչելագործն. մին 'ի նո-
ցանէ եղև սուտ մեռեալ ո՟մ յանկարծամահ,
և անկեալ դնէր 'ի կողմանէ ճանապարհին.
իսկ ընկերն կոծէր 'ի վ՟ր մեռելոյն ողբեր-
գական ձայնիւ՛ ։ Այլ իբրև ե՟ս այն անցանէր
առ նոքօք սքանչելագործն, վերագուշէր առ
նա ասելով. յանկարծակի մահ պատահեաց
թշուա՛ռականիս, և մերձ ահա կայ առ 'ի
թաղումն. պարգևեա՛ առ 'ի քէն անարգա-
գոյն հանդերձիկ՝ արկանել 'ի վ՟ր դորա պա-
տանս ։ Իսկ ն՟րն ա՟յ ոչ անտես առնէր զհայց-
ուածս հրէին. առեալ զարկանելին իւր՝ տա-

բածեաց 'ի վ͞ր մեռելոյն , և ինքն զճանա-
պարհ իւր գնաց ։ Իսկ հրէայն խնդալից ան-
կանէր 'ի վ͞ր մեռելոյն , զխաղու և զծաղու
թանս թարթաւէր վ͞ս շահու հանդերձին ․ իսկ
նա ոչինչ թարթաւեցաւ , զի է͞ր արկման հան-
դերձին եւ հոգին ։

'Ի քարոզել երբեմն ս͞րյն 'ի հրապարակի՝ մինչդեռ սքանչացեալ էին ամենեքին , ոմն 'ի մանկանց առ ընկերսն աղաղակէր , թէ ոչ յանձնէ զայսչափ ինչ ասէ վ͞ճպն , այլ ոմն մերձ կալով առ նմա՝ հանէ զբանն ։ Երբև դադարեաց գրիգորիոս 'ի խօսելոյ՝ եւ թե- րեւ զմանուկն , և ասէ առ որս անդն կային ․ ոչ է մաքուր 'ի դիւէ մանուկդ այդ ։ Իսկ ա- ռեալ ͞ն զկտաւն՝ որ 'ի վ͞ր ուսոյն էր , մեր- ձեցոյց 'ի բերան իւր , և ընկեց 'ի վ͞ր ման- կանն ․ և նա սկսաւ տագնապիլ 'ի դիւէն՝ պատառելով զհանդերձսն և փրփրալով ․ ա- պա մատուցեալ ͞նքն՝ դնէ զձեռն 'ի վ͞ր , և առնէ զնշան խաչին ․ և 'ի բաց հալածէր ըզ- դևն 'ի մանկանէն ․ որոյ զգաստացեալ՝ փա- ռաւորէր զ͞ա ։ (3)

Արդ այնուհետև զտեղի կալեալ մեծին գրի- գորի յաթոռ իւր 'ի նէոկեսարիա , որ քան զոր ձգէր զբազումս 'ի հաւատս ճշմարտութ͞ե՝ զօրութ͞բ նշանաց և ս͞ծաշնորհ վ͞ճպութ͞բ ․ մինչզի ընդ բովանդակ քաղաքն տարածեալ ս͞ծային քարոզութ͞ն՝ փոխադրեալ լինէին յամպարշտութ͞է առ բարեպաշտ հաւատն ․ և փոխեալ բագնացն և մեհենացն առ 'ի կռոցն պղծութ͞է և 'ի զազրալի զոհիցն , շինջանէին ա- րիւն-

բռնհեղութե՟ն՝ որ 'ի վ՟ր բազմացն, և կեն-
դանազոհութ՟ն դիմացն. և յա՟մ տեղիս եկե-
ղեցիք և աթոռանոցք վերականգնեալ լի-
նէին 'ի ձեռն մեծին գրիգորի. և քրիստո-
նեից խորհուրդն աճէր յօր յօր ։

Օ այն լուեալ թ՟րին՝ ըստ ազդելոյ ոմանց 'ի հեթանոսաց, բարկացաւ. գրէ առ իշխանս իւր խափանել զեկեղեցիս. և որք ք՟նի երկրպագեցին սոսէ, ըմբռնեսցին և դարձցին հարկաւ 'ի հայրենական պաշտօն ։ Իբրև պատմեցաւ 'ի քաղաքին չար և անա՟ծ հրամանն 'ի հրապարակս տարածեալ յիշխանաց, կամ ուրանալ զհաւատն, և կա՟մ չարչարանս ազգի ազգի և տանջանս մահու կրել, աս- տուստ լինէին անապատք, և ունայնանային 'ի բնակչաց քաղաքք և շէնք ։

Զայնժամ հայեցեալ մեծին գրիգորի 'ի մարդ- կային տկարութ՟ն, եթէ ոչ բաւեն բազումք մինչև 'ի մահ տևել, խորհրդակից լինի ե- կեղեցւոյն՝ փոքր ինչ տեղի տալ հալածչացն փախստեամբ ըստ պատուիրանին տ՟ն. և եր- թեալ բնակէր և ինքն յանապատի իւրայովքն՝ որ 'ի պէտս պաշտաման՟ն սպասաւորէին նմ՟. Իսկ բռնաւորացն փոյթ այն էր, եթէ զէ- նորդ զնա որպէս զօրավար քաջ ըմբռնել կարասցեն. և ահա ումեմն տեսեալ յամ- պարշտացն՝ գուշակէր հալածչաց զտեղին. և նոյն ամբոխ արարեալ և երթեալ շրջափա- կէին զտեղին և պահէին, զի մի հնար լիցի նմ՟ փախչել ։

Իսկ գրիգորիոս տարածեալ զձեռս իւր՝ հան-

դերձ

դերձ սարկաւագաւն, որ յառաջ քրմապետն էր, կայր յաղօթս . և անդէն անկաւ 'ի վերայ արանցն անտեսուի . զի և որք յառաջն տեսին զնս, այլ ոչ ևս տեսանէին . և յուզէին զնմ վայրսն, ոմանց 'ի տեղին խուզ կալով, և այլոց առ նոքօք անցանելով . և իբրև ոչ կարացին գտանել, սքանչացեալք 'ի փախուստ դարձան, և գնացին զճանապարհս իւրեանց : Այլ որ գուշակեացն հալածչաց, եկեալ անկանէր առաջի սբյն, խնդրէր թողութի յանցանացն . որ և հաւատաց յած և մկրտեցաւ . և որ յառաջ հալածիչն էր՝ մի 'ի թաքուցելոցն լինէր, և օրհնէր զած :

Այլ զի ընդերկարեցան հալածանքն, և լի էին կապարանք և տանջանարանք, մեծն գրիգորիոս համապազ հոգայր վս նց յանապատին . և աղօթէր վս նց՝ ոմ մովսէս ըդէմ ամաղեկայ վս իէլի : Որ երբեմն ըն սովորութեն յաղօթսն ոյ լցեալ հոգւոյն սբվ . մինչ զի յայտնի եղև մերձակայիցն՝ ձայն ինչ լինել առ նա յոյ . այլ ոչ լինէր նց հասու լինել տեսլեանն և իմաստից ձայնին : Այլ դադարեալ յաղօթիցն՝ եկն առ ժողովուրդն, որ կայր մեկուսի, և աւետիս տալով նց՝ վեր օրհնէր զած պայծառ ձայնիւ, զյաղթականն երգելով, օրհնեալ է տր՝ որ ոչ ետ ըզմեզ 'ի յորս ատամանց նց . ըն որ զարմացեալք՝ որք ըն նմայն էին, ուսանել զպատճառսն արժանի լինել աղաչէին :

Ասէ առ նս . տեսանէի 'ի ժամ աղօթիցն, զի էր 'ի հրապարակ ատենի հալածչաց երի-

տա-

տասաարդ մի քարի՝ տրոադիոս ( կմ տրովլան-
դիոմէ ) անուն . որոյ մարտուցեալ ՟Ը՟ քանսար-
կուՙին և ՟Ը՟ դուռն հալածիչսն՝ յառաջ ածա-
ռա իշխանն 'ի դահճայն 'ի քաղաքին . և յետ
բազում և ազգի ազգի տանջանաց՝ վկայեաց ,
և վերաջգեցաւ զպսակն անապական . և լը-
ճայ ձայն՝ թէ դադարեալ են հալածմունքն ։
Ս այս լուեալ սարկաւագն և որ ՟Ը՟ նմայն
էին , ոքանչացան . զի այնչափ հեռագոյն
գոլով 'ի քաղաքէն՝ այնպէս ստոյգ գիտաց .
և ոչ անհաւատ եղեն . բայց աղաչէր զնա
սարկաւագն , զի հրաման տացէ նմ երթալ
'ի քաղաքն և տեսանել ։ Ս՟բն ասէ . դուցէ
ըմբռնեցիս որդեակ . և նա ասէ . յուսամ
յ՟Ած , և յաղօթս քո՝ որ փրկէ զիս ։ Եկն 'ի
քաղաքն , և լուաւ յամենեցունց զվկայուէ
ս՟բյ նահատակին , և զանունն նր , ոմ ասաց
այրն ՟այ ։
Եւ դարձաւ անդրէն աշխատեալ , և օրն տա-
րաժամէր . և էին բաղանիք 'ի քաղաքին ,
կամեցաւ անդ ագանել զգիշերն . վ՟նյ աղա-
չէր զոմն՝ որ մերձ կայր առ բաղանիսն՝ բա-
նալ նմա . և նա ասէ ցնա . ոչ է հնար ումեք
'ի գիշերի մտանել 'ի բաղանիքս , զի յետ
մտանելոյ արեգականն դև ունի զբաղանիսդ
և զջուրսդ որ 'ի դմա . և բազմաց անգիտու-
թ՟ե մտեալ՝ սպանան 'ի նմին ։ Եւ սարկա-
ւագն ոչ հաւանեալ բանից առնն՝ 'ի ներքս
մտանէ 'ի հանգիստ . և ահա լսէր բազում
ձայթիւնս և արհաւիրս և ողբս և շնչիւնս .
հրով և ծխով լցեալ լինէր տուն բաղա-
նեացն .

նեացն. և դիւացն կերպ 'ի կերպս գազանաց և սողնոց լինելով՝ շուրջ շուրջ զմարմնով նր̄ զեռային :

Իսկ սարկաւագն զկնիքն քր̄ի առարեալ յինքեան՝ արհամարհէր զպատրանս դիւաց. և ը̄ առաջին դուռն անցեալ 'ի ներքսագոյնն մտանէր աներկիւղ. և անդ ահաւոր և դժընդակ ևս լինէր երևոյթ գազանաց դիւացն, մինչև շարժել և տատանել զտունն. և զյատակն պատառեալ ցուցանէին, և 'ի ներքուստ 'ի վեր կայծակունս արձակել 'ի ջուրն և 'ի նոսա : Իսկ նա աղօթիւք և քր̄ի կնքովն հալածէր զն̄մ ցնորս երևութից. և այնպէս հանգուցեալ զգիշերն, և առաւօտուն ջրովն լուացեալ՝ խորհեցաւ ելանել և գնալ. և դևն դարձեալ արգելուլ կամեցեալ՝ զդուռնն ը̄դէմ փակէր. իսկ նա զկնիքն քր̄ի արարեալ՝ բանայր զդուռն :

Ասեն դևքն. եթէ ոչ էր. վս̄ գրիգորի՝ որ զքեզ ա̄յ յանձնեաց, կենդանի 'ի բաղանեացս ոչ ելանէիր : Ասէ սարկաւագն. գրիգորիոս՝ որ եհան աղօթիւք 'ի բագնէն ըզհայրն ձեր սատանայ, որում եսն սպասաւորէի, և դարձեալ եմոյծ թղթովն, նորին աղօթքն իսպառ հալածեսցէ զձեզ 'ի տեղւոջէս յայսմանէ, և եղև այնպէս. մինչև զարմանալ բաղնեպանացն և բնակչաց քաղաքին. և ել համբաւս այս ը̄ ա̄մ աշ̄ն. և եկեալ սարկաւագն պատմեաց սրբոյն գրիգորի :

Նոյն ինքն գրիգորիոս սիրէր միշտ յանապատս լինել յաղօթս. և 'ի ձեռն քահանայից հովուէր

ուէր զժողովուրդն ընդ քաղաքաց քաղաքաց, որ հաւատացաւ նմա ։ Այլ իբրև դադարեցոյց զհալածանսն աղօթիւք, իջանէր անդրէն 'ի քաղաքն, և ուսուցանէր զամենեսեան ։ Այլ հրամայէր տօն կատարել իւրոց սբյն՝ որ վկայեցին, և ուրախանալ հոգևորապէս և ցնծալ 'ի յիշատակ սբյն ․ և ոչ միայն մծ ճգնելոց վկայիցն հաւատովք տօնս օրինադրեաց, այլ և ընկալեալ զայլևայլ վկայից զմարմինս՝ հանգիստ նց պատրաստէր, ամփոփելով 'ի վայելուչ դիրս ․ և կարգեաց ըստ բոլորման շրջագայութեն ժամանակաց զնս մարտիրոսացն զարդարել զյիշատակս՝ փոխանակ ընդունայն պաշտամանցն և հեթանոսական տօնից ։

Յորս երևելի էր այն, զի յառաջին ամս քահանայութեն սբյն՝ տօն իմն ամենաժողով և ամենահրապարակ առնէին դիւի ումեմն իւրեանց քաղաքն Նէոկեսարու ․ և գաւառականքն միաժողովեալ, զդևն՝ զոր տօնէին, ածող կմ վերատեսող կարդային ․ այն է ըստ հելլենացւոց՝ տէ՛ս կմ զևս ․ և միաբարբառ միով ձայնիւ աղաղակէին ․ ով զևս տուր մեզ տեղի և ընդարձակեա՛ ։ Զայն իմացեալ մեծին Գրիգորի՝ յղէ առ նոսա ասելով ․ տացի՛ ձեզ տեղի, որ չէ՛ այլ երբէք լեալ ․ յայտ արարեալ՝ զի եթէ դարձցին 'ի պաշտամանէ դից, յարկ յաւիտենական տացի նոցա յԱյ ․ ապա թէ ոչ՝ զևսն ոչ ունի առնել նց բարիս, այլ՝ չարիս ․ ոպ և արար իսկ, մինչև 'ի սուգ դարձուցանել զտօն ուրախութեն նց ։

Բան-

Բանզի նոյնժամայն անկաւ 'ի վր նց ախտ սաստիկ, որ որպէս հուր այրէր զնս, և զբաւզուամս կոտորէր. զի յամն տունս տարածեցաւ ապականարար ժանտունի ախտին: Սոյ եկեալ բազմութբ ապաւինեցան 'ի սքանչելագործ ծառայն այ, և խնդրէին հնարս փրկութե. և նա գնաց զկնի նց, և մտեալ յիւրաքանչիւր տունս՝ աղօթիւք փարատեաց ըզսաստակիչ ախտն, և բժշկեաց զնս. և այնմ խրատեալք 'ի հարուածոյն՝ դարձան 'ի քս և մկրտեցան. և 'ի ձեռն մարմնական ախտին՝ հոգւով առողջացան:

Զայսօրինակ քաղաքավարեալ մեծին գրիգորիոսի զամ ժամանակս իւր յեկեղեցւոջն այ, զոր նովաւ դարձոյց քս ած, սքանչելի լինէր բանիւք և արդեամբք: Իսկ վն զի յառաջագոյն գիտաց զփոխումն իւր, փութայր փախագրել զամենեսեան 'ի կռոցն պղծութե 'ի փրկական հաւատն քսի. և յուզէր՝ եթէ իցէ ոք մնացեալ 'ի նէոկեսարիա արտաքոյ հաւատոցն, եգիտ ոչ աւելի քան զեօթնետասն անձինս, որչափ ինչ կային անդ նախ քրիստոնեայք: Իսկ տրտմեալ երանելւոյն վն մնացելոցս այսոցիկ՝ անկանէր առաջի այ, և խնդրէր արտասուօք զդարձ մոլորելոցն. զի որ յետ նր փոխանորդեսցէ զեկեղեցին՝ մի լիցի նմ կռապաշտ տեսանել 'ի հօտի նր. և աղօթելով վն յառաջադիմութե հաւատացելոց՝ օրհնեաց զնս. և աւանդեաց զհոգի իւր 'ի ձեռս այ ուրախութբ:

Այս է աւնն այ կենցաղն, և առ ած փոխումն.

խումն . և քանզի 'ի կեանս Տիս ոչ ստացաւ-
տուն և տեղի ուրեք , և ոչ յետ մահուանն
ստանայր իւր տեղի առ 'ի թաղումն սեպհա-
կան . մինչ զի ոչ ինքն իսկ գուշակեաց՝ յա-
ռաջս եղև ասել զսքանչելւոյն , եթէ գրի-
գորիոս 'ի կենդանութենն ոչ անուանեաց իւր
տեղի , և ոչ յետ մահուան . այլ ոչ կեանս
անցոյց պանդխտութե , նոյնպէս յօտարաց
տեղի թաղմանն՝ եղև պանդուխտ և 'ի մահ-
ուան . և որպս 'ի ստացուածոց հրաժարեաց
'ի կեանս իւր , նոյնպէս և 'ի թաղմանն 'ի

զարդուց ։

Զարմասցի՛ ( ասէ Ճառընտիրն բանիւ նիւ-
սացւոյն ) իւրաքանչիւր ոք 'ի հանդիպելոց
բանիցս . այլ մի ոք անհաւատասցի . որպէս
և տնտեսութեն յայտ առնէ , ուր 'ի ձեռն նր
եղև այնքան փոփոխմանց այլայլութի 'ի ստու-
թէ 'ի ճշմարտութի . և այս որ ինչ գրեցաւ
ստուգութբ , է սակաւ 'ի բազմացն . զի յո-
լով եցոյց սքանչելագործն զարմանալիս 'ի
վր զարմանալեաց , և գերազանց առաքինու-
թբ նահատակեցաւ . և բազում ճառս շարա-
գրեաց յաղագս ուղղափառ հաւատոց և վա-
րուց ։ Նա յսմ հանդիսացաւ 'ի կենցաղումս .
և հրաժարեալ հանգեաւ Ը ամ սեպս 'ի քս
յս 'ի տր մեր . որում փառք յաւիտեանս ,

ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Քաջածանօթ ամենեցուն Ճանաչի հեղինակ բո-վանդակ վարուց սքանչելագործին՝ Գրիգոր Նիւսացի եղբայր մեծին Բարսղի․ վա՛յ և գրեանն ամ անըրկնա-նալի ամ իրօք ։ Եւ եթէ Ճառ Նիւսացւոյն ներբողական յօրինուածով կարգեալ՝ տայր մեզ գոյզն մի աշխատու-թիւն քաղելոյ 'ի կարգէ գովեստից շպատմական բանս, զայդ յառաջ քան զմեզ պատրաստական գործեաց ոմն յառաջնոց իմաստուն վկայաբանից 'ի Ճառընտիրն մեր Ա. թերևս ունելով և այլուստ զայլ հեղինակս պարզ վարուց սրբոյն․ և զի ոչ գտանի նմանն նր առ այլս, թե-րևս մերոյն գրիգորի վկայաբանի է երկասիրութիւն գե-ղեցիկ և վայելուչ կարգաբանութե․ զորոյ և մեք զհետս կալաք՝ հայելով և 'ի բնագիրն Նիւսացւոյն, և 'ի թարգ-մանեալ օրինակն՝ որ կայ 'ի Ճառընտ․ Գ ։

Ժամ է միայն յառաջ բերել 'ի հաստատութե գրելոցս զ Նիւսացւոյն՝ և զպանծալի բանս սրբոյն Բարսղի․ որ 'ի գիրս յաղագս հոգւոյն սրբոյ, գլ․ ԻԹ․ այսպէս խօսի․ * Մեր
„ Դիցուք զԳրիգորիոս մեծն, և զնր զձայնս․ ո՞չ առա-
„ քելն ը առաքեալս և ը մարգարէս․ զայր՝ որ նովին
„ հոգւով նց շրջեցաւ, և ը սրբոց շաւիղս յամ վարս
„ իւր ընթացաւ․ և զաւետարանական քաղաքավարու-
„ թե զպուշութիւն յամ կեանս իւր ուղղեաց ։ Ես զայս
„ ասեմ՝ իսկ․ անիրաւեմք արդեօք առ Ճշմարտութիւն,
„ եթէ ոչ ը ընտանեացելոցն ը այ զհոգւոյն զայն համա-
„ թուեսցուք որ՝ օրինակ իմն լապտեր մեծ պայծառա-
„ ցի ,յեկեղեցի այ արտափայլեաց․ որ և աջակից ու-
„ նէր 'ի հոգւոյն սրբոյ գործակցութէ ը դէմ դիւաց զօ-
„ րութի ։ Այնչափ էառ զբանիւն շնորհ 'ի հնազանդութի
„ հաւատոյ 'ի հեթանոսս, մինչև եօթնևտասն միայն
„ քրիստոնեայս առընկալեալ, զբոլոր ժողովուրդն՝ որ
„ քաղաքացի և որ գեղջուկ՝ 'ի Ձեռն գիտութե էած առ
„ այ ։ Սա և զգետոցն հոսանս փոխադրեաց, պատ-
„ ուէր տուեալ նց յանունն 'ի մեծ քի․ և զլիճն ցա-
„ մաքեցոյց՝ որ առիթն էր պատերազմի եղբարց ագա
„ հաց,

,, հաց ։ Իսկ հանդերձելոցն նախաձայնութիւնք այնպիսիք,
,, մինչև ոչինչ յետնեալ գտանիլ յայլոց մարգարէից ։
,, և ամենեւին իսկ յերկար լինել զառնն պատմել զսքան-
,, չելիս, որ առաւելութք որոց 'ի նմա շնորհաց ներ-
,, գործելոց 'ի հոգւոյն՝ ամ զօրութք և նշանօք և ար-
,, ուեստիւք, երկրորդ մովսէս 'ի նոցունց իսկ 'ի թշ-
,, նամեաց ճշմարտութե կարդացեալ լինէր ։ Այսպէս 'ի
,, նմա ամ բան և գործ կատարեալ շնորհօք՝ ոչ զլոյս
,, իմն ճառագայթէր, յիշատակ գերերկնային զօրութե,
,, որ յաներևութից պահէր երթայր նր ։ Սորայս մեծ է
,, տակաւին և այժմ 'ի գաւառականս անդ զարմանք ։
,, և անհնանալի և միշտ բարբառան՝ յիշատակն սորա-
,, ւորեալ յեկեղեցիս, յոչ իմիք ժամանակի թարշամե-
,, լի ։ Եւ արդ ոչ զգործ ինչ, ոչ զբան, ոչ զտիպար ինչ
,, խորհրդական, բայց զոր նչ եթող, յաւելին յեկեղե-
,, ցի ։ որոյ վն իսկ և բազում ինչ՝ յորոց առ նն կատա-
,, րին (արարողութիք), անկատարք երևին վն հնաձևու-
,, թն կարգաւորութեն ։ զի և ոչ իշխէին՝ ոյք զյաջոր-
,, դութի եկեղեցւոյն անտեսէին, յզկնի նր գիւտից
,, ճոխնել 'ի յաւելուած ։ Արդ մի է գրիգորի, և որ
,, այժմ զխմախօսեալ լինի ('ի հերեսիովտաց) օրինակ
,, փառաբանութե, 'ի նր առնչութէ յեկեղեցւոջ պահել ||։
Սոյնպէս պատմեալ յիշատակէ զնա և 'ի թուղթս իւր
ԻԷ, և ՃԴ ։ ուր և 'ի ՃԷ ։ է՛ զի գրիգոր մեծ կոչէ, և է՛
զի՝ սքանչելին գրիգորիոս ։ և 'ի ՃԹ, ստուգապէս մեծ
գրիգոր ։ Եւ հերոնիմոս 'ի յիշելն զնա 'ի կարգի երևե-
լի արանց կմ եկեղեցական մատենագրաց, ասէ ։ * այլ
,, առաւել (հանգիստացեալ են) նշանք նր և սքանչելիք,
,, զոր արար յեպսութե 'ի մեծ փառս յոքունց եկեղե-
,, ցեաց ||։ ուր և 'ի թուղթն Ն ։ կոչէ զնա * այր առա-
,, քելական նշանաց և զօրութեց || ։ սոյնպէս խօսին և
այլք ։

(2) Օրինակ դաւանութեան հաւատոյ միօրինակ գտանի 'ի կարգի պատմութե նիւսացւոյն ։ յն ։ հյ ։ և լտ ։ որպս և առ հռոփինոսի և առ այլ մատենագիրս, որք 'ի մէջ բերեն զայն ։ Թող զզուգնաքեալ տարբերութիս գրչաց կմ օրինակաց թարգմանութեց, զորս առաք 'ի մէջ փա-կագծի ։ մինչ զի թէպէտև ամենք 'ի նորայայնդրից կամե-ցան ժխտել զանեսիլ սմին, բայց զկանոնն ոչ ոք կարաց

ուրանալ. և մեք ոչ յառանձին յայտնութեն յեցեալք՝ պաշ-
տեմք զայն դաւանութիւն անժխտելի, այլ զի ոմ̃ հոգւով
սբ̃ով Ճանաչի գրեալ 'ի մեծէն գրիգորէ՝ նովին հոգւով
ը̃նունելի եղև ամ̃ հարց և ժողովոց կաթողիկէ եկեղեց-
ւոյ: Եւ եթէ որ քաջ միտ դիցէ, տեսանէ 'ի նմին զէնս
զօրաւորս ը̃դդէմ ամ̃ հերետիկոսաց. միանդամայն կշտամբ̃
բէ զայնս՝ որք զեղծանեն հոգւոյ 'ի հօրէ և յորդւոյ, որ
յայտնապէս նշանակի աստանօր, մթագնել կամին:
Զայս ոչ առեմ վս̃ յաւելուածոյս՝ որ չէք 'ի բազում օ-
րինակս, * և յայտնեալ մարդկան ||, զոր յոյնք կամին
ընթեռնուլ * տիլատի դիս անթռօփիս. (յ̃) յայտ է
,, թէ մարդկան ||, զի այդու ոչինչ շահին, այլ վասն ոչ
միա դնելոյ նց̃՝ այլոց կարեւոր բառից. զի հոգին սբ̃
կոչի * պատկեր որդւոյ, կատարելոյ կատարեալ, կմ̃ 'ի
,, կատարելոյ կատարեալ ||. ոմ̃ որդին աւի պատկեր
հօր և կատարեալ 'ի կատարելոյ. զոր (այլովքն հան-
դերձ) անհնար է այլազգ մեկնել, եթէ ոչ բանիւ եղ-
ման կմ̃ անձնառ բղխման: Եւ այն ևս անտարակուսելի,
զի լուսաւորիչն մեր վարժեալ և ձեռնադրեալ 'ի կե-
սարիա՝ ուր առաւել հանդիսացեալ էր այս վկայութի̃
սքանչելագործին, նորին հետևողութ̃ և նովին հոգւով
ասաց՝ ոչ միայն զեակ մեր փառաւորեսցուքն, այլև ըղ-
բազում բանս 'ի յաճախապատում գիրս իւր, որպէս և
զյայտնի դաւանութիւն վս̃ բղխման հոգւոյն սբ̃յ 'ի կար-
գի պատմութե̃ ագաթանգեղոսի:

Իսկ որ ինչ արտաքոյ այսր դաւանութե̃ գրեալ կան 'ի
սքանչելագործէ, կմ̃ յածին յանուն նր̃, եթէ Ճառք և
եթէ վկայութիւնք հաւատոյ, չէ տեղւոյս մի առ մի նշանա-
կել և քննել. զի այդ 'ի բազմաց աշխատասիրեալ է. և
մեք ևս թէպէտև առ ձեռն պատրաստ հաւաքե̃ էաք,
այլ ոչ տեսանեմք այժմ տեղւոյ յանկաւոր. պահեսցի 'ի
պէտս ածաբանութե̃: Յայսմ վայրի կնքեսցուք զբանս
վկայութե̃ գրիգորի ածաբանի, որ զհանդիսացե̃ դա-
ւանութե̃ սքանչելագործին այսպէս նշանակէ 'ի ճառն. լը.
* Ած̃ զհայր, ած̃ զորդին, ած̃ զհոգին սբ̃, երիս ա-
,, ռանձնաւորութիւս, ածութի̃ մի, փառօք և պատուով
,, և էութ̃ և արքայութ̃՝ ոչ բաժանեալ, ոմ̃ ոմն 'ի
,, փոքր մի յառաջ ածաղդեցից իմաստասիրեաց ||: Եւ 'ի
ճառն. է. * Ոչինչ յերրորդութե̃ ծառայ, ոչ արարած,

,, ոչ

,, ոչ 'ի Նեբրքսածական, լոնայ ասել յունմենե յիմաստ-
,, նոց ||:

(3) Նիւսացին յետ պատմելոյ զբժշկուն դիւահար մանկան թ̄ գրելոցն՝ 'ի վ̄ր բերէ թ̄ սովորական օրինակաց 'ի յոյն բնագրի անդ զայս ինչ. * Այլ ē ամե յայնմ-
,, հետէ առ 'ի նմանէ գործեցեալ սքանչելիս անցանել,
,, երկայնապունի արդեօք լինէր շարագրութե և բանի
,, զանցելոյ քան զառաջինկայս պարապումն. այլ զմիոյ
,, կմ զերկուց յասացելոցն զնմանէ և ես յիշատակեալ՝
,, յոյսասնիկ պարագրեցից զբանն ||. և այնպէս անդ̄մ-
ջապէս անցանէ 'ի հետևեալ պատմութիս՝ զորս գրեցաք վ̄ ծաղկելոյ բարեպաշտութե, և յառնելոյ հալածանաց, և որ 'ի կարգին:

Որ ծանէր, զի Ճառընտ. Գ. որ է Թարգմանութիւն բուն բանից Նիւսացւոյն, կմ յանհօդուէ գրչաց՝ կմ 'ի հնութե օրինակաց ունի յայսմ վայրի զմեծ պակասութե երևելի հատուածոց. խոր զի յետ պատմութե ձեռնագրութե Աղեքսանդրոսի՝ Թողեալ զերկուց հրեից անցս, և զբժշկութե դիւահար մանկան՝ հանդերձ պատմութ̄ հալածանաց, անցանէ յայն տեղի՝ յորում բանք լինին վասն մտանելոյ սարկաւագին 'ի բաղանիս. մինչ զի առ կրճատութեն՝ գործք սարկաւագին անկանին 'ի վ̄ր գրեգորի. և յայնմ հետէ չորրուեակին բանքն՝ համաձայն Նիւսացւոյն: Այս չէ ինչ, զի զԹերին լնու մեզ յոյն բնագիրն:

Իսկ 'ի Ճառընտ. Ա. որ ոչ է պարզ Թարգմանութե Ճառի Նիւսացւոյն, այլ ուրոյն վարք՝ հետևողութ̄ նր, ոչ գիտեմ՝ արդեօք 'ի լրադոյն և 'ի հին օրինակէ Նիւսացւոյն առեր, եթէ յոյլ հեղինակաց հաներալ, և կմ թէ ē վարս այլոց ոմանց 'ի սո̄ց չփոխեալ, ունի յայսմ վայրի յաւելուած երևելի. զի զկնի բժշկութե մանկանն դիւահարի (զոր փոքր մի այլազգ պատմէ՝ առ հոմաձայնութե բնագրին,) 'ի վ̄ր բերէ զերկուս այլ աչադին և զմեծապալուր սքանչելիս, անդ՝ ուր Նիւսացին ըստ այժմու օրինակաց՝ կամաւ զանց առներ կամեցաւ ըղբաղմութ̄ այլ ևս սքանչելեաց: Արդ մեզ մնայ առանց երաշխաւոր լինելոյ ստուգութե կմ անստուգութե՝ դնել զբանս Ճ. Ա. աստանօր. զի զկնի պատմութե երկուց հրէիցն՝ և դիւահար մանկան, ունի այսպէս.

* Ըմբռնեալ զնա երբեմն դատաւորացն, և հրամայե-
,, ցին ջեռուցանել բաղանիս սաստիկ ջերմութ. զի զսբն
,, կորուսցեն. և մերկացուցեալ խորհեցան ընկենուլ 'ի
,, ներքս: Եւ կացեալ մերձ առ լոգանալին՝ առնէր զնշան
,, խաչին. և յանծայրին զօրութեն տեսիլ նոր և չքնաղ ե-
,, րեւեալ. քանզի փոխարկեալ գումբէթաձև շինուածն՝
,, առ հիմունս խոնարհէր, ոչ դղրդմամբ, այլ՝ փոխ-
,, մամբ. ընդ որ հիացեալ ամենեքին՝ արձակեցին զսբն 'ի
,, կապանացն:

,, Դարձեալ հանէր դեւ մի յառնէ միոջէ. իսկ նա աղա-
,, ղակեալ ասէր ուժգին. մի՛ հաներ զիս 'ի բնակութէ
,, իմմէ. ապա եթէ ոչ՝ բազում աշխատութ հասուցա-
,, նեմ քեզ. իսկ նր սաստեալ եհան զնա յառնէն: Եւ
,, դեւն երթեալ մտանէր 'ի դուստր Թգրին հռոմոց (թգ
,, հռովմայեցւոց). և աղաղակէր բերանով կնոջն, եթէ
,, ոչ ելանեմ աստի, բայց եթէ եկեալ գրիգորի նէո-
,, կեսարու՝ հանցէ զիս: Իսկ կայսերն լուեալ՝ վաղվա-
,, ղակի առաքէ 'ի խնդիր նմա. և գտեալ լինէր 'ի կե-
,, սարացւոց քաղաքին. և կայսերական հրամանաւ փու-
,, թանակի անցուցանէին ընդ ծով և ընդ ցամաք 'ի հռոմ.
,, որոյ 'ի հասանելն՝ սաստիկ շարժեալ դեւն զդուստր
,, Թգրին՝ զարկուցեալ զգետնի:

,, Իսկ մեծին գրիգորի մտեալ 'ի տուն՝ յորում էր աղ-
,, ջիկն, արարեալ զնշան խաչին՝ սաստէր այսոյն պղծ-
,, ծոյ, և հանէր 'ի կնոջէն. և հրամայէր անդ մնալ առ
,, դրանն: Իսկ կայսերն տեսեալ զմեծ սքանչելիսն՝ պատ-
,, ուէր զայրն մեծապէս. և խորհեցաւ ինչ բազում
,, շնորհել նմա. իսկ նա առեալ և ոչինչ՝ խնդրէր 'ի
,, նմանէ սիւն մի մարմարիոնի լակոնացի, որ էր ըստ-
,, ուար և երկայն յոյժ. իսկ կայսերն զարմացեալ՝ թէ
,, յինչ պէտս խնդրեաց զայն, որ անհնար է հասուցա-
,, նել յծ̃իւր, նր պնդեալ, թէ միայն տուր զխնդրե-
,, լին, և մի՛ ինչ ածեր զմտաւ: 'Ի նմին ժամու հրա-
,, մայեաց այսոյն պղծոյ՝ բառնալ զսիւնն և հասուցա-
,, նել յծ̃ն կապադովկացւոց. և նր առեալ գնաց. և
,, կայ անդ մինչև ցայսօր:

,, Եւ հրաժարեալ 'ի կայսերէն՝ ծովագնաց լինէր. գայ
,, մտանէ 'ի մեծ կղզին սիկիլեայ. և անդ էր լեառն
,, մի բարձր (այն է Էտնա, ռամկօրէն մօնճիպէլլօ,

,, որում

„ որում և մեք ականատես եղաք՝ յամի 1809), որոյ
„ գագաթն բոլբոքի (երբեք երբեք) կայծակամբք հրոյ
„ 'ի տուէ և 'ի գիշերի, և ըստ ժամու ժամու հոսումն
„ հրոյ հոսի 'ի ծայրից լերինն՝ կիզելով զամենեսեան,
„ որոյ և հանդիպէր, առաւել 'ի ձմեռնային ժամանա-
„ կի. մինչ զի անհնար էր մարդոյ անցանել ընդ այն տե-
„ ղին։ Էր մերձ 'ի նմա եկեղեցի մի (Թերևս 'ի քաղա-
„ քի՝ որ այժմ գաւթանիա կոչի 'ի ստորոտս լերինն).
„ յոր մտեալ մեծն 'ի ժամ պատարագին զպաշտօնն կա-
„ տարել, իսկոյն կորեալ լինէր հուրն հանդէպ վկայա-
„ րանին՝ յորում էր սրբն, և ձայն սաստիկ հնչման լսե-
„ լի լինէր։ Իբրև տեսին արք տեղւոյն զհոսումն հրոյն
„ 'ի լեռնէն՝ բողոք բարձեալ (կարդային) առ մեծն գրի-
„ գորիոս, և նա առեալ 'ի սպասու սեղանոյն ընծա-
„ նայր, և հրոյն ընդդէմ ձգէր՝ ասելով. դադարեա՛ և
„ մի՛ անցցես ընդ այդ. և եղև ըստ բանից նորա մինչև ցայ-
„ սօր։ Յետ այսքան սքանչելեացս՝ միոյ կամ երկու ա-
„ մաց (զյն. էգէ, յն և նա. ընթերցեալ էգօն, յն ամաց)
„ եւ վն նր տասցեալ, զոյս ևեթ պատմեցից. չքն տմ
„ ուրեք տարածեալ տծային քարոզութն 'ի քաղաքին ||,
և այլն՝ որ 'ի կարգի՝ յար և նման ընթացից բանից նո-
տացւոյն. մինչև կարծել ընթերցողին, թէ յայժմու օրէ
նոսս նիւսացւոյն պակասին նախագրեալ պատմութիւնք
Ճառընտրին. այլ զատոյգն թողումք գտանել ժամանա-
կին։ Գտանես առ. տոզոմ. է. 27. յիշատակեալ վն սրբյն
եպիփանու հրաշս 'ի վր երկուց մուրողաց, ուր և 'ի
վարս սրբյն յակ. մծբ. վն երկուց հրեից, իմէք իմէք
տարբերութբ յանցից սքանչելագործին. նոյնպէս և
զերթալոյն 'ի հռովմ վն բժշկութե դիմահարի 'ի վարս
սրբյն տրփոնի և այլոց ոմանց. զորս չէ պարտ չթոթել
ընդ միմեանս։



# ԵՐԿՐՈՐԴՈՒՄՆ ՏՕՆԻ

## Սրբոյն Նիկողայոսի Հայրապետի ։

Թէպէտև ո՛չ յամենայն , բայց 'ի յոլովագոյն և 'ի ստորագրեալն օրինակս տօնացուցից և ճաշոցաց՝ երկրորդեալ կայ աստանօր ընդ Գրեգորի սքանչելագործի նախ քան զՍիոն՝ նաև անուն Նիկողայոսի հայրապետի , որոյ առանձին տօն կատարի երկուշաբաթով զկնի . և այսմ կրկնութե ո՛չ այլ պատճառ գտանեմք , բայց զի և Նիկողայոս էր սքանչելագործ՝ որպէս զԳրեգոր և զՍիոն , և կամ զի նոյն կարծեալ են ընդ միասին զՆիկողայոս եպիսկոպոս զՍիոնեայ կմ միւռոյ . այլ յա՛յտ է տեղի Նիկողայոսի սեպհական 'ի կարգի տօնից դեկտեմբերի , վսյ և որոշելի 'ի կարգէ նոյեմբերի՝ որ սեպհականն է Գրեգորի ։ Թո՛ղ զառանցին գրչաց ոմանց ըստ համեմատ փոփոխումն . զի ոմանք ընդ Գրեգորի սքանչելագործի եդեալ են փոխանակ միւռոնայ եպիսկոպոսի զԳրեգոր ակրագանտացի , և այլք ընդ Նիկողայոսի զյիշատակ ամբրոսիոսի եպիսկոպոսին միդուլանեայ ։ Այլ մեզ հայոց պայծառեն կատանակութեան թողուլ կարգաւորել՝ որոց անկ է , և ոչ ունել ըստ կարգի՝ պատմութէ միւռոնայ եպիսկոպոսի , որ թէպէտ և յօգոստոս ամիս ունէր վերածել , բայց վս̅ պահոց և միջոցի ժամանակի՝ այսր է փոխաբերեալ որպէս սքանչելագործ առընթեր սքանչելագործի . զի և երկոքեան ժամանակակիցք գտանին ։

ՎԱՐԴ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Մ՛իւռոնայ սքանչելագործ եպիսկոպոսին կրետացւոց:

Հ. օգոստ. 9, կմ 10: Յ. օգոստ. 8, կմ 9: Լ. օգոստ. 8: Բոլլանդեանն գիրքս. հատ. Է. օգ. էջ. 342 = 346: (1)

ՄԻՐՈՆ ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾ հայրապետն Մ՛իւռոն, որ Թարգմանի մեռոն կոչի իւղ անոյշ, էր ծննդեամբ 'ի կրետէ կղզւոյն՝ 'ի ռաւկիայ քաղաքէ մօտ 'ի կնոսսոն, ծնեալ յառաջ քան զաւուրս դեկոսի կայսեր, և հասեալ մինչև յաւուրս դիոկղետիանոսի, քրիստոնեայ և բարեզգեաց ծնողաց զաւակ, դաստիարակեալ յերկիւղն այ և 'ի վարս առաքինութե. զոր և ըստ ժամանակին հարկեցուցին և մուծին 'ի կարգ դպրի: Այլ էր միւռոն բարեբարոյ և բարեսէր յոյժ, ողորմած և աղքատասէր. և պարկեշտ և ածահաճոյ կարգօք միաբան ընդ ամուսնոյ իւրում դարմանէր զերկիր կալուածոց իւրոց, և բաշխէր առատաձեռն կարօտելոց 'ի պտղոյ անտի: Այլ այնչափ պտղաբեր լինէր նմ երկիրն, մինչև 'ի ցորենոյ, 'ի գինւոյ և 'ի ձի-

Թոյ ուրախ առնել զիմ աղքատս կղզւոյն · քանզի հաւատովք և աննախանձ բաշխէր , և մեր կրկին ևս բազմացուցանէր զարդիւնս նր̃ , և զեղոյր 'ի շտեմարանս նր̃ ։ Նու յաւել ում տալ նմա շնորհս սքանչելեաց · զոր ոչ կարէր ծածկել · մինչ զի և անուն նր̃ կարծի առեալ 'ի սքանչելագործութե̃ անտի · քանզի ասի 'ի յայսմաւուրս յունաց , թէ 'ի հանել նր̃ երբեմն գինի յամանոյ 'ի տալ աղքատաց՝ այնչափ անուշահոտ և անուշահամ բղխեաց , մինչև անուն կոչել մատռուակողին մեռոն կմ̃ միւռոն · ոչ̃ և երբեմն ոսկի ասեն զտաւ յամանի անդ · զոր բաշխեաց եղբարց ։

Մտին երբեմն գողք յագարակ նորա յարտ սխտռան · և մինչդեռ կամէին ժողովել , ցնո-րեցան և անկան 'ի մէջ փշոց · այլք ասեն , կարծեցին ժողովել զսխտեռն , և փուշ հաւա-քեցին · և ոչ գիտացին ելանել 'ի փշոցն՝ մին-չև լուսացաւ · և սր̃ն միւռոն ետ նց̃ սխտեռն , և արձակեաց ։ Դարձեալ եկին երկոտասան գողք 'ի կալ նր̃ · և յորժամ լցին զքուրձս իւրեանց արմտեօք կմ̃ ցորենովք , ոչ կարէին բառնալ , թէպէտև շատ աշխատ եղեն զգի-շերն ողջոյն · իսկ սր̃ն 'ի վր̃ հասեալ իբրև յանծանօթս՝ ինքնին եբարձ և եդ 'ի վր̃ ու-սոյ միոյ միոյ 'ի նոցանէ · և պատուիրեաց մի՛ ումեք ասել , և ոչ 'ի գողութ̃ բերել այլ ան-գամ · այլ որչափ պէտք ինչ իւրաց լինիցին ասէ , եկայք առ իս , և տաց ձեզ · և եղեն յայնմ տարւոջ առաւել ևս արմտիք միւռո-նայ ։ Բժշկեաց Լբանելին միւռոն և զբա-

զում

զում հիւանդս աղօթիւք. զի ձեռն դնելով փարատէր զնմ ցաւս. և ուր և դնէր ձեռն կամ օրհնէր, օրհնութիւն նր լինէր 'ի վերայ նմի :

Եւ եղև 'ի ժամանակս հալածանաց դեկոսի և վաղերիանոսի նահատակիլ բազմաց. որպէս փաւստինոսի կմ փլաւիանոսի հռովմայ հայրապետի, բաբելայ՝ անտիոքայ, և աղեքսանդրու եմի կամ կեսարեայ պաղեստինու եպսի, և այլոց յոլովից 'ի տեղիս տեղիս. որպէս և տասն վկայից 'ի կրետէ. զորս լուեալ և տեսեալ միւռոնի՝ 'ի նախանձ բարի վառեալ լինէր, և ցանկայր և ինքն վկայութբ մեռանիլ. այլ տր կարգեաց զնա յառաջնորդութիւն եկեղեցւոյ : Վ`անզի յաւուրսն յայնոսիկ ձեռնադրեցին զմիւռոն՝ քահանայ, զի խնամ կալցի ժողովրդեանն տյ. և նա լցեալ հոգւով՝ զօրացուցանէր և քաջալերէր զամենեսեան հաստատուն կալ 'ի քն, և յօժարեցուցանէր սիրով մեռանիլ 'ի սէր նորա. որով և բազմաց առիթ եղև վկայական պսակաց :

Իսկ իբրև դադարեցին հալածանք, և ձեռնադրէին եպսունք 'ի տեղի կատարելոցն վկայութբ, միաբան կամօք բազմութեն կրետացւոց ձեռնադրեցաւ երանելին միւռոն յեպիսկոպոսութի, որպէս կարծի՝ իւրում քաղաքի ռաւկիայ. այլ ծնունդ նր եղև 'ի կնոսսոն, որ և կնիսոն : Մ`յնուհետև առաւելեալ միւռոնի սքանչելի շնորհօք և մծային իմաստութբ՝ առաջնորդէր հօտի իւրում յոյժ բարեկարգութիս և 'ի ճանապարհս ածպաշտութէ.

թէ. չինէր և եկեղեցիս և մատուռնս ՚ի վ̄ր սբ̄յն ։

Եւ էր վիշապ մի նշանաւոր ՚ի Կրետէ վնասա֊կար յոյժ բնակչաց կղզւոյն. յորմէ առաւել իբրև յօրինակի՝ աներևոյթ վիշապ օձին սար֊սէին ամենեքեան, և ասէին՝ եթէ դևն ինք֊նին գլխովին բնակեալ է ՚ի նմա ։ Եւ եղև երբեմն անցանել սբ̄յն միւռոնի առ նովաւ. յայնժամ սկսաւ գազանն սաստիւ յերե֊ւաց սբ̄յն, և ցուցանել նշանս ցաւագինս, իբր այն թէ մի կորուսցէ զնա. իսկ երանե֊լին կնքեաց ՚ի վ̄ր նորա զնշան ամենայաղթ խաչին, և ասէ. Ել ՚ի տեղւոջէդ, և երթ ՚ի կորուստ, և մի իշխեսցես այլ երևիլ ումեք, թող թէ վնասել. և նա սողալով՝ եղև յան֊կարծակի աներևոյթ, և որք մերձն կային՝ համարէին տեսանել իբրև ծուխ ինչ դիւա֊կան ցնդեալ յօդս ։

Յաւուր միում կիւրակէի երթայր նա հայ֊րապետն միւռոն երիվարաւ՝ այց առնել եղ֊բարց բնակելոց ՚ի կնոսսոն քղ̄քի, զի մի պա֊կասեսցի ՚ի հանդիսական պաշտամանէ ա֊ւուրն. այլ իբրև եհաս ՚ի գետն՝ որ կոչէր տրիտոն, տեսեալ զյորդուն ջուրցն՝ զի եր֊թայր որոտմամբ և դարիւ դարիւ, զտեղի էառ և եկաց յաղօթս, և արար ՚ի վ̄ր գետոյն զնշան ս̄ք խաչին, և մտրակեաց զերիվարն. և ահա ը̄ մխիլ իւրում ՚ի գետ անդր՝ կապե֊ցաւ ջուրն. և եկաց սքանչելապէս ՚ի սովո֊րական ընթացից իւրոց, տուեալ անցս սբ̄յն և ուղեկցաց նորա. և ոչ ոք ՚ի նոցանէ դի֊տեաց,

տեաց , եթէ զի՞նչ եղեւ գետն յետ անցից նոցա . այլ գնացին զճանապարհ իւրեանց ։ Յայնմ գիշերի տեսանէր սքանչելին միւռոն յերազի , ոչ թէ ոմն կապեալ ձեռս յետս՝ աղաչէր զնա արձակել զինքն . եւ իբրեւ զարթեաւ սրբն , յիշեաց զարգելումն գետոյն յընթացից . յայնժամ առաքեաց երկուս 'ի սարկաւագաց իւրոց հանդերձ գաւազանաւ իւրով՝ քակել զգետն , եւ ասել . արձակեա՛լ ես ի՛վ գետ , երթ գնա՛ խաղաղ յընթացս քո առանց փնասելոյ ումեք . եւ եղեւ՝ ոչ եւ հրամայեաց այրն այ .

Արդ եկաց սրբն միւռոն մինչեւ ցխորին ծերութիւն իւր հարիւրեմեան՝ սքանչելի վարուք եւ գործովք . եւ անխափան կատարէր ջերմ պաշտամամբ եւ պայծառ տօնախմբութբ զյիշատակ սրբց մարտիրոսաց եղելոց յաւուրս իւր եւ յաւուրսն առաջինս . եւ զպատմութի նահատակութե նց քարոզէր ամենեցուն , եւ տայր ընթեռնուլ 'ի լսելիս ժողովրդեան . եւ 'ի նոյն նախանձ վկայութե յորդորէր զամենեսին , եւ աղօթս առնէր վն ամենեցուն՝ ունել մասն եւ բաժին ը սրբցն նմ ։

Եւ իբրեւ անկաւ 'ի մահիճս , կարգեաց կտակաւ՝ քակել զոմն կահս տան իւրոյ աղքատաց . եւ տուեալ ողջոյն խաղաղութե՝ որոց մերձն կային , ասէ . Աւասիկ եւ ես ձեպիմ սիրով զկնի նց մարտիրոսաց , եւ առաւելապէս հասանել զհետ կատարելոցն հրով՝ նոյն լաւրենտիոսի եւ անտոնինոսի . եւ պատուէր տամ ձեզ զյիշատակ սրբցն անխափան

կա-

կատարել, և զպատմութիւն մարտիրոսութեցն ընթեռնուլ յիւրաքանչիւր աւուր կատարմանն. զի ամ սբք յաւուր տօնի իւրեանց առաւել համարձակութիւն ունին բարեխօսել առ ած վն տօնողաց իւրեանց։

Նա զայս ասացեալ՝ ամբարձ զաչս և զձեռս իւր ուրախութեամբ, և աւանդեաց զհոգին իւր ՚ի ձեռս այ յամսեանն օգոստոսի՝ ՚ի վախճան երրորդ դարու. և թաղեցաւ պատուով յիւրում տապանին ՚ի կրետէ. ուր լինէին նշանք մեծամեծք զօրութեամբ սքանչելարար այն բոլորեցունց, որում փառք յաւիտեանս. ամէն։

Սամանէ նահատակեն յոյնք ՚ի ժամանագիրս իւրեանց՝ յօգոստ. Ը. * Ծայինդ Միւռոն (կամ միռոն) զառաքինութեան մեռոն բղխել՝ հոտ անուշութեան բուրեցեր այն ∥։ Յիշատակի առնեն և այլ ոմն միւռոն ՚ի սեպտ. ԺԷ, կամ ԺԷ, եպս տամասայ քաղաքի ՚ի կիպրոս կղզւոջ, յառաջին կս յերկրորդ դարու. և զնմանէ զոյգ Ը նախորդին նր նոյն հերակղէդեսի եպսի եղանակեն այսպէս. * Ի խարոյկ արկեալ հերակղիդէս և միւռոն՝ այ պատարագեցան ՚ի հոտ մեռոնի (կամ իւղոց անուշից) ∥։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Պէտք էին և սրբոյն միւռոնի ունել զայլ ինչ նիւթացի՝ առ ՚ի գեղեցիկ կարգաւ և ներբողենին պանծալի ընծայեցուցանել զվարս և զսքանչելիս նր հանդոյն

սքան-

սքանչելագործին գրիգորի ժամանակակցի նր · այլ ը հակառակն՝ կամ 'ի կարճոյ ևեթ գրեցան վարք միւռոնի տառուգութ , և կմ երկարապատում՝ անհեթեթ ստութ լի : Զերկարն զայն և զանպիտանն՝ լաւ է , զի մեք ոչ ունիմք · զոր յիշատակէ պլինիոս բոլլանդեան իբրև գործ ոմանց անոճ և ոգէտ արանց , և յառաջ բերեալ զմասն ինչ՝ անարժան համարի զամբողջն առաջի դնել · և չեն ինչ զարմանք , զի երևլին ծնունդք սնոտիաբանից կրետացւոց · զորոց յայտնի է վկայուն պօղոսի առ 'ի բերթողէ , եթէ * կրետացիք հանապազաստուտք չարաճճիք || , են : Իսկ զհամառօտն և զստուգագոյն աւանդութն գտանեմք 'ի Հ · որում յար և նման գտանի այն՝ զոր տպագրէ նա ինքն պլինիոս , առեալ զօրինակն 'ի գրատանէ վեննայու՝ 'ի մատենէ անուն , զոր առաքեալ է կայսրն յանտուերպիա ը խնդրոյ բոլլանդեանց , փոխագրել և անդրէն դարձուցանել զակզբնագիրն · որ առի լինել հին ձեռագիր կոստանդնուպօլսոյ՝ 'ի գրոց ուրումն աւգեր կմ աւկեր կոչեցելոյ անդ : Իսկ թէ զինչ ինչ թեթև տարբերութք կայցեն ը այն օրինակ , կմ ը Յ · և ը Հ , և թէ որպէս ուղղագրէ պլինիոս զսխալանս ինչ այնր օրինակի՝ յորոց առաւել պղատ է մերն , ոչինչ կարևոր տեսաք 'ի նշանակել · զի մի յաւելաբանութիս կրթեսցուք ոմ զայլսն :

Միայն կամեցաք տեսանել անձամբ իրս իրս յանհարազատ օրինակն ը արձակ՝ առ 'ի նշանակ խարդախանաց նր · յորոց մի է և տեսիլ իմն ընծայեալ սոյն միւռոնի , զոր կրճատելով քաղէ պլինիոս ը վեր 'ի վերոյ խմատից · ոմ թէ անդրէաս և յովհաննէս առաքեալք ցուցեալ իցեն նմա զտեսարան վիճակի հանդերձելոց , զգոգն աբրահամու , և զքաղաքս օթևանս 'ի քնէ նշանակեալս 'ի վարձ իւրաքանչիւր ըստ ը գործոց , և զքաղաքն ծյ ամենահրաշ վայելչութ , և զեօթն լինս դժոխոց շինեալս ըստ ազգի ազգի տանջանարանօք ը գործոց իւրաքանչիւր մեղաւորաց · զի յայսպիսիս յորժամ ոք զբուն գրեալն ընթեռնու , դիւրաւ իմանայ կամ զանկեղծութ և կամ զխարդախութն գրչին : Նոյն վկայաբանն վկայէ զանձնէ , թէ զմարմին սրբոյն տեսեալ իցէ անապական 'ի տապանի նր՝ յետ երկերիւր ամաց վախճանի նր · որ ոչ տանի ինչ հակառակութն :

ՎԿԱՅ.



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Յուլիանեայ կուսի, և որոց ը̃ նմա:

Հ. դեկտ. 20: Յ. և ու̃ր էէւ. դեկտ. 21: Լ. փետր. 16: Ճառընտ. Ա. ոճը = ոհէ: Բոլլանդ յուլիան- նէս. 'ի Բ̃ հատ. փետր. էջ. 868 = 886: Մետափր- աստ. առաք:(1)



ԶԱՆԱՊԱԿԱՆ ՀՈԳ-ւոյ և մարմնոյ՝ ծաղկահասակ և ծրագլուխ կոյս վկայուհին քո̃ի յուլիանէ էր յինքնակալու- թե̃ Մաքսիմիանոսի կայսեր 'ի Նիկոմիդիա քա- ղաքէ բիւթանացւոյ, դուստր ափրիկանոսի մեծի իշխանի, որ էր հեթանոս պանծացեալ 'ի կռապաշտութիւն իւր, նաև քրիստոնէից թշնամի. իսկ մայրն կիսաասահման հեղձենաց- ւոց՝ միանգամայն և բարեպաշտուէ. վ̃ոյ և զդուստր իւրեանց խօսեցան Եղևսիոսի ան- սինկղիտիկոսի, որ էր խորհրդակից ինքնա- կալին, և ընդ սիրելի բարեկամն համա- րեալ:

Այլ ամենապարկեշտ աղջիկն յուլիանէ ոչ այնպիսի ինչ խորհրդովք տարուբերէր, այլ աւ բարեպաշտութե̃ս քո̃ադիր հաւատոյն ձկտեցուցանէր զմիտս իւր հանապազորդ՝ ու-

ունելով առաջնորդ և զօրացուցիչ զա̃ծային Հոգւոյն նախախնամութի̃ն ։ և ո̃ բարի բու-սոյ բնութե̃ ՚ի բարիսն խորհրդածէր տեսու-թիս , տեսանելով զերկին և զերկիր , զօդ և զծով , զհուր և զհողմ , զլոյս և զխաւար , զշրջանս երկնային լուսաւորացն , և զփոփո-խումն եղանակացն , և զզօրութիւն զա̃ծ՝ որ կրէն ՚ի նս̃ , և ՚ի խոյզ անկեալ խոհեմական իմաստու̃՝ խնդրէր զգոյացուցիչ նց̃ ։ և ՚ի վր̃ հասանէր ներգործական խորհրդոցն ա̃յ , ըստ գրեցելումն՝ թէ երևելի արարածովքս աներևոյթքն ա̃յ իմացեալ տեսանին ։

Այլ այս բան միշտ և հանապազ լինէր արմա-տացեալ ՚ի միտս մարգարտագունին Յուլիա-նեայ ։ և սէր ա̃ծային զնովաւ շրջապատեալ՝ մի ա̃ծ խոստովանէր , և զնա արարիչ երկնի և երկրի ասէր լինել ։ և նմա միայնոյ երկիր-պագանէր , և ոչ սնոտի կռոց ։ զի զնս̃ ասէր ոչ երբէք առ ա̃ծս կալցի յուլիանէ ։ Այլ ՚ի մօրն թոյլ տալոյ՝ ծածուկ ՚ի հօրէն՝ ընտե-լացեալ առ քրիստոնեայս , հասու լինէր ա̃մ ճշմարտութե̃ ։ վս̃ զի առաւօտ լուսոյ ծագեալ էր նմա ՚ի վերին օգնականութե̃ն , և գրգայր ՚ի վր̃ նր̃ հոգւոյն ճշմարտութե̃ , և զիղձս բաղ-ձանաց վերին երանութե̃ն յոգի նորա տրամա-դրէր ։

Այնուհետև յա̃մ երկրաւոր պատաղմանց ՚ի բաց հրաժարեցուցանէր զանձն երանելի կոյսն՝ հետևեալ լինէր անդադար ՚ի տա-ճարն ա̃յ առ ՚ի յաղօթս յարաժամս , յունկն-դրութի̃ և յընթերցումն ա̃ծային գրոց , և յու-սումն

տուՙն վէպայց՝ որ 'ի ժողովուրդսն քարոզէին . և 'ի տան սքանչելի քաղաքավարուՙթ՝ պահօք հանդերձ անցուցանէր զժամանակն . և այնպէս ՟ամ կրԹանօք բարեպաշտուՙն պարունակեալ պարսպէր զանձն իւր սրբուհի կոյսն . և ամրապատ վահանօք հոգւոյն աղխէր զըզգայարանսն ընդդէմ դիմամարտ չարին , և տենչայր ծարաւի ոգւով 'ի հանձոյս երկնաւոր փեսային գտանիլ ։

Բայց քանզի և Եղևսիոս 'ի հարսանիս փուԹայր , առէպ պատգամաւորս առաքէր վասն բանիցս այսոցիկ . քանզի ինն ամաց էր յուլիանէ՝ յորժամ խօսեցեալ եղև 'ի ծնողացն . և այլ ևս ինն ամ սպասեալ մնայր Եղևսիոս . մինչև եղեն կուսին ամք ութևտասն (2) . և չառնոյր յանձն հոգեհրաշ իսկուհիս այս զառաջարկուԹի խոյհրդոյ երկրաւոր փեսայի . վն զի ջերմեռանդն բաղձանօք ցանկացօղլեալ յ՟ոի՝ պատճառանօք 'ի բաց դարձուցանել հնարաւորէր զառաքեալսն առ նա , ասելով ցԵղևսիոս , մի փուԹար առնել զհարսանիսդ . գիտեա զայս ստուգապէս , եԹէ ոչ է հնար հասանել քեզ ինձ , եԹէ ոչ յառաջագոյն զեպարքոսական իշխանուՙին առցես 'ի Թագաւորէն ։

Զայս ասէր , զի Թերևս ոչ կարասցէ նա ձեռն արկանել յիրն յայն , և ինքն պատճառ ունիցի առ 'ի մերժել զամուսնուՙին Եղևսիոսի . ապա եԹէ առցէ և զայն իշխանուԹի , զայլ պատճառ պատրաստեալ էր 'ի վ՟ր բերել , մինչև զմտածմունս նորա՝ որ յաղագս

 ամուս֊

ամուսնութենէ, կորուսցէ անյիշելի, և մի՛ կո-
րուսցէ զհոգի իւր · և զայս խորհուրդս ծած-
կեալ ունէր 'ի սիրտ իւր մեծահռչակ աղ-
ջիկն ։

Այլ զի ելևսիոս սաստիկ սիրով հարեալ էր յաղջիկն, զի յոյժ պարկեշտ և անհամեմատ գեղեցկութե՟ էր զարդարեալ, որ քան զօր մաշեալ առն ցանկութե՟ օրիորդին՝ շարժէ զքաղաքն և զմեծամեծս թագաւորական պաղատանն · մինչև բաղում ոսկւով և արծաթով գնել զեպարքոսութի՟ն · և վաղվաղակի արձակեալ աւետաւորս առ աղջիկն՝ ազդ առնէր նմա զգերապայծառ ձոխումն փեսայացելոյն իւրոյ · այլև պահանջէր 'ի նմանէ զհարսանիսն իսկ և իսկ կատարել ։

Յայնժամ երանելի կոյսն հարկաւորապէս յայտնէ զխորհուրդն նմա, այնուի առնելով եկելոցն առ նա այսպէս · երթա՛յք ասացէ՛ք ելևսիոսի եպարքոսի այսպէս, թէ այդ փառք և մեծութի՟ք բաւական են՝ պատճառք բարւոյ մեզ լինել ը՟ այսմ կենացս · այլ թէ դու իմոյն ոչ երկիր պագանիցես ա՟յն, և խոստովան լինիցիս այժմ՝ զոր ես պաշտեմ, խնդրեմ դու քեզ զայլ ոք ամուսին · քանզի յուլիանուհի ոչ հաւանի բնակակից լինել այնմիկ, որ ոչ իցէ գտեալ 'ի քրիստոնէական հաւատս · և եթէ զայս ասէ ոչ արասցէ, գնասցէ՛ ը՟ այլ ումեք զուգեսցի ։

Իսկ առաքեալքն գնացին պատմեցին մի ը՟ միոջէ զբանս զայս ելևսիոսի · և նա 'ի տագնապի եղեալ տրտմութե՟՝ կոչէր զհայր նո՟, և

պատմէր զնմ. և ը բանսն խառնէր սպառնալիս մեծամեծս ։ Իսկ նր լուեալ և 'ի դողումն հարեալ՝ անգիտանալ զինքն այնր իրի խոստովանէր . և դառնայր 'ի տուն իւր սրտաբեկեալ և թախծեալ անձամբ . և վաղվաղակի ոչ դառնութ և ոչ բարկութ կամէր ը կոյսն , կասկածելով զի մի յանկարծակի գրգռեալ և ներկեալ այսպիսի բանիւք՝ գտանիցի անզեղջ ։

Ապա յաւէտ իմն հեշտաբար և հայրական խնամածութեամբ մերձ կոչեալ առ ինքն զյուլիանէ , գիրկս արկեալ զպարանոցաւն համբուրէր , և ասէր . աստ ինձ դուստր իմ սիրելի , և լոյս խնդալի աչաց իմոց , սակս որոյ իրի 'ի հարսանիս ոչ յօժարանաս , և զեպարքոսն մերժես ։ Այլ բանքն այն իբրև զթոյն օձի համարեցան 'ի լսելիս կուսին . ետ պխնի և ասէ . դադարեա հայր իմ յայդմ բանէ . քանզի երդնում 'ի յոյսն իմ 'ի տր յս քս , եթէ ոչ նախ պաշտաման իմոյ հաւատացէ , և ոչ ամուսնութե իմոյ լինիցի հաղորդ . քանզի զիարդ լինիցի այդ , զի մարմնով մի իցեմք , և հոգւով թշնամիք ։

Յայնժամ ցասումն մեծ և սաստիկ ըմբռնէր զհայրն . և անտանելի վշտով լցեալ՝ ասէ ցդուստրն . ով դու յիմարեալդ. և 'ի ներքոյ անկեալդ դիւական պատրանաց , ցանկացօղ ուրեմն ես տանջանաց և ամ սաստից մահու . երդուեալ իմ յանմահ և 'ի մեծագոյն տծան յապողոն և յարտեմիս , զի գազանաց և շանց զմարմինդ քո տաց 'ի կերակուր ։ Իսկ երա-
նէ

նելի վկայուհին ասէ ․ և զի՞ յապաղես ․ եկեսցեն շունք , բեկցին գազանք , և ամ͞ տեսիլք տանջանաց մահու ․ փոխանակ միոյ՝ բազումք ․ զի եւ ուրախ եմ բազում անգամ մեռանել վ͞ս տ͞յն իմոյ , և բազում փոխարինաց ակնունել ՚ի նմանէ ։

Դարձեալ ահագինն այն և գազանացեալն հայր կուսին՝ անպարտելի գտեալ զնահատակն , ՚ի բաց թողոյր վաղվաղակի զանհեզութ͞ի և զխոշորութ͞ի սրտին , և յառաջին հնարս գայր ողոքանաց՝ նենգաբարոյն ․ քանզի հայրենի գութն և կրօնիցն ցասումն յերկուս բաժանեին զնա , և զանազան առնէին զբնութ͞ին ․ մ͞ոյ հաւանական սուտակապատութ͞բ զրոյց իմն առնէր զիրացն , և գրգանօք աղետական սիրոյ փութայր ածել զնա ՚ի կամս իւր ։

Իսկ բարունակն տ͞ծային և մեծ մարտիրոսուհին՝ բարբառ իմն այսպիսի լի համարձակութ͞բ արձակէր ասելով ․ միթէ և դու քոյո͞ց նմանես աստուածոցն , զի ականջս ունելով՝ ոչ լսես , և աչս ունելով՝ և ոչ տեսանես ․ ո՞չ ապաքէն երդմամբ զբանն հաստատեցի , եթէ ոչինչ է իմ ելևսիոս , եթէ ոչ հաւանել երկիրպագանէ ք͞ին իմոյ ։ Օ այս իբրև ասաց նահատակուհին , բարկացաւ հայրն , և մատնեաց զնա ՚ի բանտ մինչև ցերեկոյ ․ և ՚ի գիշերի դարձեալ եբեր զնա առ ինքն , զի փորձեսցէ՝ եթէ թուլացա͞ւ ՚ի մտաց անտի իւրոց , եթէ ոչ ։ Իսկ երանելի նահատակն աղաղակէր առ նա՝ ասելով ․ ո՞չ զոհեցից

կռոց, և ոչ երկիր պագից դրօշելոց. ոչ եղէց սպասաւոր և պաշտօնատար դիւաց. զՔս միայն պաշտեմ, և նմա միայն երկիրպագանեմ. որ արարիչ է երևելեաց և աներևութից, և տուիչ հոգւոց ամ մնեղեաց:

Որդ իբրև գիտաց հայրն, եթէ հաստաւ խափանեցաւ առ նմա սուտակապաշտութիւն և սպառնալիքն, մրրկեալ խորհրդով չարի, և ծարաւեալ արեանն նր իբրև զգազան չար՝ 'ի բաց մերկացաւ զհայրենի ողորմութեան գութն: և այնչափ անհնարին գանս էարկ զմարմնով կուսին, մինչև զարմանալ ամենեցուն ընդ տևել ոգւոյ նր 'ի նմա: Այլ սպամանէր զնա 'ի ձեռս եպարքոսին ելևսիոսի, որում և խօսեալն էր իսկ. զի որպէս և կամեսցի՝ արասցէ ըն նմա:

Այլ արդ քանզի արհամարհեալ փեսայն զարհամարհօղ իւր հարսն դատել հանդերձեալ էր, և այն զի զիշխանութիւն թագաւորական հրամանաց ունէր, բորբոքէր սաստմամբ սպառնալեաց, և կրճտէր զատամունս, ոչ վն նորօրէն հաւատոցն միայն, այլև վն անարգանացն՝ որ 'ի նմանէ: Այլ եղև իբրև ածին մուծին զնա յատեան դատաստանին, և կացուցին առաջի նր, յայլ ըն այլոյ միտս զառածանէր եպարքոսն. զի գեղեցկուհի կերպարանաց չքնաղ կուսին զաչս ամենեցուն շլացուցանէր. և ս առաւել թեկանէր զսիրտ իշխանին. գթայր և նր բարքն 'ի կերպարանէն, շիջանէր ցասումն, և խորհէր ընտանեցուցանել զթշնամանօղն իւրոյ մեծութեն. և

քաղց-

քաղցրագոյն և կակղագոյն խոնարհութբ̃ պագշոտութե̃ ասէր ցնա . հաւանեա՛ց ինձ ով դեղեցկագոյնդ և հանճարեղդ 'ի կանայս , և մի՛ զայդպիսի հրաշատեսիլ տիպ պատկերի տար յապականութիւն մահու . և եթէ ըղձոցն ոչ կամիցիս զոհել , և ոչ մեք 'ի վր̃ քո հաստուցանեմք բռնութե̃ . լուր միայն ինձ , և զամուսնութե̃ ինձ խոստացիր . և ոչինչ նուաղ արարից զքեզ 'ի դշխոյական փառացն այնոցիկ , որ կայսերական թագիւ զուգաւորեալ են ը̃ ինքնակալ թագաւորին :

Առ այսոսիկ ետ պ̃նի վկայուհին , և ասէ . ոչ փառք և ոչ մեծութի̃ բոլոր աշխ̃ի հրապուրէ զիս ը̃ առն կռապաշտի լինել . ոչ բանտ և ոչ տանջանք և ոչ նոյն իսկ մահ հաւանեցուցանէ զիս ամուսնանալ ը̃ քեզ , եթէ ոչ 'ի միասին ը̃ քս̃ին իմ եղիցիս , և ա̃ծային մկրտութե̃ն կատարեալ գտցիս : Իսկ եպարքոսն Ելևսիոս . և զայդ ես արդեօք կատարէի ով սիրեցեալդ 'ի կանայս , եթէ ոչ անհնարին վիշտք և սպառնալիք կային 'ի վր̃ . զի եթէ այդպիսի բան հասանէ յունկն թգ̃րին , ոչ միայն 'ի պատուո՛յ զրկիցիմ , այլ և դառն պատուհասիւ̃ և անողորմ մահուամբ ելանիցեմ 'ի կենցաղոյս :

Ետ պ̃նի կոյսն ազնուական և իմաստուն , և ասէ . եթէ դու յառժամանակեայ և 'ի մահկանացու թգ̃ւորացս՝ որ մարմնոյ միայն ունին իշխանութի̃ և ոչ հոգւոյ , այդպէս սոսկաս և զարհուրիս երկիւղիւ̃ , ես զանմահ և զբոլորից թագաւորն և զտ̃րն ա̃մ̃ ընչից և

հոգւոյ 'ի բաց գնիցեմ, և անարգողացն զնա և ուրացողացն յաւիտենութեան՝ ածեալ լինիցիմ. ո՛չ Թուեսցի քեզ մեծ Թշնամանք, եԹէ ոք անցեալ 'ի ծառայից քոց կամ յաղախնայց առ Թշնամիսն քո՝ սիրելուն ստասցի ընդ նմա, և 'ի զուգաքնակութեան և յաւիտենութեան մերժեսցի: Ո՛րդ այսուհետև մի՛ խաբիր, և մի՛ կարծեսցես զիս բանիւք հաւանեցուցանել. որում անհնար է լինել. այլ Թէ ախորժես զիս քեզ կենակից լինել, մատի՛ր առ ած իմ, և հաղո՛րդ լեր հաւատոյս իմոյ. ապա եԹէ ո՛չ՝ աւասիկ եմ պատրաստ 'ի հուր, 'ի սուր, 'ի քերանս, 'ի յօշումն անդամոց. և զոր այլ ինչ ածես 'ի վր իմ, զայն ոչ գիտեմ, և ո՛չ վհատիմ. սպա՛ն որպէս և կամիս. 'ի կի՛ր արկ յիս զամ մեքենայս տանջանաց՝ որ ընդ միտս քո անցանիցէ. զի դու ինձ պարծելի ես, և ամուսնութիւն քո իբրև զգժոխս համարեալ:

Զայսոսիկ իբրև լուաւ եպարքոսն, հուր առ հուր յաւելեալ՝ զեռոց ցանկութեն փոխէր 'ի բորբոքումն բարկութե. և բոլորովին արտաքոյ բնութեն լեալ՝ զվայրենական գազանացն բերէր զնմանութի, և հնարէր դժուարին և անհանդուրժելի հասուցանել տանջանս նահատակուհւոյն: Նախ և առաջին հրամայէր չար դահճացն լարիւք իմն քառակոյս տարածանել զնա 'ի վերայ երկրի, և կարծրագոյն արջառաջլօք և վարոցիւք դալարօք յերկար հարկանել. մինչև լքան վատակեցան դահիճքն. այլ նա 'ի հաստատուն

միտս

միտս կայր կազմ . և զոր ինչ հարցանէին՝ վաղվաղակի տայր պնի ։ Եւ այնպէս յերկարէին տանջանքն , մինչև մատաղ մարմին նր արեամբ ռոգանէր զվայրսն ամ . և երանելին յուլիանէ մոռացեալ զիգականն տկարութի և զամօթ՝ առնաբար քաջութբ բարբառ արձակէր , վառեալ սիրովն երկնային ,

և ասէր .

Ո՛ որ բնակեալդ ես 'ի բարձունս՝ բոլորից արարիչ , և անքուն ակն քո հայի յամ ճանապարհս որդւոց մարդկան . որ քննես զսիրտս և զերիկամունս , տեսանես զյայտնիս և զգաղտնիս ամենեցուն . աղաչեմ և խնդրեմ 'ի քէն անքննին և ամենազօր յամի , հայեա՛ց 'ի նուաստութի մարմնոյս իմոյ , և առաքեա՛ զաներևոյթ զօրութի հոգւոյդ սբյ 'ի յօգնութի պատրաստեալ անձին իմոյ . զի որովհետև արժանի արարեր զանարժանութիս իմ հասանել սնոտահման մեծութես այսմիկ , և գրել 'ի գիր վկայիցն՝ որք հրաւիրեալք են յընթրիս անմահ փեսայիդ , շնորհեա՛ զարիւն իմ լինել աւազան մկրտութե . և զամ հնար մեքենայից բանսարկուին հերքեա՛ 'ի մտաց իմոց , և արժանի՛ արա անարատ սըրբութբ յանդիման լինել երեսացդ այ ։ Որովհետև կալար զձեռանէ իմմէ , և զերծուցեր 'ի ցանկութէ խաւարասէր դիս , այժմ անմոլար պահեա՛ 'ի ճշմարտութե ճանապարհի քում , և աներկիւղ 'ի լեռնացեալ բարձրացեալ կոհակաց ծածուկ ծովուս փորձութե , յորում տարաբերեալ ծփիմ . ակնարկեա՛

յիս նուաստիս՝ բարի յանբաւ գերակայութեամբ քումով, և տուր ինձ անվրդով անցանել յանքոյթ նաւահանգիստ. մի՞ զի քեզ ամենայն ինչ կարելի է, անմահ և անմահից թագաւոր. և քեզ փառք յաւիտեանս, ամէն։ Որդ մինչդեռ նա զայս աղօթս մատուցանէր, և ձեռք դահճացն վերացեալ՝ ոչ դադարէին դեռևս 'ի հարկանելոյ զամենամաքուր մարմինն արեամբ շաղախեալ, հրամայեաց եպարքոսն դադարեցուցանել զտանջանսն, և ասէ ցվկայուհին. Լուր յինէն ով յուլիանէ, և իմացիր ճշմարտութիւն. զի այդ սկսմունք են և նախերգանք առ զանազանութիւն պատուհասիցն՝ որ կան առաջի քո. արդ մատիր առ մեծն արտեմիս, և զոհելով կարդա առ ապողոն, զի թողցէ զյանցանս քո. խոնարհեա առ աթենաս, զի հաշտեսցի ընդ քեզ. երկիրպագ արամազդայ, զի առցէ զքեզ 'ի սպաս պաշտաման իւրոյ. և լիցիս քահանայուհի անմահիցն և մեծամեծացն, որովք կեան և կրեն ամենայն արարածք զկենդանութիւն։ Իսկ եթէ տակաւին յամառեսցիս կալ 'ի քո անբարեսէր միտսդ, հասանեն քեզ այլ ևս անհնարին վիշտք, որոց ոչ կարես համբերել. և ծաղր լինիս բազմամբոխ ատենիս, և արհամարհեալ յամենայն նահանգէս. և կամ ոչ ևս լինի քեզ հնար կեալ և զարև տեսանել։

Պատասխանի ետ ամենազօր վկայուհին և ասէ. արա՛ զոր ինչ կամիս՝ ա՛յ յիմար սուտ գապէս և անխմաստ, որչափ հայրն քո սատանայ հնարա-

բռնաւորէ 'ի սիրտ քո ․ Նոյնպէս և Հայրն իմ երկնաւոր՝ կարծր և ադամանդեայ զՀաւատս իմ Հաստատեաց , և Հաստատէ և ևս ․ քանզի ի բուն երազք զարթուցելոց Համարեալ են ինձ ցաւքն , զորս կրեմ վ̃ն անուան իւրոյ մեծի ․ և ա̃մ եկեալքն 'ի վ̃ր իմ 'ի քումմէ բռնաւորուե̃դ առիթ ինձ լինին մեծ ես փառաց 'ի Հանդերձելումն ․ և Հնարաւոր մեքենայքս գառն պատուՀասիցդ՝ որովք բզմարմինս իմ կամիս ըմբռնել , բանան ինձ զդրանս երկնայինս , և զաւանդս աներևոյթս յայտնեն , որում ծարաւի եմ յոյժ ․ զորոյ զտեսութի̃ն ոչ արժէ ա̃մ տեսութի̃ն բոլոր արարածոցս ․ արդ ես այնմ մեծութե̃ եմ ցանկացեալ ․ և յոյժ ուրախ եմ , եթէ Հասուցանիցես զիս այնմ պարգևի ։

Յայնժամ 'ի ցասումն մեծ դրդեալ եպարքոսն Եղևսիոս՝ Հրամայեաց կախել զնա զՀերաց գլխոյ նր̃ , և կեալ այնպէս՝ մինչև առցէ զչափ զօրութե̃ իւրոյ ։ Արդ քանզի այնպէս կախեալ կայր յառաւօտէ մինչև յերեկոյն , մազ գլխոյն Հանդերձ մորթովն 'ի բաց լինէր , և աչացն շփոթումն 'ի վ̃ր Հասանէր , այնչափ ձկտեալ յօնիցն՝ մինչև վերադոյն քան զՃակատն լինել ․ ապա Հրամանն տայր բռնաւորն իջուցանել զնա , և տանել կապանօք 'ի բանտ և զգուշագոյն պաՀել ․ քանզի յետ այսր ա̃մի դեռևս ակնունէր Հաւանեցուցանել զնա 'ի կամս ցանկութե̃ իւրոյ ։

Ամին իրքն յետ աւուրց ինչ անցանելոյ Հրամանն ետ ածել զկոյսն առաջի իւր , և առէ

ցնա

ցնա պագշուտեալն ․ հաւանեալ ինձ ով յու-
լիանէ , և լէր երանելի է՟ զա՟մ կանայս յու-
նաց Յի՟ս ․ և մի՛ լինիր ինձ մեղադիր յաղագս
անաչառ պատուհասիցն՝ զոր ածի 'ի վ՟ր քո ․
զի օրէնք թ՟գ՟րացն և իրաւունք ա՟ծոցն պա-
հանջէին զայն ․ բայց դու մեծ և աղէտ ան-
ձին իմում հասանէին սրտցաւութե՟ ։ Մ՟րդ
փոխանակ այնորիկ բիւր բարիս առաւելա-
պէս յինէն տեսանել ունիցիս ․ և այնպէս
ա՟մ մեծութե՟ և բարեվայելչութե՟ Յի՟ս պայ-
ծառացուցից զքեզ , ո՟պ զի ոչ ումեք եղեալ
իցէ 'ի վ՟ր երկրի՝ առն կնոջ իւրում այնպի-
սի հպատակութի՟ սիրոյ ցուցանել ․ վ՟ն զի ա՟ր
իսկ և անձին իմոյ արարից զքեզ , և հրամա-
նատար ա՟մ կայսերական պաղատանն ։ Մ՟րդ
մի՛ դարձեալ թշուառացուցաներ զանձն իմ,
և մի՛ զայդպիսի գեղեցկութի՟ կորուսաներ ․
թող զի և զալլիս հօր և մօր քո կենդանւոյն
իջուցանես 'ի դժոխս ․ այլ ո՟պ ասացի յառա-
ջագոյն , զուգաւորեալ ընդ իս օրինաւոր ա-
մուսնութե՟ , ո՟պ և խոստեալ իսկ ես 'ի ման-
կութե՟ քումմէ ․ և զայլ ա՟մ պաշտամունս քո
թողացուցից 'ի կամս քո ։

Մ՟րդ յորժամ զայս ա՟մ և առաւել քան ըզ-
սոյն խոստացաւ Եպարքոսն ը՟ կուսին մեկուսի
'ի բազմաց , ետ պնդնի ո՟ք վկայուհին , և ա-
սէ ․ մի՛ ակն ունիր ամենևին՝ թէ մեքենայա-
կան բանիւքդ քո կարասցես պատրել զմիտս
իմ, կա՟մ իջուցանել յերկրաքարշ խորհուրդս
յանբաւ բարձրութե՟ գերակայիցն՝ զորմէ
դիրկս արկեր եմ ․ քանզի ստացայ ինձ զայն

մե-

մեծուք, որ թէ բոլոր տեսանէք արարածոց շրջին 'ի բնութե ոսկւոյ և արծաթոյ, առ այնու իբրև մէտ մի փոշւոյ համարեալ են. Հրաւիրեցայ յայն փառսն, որ բնաւին լոյս եղականաց իբրև զխաւար է առաջի նորա. խառնեցայ 'ի դասն յայն, յորմէ զմիոյ և եթ զգեղեցկութի ոչ կարեն կրել մարդ արարածք. գտի և զայն փեսայ՝ զորոյ և զանունն ոչ բաւեն տանել երկինք և երկիր ։ Ո՞չ ասեմ քեզ համառօտաբար. դիւրին է ապառաժ վիմաց խօսել, կամ գնալ 'ի վր ծովու, կամ թռչիլ ձկանց ընդ ամպս երկնից, քան բանից քոց հպիլ 'ի լսելիս իմ. Քեզի պիղծ են յաչս իմ ամ կուռք հեթանոսաց և ամ պաշտօնատարք նոցին. և ծանր է ինձ հայիլ առ նոսա առաւել քան զմերձենալն իժից և քարբից, թող թէ խօսակից և բարեկամ նց լինել ։ Յայնժամ մոլեալ եպարքոսն իբրև զառիւծ՝ հնարաւորէր կենդանւոյն կլանել զդնա. հրամայէր ձոյլս երկաթոյ բերել, և եռացուցանել զնոսա 'ի բովս դարբնաց. և մինչդեռ հրացեալ լինէին շանթքն, ետ առնուլ ունելեօք և դնել յանթս կողից նր ատի և անտի, և զբազուկսն պրկել 'ի վր. և այլ երկաթս հրացեալս վարել ընդ մէջ ծընդացն և պնդել ուժգնակի. և թողուլ այնպէս 'ի բանտին նովին կապանօք, մինչև արձակեսցէ զոգին. և զդուրսն ասէ կնքեցէք,

զի լիցի բանտն գերեզման նր ։ (3)

Իսկ մեծ վկայուհին այն և այսմ անտանելի տանջանացս համբերեալ զօրութբ այ՝ մնայր

կեն-

կենդանի ․ քանզի չէր հնար ումեք ՚ի հոգե-
զինացս կրել զայն և ապրել , եթէ ոչ նա-
խախնամութին Այ պահէր զնա ։ Արդ մինչ-
դեռ նա անկեալ կայր ՚ի վր երեսաց իւրոց
՚ի տան բանտին , այսպէս աղօթէր լռելի
ձայնիւ , և ասէր ․ Տր ած ամենակալ՝ հզօր
և փառաւորեալ , քոյով հրամանաւդ կառա-
վարին երկինք և երկիր , և ամ որ ՚ի նս ա-
րարածք իցեն՝ քոյով ակնարկութբդ խնա-
մարկին և կան ՚ի կայանի իւրեանց ․ և նա-
խախնամողական ողորմուի քո հասանէ յար-
ժանաւորս և յանարժանս ։ Սյ և ես անար-
ժանս ոչ եմ անյոյս եղէ ՚ի յիմմէ փրկուէ ,
և ոչ վհատի սիրտ իմ յամենագութ ողորմու-
թէդ ․ զի փխկ ամ կենցաղական մեծութեա
զրգանաց և փափկութեց՝ զքեզ սիրեցի , ըզ-
քեզ ընտրեցի ․ ՚ի քեզ հաճեցայ , և անձ-
կալի փափաքանօք յօժարեցայ առ քեզ հա-
սանել ․ վս զի դու իսկ եղեր առաջնորդ ճա-
նապարհիս այսորիկ ․ և ծանուցեր զծածկեալ
ածութիդ ստորինջելոցս ՚ի դժոխս ․ զի ՚ի ժա-
նիս չարաթոյն վիշապին կայի ըմբռնեալ կռա-
պաշտութբ ՚ի վիհն յաւիտենական ։

Արդ որովհետև զանկեալս վերածեր ՚ի կեանս
անմահս , և ձգեցեր զիս ՚ի հանդէս մար-
տիրոսական ասպարիսիս , մի ՚ի բացեայ առ-
նիր յինէն , և մի տար ապականիչ գազանին
մուտ յանդգաստանս հոգւոյ իմոյ ․ զրահիւք
հոգւոյն զինեա զտկարութիս իմ , զի նետք
մուխք չարին արգելցին յինէն ․ և իգական
բնութես տուր կարողութի վանել և հար-
կա-

կանել զզօրութիւն սպառազինութեան թշնամւոյն. վասն զի զօրութիւն քո 'ի տկարութեան կատարի։ Թէպէտև չեմ արժանի չարչարակից լինել քեզ անհասանելի զօրութիւն հօր քո, այլ դու անարգամեծար ես և մարդասէր. և այնչափ զօրացեալ եղև սէր քո յարարածս, մինչև զանեզրական և զանմահ աստուածութիւնդ իջուցեր 'ի կերպարանս մահու։ Այլ արդ ընկալ Տէր զկամաւոր պատարագս հոտի քո, և շնորհեա ինձ զիմ անդամս մարմնոյ իմոյ ողջակիզել առաջի քո՝ փոխանակ սիրոյ քո առ մեզ զեղլոյ. զի ձեռքդ այդ՝ որ արար զերկիր և պարզեաց զհաստատութիւն երկնի, ընկալաւ զհարուածս բևեռացն, և խոցումն գեղարդեանն կրեալ եղև 'ի կող կենարարիդ. ապա որչափ ևս առաւել իմոյ մեղսասէր բնութեանս պարտ է հրասուզիլ, և բազկաց և կողից և ամենայն անդամոց գանալի վիրօք լինել. միայն հասո՛ զիս Տէր անարատ արդարութեամբ զկատարումն բարեաց գտանել. և օրհնեալ է և եղիցի անուն քո յաւիտեանս։

Այլ մինչդեռ այս աղօթք 'ի բերան սրբուհւոյն կայր, եկն առ նա հասարակաց թշնամին և փորձիչն սատանայ 'ի կերպարանս հրեշտակի Տեառն. և իբրև զբարեկամ և զսիրելի խրատ տայր նմա՝ ասելով. գիտեա՛ ով յուլիանէ, զի յոյժ չարաչար և անհանդուրժելի կազմեաց քեզ այլևս գործիս տանջանաց եպարքոսն Եղևսիոս. այլ դու լո՛ւր խրատու իմոյ. յորժամ հանեն զքեզ 'ի բանտէդ, ընթացեալ վաղվաղակի անկի՛ր առ ոտս աստուածոցն,

և

և զոհեամ փութացես՝ առժամանակ մի հաճել զեպարքոմն. և զկնի աւուրց ինչ՝ որպէս կամք քո սիրեն, այնպէս կամ զպաշտօնս քո։ Իսկ երանելի կոյսն խոժոռ նայեցեալ ընդ նա՝ ասէ. ո՞վ ես դու։ Պւեն ասէ. հրեշտակ եմ ես՝ ող տեսանես, այն երկնաւորի. զի փոյթ եղև նմա վս քո յոյժ, և արձակեաց զիս ազդել քեզ հաւանել հրամանի իշխանին. զի մի բազում տանջանօքն խոշտաւ ապականեսցի մարմին քո. զի ներբեաց քեզ մարդասէր գոլով՝ վս տկարութե մարմնոյ քո. զի 'ի դրունս մահու հասեալ կաս. և ոչ է քեզ համարեալ 'ի յանցուածս ինչ, այլ յարդարութի. զի հրամանակատար ոչ լինիս։ Յայնմ վայրի խռովութե լի լինէր սրբուհին, և ահ և դողումն ըմբռնէր զմարմին նորա. քանզի երևեալն էր 'ի կերպարանս հրեշտակի ոչ, իսկ խորհուրդք և բանք նորա իբրև զթշնամւոյ արդարութե։ Յայնժամ մեծապէս հեծեծանօք և դառն արտասուօք լցեալ զաչս իւր՝ հայեցաւ յերկինս, և ասէ. Տէր ած արարիչ երևելեաց և աներևութից, զոր ամ զօրութիք երկնից օրհնեն և փառաւորեն և երկրպագանեն. յորմէ և օդային դիւացն սարսեն բազմութիք, և յահէ քումմէ դողան տագնապաւ, հաս յօգնականութի վշտագնեալ անձին իմոյ. և յայտնեսցես, թէ ո՞վ է՝ որ խօսի ընդ իս զայսօսիկ։

Եւ մինչդեռ զայս ասէր երանելի կոյսն, վաղվաղակի լուաւ ձայն 'ի յերկնից՝ որ ասէր. քաջալերեա՛ քաջալերեա՛ Յուլիանէ, զի

ես

ես ը̄ քեզ եմ . և աջ իմ անմեկնելի ունի ըզ-ձեռանէ քումմէ . այլ դու բուռն հար զդմա-նէ՝ որ կայ և խօսիդ ցքեզ . քանզի տուեալ եմ քեզ իշխանութի̄ և զօրութի̄ 'ի վ̄ր դորա . և հարկեցո́ զդա ասել զճշմարիտն , եթէ ո՞ իցէ ։ Այս անդէն զկնի երանաւէտ ձայնիս հրեշտակքն 'ի վ̄ր հասանէին . մինչև անճառա-լուսով լցեալ լինէր բանտն . և վաղվաղակի լուծեալ լինէին շանթք երկաթոյ՝ որ եդե̄լ էին 'ի կողսն , և 'ի ծնգացն 'ի բաց անկա-նէին . և վէրք մարմնոյն ողջանային . և նա յարուցե̄լ 'ի գետնոյն՝ գոհանայր զամենա-պարգև ողորմութե̄ բարձրելոյն ։

Այս առ նմին զօրութի̄ն ա̄ծայի̄ն՝ կարօղն յա̄մի՝ կապեալ զբանսարկու թշնամին՝ կացոյց ա-ռաջի կուսին . զոր և մեծ վկայուհին ըմբռ-նեալ արիապէս իբրև զծառայ չար և ստամ-բակ , ասէ . ո՞ ոք ես դու , և ուստի՞ . և ա-ներևոյթ զօրութի̄ն փութացուցանէր զնա՝ ասել զճշմարիտն . զի թէպէտև է ամենևին ստասէր , սակայն խոշտանգեալ 'ի հրեշտա-կաց՝ ասաց առ սրբուհին . Ես իշխան եմ զօ-րու դիւաց , և սատանայ է անուն իմ . ես եմ՝ որ ապստամբեցայ յարարչէն , և ելի 'ի գերապայծառ բնակութե̄ իմմէ . ես էի՝ որ ե-ղէ բերան օձին , և պատրեցի զևայ , և ետու ադամայ անցանել զպատուիրանաւ բարձրե-լոյն , և 'ի ձեռն իմ անէծք 'ի վ̄ր երկրի պա-տրաստեցան . ես ուսուցի կայենի եղբայրա-սպանութի̄ . և զտեսակս զանազան մեղաց ես սերմանեցի յերկիր . յերևսաց չարեաց ի-

մոց

մոց եկն ջրհեղեղն և եբարձ զամենեսին. ես ետու չինել զաշտարակն, և յորդորեցի զամենեսին 'ի կռապաշտութի̅. ես շարժեցի զինել 'ի վ̅ր ահարոնի, և ձուլեցի 'ի կերպարանս որթու զզարդ կանանց ն̅ց. և ածի 'ի միտս նաբուգոդոնոսորայ կանգնել զպատկեր իւր. ետու և հերովդէի առնել զմանկասպանութիւն. և յուդայի զմատնութի̅, ապա և զխեղդումն. քանզի ընաւ ես գրգռեցի զամբոխն եբրայեցւոց, և հաւանեցուցի զմիտս պիղատոսի խաչել զք̅ս: Հալածանս յարուցի 'ի վ̅ր եկեղեցեաց, և քարկոծել զստեփաննոս ուսուցի. յարուցի 'ի վ̅ր պետրոսի և պօղոսի զքաջ զինուորն իմ զներոն. և զա̅մ արիւն արդար հեղեալ 'ի վ̅ր երկրի՝ ես արարի. ունկեցի հերձուած 'ի մէջ հաւատացելոց. և ոչինչ եղև չար 'ի վ̅ր երկրի առանց իմոյ գիտակցութե̅. վ̅ս զի այն իսկ է կեանք և կերակուր անձին իմոյ. զի սիրեմ զմեղս, և զկորուստ մ̅րդ մեծութի̅ և փառս անձին համարիմ:

Զայսոսիկ լուեալ սր̅բյ կուսին՝ զզուէր և անարգէր յոյժ զչարն. առնէր և այլ ինչ հրաշափառագոյն, զի ը̅ գանիւք իսկ զնա արկանէր. զի որ ը̅ անփախչելի կապանօք էած զնա ա̅ծային զօրութի̅ն, և ը̅ ձեռամբ կուսին սանձահարեաց, ոչինչ է անհաւատալի՝ թէ և առ 'ի սր̅բյն գանից զգայութի̅ լինէր նմա. քանզի կերպարան աներևութին ա̅յ է՝ որ գործէ զա̅մ: Յայնժամ չարաչար տանջեալ դիւին առաջի սր̅բյն՝ աղաչէր լու-

ծանել 'ի կապանացն և ազատել 'ի գանիցն . և յաղթերել կուսին՝ աւաղէր զանձն իւր չարն վ͞ն գալոյ 'ի պատերազմիլ ը͞ նմա , յորմէ ա-
մօթապարտեալ գնաց : (4)

Որդ մինչդեռ նա յայսմ տարակուսի ծփէր կայր , եկին հասին սպասաւորք եպարքոսին 'ի բանտ անդր՝ տեսանել զՅուլիանէ . զի եթէ ողջ գտանիցեն՝ տարցեն զնա անդրէն յատեան հրապարակին : Իսկ իբրև տեսին զնա ողջացեալ 'ի վիրացն , և զդուրս բանտին նովին կնքովն , զարհուրեցան յոյժ . և առեալ տարան զնա , մուծին 'ի տեսարանն և կացուցին առաջի եպարքոսին : Յոր պշուցեալ իշխանն հայէր և հիանայր . զի զառաջին գեղեցկութի͞ն պատկերին յինքն նկարագրեալ ունէր , և տեսանէր զնա այնպէս՝ ոչ թէ ոչինչ 'ի դժուարագունից կրեալ , այլ 'ի բազում փափկութիս գրգեալ : Ապա և 'ի զարմացման եղեալ եպարքոսին՝ ասէ ցնա . ասա ինձ զհաւատոյն ճշմարտութ͞ի յուլիանէ . Երբ և կամ ուստի՞ և կամ յորմէ՞ կարգէ տուեալ եղև քեզ այդպիսի պայծառութի͞ . և որո՞վ արուեստիւ զանըմբերելի տանջանսդ արհամարհեցեր , որ և ոչ ևս հետք վիրաց երևին
'ի քեզ :

Ետ պ͞խնի երանելի կոյսն , և ասէ . այս ոչ է 'ի ձեռն մարդոյ , և ոչ արուեստիւ ինչ յիս տնօրինել եղև , այլ ա͞ծային անճառելի զօրութ͞բ . որ ոչ միայն զքեզ , այլև զհայրն քո սատանայ յամօթ արար . և զիս երկոցունցդ վերագոյն կացոյց . քումդ մոլորութե͞ , և նո

չար արուեստաւորութեան . զի ամենազօրն տկարացոյց զձեզ , և զօրացոյց զտկարութիւն աղախնոյ իւրոյ . և եբաց ինձ զդրունս երկնային առագաստին , և հրաւիրեաց 'ի հարսանիս միածնի որդւոյ իւրոյ . այն՝ որ սիրելեաց անուան իւրոյ և երկրպագուհաց միածնին և փառաւորչաց հոգւոյն զանեղծ և զանթառամն հիւսեաց պսակ , և պատրաստեաց օթևանս անճառս մերձ յանմերձենալի տէրութեան . և քեզ և ամենայն երկրպագուաց դիւաձայլ պատկերաց զսանդարամետականն բանայ վիհ անշէջ գեհենին՝ տանջիլ յաւիտեան ընդ սատանայի . զի յաւիտենական սատակմանն արար զձեզ ժառանգորդ չարութեանն ձեր և անաստուած պաշտամունք :

Զայսոսիկ լուեալ եպարքոսին՝ լի եղև սրտմտութեամբ , և ասէ ցկոյսն . վասն զի դու անշնորհակալուս գտանիս առ պարգևս աստուծոցն , որ դարձեալ ետուն քեզ զկենդանութիւն , և յառաջին գեղն հասուցին զկերպարանս քո , ոչ կամելով այդպիսի անձին արտաքոյ լինել պաշտաման նոցա . և դու փոխանակ զոհելոյ և կնդրուկ մատուցանելոյ թշնամանս դնես անմահիցն , և զհրաշս սքանչելեաց նոցա այլոյ ուրումն վարկանիս գոլ , որ և ոչ անձին իւրում կարաց հնարս գտանել զերծանելոյ 'ի ձեռաց եբրայեցւոցն , և կամ փրկել զինքն 'ի չարագործաց մահուանէն . այլ և սպառնաս մեզ նովաւ տանջանս , և հրաւիրակ լինիս մեզ յաւիտենական հրոյն : Արդ ես աստէն չիջանուտ հրով փորձեցից զմարմին քո . և տես-

ցուք

ցուք թէ խաչեալն քեզ զի՞նչ արասցէ ։
Օ՜այս ասացեր անօրէնն՝ եւ բերել փայտս բազումս, եւ զնմ խութս որ դիւրածախք են յայրումն հրոյ. եւ ահագին բարբառեալ 'ի մէջ տեսարանին՝ հրաման տայր արկանել զկոյսն 'մբ 'ի հուր անդր. յորում վայրի եւ անթիւ մարդիկ ժողովեալք դիտեալք 'մի զմի-մեամբք կուտէին՝ 'ի տեսանել զկատարած վկայուհւոյն ։ Այլ առիգածեալ ածին զնա մերձ առ բորբոքեալ հուրն. զոր տեսեալ սրբուհւոյն եւ մեծահռչակ վկային՝ տարածեաց զձեռս իւր 'ի նմանութիւն խաչին, հայեցաւ յերկինս, եւ ասէ.
Տէր ամ անձառ լոյս եւ անստուեր ճառագայթ, որ արարիչդ ես ամ տարրական նիւթոց եւ կատարիչ համօրէն եղելոցս՝ ու քում ամենիմաստ խորհրդոցդ, եւ ոչինչ 'ի ստեղծուածոց քոց արտաքոյ կամաց քոց լինել կարէ. որ շրջես 'ի բնութիւն ցօղոյ զտոչորումն հրոյ. հանես յամուլ արգանդէ զիմաց ճտակ աղբերաց, եւ դարձուցանես զխաւար առ լոյս. որոյ անկշռելի է անչափ զօրութիւն քո 'ի հրեղինաց եւ 'ի հողեղինաց. որ հերձեր զծովն կարմիր, եւ աջովդ քո բարձրացեալ անցուցեր զն մէջ նր զազգն աբրահամեան տոհմին. եւ զյորդանան յետս նահանջեցեր. եւ զերկաթակարծր պարիսպն երիքովի իբրեւ զջուր հեղեր. որ զբաբելոնական հուրն շիջուցեր, եւ զերիս մանկունսն 'ի նմանէ անկէզ պահեցեր. փրկեցեր զշուշան 'ի ծերոցն, եւ զդանիէլ յառիւծուցն բռնութենէ. նաեւ զա-

ղախին քո թեկղ արձակեցեր ազատ, և կապ-
տեցեր զբռնութիւն հրոյն՝ անհպելի լինել 'ի
մաքրագոյն մարմինն. և ո՞ կարէ պատմել
զհրաշս անքնին ա՟ծութե՟ քո եղեալս 'ի վ՟ եր-
կրի։ Այլ դու նոյն ա՟ծ ես, և փառք և զօ-
րութիւն քո ոչ պակասի։ Արդ հայեաց յերկ-
նից 'ի սրբութե՟ քումմէ, և օգնեա տկարու-
թեւս իմոյ. և տուր համբերութիւն, և զօրա-
ցո ամենազօր զօրութ՟բդ՝ անվրդով և աներ-
կևան հաւատով անցանել ը՟ ասպարէս չա-
րահնարիս այսորիկ, և արա ինձ կամուրջ
փրկութե՟. զի 'ի ձեռն սորա անցից ը՟ հրե-
ղէն գետոյն յորձանսն, և փրկեցայց 'ի հան-
դերձեալ սատակմանէն՝ որ գալոց է 'ի վ՟
որդւոց մարդկան։ Այլ արդ տ՟ր ա՟ծ՝ ամենա-
զօր աջ քո պահեսցէ զիս. և մերձ կայցէ առ
իս պահպանիչ հոգիդ. և 'ի կամս քո կատա-
րեսցին ընթացք իմ. և քեզ փառք յաւի-
տեանս. ամէն։

Այլ ասացեալ զամէնն՝ հրաշալի կոյսն յաւ-
լիանէ, կնքեաց զինքն նշանաւ խ՟չին,
և տարածել ձեռամբ եմուտ զուարթագին
իբրև յառագաստ 'ի մէջ հնոցի հրոյն. և
անդ հրեշտակական պարակցութ՟բ երգակ-
ցել ը՟ զուարթունս երկնից՝ հրճուալի ձայ-
նիւ օրհնէր զա՟ծ։ Այլ ահա տեսիլ իմն ա-
հեղ երևեալ լինէր ա՟մ բազմութեան՝ որ 'ի
տեսարանն ժողովեալ կային. զի հուրն խո-
րանաձև առագաստեալ զմարմնով սրբուհ-
ւոյն պարփակէր. և արտօսր յաչաց նր՟ հե-
ղեալ իբրև զվտակս յորդահոս աղբերաց շի-

ջու

ջուցանէր զտոչորումն ահագին հրոյն. Ը. որ հիւացեալ զարմանային տեսողքն նմ, և ահիւ ըմբռնեալ բոլոր հանդէս նիկոմիդացւոցն՝ կայլին պշուցեալ :(5)

Յայնժամ արք թուով իբրև հինգ հարիւր միով ձայնիւ աղաղակէին և ասէին. տէր է մեծն քրիստոնէից. մի է ամենազօր տէր, զոր մարտիրոսուհին յուլիանէ պաշտէ. զնա խոստովանիմք, և 'ի նա հաւատամք, և նմա երկիրպագանեմք, և զհեղլենացւոցն յետս դարձուցանեմք զանմծ պաշտամունսն. եկեսցէ 'ի վր մեր հուր, սուր, և նմ տեսիլք տանջանաց. զի անհնարին է մեզ մեկնիլ 'ի քրիստոնէական հաւատոյն՝ զոր բարեպաշտուհին յուլիանէ քարոզէ :

Յայնժամ 'ի ցասումն բարկութե դրդեալ եպարքոսն, զի իբրև հրով բորբոքէր զսիրտ նր Թշնամին արդարութե, հրամայէր զինուորացն ըմբռնել զնս. և նոքա ինքնակամ յօժարէին 'ի մահ, ոչ հայելով յինչս և 'ի ըստացուածս իւրաքանչիւր, ոչ 'ի սիրելի բարեկամս, և ոչ առ որդիս և առ կանայս, և ոչ յայլ ինչ մարմնական պատաղմունս. այլ միաձայն բարբառով աղաղակէին և ասէին. քրիստոնեայք եմք, և զկուռս համերս և անշունչս ոչ պաշտեմք : Ապա հրամայեաց եպարքոսն 'ի մի վայր ժողովել և կոտորել զնս. և այնպէս սուր 'ի վր եդեալ կոտորեցին. և ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի. որ և ասէին միաբան, տէր ընկալ զհոգիս մեր ընդ կատարեալ վկայիցն. և այսպէս սպառազինեալ

նեալ առին զերաբխոնն յուսոյ կենացն յաւի-
տենից 'ի քն̃ յն̃ 'ի տ̃ր մեր . յորում տեղւոջ
նշանք աՀեղք և բժշկութիք անբաւք լինին
մինչև ցայսօր ( ասէ վկայաբանն ) :

Պարձեալ յարեան 'ի Հանդիսէն կանայք
Թուով իբրև Հարիւր և երեսուն , և ոչ նը-
ուաղ քան զարսն երևեցան 'ի նաՀատակու-
թիւնսն . այլ ասէին միաբան , Հաւատամք
յա̃ծն յուլիանեայ , և երկիրպագանեմք խա-
չելոյն քնի , և անմեկնելի լինիմք 'ի սիրոյ
նր̃ : Սամեցեալ եպարքոսի ցածուցանել զնո
'ի խորՀրդոյ անտի՝ առաջի դնէր նց̃ սպառ-
նալիս զանազան տանջանաց . բայց և ոչ մի-
ում ումեք եղև Հնար փոխել զբարբառ իւր ,
այլ առաւել յորդորէին 'ի Հաւատսն , և Թշ-
նամանէին զդիսն և զԹագաւորն : Սն̃ այն
ոչ ևս Համբերեալ արիւնռուշտ գազանն
այն՝ Հատանէր վճիռ մաՀու 'ի վր̃ նց̃ . և
այնպէս զանազան տանջանօք առին զկատա-
րումն ոք կանայքն 'ի ձեռաց դաՀճացն անօ-
րինաց . և ողջագուրեալ 'ի Հրեշտակաց՝ ա-
ւանդեցին զՀոգիս իւրեանց , և ընԹադրեցա̃ք
եղեն 'ի բանակս անմաՀիցն :

Զայս օրինակ կատարեցան 'ի միում աւուր
'ի պատճառս յուլիանեայ կուսի 'ի նիկոմի-
դացւոց քաղաքին բիւԹանացւոց՝ Հինգ Հա-
րիւր արք , և Հարիւր երեսուն կանայք , Ը̃
ա̃մ վեցՀարիւր և երեսուն նաՀատակք՝ 'ի
ձեռն եւևսիոսի եպարքոսի , առեալ զյաղ-
Թանակն վկայուԹե̃ 'ի քն̃է ա̃յ մերմէ : (6)

Սու քանզի տակաւին կենդանի կայր սքան-

չե-

չելի կոյսն յուլիանէ , եւ այլ սրտմտութն բարկութն եպարքոսին յաղագս սրբուհւոյն . և հնարէր ը անհնարին տանջանօք արկանել զնա , ցանկացեալ զհուր բորբոքեալ սրբութին շիջուցանել արեամբ նր ։ Ապա յետ ելանելոյ կուսին ողջանդամ 'ի հրոյն բորբոքելոյ՝ հրամայեաց բերել սան մեծ պղնձի , և արկանել 'ի նա ձիւթ և ձէթ և կապար , և զճարպ զոհիցն հեղուլ 'ի ներքս , և հրատ սաստիկ արկանել 'ի ներքոյ , և եռացուցացանել զսանն ուժգնակի ։ Իսկ մինչդեռ կուտակք եռանդանն մի զմիով դիզանէր , յոր և սպասաւորքն ոչ կարէին մերձենալ , ետ բերել զամենայնաղթ վկայուհին . և հրամայեաց կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք ընկենուլ 'ի սանն . մինչև ձենձերեացի աւէ առաջի իմ , զի մթութիւն սրտիս և ցնդումն գլխոյս 'ի բաց փարատեսցի ։

Արդ մինչդեռ կայր ողջն քի առխղածել առաջի դատաւորին և բազմաժողով ռամկին , հայցէր յիշխանէն արիական վկայուհին՝ զի արձակ ոտիւք և ձեռօք ելցէ 'ի տապակն . և դտեալ ներումն թողուէ , կնքեաց զինքն նշանաւ խչին , և արտասուալից աչօք հայեցեալ յերկինս՝ յոգւոց եհան , և ասէ . Ով հայրդ ես որբոց , և դատաւոր այրեաց , յոյս անյուսից , և պատսպարան սարտուցելոց . որովհետև անսահման ողորմութի քո գթացաւ յիս , և զերծուցեր զիս 'ի կապանաց բանտարկուհին . և յամ կենդաղական պատրանաց ազատ պահեցեր զիս , և ածեր

անարատութ յորս յայս, որ մեծ է քան զամ ժամանակս կենաց իմոց. արդ ընկալ բարերար տր, և արա զսա ինձ աւազան մկրտութ լինել. և դու ինքնին լեր քահանայապետ խոստովանութեան իմոյ. և կնքեա ամենազօր աջովդ զզգայարանս մարմնոյս և զխորհուրդս մտացս. և պարփակեա զիս անպարագրելի ածութդ ՚ի բանակս երկնաւորաց ընդ ամ սրբս քո: Որեղ փառք, պատիւ և երկրպագութիւն յերկնաւորաց և յերկրաւորաց՝ յերևելեաց և յաներևութից, և յիմմէ նուաստութենէս, տր իմ և ած յս քս:

Իսկ զայս ասացեալ՝ դարձեալ կնքեաց զինքն նշանաւ տը խաչին, և ասէ. ած իմ ած իմ, և տր բոլորից, ՚ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ. և ելեալ վաղվաղակի ՚ի տապակն՝ տարածեաց զձեռս իւր ընդ երկինս: Յայնժամ սպասաւորք սանդարամետականին այնորիկ սաստկացուցանէին զտոչորումն հրոյն. իսկ տը վկայուհին կայր ՚ի վր եռանդան տապակին իբրև ՚ի գահոյս ինչ փափկութ, կմ առ ծաղկաւէտ վայրս բուրաստանաց հրճուեալ. զի ոչ հպէին ՚ի մարմին նր կայլակք եռանդան տապակին. և ածային շնորհօքն իբրև ՚ի լուացումն աւազանի շրջէր ՚ի վր նր անվթար տեսլեամբ. վն զի նմա հովանի էր բազուկն՝ որ տարածեցաւ ՚ի վր խաչին:

Իսկ ահա յանկարծակի պատառեցաւ կաթսայն, և շուրջանակի հեղաւ որ ինչ եռայրն ՚ի նմա. և իբրև հրատք ՚ի շանթից թափեալ ճարակէր զամենեսեան՝ որ շուրջ կային՝ հրա-

շափառապէս . և կորոյս զբազումս 'ի դահ-
ճացն . իսկ որ կային անկէզ մնայր յանտանե-
լի տանջանացն (7) ։ Յայնժամ եպարքոսն ոչ
հանդուրժեալ պատահմանն՝ յայլոյ խելս
լինէր . զի միոյ աղջկան ոչ հնարաւորեցաւ
յաղթել . և յանչափ տագնապէ սրտին ըզ-
հանդերձսն պատառէր , և զերեսն հարկա-
նէր . և բազում բանս հայհոյութե՟ ասէր ը՟-
դէմ ա՟ծոց իւրոց ։ Արդ իբրև ետես, թէ պա-
տուհասն ոչինչ վճարէ որ կուսին , այլ մա-
նաւանդ յոլովագոյն զչարն 'ի վ՟ր իւր տեսա-
նէր դիզեալ , այնուհետև հատանէր 'ի վ՟ր
ն՟ր վճիռ մահու այսպէս .

Օյուլիանէ կոյս՝ հելլենացի գոլով ազգաւ
և տոհմիւ , և գեղեցկուբ՟ մարմնոյ զկերպա-
րանս հրաշատեսիլս զգեցեալ յամենազօր
ա՟ծոցն , և արտաքոյ հռովմայեցւոց եղեալ՝
պաշտէ զխաչեալ ոմն յն անուն . զոր և ոչ
միով իւիք հնարիւք կարացի զմիտս ն՟ր խախ-
տել , և շրջել յա՟ծոցն բարերարութ՟ , ոչ ա՟մ
մեծուբ՟ Դիս , և ոչ ընաւ համօրէն ա՟մ տան-
ջանօք՝ զոր ածի 'ի վ՟ր ն՟ր . քանզի կախար-
դութ՟բ իմն լուծանէր զա՟մ , և պատճառ
կորստեան բազմաց եղև . վ՟յ սորոյ հրա-
մայեմ բառնալ զգլուխ ն՟ր , և կորուսանել
'ի կենաց ։

Յայնժամ բանսարկուն սատանայ կացեալ
'ի հեռաստանէ՝ ցուցանէր ուրախանալ ընդ
մահ նորա . և զդահիճսն գրգռէր 'ի սպա-
նումն ։ Իսկ բարեյաղթ վկայուհին յուլիա-
նէ երթայր ոչ իբրև 'ի մահ , այլ իբրև 'ի

քա

քակումն մարմնոյ և յաղատունն աշխատութեանց՝ խնդալի դիմօք, և պայծառացեալ աչօք, ձգեալ 'ի դաՀճացն 'ի տեղի կատարմանն: Պնայր և բազմութ՟ն ժողովրդեանն զրուցաւտրութ՟ք ը՟ նմ. և իմաստուն կոյսն Հաւանեցուցանէր զնս ազդու բանիւք, թէ չիք ինչ մեծ՝ քան զն՟ ո՟յ վկայել. և թէ ոչ գոյ մի ինչ յերկնայինսն կամ յերկրայինս պանծալի՝ ո՟ք զօրական քնի լինել. (8)

Եւրև Հասին 'ի տեղին՝ յորում պարտ էր ընդունել զվախճանն, կնքեաց զբանն՝ որ ընդ մարդկան. և լի Հոգւով ս՟բվ Հայեցաւ յերկինս, եկաց յաղօթս, և ասէ. Գոհանամ զքէն տ՟ր յմ, ստեղծիչ և փրկիչ Ած՟ի, որ զն՟ յանցանաց բանական բնութես եսուր զանձն քո յանարգական մաՀ խաչի՝ ազգի ազգի չարչարանօք Հանդերձ, և մաՀուամբդ քո փրկեցեր զմեզ 'ի մեռելութ՟ն մեղաց. և եթէ զայս տմ՟ կրեցեր զն՟ մեր տ՟րդ և Ած՟դ բոլորից, ապա որչափ ևս առաւել արժան է մեզ Հեղուլ զարիւն զն՟ ամծային սրբանդ, և պատարագիլ առ 'ի պատարագելոյդ Հօր. ևս առաւել իմոյ նուաստութես. զի թէ և զտմ՟ վիշտս կրէի և զչարչարանս բոլոր արարածոց, չէր ինչ մեծ. այլ առաւել ևս պիտոյ էր կրել յաղագս անբաւ բարերարութե քո առ իս եղելոյ. և եթէ Հրեշտակային ունէի բարբառ, եւ՟րբ կարէի այնու տ՟ի պատմել զանձառ ողորմութի քո, կմ՟ գոՀութի և օրՀնութի ամենօրՀնեալ ածութեդ Հատուցանել. զի յորքան խորութի Հաներ զիս, և յանբաւ

բար-

բարձրութին ածեր ․ և յորպիսի մեղաց ձգեցեր
զիս յանստուեր լոյսն քո ծայրագոյն ։

Այլ արդ ոչինչ ստացուած երևելի կամ մեծութի աներևոյթ ՚ի վր երկրի լաւ է համարել քան զանձկալի սէր քո ․ ուստի քաղցրանան ՚ի մարմնի իմում վիշտք և նեղութիք եկեալ ՚ի վր իմ՝ վն տենչման ծայրին տեսլեանդ , առաւել քան զփրութի ծովու և ցամաքի ։ Արդ օրհնեսցեն փոխանակ բերանոյ իմոյ իմանալի զօրութիքն , և բարեբանեսցեն արարածք ամ զանխմանալի բնութիդ հօր և որդւոյ և հոգւոյդ սրբոյ ։ Այլ այժմ որ ամ անձառելի և անբաւելի՝ բաց զառագաստ մեծի հարսնարանիդ , և ընկալ զիս ՚ի բանակս անմահիցդ , որպէս խոստացար իսկ ․ և անցա խաղաղութի ը խաւարային իշխանութիսն առաջնորդութ հոգւոյդ սրբոյ ։ Այլ որք յիշեն զանուն իմ ՚ի վիշտս նեղութեց , այցելուս լեր խնդրուածոց նց՝ փրկելով ՚ի վտանգէ հոգւոյ և մարմնոյ ․ և քեզ փառք յաւիտեանս , ամէն ։

Այլ ասացեալ զամէնն՝ կնքեաց զինքն նշանաւ խաչին ․ հայեցաւ յերկինս , և ասէ մեծահառաչ ձայնիւ ․ տր տր ՚ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ ։ Այլ զոյգ ը բանին խոնարհեցոյց զպարանոցն առաջի դահճին ․ և այնպէս հատաւ ամենամաքուր գլուխն յաղթօղ և գերապայծառ վկայուհւոյն յուլիանեայ , որ սլացաւ հոգւով , և միացաւ ընդ գլուխն իւր քս ։

Իսկ բանաւորն եղևսիոս յետ ոչ բազում աւուրց

ւորց ընդունէր զվրէժ հատուցման յարդար դատաւորէն . քանզի 'ի նաւելն 'ի վերայ ծովու՝ վարեցաւ նաւն 'ի հողմոց մերձ առ կղզի մի անբնակ 'ի մարդկանէ . և 'ի խորասոյզ լինել ամենեցուն՝ որ էին ընդ նմա 'ի նաւին , նա բուռն հարեալ զտախտակէ միոյ թէպէտև փրծանէր 'ի ծովէ , այլ ընդ ելանելն 'ի գազանաբնակ տեղին՝ անդ եղկելին ճարակ լինէր վայրենի գազանաց . և դառնութեամբ դառնացեալ ոգի անօրինին էջ 'ի դժոխս :

Այսպէս ուրեմն՝ որք կոյսն յուլիանէ զվկայութեան ստադիոնն կատարէր , և այսպիսի կատարման վախճանի վասն քրիստոսի հետևեալ եղև անարատ հարսն երկնաւոր փեսային , 'ի թագաւորութեան մաքսիմիանոսի , և յանթիպատութեան փեղիկիանոսի (9) . յամի տեառն իբր 300 կամ 304 . զոր ոմանք 'ի փետրվարի դնեն . և այլք 'ի դեկտեմբերի կամ 'ի նոյեմբերի : (10)

## Վասն նշխարաց սրբոյ կուսին յուլիանեայ :

Վկայաբանն ճառընտրին մերոյ յիշէ համառօտիւ զառաջին փոխադրութիւն մարմնոյ կուսին այսպէս . * Կին ոմն անուն սոփիայ անցանելով ընդ նիկոմիդիա՝ երթայր 'ի մեծն հռովմ. և տեսեալ զսրբազանն զայն՝ առնոյր զնշխարսն . և տարեալ շինէր տաճար մեծահռչակ հանդիսաւոր նահատակուհւոյն յուլիանեայ . և եդեալ զպատուական մարմինն 'ի նմա՝ զարդարէր պայծառ և երևելի

ապա-

ապաստուք · յորում բժշկութիւնք անբաւք և
նշանք սքանչելիք լինին մինչև ցայսօր ։

Ուր մեկնեւս գրեն այլ օրինակգիրք, թէ սո-
փիա՝ (որ և սոփրոնիա, կամ այլով նմանաձայն
անուամբ կոչի,) իբրև մերձեցաւ նաւուն մերձ
'ի հռովմ՝ հարկեցաւ ելանել 'ի պատճառս
ալեկոծութեան ծովու 'ի սահմանս կամպանիոյ,
և հուպ 'ի քաղաքն պատիողոս կամ բուզէոլի
հանգոյց զմարմին յուլիանեայ կուսի, 'ի
վկայարանի անդ՝ որ շինեցաւ յանուն նորա մղ-
նաւ միով հեռի 'ի ծովէ, և ինն մղոնաւ 'ի
պարթենոպէ քաղաքէ ։ Յայս վայր հին վկայ-
արանք ։

Իսկ այլք յղկնի դարս յաւելուն գրել, թէ
'ի հարստահարել վիճակին պատիողայ յերե-
սացբանութեան հեթանոսաց՝ որով իմանայ բու-
լանդ զժամանակ լոնգոբարտացւոց, կրկին
և ս փոխադրեցաւ անտի 'ի քաղաքն կումա,
ուր և անտի 'ի նէապօլիս 'ի ժդ դարու · և
թէ զի՞նչ, քաղեսցուք 'ի պատմութենէ ժամա-
նակակից և ականատես անձին ։

Յամի տն հազարերորդի երկերիւրերորդի
եօթներորդի, 'ի իե ամսեանն փետրվարի,
նէապօլսեցիք առին պատերազմաւ զքաղաքն
կումայ, և աւերեցին զն բազմապատիկ չա-
րեաց բնակչացն · այլ զի մի յաւերակս քա-
ղաքին մնասցեն նշխարք սրբց՝ որք անդ գտա-
նէին, առաքեցին զարս պատուականս 'ի քա-
հանայից ը լեոնի կումացւոց եպսի, փոխադ-
րել զնոսին 'ի նէապօլիս · և ահա 'ի տաճարի
սրբյն մաքսիմոսի գտին նախ զոսկերս այնր
վկայի

վկայի յիւրում կճեայ տապանի. և յետ բառ-
նալոյ զայն՝ բերցին և գտին 'ի ներքոյ նո͞ր յայ-
լում տապանակի զնշխարս ս͞ր մանկանն,
զորմէ պատմի՝ թէ էր երեխայ երից ամաց,
յորժամ ետ նմա խօսել մաքսիմոս վկայն ա-
ռաջի փաւխիանոսի դատաւորի:

Յետ այնորիկ և ես խորագոյն բրեալ՝ գտին
զայլ տապան մարմարիոնեայ, և 'ի նմա ըզ-
նշխարս սրբոյն յուլիանեայ կուսի. յորոց՝ ոտք և
յառաջինոցն՝ բուրէր հոտ անուշութեան օքան-
չելի՝ զուարթարար ոգւոց և սրտից. և բար-
ձեալ բերին մերձ 'ի մեծ քաղաքն Նէապօլիս
'ի տաճար ս͞ր ա͞ծածնի. ուր մայր վանացն
սրբուհւոյն մարիամայ տէ տոննա առոմա-
գա կոչեցելոյ՝ բիէննա անուն, ը͞ն յառաջա-
գոյն փութոյ և փափաքանաց իւրոց ել ընդ-
առաջ նշխարացն յուլիանեայ կուսի համդերձ
կուսանօք իւրովք. և անկեալ 'ի վ͞ր տապա-
նակի փառաւորեալ վկայուհւոյն՝ ասէր. Ո՜վ զա-
չեմ զքեզ ով կոյսդ մաքուր, վ͞ս սիրոյ նորա՝
որ վ͞ս զարիւնդ քո հեղեր, մի՛ անտես առ-
ներ զաղախինդ քո. վ͞ս քո եկի կարօտով՝
խնդրելով զպատուական նշխարս քո. ցան-
կամք տանել զքեզ յաղքատին վանս մեր,
զի քև պայծառասցի. շնորհեա՛ մեզ զքեզ:

Յետ հսկելոյ զայն գիշեր սաղմոսիւք և
օրհնութ͞բ, ը͞ն առաւօտն բարձին քահանայք
զս͞ր նշխարս. և բազմութի͞ւն ը͞ն առաջ ելեալ
'ի քաղաքէն և 'ի մօտակայ վայրաց ոստովք
ձիթենեաց՝ աղաղակէին. օրհնեալ՝ որ գայ
յանուն տ͞ն, ովսաննա 'ի բարձունս. և ը͞ն
առաջ

տուաջ և արքեպիսն նէապօլսոյ գղերիւք եկեղեցւոյ, և բերեալ պատուով հանգոյց զսրբն յուլիանէ 'ի վանս կուսանաց՝ որ յանուն աւրամօրն. և զայլ նշխարս 'ի մայր եկեղեցին ։
Որ ասէ գրիչն. * Լինիմ խոստովան, զի ոչ
,, երբէք այնպիսի բուրումն անուշահոտութ
,, առեալ էր իմ, զոր ընկալայ մեղաւորս և
,, անարժանս 'ի սրբ. նշխարաց անտի. և ար-
,, դարև պատուական է առաջի տն մահ սրբց
,, իւրոց. և պահէ տր զամ ոսկերս նց, և մի
,, 'ի նոցանէ ոչ կորիցէ ॥ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Մի 'ի գերապանծ և յաւէտ պերճաբան վկայաբանից առաջնոց է հեղինակ վկայաբանութես, որ 'ի մեծ ճառընտիրն մեր. բաղում մասամբ բառ առ բառ շօրինակեալ 'ի մէնջ, ուրեք ուրեք պարզաբանելով և կամ համառօտելով. ուր տեսանի ընդ վսեմաբանութն յոյն բնագրին և հայկաբանութն ընտիր Թարգմանչի ։ Բերէ և բոլլանդ յովհաննէս զերկուս հին օրինակս լատին վկայաբանութեց. մին առաւել համառօտեալ, և միւսն աւելի ըլայնեալ. յորս մի և նոյն պատմութն է ծայրէ 'ի ծայր՝ իբրև այլևայլ քաղուածք հեղինակիս մերոյ. 'ի նոցին սակի է և օրինակն մետափրաստեան առ սուրիոսի. որ առաւել բերէ զնմանութն մերումս պատմութն, բայց ոճն տարբեր, և համառօտ քն իմիք քան զմերն, և նուազ պերճախօս ։

Յայտնի է սխալանքն ոմանց ոմանց 'ի յետին վկայագրաց արևմտեայց ուղղագրեալ 'ի բոլլանդեայ. իբր զի փոխադրեալ լինելոյ նշխարաց յուլիանեայ կուսի 'ի կումա կամպանիոյ՝ համարեցան զնա նահատակեալ յայնմ քաղաքի. և զի կումացիք՝ իւրեանց աք անուանեցին զնա,

Թէ

Թէպէտև գնէին ոմանք՝ թէ ՚ի Նիկոմիդիա նահատակեալ էցէ, այլ ծննդեամբ կումայի համարեցան. Թող զի այլք վայրապար երկուս համանուն վկայս եդին ՚ի կումա և ՚ի Նիկոմիդիա:

Ընդ ՚ի կումա էր տակաւին մարմին սրբուհւոյն, ասէ Բոլլանդ, յորժամ զպայմանուորս իւր գրէր ուսումնարդոս առ մեծն կարդինալն ՚ի սկիզբն ԺԶ դարու, ապա ուրեմն ասէ հնագոյն էր առաջին օրինակն արևմտեան՝ որում հետևի ուսումնարդ. Թող զերկրորդ օրինակն զկնի շարագրեալ ՚ի Զ դարու, զորոյ զյաւելուածս յՃԼայնմունս իւր ամ ըք յայտնի տեսանէ. այլ զառաջնոյն վաւերականութի, որ առաւել համաձայն է ընդ մեզ, իրաւամբք պինդ ունի քաջն Բոլլանդ, յասել անդ.
* զոր Թէպէտև գառնապէս ստգտանէ յովհաննէս հեռ-
,, սէլիոս ՚ի լովանիոյ՝ ՚ի գիմագրութիւն պատմութե սըց,
,, գլ. 2 ... բայց ՚ի ձեռնարկս նր չէք ընաւին պատ-
,, ճառք ինչ ծանրակշիռ. (զորս և մի առ մի յառաջ բե-
,, րէ և ցրէ՝ հաստատելով զվկայաբանութիւնն. և յա-
,, րէ ) .... Արդ սոյն այս վկայաբանութե գտանի գրե-
,, թէ յամ հին ձեռագիր ճառընտիրս կիՐ ՚ի վկայագիրս.
,, մեք մետասան օրինակս ՚ի ձեռին ունէաք. յորոց յո-
,, լովք ընտիր էին ամի .... Զնոյն կիՐ զնման վկայա-
,, բանութի ունէր ՚ի ձեռին սիմէոն մետափրաստէս.
,, որ վայելչապանծ բացատրեաց և զարդարեաց զայն||:
Մեայր Բոլլանդայ տեսանել զգերապանծ վայելչութի մերումս օրինակի՝ հանդերձ նշանակօք առաւել հնութե քան զայլսն: Այլ քանզի յամենայն նոյն է գոյացութե պատմութե՝ զմի և զնոյն վաւերականութի ընծայեն ընթերցանելեաց. Թող զմասնաւոր տարբերութիս, զորս նշանակեմք կիՐ ուղղագրեմք ՚ի կարգին:

(2) Վրիպակ գրչի կայ յայն բան ԶԾ. * որ և ելևսխոսի
,, իսկ խօսեալ լինէր ՚ի յերկրորդում ամին. և քնի
,, հարմնացեՆ պատ ՚ի ձեռն վկայութեն իւրոյ, յորժամ
,, հասեալ էր նր յարբունս հասակի ամաց ութ և տա-
,, սանց||. ուր որչափ հաստատուն է վերջին հաշիՃն
Ժ ամ վկայաբանից, առաջինն է սխալագիր, փոխանակ գրելոյ կամ Ժ այլոց ՚ի Թ ամի, (որ յետոյ լեալ է Է). և կամ յերկոտասաներորդում ամին: Թող զվրիպակն մտեալ ՚ի Հ. առ. համառօտագրութե. * և ԺԷ ամաց


լեալ

չեալ կուսին՝ խոսեցան զնա 'ի հարսնութեն . . . և իբրև եհաս ժամանակ հարսանեացն || . Ժն. փոխանակ ասելոյ՝ Ը, կամ Թ ամաց լեալ . և ապա իբրև եհաս ժամանակ ԺԸ ամաց, ԺՆ :

(3) Թեպետև այլ ևս տանջանք նման են յաւմ օրինակս, այլ զտանջանս շանթացեալ երկաթոյ եդելոյ ընդ անթովք են, զոր միօրինակ գրեն Ճ . և Մետափր . և Հ . և Ց , այլազգ . բացատրեն լաւին օրինակք . ոչ թէ հալեալ պղնձիւ՝ զեղեալ իցեն զմարմնով նորա 'ի գլխոյն մինչև յոտս . որ երևի սխալանք թարգմանչի :

(4) Լա . օրինակք 'ի խոստովանութիւն կուսին Է գիշերն 'ի բանտի՝ նախ պահեն զվայելուչ ձև բանից Է մեզ . և ապա յաւելուն պէսպէս աւելորդաբանութիւս օտարս յօրինակէ մերմէ . զոր եթէ գիտէր բոլլանդ , ուղղագրեր ինչ ինչ :

(5) Աւելի է 'ի լա . օրինակս և տանջանք անուէոյն , զոր երկար սորոգգրեն . և զհաւրն 'ի կարճոյ նշանակեն . այլ մեզ ընտրելի է ընթերցուած մեր ևս սարօք խերովք :

(6) Մեկն և որոշ գրի աստ յընթացս Ճ . նահատակութի 500 արանց , և 130 կանանց . Է ևս 630 . ապա վրիպակաւ եդեալ էր 'ի խորագրի . * վեցհարիւր և ութ ,, վկայիցն այ || . յայտ է թէ փոխանակ Թուոյս ՈԼ , ընթերցեալ ՈԸ : Կայ և 'ի լա . օրինակի միում այլ սխալ . զի խառնէ զԹիւ արանց և կանանց . ոչ և 'ի Հ . այլ զհաստատուն ընթերցուած մեր պահէ և Մետափր . կմ Ց :

(7) Առաջին օրինակն լա . միաձայնի Է մեզ , թէ 'ի կառսայ եռացեալ եմուտ կոյսն . իսկ երկրորդն ասէ՝ թէ զծալեալ կապարն հեղին 'ի վ[ե]ր կուսին . որ է վայրապար փոփոխել զհին ընթերցուած :

(8) Յերկարէ զբանս լա . օրինակն առաջին 'ի բերանոյ կուսին առ ժողովուրդն . բայց մեք ոչինչ առաք յայլոցն բանից՝ արտաքոյ ընտիր վկայաբանութես մերոյ :

(9) Փելիկիանոս անթիպատոսն յիշի միայն 'ի Ճ . և կակածիմք՝ թէ այլով հնչմամբ յիշատակեալն յայլոց հայր կուսին՝ ափրիկանոս անուն , իցէ նոյն Է նմա :

(10) Բոլլանդ ջանայ պահել զօր ամսոյն գրեալն 'ի լա . 'ի փետր . 16 . այլ մեզ անյայտ երևի . զի յայնք և հայք 'ի նոյեմբեր կմ 'ի դեկտեմբեր արկանեն . Ը որում 'ի

Խաչոցս ինչ գրի նոյեմբ. ԻԳ. և ՚ի Հ. և Յ. դեկտ. 20, կմ 21. իսկ Ծ. ոչ յիշէ զօր ինչ: Եւ այն իսկ՝ զոր ասէ բոլլանդ., թէ պօղոս Է հռովմայ հայրապետ՝ որ ջերմեռանդն էր կուսին, կարգեաց պտօն նր ՚ի փետր. 16. առաւել յայտ առնել երևի մեզ, թէ խորհրդով յայն օր փոխեալ իցէ՝ հայելով յամիսն, յորում փոխադրեցաւ մարմին սրբուհւոյն ՚ի հռովմայ ՚ի նէապօլիս:

Յիշեցաք և զայլ վկայուհի յուլիա կմ յուլիանէ անուն Է վառվառեայ կուսի. կայ և այլ յուլիանէ կոյս վկայ պատուեալ ՚ի վերոնա քաղաքի, և միւս ևս յուլիանէ կոյս վկայ հռովմայեցի՝ պատուել ՚ի պոնոնիա քաղաքի, զորոց տես աստ առ բոլլանդայ յերես. 885. 886:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Վասիլուհւոյ, կմ Վասիլիդեայ կուսի:

Հ. սեպտ. 10: Յ. Լ. սեպտ. 3: Ճառընտ. Մ. դեկտ = դեկտ. և Ի. Յ = յն: Բոլլանդեանն դե-նիոս. ՚ի Ա հատ. սեպտ. էջ. 609. 610: (1)



ԳԵՂԵՑԻԿ ԱՆՈՒՆ երբև անուանակիր դշխոյին տիեզերաց կուսանաց կուսի՝ Վասիլուհի կոյսն, (որ գրի և Վասիլիդէ կամ Բասիլիդա, Է յունաց Վասիլիսա, թս. գմանել թագուհի կմ արքայուհի,) էր օրիորդ մատաղ հասակաւ, որբ մնացեալ

ցեալ 'ի ծնողա̀ց 'ի Նիկոմիդիա քաղաքի բիւթանացւոց, ըն հօգւով և կիրթ յա̃ծպաշտութե̃, յաւուրս կայսերութ̃ Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի ։

Մ.րդ ը̃ս հրամանի ինքնակալացն՝ աղեքսանդրոս դատաւոր Նիկոմիդեայ, այր մոլեալ 'ի անօտի կուռս, հրամայեաց զա̃մ զքրիստոնեայս՝ որք 'ի քաղաքին իցեն կամ 'ի գաւառին, առ հասարակ զարս և զկանայս ժողովել և ստիպել՝ կամ զոհել ա̃ծոցն, և կամ չարաչար տանջանօք մեռանել ։ Իսկ ընթացեալ դահճաց այսր անդր 'ի հրամանէ դատաւորին՝ ըմբռնեցին յեկեղեցւոջ 'ի նմին քաղաքի որոջ մի ո̃ք՝ պարարտ հաւատովք, և յափշտակեալ իբրև զգայլս 'ի հօտէն ք̃ի՝ կացուցին առաջի դատաւորական բեմին աղեքսանդրի ։

Իսկ դատաւորն իբրև ետես զտղայութի̃ տիոց նո̃ց, և զգեղեցկութի̃ տեսլեանն, և զհամեստութի̃ կերպարանաց նո̃ց, հարցանէր՝ որոց շուրջն կային, թէ քանի՞ ամեան իցէ ․ և իբրև ուսաւ, եթէ իննամեան ․ բայց խելամուտ գրոց և ուսմանց քրիստոնէութե̃, յայնժամ սկսաւ ասել ցնա դատաւորն ․ ասա́ աղջի՛կ դու զանուն քո և զբախտ ․ և զոհեա́ ա̃ծոցն յառաջ քան զապականել իմ չարաչար տանջանօք զգեղեցկութի̃ հասակի քո ։

Իսկ սրբուհին լցեալ իմաստութ̃բ հոգւոյն ս̃բյ՝ կնքեաց զինքն նշանաւ ք̃ի խաչին, և ասէ ․ զանուն իմ հարցանես ով դատաւոր և զբախտ ․ փափկութի կոչիմ 'ի ծնողաց իմոց,

քրիստոնէութ՟ սնեալ, աղախին ք՟ի. և նմին հարսնացեալ՝ սպասեմ անապական զգեստուցն և անմահ փեսային և մշտնջենաւոր հարսանեացն. վ՟ոյ և զոհել դիմաց ոչ կամիմ, թէպէտև բիւր ազգի ազգի տանջանս ածես 'ի վ՟ր իմ. այս է համառօտ պ՟խնի իմ. այլ ինչ առաւել քան զայս ոչ ես լսելոց:

Յայնժամ դատաւորն յիմարեալ 'ի խորհուրդս իւր, և յուսահատեալ 'ի համարձակութ՟ե վճռէ պ՟խնւոյ երանելւոյն, հրամայեաց կախել զնա գլխիվայր որ՟պս զգառն անմեղ, և անողորմ հարկանել ջալոտիւք. մինչև տրորեցաւ փափկիկ մարմին ն՟ր ողջոյն: Իսկ երանելին այնչափ եր ջեռեալ 'ի սէրն ք՟ի, զի զօրացեալ շնորհօք ս՟բ հոգւոյն՝ ոչ գունատեցաւ և ոչ այլայլեցաւ դիմօք անգամ առ այնպիսի տանջանս:

Հրամայեաց դատաւորն իջուցանել զնա. և տեսեալ զզուարթութ՟ի երեսաց ն՟ր, զի և ոչ կերպարանօք ինչ եցոյց զզգայութ՟ի հարուածոցն, ետ ծակել զպճղունս և զկարթ ոտից ն՟ր, և արկանել 'ի ներքս շղթայս երկաթի, և դարձեալ կախաղանաւ վերացուցանել. և ոչ այսչափ միայն, այլև 'ի ներքոյ երեսաց ն՟ր ծխել ծծումբ նաւթիւ խառնեալ. զի 'ի տապախառն բոցոյն և 'ի դժնդակութ՟է հոտոյն՝ հեղձեալ առժամայն մեռցի. բայց նա ոչ պակասեալ յօրհնաբանութ՟էց՝ և յայնմանէ ևս ապրեալ լինէր զօրութ՟ն այ՟:

Իսկ դատաւորն յորժամ ետես, զի և այն ևս տանջանարանքն իւր յաղթեալ գտան, ամօթ

հա-

համարեալ զպարտութին իւր 'ի տհաս հասա-
կէն, հրամայեաց հնոց բորբոքել, և անդ
արկանել զերանելին: Եւ կացեալ 'ի տեղ-
ւոջ հնոցին որ վկայուհին քրի՝ յաղօթս ե-
կաց այսպէս. Հայր տն մերոյ յսի քսի, որ
զմն ինչ ներգործես՝ որպէս և կամիս, որ և
յակնարկել ամենազօր հրամանիդ՝ բնութք
արարածոց փոփոխին. և արարչիդ ըդիմա-
նալ ոչ կարեն: Դու տր արա առ իս զքաղց-
րութին կամացքոց, փոփոխելով զբոց հրոյս
'ի ցօղ, ոպ երբեմն առ երեք որ մանկամբքն
սքանչելագործեցեր. զի ծանիցեն ամենե-
քեան զքեզ Ճշմարիտդ ած, և զոր առաքե-
ցեր 'ի փրկութի Որդի զտր մեր յսքս, և զՀո-
գին որ՝ որ 'ի քէն ելանէ և լնու զմն արա-
րածս. երրորդութին որ՝ միով բնութբ երկրր-
պագեալ.

Եւ մինչդեռ նա զայս աղօթս մատուցանէր,
յանկարծակի հրաշագործեցաւ հուրն 'ի
նմանութի առագաստի. և սրբն 'ի մէջ նորա
ոպ զոսկի հրացեալ և իբրև զարեգակն պայ-
ծառացեալ երևէր ամենեցուն յայտ յանդի-
ման. Իսկ դատաւորն իբրև զայս սքանչելիս
ետես, զարհուրեալ 'ի բաց գնաց՝ կախար-
դանս քրիստոնէից զիրսն անուանելով. և առ
վաղիւն հրամայեր պատրաստ լինել՝ գազա-
նաց արկանել զնա:

Եւ իբրև ամ քաղաքն ժողովեցաւ 'ի տեղի
հանդիսին՝ ուր զգազանսն արձակէին, կա-
ցուցեալ զսրբն 'ի մէջ ատենին՝ գրգռեցին 'ի
վր նր երկուս առիւծս: Իսկ երանելին իբրև

ետես զգազանսն զայրացեալ 'ի վ՟ր իւր՝ յիշեաց զգանիլն, ըն արտասուօք՝ յերկինս նայեցեալ. և յերգ սրկեալ զեօթներորդ սաղմոսն, Տ՟ր Ա՟ծ իմ 'ի քեզ յուսացայ և փրկեա զիս, գուցէ երբեք յափշտակիցէ որպէս առիւծ զանձն իմ, ուղերգական ձայնիւ կարդայր առ Ա՟ծ: Եւ 'ի կատարման սաղմոսին աղօթս մատուցանէր և վասն դատաւորին, զի մի մնասցէ մինչև իսպառ 'ի վիհս կորստեան:

Յայնժամ եկեալ գազանաց առաջին ն՟ր՝ իբրև զընտանիս փարէին զնովաւ: Այս ա՟մ սքանչելիս իբրև ետես դատաւորն աղեքսանդրոս, ոչ կարաց ուրաստ լինել. և ազդեալ 'ի նմա Ճառագայթ Ա՟ծային լուսոյն 'ի ձեռն աղօթից ս՟բյն՝ եբաց զխաւարեալ միտս նորա Ճանաչել զբանն կենաց: Եւ առ ժամայն ետ տանել զսրբուհին յապարանս իւր. և անկեալ առաջին ն՟ր՝ աղաչէր, զի մի զրկեսցի 'ի Ճշմարիտ հաւատոցն: Իսկ ս՟բյն առեալ ածէր զնա առ երանելի եպ՟սն, որ էր 'ի նմին քաղաքի. որոյ անուն Ճանաչէր անտանիոս. (զոր ոմանք համարին լինել ս՟բն անթիմոս, որ զայնու ժամանակաւ եպ՟ս էր նիկոմիդացւոց, և 'ի յունաց տօնախմբի 'ի նմին աւուր ը՟ն վասիլուհւոյ կուսին):

Յայնժամ ս՟ր հօտապետն լի եղև ուրախութ՟բ վ՟ն փրկութ՟ե առնն. և ուսուցեալ նմա զխոստովանութ՟ն երրորդութ՟են, և հաստատեալ 'ի հաւատս ս՟բս՝ արժանի արար վերստին ծննդեանն յորդեգրութ՟ե հօրն երկնաւորի. և այնպէս առժամայն խառնեցաւ 'ի հօտն ք՟նի.

քմի . և կատարեցաւ բան գրոյն , եթէ գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին . և բարձաւ հալածումն առ ժամանակ մի : Այս կացեալ աղեքսանդրոս ժամանակ ինչ՝ փոխադրեցաւ եղև յաստեացս առ հանդերձեալն, և հանգեաւ քրիստոնէութ՟ 'ի քն :

Իսկ երանելին վասիլուհի երթեալ արտաքոյ քաղաքին սակաւ ինչ բացագոյն քան զբնակութիւն (ըն ամանց՝ իբր երեք նշանահետի) գտանէ տեղի մի անապատ, յորում էր վէմ մի մեծ . և անդ առ վիմին զբնակութիւն իւր առնէր . որ և աղբիւր անուշահամ աղօթիւք սրբոյն 'ի վիմէն ելանէր , որպէս առ մովսէսիւն 'ի ձեռն գաւազանին : Այս կացեալ 'ի նմին տեղւոջ աւուրս ինչ, բարւոք կրօնաւորեալ, զընթացսն իւր կատարեալ և զհաւատսն պահեալ, օրինակ բարի եղեալ ամ՟ հաւատացելոց ըստ իւրաքանչիւր հասակաց՝ (որք յերկուս հալածանաց կային 'ի բացի 'ի տեղիսն յայնոսիկ) , աւանդեաց զհոգին 'ի քն՝ 'ի բզ՟մ մորմոքանացն և 'ի խիստ տանջանացն (ըն գրելոյ տր իէլի), և արժանի եղև անմահ փեսային և յարաղուտարձ հարսնարանին :

Այս սրբոյ եպիսկոպին իմացեալ զկատարումն երանելոյն ազդմամբ սբ հոգւոյն , և առեալ ըն իւր զժառանգաւորսն եկեղեցւոյն և զայլս 'ի քրիստոնէից նիկոմիդացւոց՝ եկն 'ի տեղին . և մեծավայելչապէս պատիւ արարեալ սրբոյ վկային՝ եդին 'ի նմին տեղւոջ , ուստի աղբիւրն բղխեաց յառաջագոյն աղօթիւք

նորին ։ Եւ մինչև ցայսօր (ասէ վկայաբանն) բժշկութիւնք կատարին նովին ջրով և նշխարօք սրբոյն՝ շնորհօքն Քրիստոսի ․ Որում հօր և որդւոյ հոգւոյն վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Զոր միանգամ միօրինակ գտեալ յերկուս ձեռագրինս մեր՝ աւանդեցաք զփառաւոր կոյս վկայուհւոյս, զնոյն նովին իմաստիւք՝ թէպէտև այլևայլ ոճով, գտանեմք 'ի Յ․ բս․ և ժմ․ հանդերձ տօմ տանջանօք՝ յոր րոց պահեցաւ սքանչելապէս ․ զնոյն ենթադրէ և Հ․ 'ի համառօտութեն իւրում․ եւ առաւել Լ․ որ յերկուս և յերիս տողս զանն բովանդակէ յասելն ․ * 'Ի Նիկոմի-
,, դիա չարչարանք սրբուհւոյն վասիլիսայ կուսի և
,, մարտիրոսի, որ յինն ամաց հասակի՝ 'ի հալածանս
,, դիոկղետիանոսի առ աղեքսանդրոս դատաւորաւ՝
,, տեառն զօրութեն յաղթեալ գանից, հրոյ, և գազա-
,, նաց, յաղօթս աւանդեաց տն զհոգին || ։
Ուր ոմնիս բոլլանդեան՝ 'ի միոյ կողմանէ չունելով զկարգաւորէն վկայաբանութեն մեր 'ի ձեռին, և 'ի միւս կողմանէ հարևանցի ակնարկեալ յայլևայլ յունականև 'ի լատին քաղուածս, զարմանայ՝ զի և համառօտագրութիւք պահեն զնոյն խնկութեն տանջանաց ։ Զինչ առաջնոյն՝ ձայնակից ընարէ լինել, ասելով ․ * Մատաղ
,, այս կոյս վկայուհի, առնացի ոգի յանձին բերեալ 'ի
,, վեր քան զբնութեն իւր և զհասակ, զհրաշակ անուան
,, իւրոյ ծառայեցոյց առ յոյնս և առ լատինս || ․ և թէ՝ ոնդ զրի յօրինակն սիրմոնդեան, * Լինի ամ ա ամէ առ-
,, նախմբութեն նր 'ի մենաստանն մարիամու մերձ 'ի պա-
,, րիսոյն վլաչեռնայց || ('ի կոստանդինուպօլիս) ։ Այլ առ չերևելոյ դիւրահաւան տմ բանի, ասէ՝ թէ չէք հին

հին վկայաբանութեան 'ի ձեռին մերում · իսկ յայլս առ հասարակ տեսանեմք տանջանս և հրաշս · այդ ասէ՝ * այս երկու իրք արժանահաւատ լինին, յորժամ հաս,, տատեալ իցեն 'ի քաջայարմար հեղինակութիւն ||· և ահա մեք այնպիսի տեսանեմք զվկայաբանութեան մեր : Թէթև է և այն առարկուած, թէ յայնմ ժամի ոչ գոյր անտոնիոս անուն եպս նիկոմիդեայ ըստ գիտելոյ մերոյ · քանզի ասելի է, թէ նախ դիւրաւ մարթի շփոթիլ անտոնիոս ըստ անթիմոսի, որպ և պլինիոս ըստ ունի · երկր՝ յայնպիսի ժամուց հին հալածանաց՝ յորս և եպսունք նահատակէին, ո՞ կարէ յառաջ բերել զդասակարգութն եպսաց իւրաքանչիւր քաղաքաց · թող լըքէն հաւաքեալ ցէ կցկտուր, և այլք կարծեսցեն՝ թէ եգիտ զամ եպիսկոպոսունս :



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբ առաքելոյն Յակովբայ երկրորդի, որ և Յակոբ ալփեան :

Հ · յունուար · 22, եւ 10 : Պ [illegible] · [illegible] · 4 · եւ 11 · եւ 12 :: Յ · հոկտ · 9 : ( Լ · մայիս · 1 · եւ ըստ հին օրինակաց՝ 22 յունուար : ) Լ[illegible] · մայ · 1 · Հարք և [illegible] :



ԱՌԱՔԵԱԼՍ ԱՌ- կոչում անգամ 'ի նախնի հարց հետէ մինչև ցյետին քննիչս՝ խնդիրք եղեն դժուարին, մի՞ իցէ՝ եթէ երկու՝ յակովբոս կամ յակոբ անուն յա-

յաշակերտս քնի , բայց 'ի մեծէն և յառաջ-
նոյն յակոբոսէ զեբեդեայ . յդ է՝ արդեօք
կոչեցեալն յաւետարանի յակոբոս ալփեայ մի յեր-
կոտասանից՝ նոյն իցէ ը այնմ , որ կոչի յա-
կոբ փոքրիկ , և եղբայր տն , եթէ այլ և այլ : Սո-
վորաբար արևմտեան մատենագիրք՝ մանա-
ւանդ միջինք և յետինք՝ քան թէ առաջինք ,
մի և նոյն վարկանին . վնյ 'ի մէջ երկոտա-
սան առաքելոց յորժամ ասեն լատինք՝ մեծն
յակոբ , իմանան զզեբեդեայ որդին՝ զեղ-
բայրն յովհաննու . իսկ յորժամ ասեն յակոբ
փոքր , իմանան զեղբայր տն՝ զերմի հայրա-
պետն . ոչ թէ իցէ նա մի յերկոտասանից .
( զոր և տօնեն 'ի մայիսի . 1 : )
Ընդ հակառակն արևելեայք՝ որոց ձայնակ-
ցին և քաջքն 'ի բոլլանդեանս քննիչս լատի-
նացւոց ( անդ 'ի մայիսի . 1 ) , հասարակօ-
րէն յերկուս որոշեն զերկրորդդ զայդ : յա-
կոբոս ալփեան այլ , որ է մի յերկոտասանից ,
( թէ և կամիցի ոք փոքր կոչել առ զատանե-
լոյ յորդւոյն զեբեդեայ ) . և յակոբոս այլ՝
եղբայր տն և յակոբ փոքրիկ անուանեալ ,
( թէպէտև արդեամբք մեծանուն ) , ոչ 'ի
թուոյ երկոտասանից , այլ՝ գլուխ եօթա-
նասնից , որ և առաջին հայրապետն երմի :
Իւ ըն այսմ ստուգագոյն զանազանութն ե-
դեալ կայ 'ի տօնացուցի մերում ուրոյն տօն
յակովբայ եղբօր տն ընդ դաւթի մարգարէի
իբրև ազգակցի , ( զորմէ լիցի բան յիւրում
տեղւոջ 'ի կարգի աւագ տօնից , ) և ուրոյն
տօն յակովբու ալփեան ընդ շմաւոնի առաքե-
լոյ .

լոյ ․ և այս իսկ է յայժմուս սեպհական տեղի նոր 'ի կարգի յիսնակաց ․ ուր և յոյնք 'ի Հոկտեմբերի 9 ․ տօնեն ։ Այլ քանզի որպէս զայլոց յառաքելոց անտի դժուարաւ գտանին ստոյգ վարք և վկայաբանութիւնք , ոչ նմին և զմանէ սակաւ և մթին աւանդութիւնք և եթ գտանին , հարկ է և մեզ նովիմբ շատանալ ոչ առաջիկայ օրինակիս ։

Յայսմաւուրք մեր անորոշ պատմութիւն ըստ պատշաճի այսպէս ունի ։ * Սա առաքեալն յակովբոս ալփեան՝ եղբայր էր մատթէոսի աւետարանչին ․ որ եկեալ 'ի մաքսաւորութենէ աշակերտեցաւ քի ․ և կարգեցաւ 'ի դաս նախապատիւ երկոտասանիցն , ականատես և սպասաւոր եղեալ բանին՝ շրջելով ընդ նմա ։ Եւ յետ իջման հոգւոյն սրբոյ առաքեցաւ զինու հոգւոյն 'ի քարոզութիւն նորա աւետարանին քի ․ որով առնէր բազում նշանս և արուեստս 'ի մէջ հրէից և հեթանոսաց ․ և աշակերտեաց զբազումս 'ի հաւատս քի ․ քակեաց բագինս , և շինեաց եկեղեցիս ․ կործանեաց զկուռսն , և կանգնեաց զխաչն տէրունական և զսեղանն նորա ․ խափանեաց զգոհսն դիւաց , և մատոյց զպատարագն հաշտարար այ ընդ մարդկան ։

Ընդ որ նախանձեալ անօրինացն՝ կալան զնա , և՝ սաստիկ գանիւ հարեալ տանջեցին ․ և ստիպէին 'ի բաց կալ 'ի քէ , և լռել 'ի քարոզութենէ ․ և նա առաւել զօրանայր 'ի քէ , և յանդիմանէր զանաստուած մոլորութի նոցա ։ Այն զայրացեալ կռապաշտքն՝ մեծաւ ճաղանօք

ա-

անարգեցին զնա, և ետուն 'ի ձեռս հրէիցն. և հրէայքն յետ բազում չարչարանացն՝ զոր անմարդական ածին 'ի վ՟ր, մահու խաչի սպանին զնա ը՟ստ նմանութեան ք՟սի. և այնպէս խաչակից եղև Ճշմարիտ խաչելոյն ք՟սի, (իմն յոստրակէն քաղաքի եգիպտացւոց, ո՟ր այլք մեկն գրեն):

Իսկ այլք ասեն վ՟ս յակոբայ առաքելոյն, թէ 'ի սրուՃ քաղաքի (յերկրին ասորւոց) փայտիւ զգլուխն հարեալ, և այնպէս կատարեցաւ 'ի ք՟ս: Իսկ յայլ պատմութեց ասի, թէ 'է հնդիկս գնաց 'ըր առաքեալն յակոբոս ալփեան, և անդ կատարեցաւ 'ի ք՟ս‖:

Յայսոսիկ վերածին ա՟մ թերակատարաւանդութիք, զորս տեսանեմք և առ այլս. զի ը՟ստ առաջին ասացելոցն խօսի և յայսմաւուրք յունաց. և զկատարումն այսպէս նշանակէ. * որում ոչ տարեալ հրէից՝ խորհուրդ արարին, և 'ի վ՟ր հասեալ կալան զնա. և բազմօք չարչարեալ՝ զնա խստապէս և անմարդապէս, 'ի վախՃանի դաւազանօք գանեալ սպանին. որ փառաւոր առնէր զտ՟ր մեր յ՟ս ք՟ս մինչև ցշունչն յետին‖: Իսկ ժամագիրք նոցա հաստատէ զվերջին յաւելուած, յասելն արձակ բանիւ. * արդ ընթացեալ յընդհանուրս ո՟չ տենչացօղ ք՟սի, և չարչարանաց և մահու նախանձայորդ լեալ, 'ի խաչ բևեռի, և ո՟յ աւանդէ զհոգին‖: Որպէս և ստանաւոր բանիւս.

* Օ խաչն յակոբոս յօժարութե՟ տարեալ,
արժանի քեզ փրկիչ՝ ո՟չ և էին՝ ցուցեալ.

յին-

յիններորդում (սուր ամենեան՝ փոխան ժամուն), յակոբ ( ը̅ ոնդ. ) 'ի մի խաչ տարածեալ ‖ ։

Եղբայր մատթէոսի աւետարանչի կոչեն և յոյնք, յայտ է թէ՝ զի ոչ̅ ղևի ալփեայ կմ̅ որդի ալփեայ էր մատթէոս, նոյնպէս և յակոբոս՝ ալփեան ասի, կմ̅ ալփեայ, թ̅ որդի ալփեայ՝ ոչ̅ զմատթէոս․ երկոքին ևս մաքսաւորք ը̅ ոսկերբերանի, 'ի կափառնաում քաղաքէ գալիլեացւոց՝ ը̅ թէոդորետոսի ։ Իսկ զկատարումն նորին յակոբայ ալփեան՝ բազումք ը̅ նիկեփորոսի կալլիստեան գնեն լինել խաչելութ̅ յՕստին եգիպտացւոց 'ի քաղաքն ոստրակենայ, որ եղև յետոյ եպիսկոպոսանիստ ընդ պատրիարգութ̅ աղեքսանդրիոյ՝ ոչինչ հեռի 'ի գազայ և յելևթերուպօլսոյ․ և այս առեալ է 'ի պանծալի ներբողինէ նիկետայ պափղագոնացւոյ 'ի վր̅ սորին յակոբայ ալփեան․ որոյ ծաղկաքաղն ունի այսպ̅ ։ * Այլ ո՞չ գիտէ զյակոբոս այսօր հանդիսադիր տօնիս և ուրախութե̅ ս̅ց․ յակոբոս՝ այն, որ ոչ զեբեդեայ կոչի որդի, և ո՛չ որ եղբայրն ա̅ն անուանեալ՝ իբրև յովսեփայ որդի, այլ ալփեայ, ըստ որում հռչակեն ն̅ք աւետարանք .... Որդ մեծս այս և սքանչելիս յակոբ, որդի վճ̅պութե̅, այս ինքն է կենաց, զի զայդ յայտ առնէ անուն ալփեայ (իմա՛ ալէֆ կմ̅ ալֆա նշանագրի առաջնոյ), զառաջինն 'ի գիրս օրինաց դաստիարակեալ 'ի ստուերս և 'ի ձևս ... այն ինչ զօրինագիրն հոգւոյն կենաց ետես, և արժանի եղև լսել զերկ-

զերկնային կոչումն երկնաւոր վիճակին, 'ի միտ
եառ հաւատովք զոր 'ի նմայն ճշմարտութիւն
լուսափայլեալ հոգեպէս .... Այնուհետև
ուրացեալ զանձն, և ամ կամօք խոնարհութեն
յանձնէ հրաժարեալ, զյս միայն վերաշինէր,
'ի յս միայն կեայր, կախեալ զքսէ միայն,
ուշ եդեալ 'ի քս միայն, և բոլորովին 'ի քս
փոխակերպեալ .... Եւ ո՞վ կարէ ճառել կմ
հետազօտել զխորս սքանչելեաց և զածեղէն
իմաստութի կորովատեսն յակոբայ, և զերկ֊
նաւոր վիճակն նր և զածաբանութեն զխորին
տեսութիս ... ո՞ կարէ բովանդակել զնշանս
և զզօրութիս նր և զբժշկութիս յանուն տն ...
ո՞ զերկայն ուղեգնացութիս նորա, զվիշտս
վտանգի, զբազմապատիկ գրոհս և զյար֊
ձակմունս յանդգնութե հեթանոսաց. ո՞ր֊
չափ ինչ կրեաց երիցս երանելին 'ի պաշտօ֊
նէից ամպարշտութե յելևթերուպօլիս. ո՞ր֊
չափ ինչ 'ի գազա և 'ի տիւրոս և 'ի մերձա֊
կայ քաղաքս և 'ի շէնս այլազգեաց, ուր սա
զքս քարոզեաց, և դարձոյց զբազմութի նց
'ի քս ...

Այլ իմ զայս ամ թողեալ այնմ, որ սրբա֊
բոյն է ամի և գիտակ, զքո զայն, ո՜վ երա֊
նելիդ, հռչակեմ ևեթ զխաչ. զի զսա դե֊
ղապանծ պսակ եդիր ամ վաստակոց քոց և
մրցմանց հանդիսիդ: Ո՜ խաչն դրօշատեմ,
յոր տարածեալ զպատուականն և զոր ձեռս քո՝
փառաւոր արարեր զածքո և զտր: Ո՜ խաչն
դրօշատեմ և գովեմ, որ քեզ սանդուղք ե֊
ղև հասատութն՝ յերկրէ յերկինս ուղղորդ֊
վէր.

վերբերիչ . . . .

Որանզի և յեգիպտոս անդր միջամուխ լեալ, և ը՟երկար պանդխտեալ 'ի վրանս կեդարու առ եգիպտացիս ճշմարիտն իէլացի, և ընա-կակից լեալ ը՟ խաւարամած ազինն՝ անձն լու-սաւոր, իբրև այն ինչ որդիս լուսոյ և տու՟ն-ջեան առնէր զարժանաւորսն, այնուհետև փոխանակ ամենայնի 'ի խաչ ելանէ. 'ի մի-ում 'ի քաղաքաց եգիպտոսի՝ զոր ոստրակե-նա կոչեն, գառն զենեալ, և ա՟մ քաղաքաց և գաւառաց զք՟ս քաւիչ ցուցեալ իւրովք չար-չարանօք և նահատակութ՟ք ։ Իւ ոչ եթէ ա՟մ ծանր ինչ կիրս կրէր, կ՟մ յոգի տանջէր, և 'ի խաչահանութիւնս անդր զայրանայր, այլ առա-ւել իբրև երախտիս բարեաց առ 'ի նոցանէ ընկալեալ՝ այնպէս բարբառէր առ ն՟ն սիրո-ղաց, աղաչելով զանձանց փրկութ՟ի հոգալ, յորդոր լինելով յեգիպտական մոլորութ՟ե և 'ի սնոտի պաշտամանց զանձինս բուժել, և ազդ առնելով՝ զերկնի և զերկրի ճանաչել զՏ՟ր . . .

Այսպիսի բանիւք, ով մարդ. յո՟ի՝ այր ա՟յ սքանչելի, գեղեցիկ իմաստասիրեալ, և զօ-գուտ ժամս 'ի խաչէ անտի հաստատեալ զմերձակայս, ... այնուհետև լռեալ 'ի մարդ-կան խօսակցութ՟ե, և 'ի խորս սրտից լռութ՟բ ը՟ ա՟ն խօսակից, հանդարտօրէն խաղաղութ՟բ և քաղցրութ՟բ արձակեալ զոգիդ՝ փոխեցար փառօք, լուծեալ 'ի մարմնոյ. և վերաթռեալ սլացար 'ի տեղի սքանչելի խորանաց 'ի յարկս տանն ա՟յ. և 'ի ձայն ցնծութ՟ե մտեր յու-րա-

ը ախութ̃ի անդր քո՛ի տ̃ն քո . . . խաչին չար-
չարանօք նմանող եղեալ փրկչին . ուստի և
մեծապէս համարձակութ̃ի առեալ՝ կարող
ես զօրաւոր բարեխօս լինել առ Թ̃ղին փա-
ռաց տ̃ծ 'ի պէտս կարեաց եկեղեցւոյ . . . և
զմեզ հաղորդս առնել այնմ փառաց և երկ-
նային բարեաց 'ի ք̃ս յս̃ 'ի տ̃ր մեր ‖ :

# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

Սրբ̃ առաքելոյն Շմաւոնի նախանձայուզի , որ և Սիմովն կանանացի :

Հ . յուլիս . 30 : Յ . մայիս . 10 : Լ . հոկտ . 28 :
Ճառընտ . Ր . ձճդ . և Օ . ձլե . ապրիլ . 21 :
Հարք և Վկ̃նէից :

ԶՈՐՕՐԻՆԱԿ ՅԱԿՈԲ անուամբ եղեն երկու առաքեալք 'ի թուոյ երկոտասանից , և միւս այլ երրորդ՝ 'ի թուոյ եօթանասուն և երկու աշակերտաց , նոյնպէս եղեն յար և նման՝ Սիմոն կամ սիմէոն և կմ̃ շմաւոն անուամբ : Առաջին՝ սիմոն որդի յովնանու , որ կոչեցաւն կեփաս կմ̃ պետրոս , այ̃ վէմ , գլուխ երկոտասանից . վերջինն՝ շմաւոն ազգական ք̃նի , մի յեօթա-

Օ նաս

նաւանից . զորոց է տեսանել 'ի վարս նց . իսկ միջինն այն է , զոր տօնեմք յայսմ վայրի Ը յակոբայ երկրորդի , կոչեցեալն սիմոն կանանացի կմ Շմաւոն Նախանձայոյզ՝ 'ի կարգի երկոտասանից . զորմէ գտանեմք զառաջիկայ աւանդութիւս :

Ժամագիրք յունաց պատճառս առեալ 'ի կանանացի կոչմանէ սիմոնի , և 'ի գոլոյն նաթանայելի առն երևելւոյ առ առաքելովք 'ի կանայ գալիլեացւոց , ասէ . * Սա է սիմոն , որ և նաթանայել անուանեալ , և փեսայացեալ 'ի հարսանիս անդ՝ յոր քս կոչեցաւ իւրովքն աշակերտօք 'ի կանա , և զջուրն 'ի գինի փոխարկեաց . ուստի փեսայն զհարսանիս և զգինին թողեալ՝ բարեկամին և սքանչելարարին և հարսնածուին զհետ գնաց : Սա ընդ առաքեալսն էր 'ի վերնատան , յորժամ 'ի տեսիլ հրեղէն լեզուաց հանգեաւ հոգին . որով լցեալ , և Ը երկիր ամ գոգցես ընթացեալ՝ զամ բոցակիզեաց զբազմածութն մոլորութի ... և որպ թէ հրակերպ նախանձու նախանձաւոր լեալ այ ամենակալի՝ զկոչումն ընկալաւ զայս օրինակ՝ ( նախանձայոյզ ) || :

Զայս աւանդութի հաւատարիմ գտեալ և յայսմաւուրք մեր . ուր թէպէտև չիք որ առանձին նշանակեալ վս սիմոնի նախանձայուզի , բայց գտանի յիշատակն 'ի յունիսի . 30 . 'ի տօնի համօրէն առաքելոց . զի անդանօր յետ դնելոյ նախ ըստ չփոթելոյ ոմանց՝ թէ սա իւրն սիմոն իցէ եղբայր յակոբայ և

յուդայի, և Ղևէ զկնի եղբօր իւրոյ յակոբայ նստեալ իցէ յաթոռն եմ̃ի, (որ է շփոթել զսիմոն կանանացի ը̃ շմաւոնի ազգականին քնի,) լաւ ևս գրէ զկնի այսպէս: * Պատաք ՚ի գրոց, թէ սա է նաթանայէլն՝ որ ՚ի կանայ գալիլեացւոց. զի սիմոն կանանացին և շմաւոն նախանձայոյզն և նաթանայէլն մի և նոյն են. որպէս յուդայն՝ ղեբէոսն և թադէոսն ‖:

Իսկ թէ ո՞ւր քարոզեաց և ո՞ւր կատարեցաւ ՚նքն սիմոն, ունիմք հաստատագոյն ՚ի խորենացւոյն՝ թէ զառաջինն շրջեցաւ յարևելս, անցեալ ը̃ հայս, և յածեալ ՚ի պարսս. քանզի ասէ՝ ՚ի խնդրել ներսեհի արքայի ասրեստանի զթադէոս առաքեալ հայոց յաբգարէ արքայէն մերմէ ՚ի պէտս բժշկութեան, գրեաց առ նա աբգար այսպէս. * Ընկերաց նր̃ ՚ի գլխաւորաց (երկոտասանից) սիմոն̃ անուն՝ նա ՚ի կողմանս պարսից առաքեալ է. խնդիր արարեալ՝ լուիցես նմա, յորժամ և հայրն քո արտաշէս. և նա բժշկեսցէ զմ̃ հիւանդութիս, և ճանապարհ կենաց ցուցցէ ‖: Ըստ նմին օրինակի գրեաց և առ արտաշէս արքայ պարսից, թէ * մի յաշակերտաց նր̃ (յս̃ քնի) գլխաւորաց սիմոն անուն է ՚ի կողմանս քոյոյ տրուեդ. արդ խնդիր արարեալ՝ գտցես զնա ‖. և որ ՚ի կարգին:

Միաձայնի այսմ ըստ մասին և գրեալն ՚ի յայսմաւուրս հռովմայեցւոց՝ ՚ի հոկտ. իը̃. այսպէս. * Կատարումն երանելի առաքելոցն՝ սիմոնի կանանացւոյ, և թադէի յուդայ

դայ կոչեցելոյ. յորոց սիմոն յեգիպտոս, Թադէոս 'ի միջագետս քարոզեաց զաւետարանն. ապա 'ի միասին մտեալ 'ի պարս, յետ դարձուցանելոյ զանթիւ բազմութի ազգին այնորիկ 'ի քս̃' վկայութբ̃ կատարեցան ‖ ։ Զնոյնս այլով օրինակաւ նշանակէ յայսմաւուրք հայոց 'ի յունիսի. 30. * Սիմոն կանանացին . . . քարոզեաց յՅն̃ պարսից և բաբելացւոց. և արարեալ մեծամեծ սքանչելիս և հասեալ 'ի վերին հայս . . . կատարեցաւ յաւուսթա, որ 'ի կուսէ որմեայ կայ, և անդէն թաղեցաւ . . . Իսկ այլք ասեն, թէ . . . յեդեմ նստաւ եպս̃, և անդէն խաչեցաւ. և կէսք 'ի մօվրիտանիա ասեն կատարեցաւ շմաւոն, և այլք 'ի վրիտանացոց երկիրն ‖ ։ Որ պարտ է պահել միայն զքարոզելն սիմոնի յարևելս. իսկ զկատարումն դնել յարևմուտս՝ յետ անցանելոյն ը̃ աֆրիկէ. ոչ միաբան աւանդեն յոյնք և հայք ը̃ Ճառընտրաց ։ Քանզի յայսմաւուրք յունաց 'ի մայիսի 10. գրէ. * Սիմոն՝ մեծ առաքեալն քսի, մականուանեալն նախանձայոյլ . . . . կրկին պսակ խոստովանութե էառ. քանզի 'ի մաւրիտանիա և յափրիկեցւոց Յն̃ և 'ի բովանդակ լիբիա շրջեալ, և զբազումս յանհաւատից դարձուցեալ 'ի տր, յետոյ ուրեմն եկն 'ի բրիտանիա ( որ է Յ անգղիացւոց ). և 'ի խաչ բևեռեալ՝ աւանդեաց զոգի իւր ‖ ։ Զնոյն երկրորդէ և ժամագիրք նց. և յաւելու նուագել այսպէս.

* Տենչացաւ, քս̃, զայս քեզ սիմոն ասել,

նախանձիւ դառն կռիցքոյ չարչարանօք խաչի. ՚ի տասներորդումն ( ամսեանն մայիսի ) ՚ի խաչ հանին զառաքեալն զսիմոն Թշնամիք ‖ : Իսկ ողբերք այս աւանդիցս գտանի ՚ի Ճառընտիրս մեր , ունելով բանին այսպէս .
* Վկայումն սրբ առաքելոյն սիմոնի նախանձայուզի : Իմաստ և աստուածատեսն սիմոնի աշակերտ քրիստոսի , որ ՚ի սուրբ վերնատանն էառ ՚ի քրիստոսէ զձեռնադրութիւն իշխանութեան՝ գնալ ՚ի վերայ օձից և կոխել զզօրութիւն աներևոյթ թշնամւոյն , մինչ զմահու և զգժոխոց . և առեալ հրաման հերկել զերկիր , և խլել զփուշ մեղաց , և սերմանել զսերմ աստուածպաշտութեան ընդ ամենայն երկիր . ոչ վհատեցին սուրբ առաքեալքն հրամանաւ հոգւոյն սրբոյ ՚ի վերայ միմեանց զազգս ամ : Այլ եհաս վիճակ առաքելական սրբոյն սիմոնի յարևմուտս՝ յերկիրն մավրիտանիայ . և երթեալ անդ՝ լուսաւոր վարդապետութեամբն լուսաւորէր զամենեսեան՝ սերմանելով զբանն կենաց ՚ի խուժադուժ յազգն յայն , առնելով նշանս և սքանչելիս ՚ի ձեռն հոգւոյն սրբոյ . հաւանեցուցանէր զամենեսեան՝ դարձուցանելով ՚ի կռոցն մոլորութենէ յաստուածգիտութիւն , և լուսաւորէր սուրբ աւետարանաւն յորդեգրութիւն այ :

Շինեաց եկեղեցիս բազումս ՚ի բազումս քաղաքս և ՚ի գեօղս , և ՚ի գաւառս հաստատեաց քահանայս և պաշտօնեայս . և յանձն արար զնոսա հոգւոյն սրբոյ . և ինքն անցեալ գնաց ՚ի յաւրունաց գաւառն . և անդ սերմանեաց զաւետարանն փրկութեան . շինեաց ե-

եկեղեցիս, 'ւ հաստատեաց քահանայս և պաշտօնեայս . և եղև առ Նոսա աւուրս բազումս . և զերկեամ մի հաստատեաց զնն 'ի հաւատսն՝ որ 'ի քս :

Իսկ յետոյ անցեալ գնաց յազն վրիտացւոց (որ և բրիտանացիք) . և անընդունակ եղեալ՝ ոչ լուան քարոզութե աւետարանին, այլ դատեցան զնա 'ի խաչ հանել . և այնպէս կատարեցաւ Նը առաքեալն սրբոյն նախանձայոյզ : Իսկ սակաւ ժողովուրդք հաւատացին 'ի քս . և իջուցեալ զնա 'ի խաչէն՝ եդին 'ի գերեզմանի : Իսկ է յիշատակ սորին 'ի յայրինելի 'ի քսան և մի, 'ի փառս այ . ամէն ||:



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Կղեմայ հայրապետին :

Երկու են մեծանունն հայրապետք Կղեմէս անուանմամբ . մին՝ Հռովմայ, և միւսն՝ Անկիւրիոյ : Որդ թէպէտև տօնացոյցք մեր դնեն սոա պարզապէս՝ * Կղեմայ հայրապետի ||, առանց յաւելացուցիչ յաւելուածոյ՝ Հռովմայ, կամ Անկիւրիոյ, բայց կրկին պատճառք երևին ստուգել, թէ տօնս է առաջնոյն քան երկրորդին : Մի՝ զի սկիզբն կատարման Հռովմայեցւոյն յայս միջոց աշնայնոյ անկանի . և

միւս ևս՝ զի տօնախմբի 'ի մեզ զոյգ ընդ արևմտեան սրբոց, որ է բագարատայ և է գրիգորի եպսաց սիկիլիոյ։ Նաև յայսմ աւր վկք՝ քանզի և անկիւրիոյ հայրապետն ըակից է արևելեայց, և յիշատակ սոյն ևս տօնախմբի յամ եկեղեցիս, կամ եղև և մեզ հանգոյն յայսմաւուրաց մերոց՝ զերկոցունց ևս ձառեղ յայսմ վայրի, եթէ տօնելի, և եթէ յիշատակելի ծանիցէն առ մեզ։ Թող զի որ ինչ 'ի խորագրի վարուց երկրորդ կղեմայ պարզապէս գնէ․ * Տօն է կղեմայ եպսի ‖ Նա։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբոյն Կղեմայ՝ հռովմայ հայրապետին։

Յ․ Նոյեմբ․ 26։ Յ․ Լա․ Նոյեմբ․ 25։ Յ․ Ժմ․ Յ = Յ․ և որ ԵէԼ․ Նոյեմբ․ 24։ Լ․ Նոյեմբ․ 23։ Հռովմայ․ Ա․ 22ԼԲ․ և Բ․ 22Դ․ և Ե․ 2ԾԲ․ Նոյեմբ․ 24․ հմ 26։ Ս․ Եփրեմ, հմ ատորեսանայ․ 24։ Եփրեմ ժերասհայէ։ Գործք կղեմայ։



ՍՐԿԻԼԱՓՍՐԾ և առաքելանման ոք հայրապետն կղեմէս՝ գլուխ առաքելական կոչեցեալ հարց և վարդապետաց՝ զօրաւոր բանիւ և գրով, և անուն․

ու՛անի նահատակութ՟ե վկայութ՟ե, էր աշա-
կերտ պետրոսի վիմին հաւատոյ, և գործա-
կից պօղոսի վ՟դպին հեթանոսաց. ը՟ որում
պանծալի գովութեամբ յիշատակէ զնա 'ի
թղթին առ փիլիպպեցիս՝ գրեալ 'ի հռով-
մէ, յասել անդ. * որք յաւետարանին նա-
հատակեցան ը՟ իս կղեմաւ հանդերձ, և այ-
լովք գործակցօք իմովք, որոց անուանքն են
'ի դպրութ՟ե կենաց ‖ :

Արդ այս երանելիս կղեմէս, որ 'ի բարբառ-
հռովմայեցւոց կոչի Կղէմէնս, և թարգմանի
Գթած (1), էր ազգաւ հռովմայեցի՝ ծնեալ 'ի
հեթանոս ծնողաց, ը՟ ումանց՝ 'ի թ՟գրական
զարմէ՝ որդի փաւստոսի և մատթիդիայ,
այր ազնուական և ազնուաբարոյ, գիտնա-
կոր և հմուտ արտաքին հանճարոյ, ուսեալ
զա՟մ հռովմէական և զհելլենական դպրու-
թիւնս : Եւ եղև սկիզբն դարձին ն՟ր՝ 'ի լոյս
քարոզութ՟ե աւետարանի զառաջինն 'ի հռովմ.
և այն՝ ո՟չ աւանդի յումանց, 'ի լուր բանից
բառնաբայ առաքելոյն կ՟ ուրումն աշակեր-
տի առաքելոց. մինչև յետ ժամանակաց գնալ
կղեմայ անձամբ առ առաքեալս յարևելս,
և գտանել զպետրոս և աշակերտիլ նմա, և
նովաւ հանդերձ գալ 'ի հայրենիս իւր 'ի
հռովմ : Այլք ասեն, թէ 'ի ժամանակին՝ յո-
րում եկն վէ՟մն հաւատոյ պետրոս 'ի հռովմ,
և անդ հաստատեալ զգլխաւոր աթոռ իւր՝
քարոզէր զխորհուրդն ա՟ծպաշտութեան, և
որ քան զոր բազմանային հաւատացեալք 'ի
ն՟ր, կղեմէս զերծեալ 'ի նաւաբեկութէ՝ հան-

դիպեցաւ նոր առաքելոյն, և ընկալաւ 'ի նմանէ զքարոզութիւն ճշմարիտ աստուածգիտութեան. և աշակերտեցաւ նմա՝ եղև և ինքն զօրաւոր քարոզ աւետարանին Քրիստոսի: Այս քանզի էր ճարտար և աջողակ 'ի բան և 'ի գիր, եղև նօտար՝ գրիչ կանոնաց և հրամանատրութեան սրբոյ առաքելոյն. և առաւելագոյնս ինքն աջ և բազուկ գլխաւորացն պետրոսի և պօղոսի. և ձեռնադրեցաւ քահանայ և եպիսկոպոս 'ի սրբոյն պետրոսէ:

Զձեռնադրութիւն կղեմայ դնի յոմանց 'ի վերջին ամս ներոնի կայսեր՝ մօտ 'ի կատարումն նորին պետրոսի՝ առ 'ի լինել յաջորդ նորա անմիջական. յոր հայի և ասելն յայսմաւուրաց մերոց. * ձեռնադրեցաւ 'ի սրբոյն պետրոսէ 'ի վիճէն հաւատոյ փոխանորդ իւր, և յաջորդ յաթոռն հռովմայ ‖: Իսկ ըստ այլոց՝ թէպէտև 'ի պետրոսէ էր ձեռնադրեալ, և եղև իսկ յաջորդ նորա, բայց ոչ անմիջապէս, այլ զկնի լինոսի, զոր յիշէ պօղոս. որպէս և ոմանք դնեն զկնի կղետոսի կամ անակղետոսի յաջորդին լինոսի: Այս արդարև 'ի ժամանակս անդ հալածանաց՝ այս աշակերտք էին, որք ունէին զաթոռակալութիւն պետրոսի, երբեմն մին, և երբեմն միւսն. այլ այն՝ որ կենդանի մնայր զկնի նահատակելոյն առաջնոյ՝ տիրապէս համարի ըստ կարգի երկրորդ կամ երրորդ և կամ չորրորդ 'ի յաջորդս պետրոսի: (2)

Այս ըստ այսմ նոր հայրապետն կղեմէս՝ յետ կատարման պետրոսի և պօղոսի առ ներոնիւ

յա-

յամի տն իբր 66 , է զի իբրև պաշտօնակից զինուոր և կղերոսի , և է զի առանձինն հովուեաց զեկեղեցին հռովմայ՝ մինչև յաւուրս դոմետիանոսի կայսեր (3) , որ նստաւ զկնի տիտոսի յամի տն 81 ։ Թո՛ղ զոր ոմանք ասեն , թէ առ ժամանակ մի հրաժարեաց յաթոռոյն , զի մի՛ երևեսցի իբրև ժառանգութի ունել զգահն առաքելական ․ և նո սոցա՝ եհաս և զաւուրս տրայիանոսի կայսեր , որ նստաւ յամի տն 98 ։

Արդ մեծն կղեմէս արար բազմապատիկ շինութիս նորաձնեալ եկեղեցւոյ ՚ի հռովմ և յիմ արևմուտս , դարձուցանելով զբազումս ՚ի հռովմայեցւոց և ՚ի հրէից , յանձանձելով զժողովուրդ տն , և կարգելով պաշտօնեայս եկեղեցւոյ ։ Այլ կրեաց բազում վիշտս և հալածանս՝ ՚ի վախճանի արժանի եղև վկայական մահուան ․ քանզի իբրև կալան զնա հայրապետն և տարան յատեան կայսեր , նա համարձակ խոստովան եղև զքս տծ , և յանդիմանեաց զանուն մոլորութե կռապաշտից ։ Ընդ որ բարկացեալ թգւրն՝ ետ տանջել զնա չարաչար և դառնահարուածովք զանից ․ բայց նա հաստատկն առաքինի հաստատուն կայր ՚ի հանդիսի ճշմարտուե ․ ապա կախեցին զնա և քերեցին զամ մարմինն , և գրեթէ մինչև յոսկերսն հատուցին ։

Այլ ոչ կարացեալ խախտել զնա ՚ի քնէ՝ եղին զնա արքունի հրամանաւ ՚ի նաւ , և տարան յարտաքսահմանութի մինչև ՚ի քերսոնիսոն ․ ուր կապեցին ՚ի պարանոց սնին

վէմ

վէմ մի մեծ և ծանր, կամ զխարիսխ մի նաւուն, և արկին 'ի ծովն. և կմ̃ ը̃ն այլոց՝ յետ կալոյ յաքսորանս անդ քերսոնայ ամս հինգ՝ ապա ընկեցին զերանելին 'ի ծով. և այնպէս կատարեցաւ 'ի ք̃ս (4) ։ Այլ առանձին տեսչութը̃ կամացն ա̃յ՝ անկաւ մարմին կղեմայ 'ի ներքոյ կամարաձև ժայռի միոյ կմ̃ գմբեթաձև վիմի մեծի. ուր պահեցաւ ամբողջ առ ժամանակ մի ։

Ապա երևեցաւ ն̃ը վկայն ք̃սի հայրապետն կղեմէս՝ եպ̃սի գաւառին այնորիկ, և ասաց, թէ ե՛կ շինեա՛ 'ի վ̃ր մարմնոյ իմոյ տապան ։ Ասէ եպ̃սն. տէ՛ր իմ, տեղիդ այդ՝ զոր հրամայես տապան շինել, ծո՛վ է. ասէ նահատակն. դու ա՛ռ ընդ քեզ զուխտ եկեղեցւոյ քո, և եկեալ անդ՝ տեսանէք զփառսն ա̃յ ։ Նա յորժամ գնաց եպ̃սն 'ի ծովեզրն, դարձաւ ջուրն յետս, և եղև ցամաք մինչև 'ի վէմն. և երթեալ եպ̃սին՝ ետես զմարմին ս̃բ վկային անարատ 'ի ներքոյ վիմին. և ամփոփեաց 'ի տեղւոջն յայնմիկ յառանձին տապանի՝ ը̃ն հրամանաց ս̃բյն ։ Նա իբրև ել եպ̃սն և որ ը̃ն նմա էին մտեալ, երթայր ջուրն զհետ նց̃ մինչև 'ի տեղի իւր. և այնպէս դարձեալ ծածկեցաւ վէմն ։

Նա 'ի ցաւիլ ամենեցուն ը̃ն իրսն, և յասել՝ թէ զի՞արդ ոչ բարձաք զն̃ը նշխարսն 'ի ծովէ անտի, երևեցաւ ս̃բն կղեմէս արժանաւորաց ոմանց 'ի տեսլեան գիշերոյ, և ասէ. զնշխարս իմ բառնալ մի՛ կարծէք. այլ առնեմ ձեզ զայս շնորհ, զի յիւրաքանչիւր տար-

ւոջ

ւոջ 'ի յիշատակի կատարման իմոյ զջուրս ծովն 'ի բաց մեկնել ծովուդ՝ պատրաստես-ցես ձեզ տեղի ը̃ ցամաք գալ հետի մինչև 'ի տապանն իմ. * Այլ քանզի արդիւնք եղեն՝ (ասէ սր̃ն Եփրեմ արքեպսն Քերսոնի). վն̃ զի 'ի ժամանակէ անտի մինչև ցօրս ցայս՝ ամի ամի սքանչելիքս այս կատարին ա̃ծագործ մե-ծագործութ̃՝ 'ի վեր քան զհրաշս, զոր արար ա̃ծ 'ի ձեռն Մովսեսի 'ի ծովուն .... Ո՜վ սքան-չելեացս և փառաց վկայիս, որ ներգործին յա̃մ տարւոջ յաւուր նահատակութե̃ փառա-ւորելոյս այս. ք̃զի ջուրս ծովն՝ ոչ կան-խեցուք ասացաք, մեկնի գնայ համատարածն այն ծովանհուն, և անցս դիւրագնացի տայ բարեպաշտից :

Ի յա̃մ այսպէս եղելոյ՝ ա̃մ որ 'ի մէնջ բարե-պաշտասէր գաւառականք և քաղաքացիք Քեր-սոնի՝ իբրև լսէին զայս, խուռն ընթանային 'ի տեսիլ հրաշիցս : Ընդ որս և այր մի բա-րեպաշտ հանգերձ բարեպաշտուհի կնաւն և արու զաւակաւն՝ արարին զայն ճանապարհ՝ որ տանի 'ի տաճար սր̃յ վկայիս. և հասեալ 'ի տեղին, և զսքանչելիսն՝ որ անդ լինէր, տեսեալ, առին զձեռանէ մանկանն, և մտին յա̃ծաշէն տաճար անդ 'ի մէջ ծովու. և մեր-ձեալ առ տապանն՝ խնդրուածովք պաղա-տէին առ սր̃ն, մեղաց թողութի̃ նոցա առ-նուլ հայցելով, և մանկանն տալ մաղթե-լով կեանս երկար և անվթար՝ բարօրութե̃, և որ ինչ միանգամ անկ է ծնողաց խնդրել վն̃ միամօր զաւակի :

յուդայի, և՛ թէ զկնի եղբօր իւրոյ յակոբայ նստեալ իցէ յաթոռն երմի, ( որ է շփոթել զսիմոն կանանացի ը շմաւոնի ազգականին քռի, ) լաւ ևս գրէ զկնի այսպէս ։ * Գտաք 'ի գրոց, թէ սա է նաթանայէլն՝ որ 'ի կանայ գալիլեացւոց. զի սիմոն կանանացին և շմաւոն նախանձայոյզն և նաթանայէլն մի և նոյն են. որպէս յուդայն՝ ղեբէոսն և թադէոսն ‖ ։

Իսկ թէ ո՞ւր քարոզեաց և ո՞ւր կատարեցաւ նորին սիմոն, ունիմք հաստատագոյն 'ի խորենացւոյն՝ թէ զառաջինն շրջեցաւ յարևելս, անցեալ ը հայս, և յածեալ 'ի պարսս. քանզի ասէ՝ 'ի խնդրել ներսեհի արքայի ասրեստանի զթադէոս առաքեալ հայոց յաբգարէ արքայէն մերմէ 'ի պէտս բժշկութեան, գրեաց առ նա աբգար այսպէս. * Յընկերաց նր 'ի գլխաւորաց ( երկոտասանից ) սիմոն անուն՝ նա 'ի կողմանս պարսից առաքեալ է. խնդիր արարեալ՝ լո՞իցես նմա, յորժամ և հայրն քո արտաշէս. և նա բժշկեսցէ զքեզ հիւանդութիւնս, և ճանապարհ կենաց ցուցցէ ‖ ։ Սոյն նմին օրինակի գրեաց և առ արտաշէս արքայ պարսից, թէ * մի յաշակերտաց նր ( քն քռի ) գլխաւորաց սիմոն անուն է 'ի կողմանս քոյոյ տրուեդ. արդ խնդիր արարեալ՝ գտցես զնա ‖. և որ 'ի կարգին ։

Միաձայնի այսմ ըստ մասին և գրեալն 'ի յայսմաւուրս հռովմայեցւոց՝ 'ի հոկտ. իը. այսպէս. * Կատարումն երանելի առաքելոցն՝ սիմոնի կանանացւոյ, և թադէի յուդայ

դայ կոչեցելոյ . յորոց սիմոն յեգիպտոս , Թադէոս 'ի միջագետս քարոզեաց զաւետարանն . ապա 'ի միասին մտեալ 'ի պարսս , յետ դարձուցանելոյ զանթիւ բազմութիւն ազգին այնորիկ 'ի քս̃ վկայութբ̃ կատարեցան ‖ ։

Օնոյնս այլովք օրինակաւ նշանակէ յայսմաւուրք հայոց 'ի յունիսի . 30 . * Սիմոն կանանացին . . . քարոզեաց յաշխ̃ն պարսից և բաբելացւոց . և արարեալ մեծամեծ սքանչելիս և հասեալ 'ի վերին հայս . . . կատարեցաւ յաւուսթա , որ 'ի կուսէ որմեայ կայ , և անդէն թաղեցաւ . . . Այլ այլք ասեն , թէ . . . յԵղմ նստաւ եպս̃ , և անդէն խաչեցաւ . և կէսք 'ի մավրիտանիա ասեն կատարեցաւ շմաւոն , և այլք 'ի վրիտանացւոց երկիրն ‖ ։ Որ պարտ է պահել միայն զքարոզելն սիմոնի յարևելս . իսկ զկատարումն դնել յարևմուտս՝ յետ անցանելոյն ը̃ն ափրիկէ . ոչ միաբանն աւ անդէն յոյնք և հայք ը̃ն լատինացւոց ։

Քանզի յայսմաւուրք յունաց 'ի մայիսի 10 . գրէ . * Սիմոն՝ մեծ առաքելոյն քի̃ , մականուանեալն նախանձայոյզ . . . . կրկին պսակ խոստովանութե̃ էառ . քանզի 'ի մաւրիտանիա և յափրիկեցւոց աշխ̃ն և 'ի բովանդակ լիբիա շրջեալ , և զբազումս յանհաւատից դարձուցեալ 'ի քր̃ , յետոյ ուրեմն եկն 'ի բրիտանիա ( որ է աշխ̃ անգղիացւոց ) . և 'ի խաչ բևեռեալ՝ աւանդեաց զհոգի իւր ‖ ։

Օնոյն երկրորդէ և ժամագիրք նց̃ . և յաւելու նուագել այսպէս .

* Տենչացաւ , քս̃ , զայս քեզ սիմոն ասել ,

նախանձիմ դառն կրիցքոյ չարչարանօք խաչի. ՚ի տասներորդումն (ամսեանն մայիսի) ՚ի խաչ հանին զառաքեալն զսիմոն թշնամիք ‖ ։

Իսկ ողբերգ այս աւանդիցս գտանի ՚ի Ճառընտիրս մեր, ունելով բանին այսպէս. .

* Վկայումն սրբոյ առաքելոյն սիմոնի նախանձայուզի ։ Մեծիմաստ և իմաստուն սիմովն աշակերտ Քրիստոսի, որ ՚ի սուրբ վերնատանն էառ ՚ի Քրիստոսէ զձեռնադրութիւն իշխանութեանն՝ գնալ ՚ի վերայ օձից և կոխել զզօրութիւն անհերևոյթ թըշնամւոյն, որ զմահու և զգժոխոց. և առեալ հրաման հերկել զերկիր, և խլել զփուշ մեղաց, և սերմանել զսերմ աստուածպաշտութեան ընդ ամենայն երկիր. ուստի վիճակեցին սուրբ առաքեալքն հրամանաւ հոգւոյն սրբոյ ՚ի վերայ միմեանց զ[illegible]ամ։ Իսկ եհաս վիճակ առաքելական սրբոյն սիմովնի յարևմուտս՝ յերկիրն մավրիտանիայ. և երթեալ անդ՝ լուսաւոր վարդապետութեամբն լուսաւորէր զամենեսեան՝ սերմանելով զբանն կենաց ՚ի խուժադուժ յազգն յայն, առնելով նշանս և սքանչելիս ՚ի ձեռն հոգւոյն սրբոյ. հաւանեցուցանէր զամենեսեան՝ դարձուցանելով ՚ի կռոցն մոլորութենէ յաստուածգիտութիւն, և լուսաւորէր սուրբ աւետարանաւն յորդեգրութիւն Աստուծոյ ։

Շինեաց եկեղեցիս բազումս ՚ի բազումս քաղաքս և ՚ի գեօղս, և ՚ի գաւառս հաստատեաց քահանայս և պաշտօնեայս. և յանձն արար զնոսա հոգւոյն սրբոյ. և ինքն անցեալ գնաց ՚ի յաւիռոնաց գաւառն. և անդ սերմանեաց զաւետարանն փրկութեան. շինեաց

ե-

եկեղեցիս , ՝և հաստատեաց քահանայս և պաշտօնեայս . և եղև առ նոսա աւուրս բազումս . և զերկեամ մի հաստատեաց զնն 'ի հաւատսն՝ որ 'ի քն ։

Նա յետոյ անցեալ գնաց յՅն վրիտացւոց ( որ և բրիտանացիք ) . և անընդունակ եղեալ՝ ոչ լուեան քարոզութե աւետարանին , այլ դատեցան զնա 'ի խաչ հանել . և այնպէս կատարեցաւ նա առաքեալն սիմոն նախանձայոյզ ։ Նա սակաւ ժողովուրդք հաւատացին 'ի քս . և ի յջուցեալ զնա 'ի խաչէն՝ եդին 'ի գերեզմանի ։ Նա է յիշատակ սրբյն 'ի յապրիլի 'ի քսան և մի , 'ի փառս այ . ամէն ‖ ։



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սբյն Կղեմայ հայրապետի ։

Երկու են մեծանուն հայրապետք Կղեմէս անուամբ . մին՝ հռովմայ , և միւսն՝ անկիւրիոյ ։ Որդ թէպէտև տօնացոյցք մեր գնեն աստ պարզապէս՝ * կղեմայ հայրապետի ‖, առանց յատկացուցիչ յուեւրոանծոյ՝ հռովմայ, կամ անկիւրիոյ , բայց կրկին պատճառք երևին ստուգել , թէ տօնս է առաջնոյն քան երկրորդին ։ Մի՝ զի ամիսն կատարման հռովմայեցւոյն յայս միջոց աշնայնոյ անկանի . և

միւս ևս՝ զի տօնախմբի 'ի մեզ զոյգ ընդ արևմտեան սրբ̃ց, որ Ը բագարատայ և Ը գրիգորի եպ̃սաց սիկիլիոյ ։ Նմա յայսր ամի վր՝ քանզի և անկիւրիոյ Հայրապետն Ըակից է առաքելոյց, և յիշատակ սր̃ ևս տօնախմբի յա̃մ եկեղեցիս, կամ եղև և մեզ հանգոյն յայսմաւուրաց մերոց՝ զերկոցունց ևս ձառել յայսմ վայրի, եթէ տօնելի, և եթէ յիշատակելի ծանիցէն առ մեզ ։ Թող զի ո̃ր էին 'ի խորագրի վարուց երկրորդ կղեմայ պարզապէս զնէ ․ * Տօն է կղեմայ եպ̃սի ‖ ԱԾ ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբյն Կղեմայ՝ Հռովմայ Հայրապետին ։

Հյ․ Նոյեմբ․ 26 ։ Յյ․ Եռ․ Նոյեմբ․ 25 ։ Յյ․ ԺՄ․ = Յյ․ և որ էէլ․ Նոյեմբ․ 24 ։ Լ․ Նոյեմբ․ 23 ։ Հռովմէա․ Ա․ 22Է․ և Բ․ 22Գ․ և Լ․ 25Է․ Նոյեմբ․ 24․ կմ 26 ։ Մենոլոգ, կմ առաքեանոյ․ 24 ։ Ասորեմ հեբրաեցւոյն ։ Պորմ կղեմայ ։



ԱՌԱՔԵԼԱԳՈՐԾ և առաքելանմանն Հայրապետն կղեմէս՝ գլուխ առաքելական կոչեցեալ հարց և վարդապետաց՝ զօրաւոր բանիւ և գրով, և ան-

ուա-

ոռանի նահատակութը̅ վկայութե̅, էր աշա-
կերտ պետրոսի վիմին հաւատոյ, և գործա-
կից պօղոսի մե̅ծին հեթանոսաց. ը̅ որում
պանծալի գովութեամբ յիշատակէ զնա 'ի
թուղթն առ փիլիպպեցիս՝ գրեալ 'ի հռով-
մէ, յասել անդ. * որք յաւետարանին նա-
հատակեցան ը̅ իս կղեմաւ հանդերձ, և այ-
լովք գործակցօք իմովք, որոց անուանքն են
'ի դպրութե̅ կենաց ||։

Մարդ այս երանելիս կղեմէս, որ 'ի բարբառ-
հռովմայեցւոց կոչի Կլէմէնս, և թարգմանի
Գթած (1), էր ազգաւ հռովմայեցի՝ ծնեալ 'ի
հեթանոս ծնողաց, ը̅ սմանց՝ 'ի թ̅քրական
զարմէ՝ որդի փաւստոսի և մատթիդիայ,
այր ազնուական և ազնուաբարոյ, գիտնա-
կոր և հմուտ արտաքին հանճարոյ, ուսեալ
զա̅մ հռովմէական և զհելլենական դպրու-
թիւնս ։ Նա եղև սկիզբն դարձին նը̅՝ 'ի լոյս
քարոզութե̅ աւետարանի զառաջինն 'ի հռովմ.
և այն՝ ոչ̅ աւանդի յումանց, 'ի լուր բանից
բառնաբայ առաքելոյն կ̅ ուրումն աշակեր-
տի առաքելոց. մինչև յետ ժամանակաց գնալ
կղեմայ անձամբ առ առաքեալս յարևելս,
և գտանել զպետրոս և աշակերտիլ նմա, և
նովաւ հանդերձ գալ 'ի հայրենիս իւր 'ի
հռովմ ։ Այլք ասեն, թէ 'ի ժամանակին՝ յո-
րում եկն վէմն հաւատոյ պետրոս 'ի հռովմ,
և անդ հաստատեալ զգլխաւոր աթոռ իւր՝
քարոզէր զխորհուրդն ա̅ծպաշտութեան, և
օր քան զօր բազմանային հաւատացեալք 'ի
ն̅ր, կղեմէս զերծեալ 'ի նաւաբեկութե̅ հան-

դիպեցաւ նր̃ առաքելոյն, և ընկալաւ ՚ի նմա-նէ զքարոզութիւն ճշմարիտ ա̃ծգիտութեան. և աշակերտեցաւ նմա՝ եղև և ինքն զօրաւոր քա-րոզ աւետարանին ք̃ի։ Եւ քանզի էր ճար-տար և աջողակ ՚ի բան և ՚ի գիր, եղև նօ-տար՝ գրիչ կանոնաց և հրամանատրութե̃ սր̃ց առաքելոյն. և առաւելա̃պս իբրև աջ և բա-զուկ գլխաւորացն պետրոսի և պօղոսի. և ձեռնադրեցաւ քահանայ և եպիսկոպոս ՚ի

սր̃յն պետրոսէ։

Զձեռնադրութիւն կղեմայ դնի յամանց ՚ի վեր-ջին ամս ներոնի կայսեր՝ մօտ ՚ի կատարումն նր̃յն պետրոսի՝ առ ՚ի լինել յաջորդ նր̃ անմի-ջական. յոր հայի և ասելն յայսմաւուրաց մերոց. * ձեռնադրեցաւ ՚ի սր̃յն պետրոսէ ՚ի վիմէն հաւատոյ փոխանորդ իւր, և յա-ջորդ յաթոռն հռովմայ ‖։ Իսկ ը̃ս այլոց՝ թէ-պէտև ՚ի պետրոսէ էր ձեռնադրեալ, և ե-ղև իսկ յաջորդ նր̃, բայց ոչ ան̃միջապէս, այլ զկնի ղինոսի, զոր յիշէ պօղոս. որպէս և ոմանք դնեն զկնի կղետոսի կմ̃ անակղետո-սի յաջորդին ղինոսի։ Եւ արդարև ՚ի ժա-մանակս անդ հալածանաց՝ այս աշակերտք էին, որք ունէին զաթոռակալութի̃ պետրո-սի, երբեմն մին, և երբեմն միւսն. այլ այն՝ որ կենդանի մնայր զկնի նահատակելոյն ա-ռաջնոց՝ տիրապէս համարի ը̃ս կարգի երկ-րորդ կմ̃ երրորդ և կամ չորրորդ ՚ի յաջորդս

պետրոսի։ (2)

Եւ ը̃ս այսմ նր̃ հայրապետն կղեմէս՝ յետ կատարման պետրոսի և պօղոսի առ ներոնիւ

յա-

յամի տ՟ն իբր 66 , է զի իբրև պաշտօնակից զինոսի և կղետոսի , և է զի առանձինն հովուեաց զեկեղեցին հռովմայ՝ մինչև յաւուրս դոմետիանոսի կայսեր (3) , որ նստաւ զկնի տիտոսի յամի տ՟ն 81 : Աւող զոր ոմանք ասեն , թէ առ ժամանակ մի հրաժարեաց յաթոռոյն , զի մի երևեսցի իբրև ժառանգութ՟ի ունել զգահ՟ն առաքելական . և յ՟ն սոցա՝ եհաս և ցաւուրս տրայիանոսի կայսեր , որ նստաւ յամի տ՟ն 98 :

Որդ մեծն կղեմէս արար բազմապատիկ շինութիս նորածնեալ եկեղեցւոյ 'ի հռովմ և յի՟մ արևմուտս , դարձուցանելով զբազումս 'ի հռովմայեցւոց և 'ի հրէից , յանձանձելով զժողովուրդ տ՟ն , և կարգելով պաշտօնեայս եկեղեցւոյ : Այլ կրեղ բազում միշտս և հալածանս՝ 'ի վախճանի արժանի եղև վկայական մահուան . քանզի իբրև կալան զնա հայրապետն և տարան յատեան կայսեր , նա համարձակ խոստովան եղև զք՟ս տ՟ն , և յանդիմանեաց զան՟օտ մոլորութ՟ի կռապաշտից : Ընդ որ բարկացեալ թգ՟րն՝ ետ տանջել զնա չարաչար և դառն հարուածովք գանից . բայց նա հաստակն առաքինի համատառն կայր 'ի հանդիսի ճշմարտութ՟ե . վ՟յ կախեցին զնա և քերեցին զմ՟ն մարմինն , և գրեթէ մինչև յոսկերսն հասուցին :

Այլ ոչ կարացեալ խախտել զնա 'ի ք՟նէ՝ եդին զնա սրքոյնի հրամանաւ 'ի նաւ , և տարան յարտասահմանութ՟ի մինչև 'ի քերսոնիսոն . ուր կապեցին 'ի պարանոց ն՟դյն վէմ

վէմ մի մեծ և ծանր, կամ զխարիսխ մի նաւուու, և արկին 'ի ծովն. և կմ՟ ը՟ այլոց՝ յետ կալոյ յաքսորանս անդ քերսոնայ ամս հինգ՝ ապա ընկեցին զերանելին 'ի ծով. և այնպէս կատարեցաւ 'ի ք՟ս (4): Այլ առանձին տեսչութե՟ կամացն այ՟՝ անկաւ մարմին կղեմայ 'ի ներքոյ կամարաձև ժայռի միոյ կմ՟ գմբեթաձև վիմի մեծի. ուր պահեցաւ ամբողջ առ ժամանակ մի:

Ապա երևեցաւ նր՟ վկայն ք՟սի հայրապետն կղեմէս՝ ե՟պսի գաւառին այնորիկ, և ասաց, թէ ե՞կ շինեա՛ 'ի վ՟ր մարմնոյ իմոյ տապան: Ասէ ե՟պսն. տէր իմ, տեղիդ այդ՝ զոր հրամայես տապան շինել, ծով է. ասէ նահատակն. դու ա՛ռ ընդ քեզ զուխտ եկեղեցւոյ քո, և եկեալ անդ՝ տեսանէք զփառսն այ՟: Եւ յորժամ գնաց ե՟պսն 'ի ծովեզրն, դարձաւ ջուրն յետս, և եղև ցամաք մինչև 'ի վէմն. և երթեալ ե՟պսին՝ ետես զմարմին սր՟բոյ վկային անարատ 'ի ներքոյ վիմին. և ամփոփեաց 'ի տեղւոջն յայնմիկ յառանձին տապանի՝ ը՟ հրամանաց սր՟բոյն: Եւ իբրև ել ե՟պսն և որ ը՟ նմա էին մտեալ, երթայր ջուրն ըհետ նց՟ մինչև 'ի տեղի իւր. և այնպէս դարձեալ ծածկեցաւ վէմն:

Եւ 'ի ցուցիլ ամենեցուն ը՟ իրսն, և յասել՝ թէ զիա՛րդ ոչ բարձաք զնր՟ նշխարսն 'ի ծովէ անտի, երևեցաւ սր՟բն կղեմէս արժանաւորաց ոմանց 'ի տեսլեան գիշերոյ, և ասէ. զնշխարս իմ բառնալ մի՛ կարծէք. այլ առնեմ ձեզ զայս շնորհ, զի յիւրաքանչիւր տարւոջ

ւոջ 'ի յիշատակի կատարման իմոյ զաւուրս եօթն 'ի բաց մեկնել ծովուդ՝ պատրաստեսցէ ձեզ տեղի ՟Է ցամաք գալ հետի մինչև 'ի տապանն իմ. * Այս բանքն արգիւնք եղեն՝ (ասէ ս՟րբն եփրեմ արքեպ՟ն քերսոնի). մ՟ն զի 'ի ժամանակէ անտի մինչև ցօրս ցայս՝ ամի ամի սքանչելիքս այս կատարին ա՟ծագործ մեծագործութ՟բ՝ 'ի վեր քան զհրաշս, զոր արար ա՟ծ 'ի ձեռն մովսեսի 'ի ծովուն.... Ո՞վ սքանչելեացս և փառաց վկայիս, որ ներգործին յա՟մ տարւոջ յաւուր նահատակութե՟ փառաւորելոյս այս. ք՟զի ցաւուրս եօթն՝ ո՟չ կանխեցուք սպասացաք, մեկնի գնայ համատարածն այն ծովանհուն, և անցս դիւրագնալի տայ բարեպաշտից :

Այսմ այսպէս եղելոյ՝ ա՟մ որ 'ի մէնջ բարեպաշտասէր գաւառականք և քաղաքացիք քերսոնի՝ իբրև լսէին զայս, խուռն ընթանային 'ի տեսիլ հրաշիցս : Ընդ որս և այր մի բարեպաշտ հանդերձ բարեպաշտուհի կնաւն և որդւ զաւակաւն՝ արարին զայն ճանապարհ՝ որ տանի 'ի տաճար ս՟րբ վկային. և հասեալ 'ի տեղին, և զսքանչելիսն՝ որ անդ լինէր, տեսեալ, առին զձեռանէ մանկանն, և մտին յա՟ծաշէն տաճար անդ 'ի մէջ ծովու. և մերձեալ առ տապանն՝ խնդրուածովք պաղատէին առ ս՟րբն, մեղաց թողութի նովաւ առնուլ հայցելով, և մանկանն տալ մաղթելով կեանս երկար և անվթար՝ բարօրութ՟բ, և որ ինչ միանգամ անկ է ծնողաց խնդրել վ՟ն միամօր զաւակի :

Որդ կատարեալ զաղօթսն, և զսէրն ողջու-նեն զնշխարս՝ ելին յետս դարձան անդրէն. և յետ ելանելոյ նց՝ ջուրն միւսանգամ ըն-թացաւ 'ի տեղի իւր: Իսկ նց դարձուցեալ զաչս և տեսեալ, զի ծովացեալ էր՝ երբեմն այն ճանապարհ, շուրջ հայէին 'ի խնդիր զաւակի իւրեանց. այլ նա թողեալ մնացեալ էր առ տապանի սրբոյն. և այս ոչ առ մոռա-ցութէ ծնողացն, այլ՝ մյ բարեհաճութբն եղև. զի և աստանօր մեծապէս զարմանա-
գործեսցէ զվկայն:

Որդ իբրև ոչ գտին ծնողքն զզաւակն, և 'ի միտ առին՝ թէ 'ի խորս անդ թողաւ յինք-եանց մանուկն, զի՞նչ պարտ է ասել զհօրն ողբս, և զմօրն կականմունս. զի մմ տօնն այն պայծառ 'ի սուգ դարձաւ.... (և այն-պէս ողբային զնա զամն ողջոյն, մինչև հա-սին աւուրք տօնի սրբոյն 'ի միւս տարւոյն): Յայնժամ ասեն ցմիմեանս՝ յուշ ածեն զզա-ւակն իւրեանց. եկայք երթիցուք առ սրբն. զի թէ մնացեալ ինչ իցեն նշխարք զաւակին մերոյ, զոր ոչն կարծեմք, առցուք.... Իսկ յորժամ տեղի ետ ծովն, մտին նախ ինք-եանք 'ի խորս՝ տեսչանօք զաւակին բերենք,
և մմ ժողովուրդն զկնի նց:

Այն ինչ 'ի սաճար անդր հասանէին վկային, ով սքանչելեացս, տեսին զզաւակն իւրեանց կենդանի և ուրախ և կայտառ... ապա հար-ցանէին ցպատանին, թէ որպէս ապրեցար, ո՞ կենագործեաց զքեզ, ո՞ պահեաց, և ո՞ սնոյց: Իսկ մանուկն միով ձեռամբն բուռն

հա

հարեալ զտապանէն, և միւսումն մատնացոյց
նշանակեալ զ'ի ներքս եդեալն՝ պինի առնէր
որոց հարցինն. սա՛ իմ յետ այ և՛ կեանք և
անունդ, և ըդէմ որոց 'ի ծովու գազանաց՝
ամրութի՟ն եղև, սա զիս օր ըստ օրէ գեղեցիկ
դարմանէր ‖ ։

Իսկ թէ զիա՛րդ, լիագոյն հանգամանօք
յայտ առնեն ճառընտիրք մեր ընդ յայսմա-
ւուրս. իբր զի ցորչափ անդ էր մանուկն զտա-
րի մի, ծնօղքն ընդ մեռեալս համարելով
զնա՝ շաբաթ 'ի շաբաթէ տային յեկեղեցին
յիշատակ հոգւոյ նորա նշխար և բաժակ և
ձէթ. և քահանայն յիշատակէր զնա ընդ այլ
ննջեցեալսն պատարագաւ ։ Որ իբրև գտա-
մանուկն, և հարցանէին զնա՛, թէ ո՞րպէս
ապրեցար 'ի ծովէս, նա ասաց, թէ 'ի կա-
մարս՝ յորում տապանս է, ջուր ոչ եմուտ.
և էր լոյս պայծառ. և յա՟մ շաբաթ օր տայր
ինձ այր մի նշխար, ձէթ և գինի. և իմ զայն
կերեալ և արբեալ յագենայի. և մինչև ցնոյն
օր շաբաթուն ո՛չ քաղցնուի և ո՛չ ծարաւէի ։
Այլ որք տեսին և լուան, մեծապէս փառս
տային այ, որ առնէ սքանչելիս 'ի ձեռն սրբոց
իւրոց. և պապանձեցոյց զբերան հերձուա-
ծողացն, թէ յետ մահու պատարագն և ո-
ղորմութիւն չէ՛ օգուտ մեռելոյն ։ Այլ յայնմ
օրէ լուցանէր եպ՟ն զկանթեղսն 'ի վ՟ր տա-
պանին՝ և եղանէին. և 'ի միւս տօնին դայլին
և գտանէին զկանթեղսն 'ի վառ. և փառա-
ւոր առնէին զտ՟ծ ։ Թող զայլ հրաշս բժշկու-
թե՟ց՝ որք լինէին 'ի տապանէ սրբ՟յն առ ուխ-
տա-

տասուորս նր̃ : (5)

Արդ մնաց մարմին սբ̃յն կղեմայ Հայրապետի անդ ՚ի քերսոն մինչև յիններորդ դար . և յայնժամ յաւուրս Նիկողայոսի Հռովմայ Հայրապետի՝ որ նստաւ յամի տն̃ 858 , սբ̃ն կիւրղոս քարոզիչ և առաքեալ ըսլաւաց՝ փոխադրեաց զայն ՚ի Հռովմ . ուր եդաւ պատուով յեկեղեցին՝ որ յանուն նր̃ շինեալ էր անդ յառաջագոյն :

Ընդ պատուական նշխարս սբ̃յն կղեմայ գանելի են և մնացուածք ազգի ազգի գրուածոց նր̃ , որք զառաքելականն զօգցես ունէին հեղինակութի յառաջին դարս եկեղեցւոյ . և ինչ ինչ ընթերցեալ լինէր ՚ի կարգացմունս եկեղեցւոյ իբրև զթուղթս առաքելոց . ոմ̃ և առաքելական̃ անուամբ պատուէի ՚ի կղեմայ աղեքսանդրացւոյ հանգոյն բառնաբայ , տիմոթեայ և տիտոսի : Այլ յաղագս գրոց նորին լոցին բանք ՚ի կարգի ծանօթութեց , և առաւել վն̃ պատմականն բանից՝ որք հային յանձն նր̃ . ոմ̃ և վն̃ այլօրինակ վկայաբանութե̃ նր̃ և̃ մեռափրաստեանց : (6)

՚Ի հին գաւազանագիրս Հռովմայ Հայրապետաց գրեալ կայ և այս ինչ զսբ̃յն կղեմայ , թէ * սա յեօթն միճակս բաժանեաց զհաւատարիմ նօտարս եկեղեցւոյ . զի իւրաքանչիւր յիւրում միճակի ստուգեսցէ զանցս վկայից մեծաւ խնամով և փութով պնդութե̃ ‖ : Այս է̃ այսմ գլուխ ճանաչի և վկայասիրաց՝ սբ̃ Հայրապետս :

Ծ. Ա.-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Այնաբար և հետամտէս ստուգաբանեն յոյնք զա-
նուն կղեմայ՝ ուռ կմ ծիւղ՝ յիւրեանց բարբառ, ընդ-
եփրեմի քերսոնացւոյ. և ըստ այնմ նոյնպէս 'ի ժամա-
գիրս, * ոպ ուռ քսի իմանալի որթ եղեալդ կղեմէս՝
,, զածային գինին զեղեալ ||: Եւ զի հոլովականն ան-
ուանս գլխիս՝ լինի գլիմինդոս, ոպ և 'ի լտ. գլէմենս,
գլէմենդիս, վսյ առ նախնիս մեր կղէմէսն գրի նաև
կղեմենտոս:

(2) Հերոնիմոս. յղ. երևելի արանց. * Կղեմէս, զոր-
,, մէ առաքեալն պօղոս գրելով առ փիլիպպեցիս՝ ա-
,, սէ, կղեմաւ հանդերձ և այլովք գործակցօք իմովք,
,, չորրորդ յետ պետրոսի եպս հռովմայ. վս զի երկ-
,, րորդն լինոս եղև, և երրորդն անակղետոս. թէ-
,, պէտև բազումք 'ի լատինացւոց՝ երկրորդ յետ պետ-
,, րոսի առաքելոյ համարին լինել զկղեմէս ||. ոպ և
ոչ սակաւք յարևելեայց:

(3) Յայտնապէս յաւուրս դոմետիանոսի կայսեր ասեն
զկղեմայական հանդէս և զարտասահմանութիւն սբյն կղե-
մայ՝ ճառընտիրք մեր, և Հ. և Յ. Ժմ: ուր Յ. բս. և
Լ. յաւուրս տրայիանոսի գրեն՝ ըն մետափրաստեանց.
որ ոչն կարէ կալ նաև ըստ դասակարգի քհնյապետաց
հռովմայ. քանզի թող զի վկայեաց և հերոնիմոս՝ թէ
բազումք զկղեմէս դնեն երկրորդ զկնի պետրոսի, ե-
դեալ թէ լեալ իցէ և չորրորդ, ոչ կարէ հասանել յա-
ւուրս տրայիանոսի. զի յաւուրս նր նստեալ էր արդէն
եւարիստոս յաջորդ կղետոսի և անակղետոսի՝ ըստ սովո-
րական ժմկագրութեն: Բայց թողեալ և զկարծիս ժա-
մանակագրաց, ասացէն ամենեքին ընդունին՝ թէ կղեմէս
յորժամ աշակերտեցաւ պետրոսի և պօղոսի էր այր կա-
տարեալ, և իբրև մի 'ի գործակցաց նոցունց յիշի 'ի պօ-
ղոսէ, վսյ եթէ հասանէր մինչև յաւուրս տրայիանոսի՝
ոպ եհաս յոհաննէս աւետարանիչ, դուցէ ծերագոյն
լինէր քան զնա՝ անցեալ զհարիւրամենիւք. զոր ոչ ոք
ցուցանէ կմ ընդունի 'ի ժամանակագրաց:

(4) Չէ ինչ, եթէ գիցես ըստ Ծ. և Հ. կացեալ ըն պա-

րա-

րանոց սրբոյն՝ վէմ մի մեծ յոյժ և ծանր, և կամ ընդ Լ. և
Ց. կապեալ զխարիսխ. յանձն առցուք և զխորհրդա-
ծութիւն յոյն երգաբանին 'ի ժամագիրս. * արկեալ կղե-
,, մէս 'ի խորս խարսխաւ՝ առ Քրիստոս եհաս 'ի խարիսխն վեր-
,, ջին ||: Բայց զի՞նչ արասցուք զմեծ սխալանս՝ որ աս-
տի եմուտ 'ի մէջ յունաց. զի որովհետև խարիսխն յու-
նարէն և լատիներէն կոչի անքօրա կամ անքիւրա, և զքա-
ղաքն անկիւրիոյ գաղատացւոց նովին անուամբ և ստու-
գաբանութեամբ յորջորջի առ նոսա անքիւրա կամ անչիւրա,
որ է ասեն՝ խարիսխ, առ այս թէ ո՞րպիսի պարագայ պատ-
մութեան եմուտ 'ի Ց. բս. յասելն զսրբոյն կղեմայ. * տան-
,, ջի, և ապա յանկիւրիա գաղատիոյ արտաքսեմանի.
,, յորում և յորմ ուրեք փակի՝ խցանելով զգուան նորա
,, քարամբք. ուտի և ըղեւամբք միայն մնանի. և այս-
,, պէս նեղեալ՝ վախճան առնի կենաց: Եւ ապա՝ ոչ
,, ասեն, ոմանք 'ի հաւատացելոց առեալ զպատուական
,, նշխարս նորա՝ բերին 'ի քերսոնիսոն. որ և 'ի բաց ընկե-
,, ցաւ 'ի ծով 'ի կուապաշտից. և բիւր հրաշս ներգոր-
,, ծէ մինչև ցայսօր 'ի փառս Քրիստոսի ||: Այսպէսն պարծանք
էր ինձ գալուստ սրբոյն կղեմայ 'ի մերս անկիւրիա, ուր
յետոյ փայլեաց և միւս կղեմէս սքանչելի հայրապետ
անկիւրացւոց. բայց անաչառ խօսելով՝ այդ է յայտնի
սխալումն մոլեալ 'ի համաձայնութենէ՝ օտար յառմ վկայաբա-
նութեանց, որք ուղղակի 'ի հռովմայ 'ի քերսոնիսոն աւան-
դեն զնա տարագրեալ կենդանւոյն: Իսկ թէ ո՞ւր է
քերսոնիսոն կամ քերսոն, և քանի՛ պատիկ, յայտ է յաշխա-
գրութենէ:

(5) Զսքանչելիս ծովուն՝ զոր ընդ մասին շարագրոյն գրէ
եփրեմ քերսոնացի (որոյ ճառն տպագրեալ է յունարէն
և լատիներէն 'ի վախճան գործոց սրբոյն կղեմայ), համա-
ռօտէ և պատուականն բեդա, զոր և նշանակէ հենո-
քենիոս բոլլանդեան 'ի սկզբան ա հատորոյն ապրիլի.
զնոյն համառօտէ և Ց. ժմ. ոչ և Ց. բս. պատկերա-
գրութեամբ՝ յար և նման պատմութեան. իսկ ընդ մասին վերջ-
նոյ՝ որ կայ 'ի Ճ. և Հ. յայտ է թէ 'ի լիակատար պատ-
մութեանց յունաց առեալ, յիշէ և վանական վէպ 'ի հարց-
մունս իւր:

(6) 'Ի հանդիսացեալ գրոց սրբոյն կղեմայ՝ ծանօթ են ազ-
գի մերում հաւաքմունք առաքելական կանոնաց և սահ-

մանագրութեանց գտեալք 'ի սկիզբն կանոնգրոց ։ Այլ զնմ գրուածս՝ որք կրեն զանուն Կղեմայ, գտանես Ճոխաբար 'ի մի հաւաքեալ և տպագրեալ յն . և լտ . հանգերձ ազգի ազգի ծանօթութեամբ երևելի արանց, զորմէ չէ տեղւոյս հետաքննել։

Այն է մեզ գիտուն արժանի յայսմ վայրի, զի 'ի կարգի երկբայական գործոց նր Ճանաչի և գիրքն պատմական և Ճառական՝ կղեմենտեան կմ կղեմեան կոչեցեալ . զոր ոչ այնչափ ըստ բոլորին յօտարաց յօդեալ համարին քննիչք, որչափ թէ ուրեք ուրեք խանգարեալ . զի թէպէտև ցորեան բազում կայ յայնմ անդաստանի, բայց յարգիւք խառն . թո՛ղ զի խիթան ոմանք և յորոմանց ։ Արդ 'ի մատենի անդ յառաջ բերի թուղթ յանուն պետրոսի առ յակոբոս, թուղթ կղեմայ առ յակոբոս, և Ճառք պէսպէս . յորս զառաջին տեղին ունի պատմութի քարոզութե պետրոսի առաքելոյ, և դարձ նորին կղեմայ . զոր մն սփռեալ գոլոյն առ ըստ մս՝ արժան է սակաւուք քաղել 'ի պէտս հետաքննին եղելոց, սկիզբն ունելով այսպ։
* Ես կղեմէս՝ հռովմայեցւոց քաղաքացի գոլով, զառա-
,, ջին իսկ հասակն զգաստութբ կեալ մարթացայ, ուր
,, մասծութին իմ 'ի մանկուԷ ձգէր՝ զոր յիսն ցանկութ՝
,, յանարատութիս և յաշխատութիս . զի անկեալ էր յիս
,, խորհուրդ, ո՛չ գիտեմ ուստի՛ սկիզբն առեալ, մն մա-
,, հու ստէպ առնել յիշատակութիս, թէ երբեմն մե-
,, ռայց, և ոչ ևս եղէց || ։ Նոյնօրինակ առէ՝ մն կառաբածի սի խորհուրդք նելէին զիս . և որչափ կամէի յանձնէ թօթափել, այնչափ զօրանայր յիմ մր, և հալէր և մաշէր զիս տխրութբ և թախծութբ . արդ առ 'ի գտանել զոք ինձ մխիթար և յուսադիր մն անմահութ, կմ առ ուսանելոյ զստոյգ ինչ, առեալ զանձն իմ յուսումն փիլիսոփայական, գտանէի զհոգին անմահ գոլ . բայց և զհակառակն տեսանէի ձեռնարկել ։ Յորժամ զանմահութն լինէր բան, ուրախ լինէի . իսկ յորժամ զմահուանէ, տրամէի յոյժ . և յոչ գտանելն զելս՝ յոյժ վարանէի ։ Գուն գործէի խաբել անձամբ զանձն, թէ զի՛մ է քեզ տրտում կալ . առ այժմ վայելեա՛ զնս . և յորժամ մահ հասանիցէ, յայնժամ տրամեսցիս . բայց քանզի իմաստունքն 'ի փիլիսոփայս առէին, թէ որ չարաչար ապրի, մատնի յետոյ 'ի տարտարոս և 'ի տանջանս

մշտնջենաւորս, կամէի փարատել զայդ 'ի մտացս, ոչ թէ թերևս սուտ իցեն բանքդ այդ. այլ անդրէն յուզէին միտք իմ, առելով. ապա եթէ սոյդ իցեն, զի՞նչ արարից. ապա ուրեմն լաւ ևս է բարւոք քաղաքավարել. զի թէ սոյդ գտանիցի, բարւոյն եղէց ժառանգ, և ոչ չարին:

Լսէի՝ թէ յեգիպտոս կան մոգք, որք զհոգիս մեռելոց կոչեն հմայիւք. խորհեցայ երթալ անդր և փորձել՝ առիմանալ զվիճակ հանդերձելոց. բայց ոմն յիմաստուն փիլիսոփայից արգել զիս 'ի խորհրդոյ անտի, թէ ոչ բարւոք է բանդ. մի՝ զի հոգին կարող է չհնազանդիլ հմայից, և միւս ևս՝ զի ատելի են այ, ոյք զհոգիս ելեալս 'ի մարմնոյ հնարին լլկել կախարդական կարգամամբք:

Մինչդեռ յայս ծուփս մտաց կայի, յաւուրս Թշքրուն տիեզերեայ կայսեր լուեայ, թէ 'ի Հրէաստան իջեալ է պատգամաւոր առ յայ՝ բարերար առ ամենեսեան՝ այց առնել Տի, և աւետարանել զյաւիտենական Թշքրունն այ, որում հասանել ունին բարիք և ընտրեալք. և թէ 'ի հաստատուն բանից իւրոց առնէ զնմ աքանչելիս մեծամեծս, մինչև բժշկել զնմ ախտս, հալածել զդևս, յարուցանել և զմեռեալս. և թէպէտև զառաջինն ոչ հաւատայաք համբաւոյս այսմ հնչելոյ մինչև 'ի Հռովմ, բայց հետզհետէ զօրացաւ համբաւն. մինչև քննել մեզ 'ի ժողովս ժողովս, թէ գուցէ ճշմարիտ իցէ:

Եւ եղև 'ի նմին տարւոջ՝ յորում այսպիսի խորհուրդք լինէին 'ի քաղաքիս յաւուրս աշնայնոյ, յանկարծակի ոմն երևեցաւ յատենի հրապարակին, որ գոչէր մեծաձայն. * Ո՛րք Հռովմայեցիք լուարուք, որդին այ 'ի Հրէաստա-
,, նի կայ աւետարանել ամենեցուն, որոց կամիցինն,
,, զկեանս յաւիտենականս. միայն թէ կեցցեն ըստ կամաց
,, առաքչի նր՝ հօր ||. և այլն: Եւ յանտես առնել Հռովմայեցւոց՝ ես ասացի ցանձն իմ. զի՞ է քեզ հեղգալ. ահա զոր խնդրէիրն, կարես գտանել զլուծումն տարակուսանացդ. վաղ եղի 'ի մտի անտեսել զգործս իմ, և երթալ 'ի Հրէաստան: Այլ անցին ժամանակք, և ես ոչ կարացի ճանապարհորդել. մինչև յետոյ ուրեմն թողեալ զնմ զգործս՝ մտի 'ի ծով, և նաւեցի յԱղեքսանդրիա: Անդ հարցանէի զփիլիսոփայս մը սոցին իրաց. և նք

ասեն

տանն ցիս · զոր ասեսդ լինել 'ի հռոմ՝ մեք ոչ գիտեմք · բայց զեղեալն 'ի հրեշտակին լուեմք 'ի բազմաց : Եւ 'ի խնդրել խմում զոք՝ որ լցէ յՃէ անուր հրեշտականեայց և ականատես իրացն, գտի զոմն յազգէ եւրոպայեցւոց՝ բառնաբաս անուն, որ ասէր զանձնէ աշակերտ լինել նորին որդւոյն այ · և լուեալ զքարոզութի նր · զորով ծաղր առնէին հեթանոսք · բայց իմ լուեալ զբանս բառնաբայ հրապարակաւ և առանձինն՝ ոչ կարացի հեռանալ 'ի նմանէ · և 'ի մեկնել նր յաշխարհանգրկոյ՝ բանս եդեալ Է նմա, յետ սակաւուց ելի և ես զկնի նր · և մտեալ 'ի նաւ՝ եկի 'ի կեսարիա պաղեստինոյ՝ գտանել զնա :

Այլ Է կոխել խմում 'ի ցամաք, և 'ի խնդրել զհիւրանոց, լուեալ՝ թէ պետրոս անուն աշակերտ յՏի որդւոյն այ ունի 'ի վաղիւն վիճել Է սիմոնի սամարացւոյ · ապա գտի զբառնաբաս · նա առեալ տարաւ զիս առ պետրոս : Այնուհետև ձոխագոյն գրէ զՏմ անցս քարոզութեան պետրոսի, և վիճաբանութե նր Է սիմոնի մոգի, ում և զզարձ իւր Է կարգի · ուր յիշի և մկրտութի մատթիդեայ մօր նորին կղեմայ, և երկուց եղբարցն փաւստինոսի և փաւստինիանոսի · ում և փաւստոս հայր նր՝ որ աժ լինել յազգականութէ կայսեր, յետոյ հաւատայ 'ի քս :

Կայ և ուրոյն թուղթ կղեմայ առ յակոբոս, յորում առաջի դնի համառօտուե գործոց պետրոսի, և վարք նորուն կղեմայ · որ է իբրու քաղուած նախաճառեալ գրոց նր 'ի ձեռն այլոց : Արդ թէպէտև մեք կարօղ էաք 'ի սոցանէ ծաղկաքաղ հաւաքմամբ յօրինել զընդարձակ վարս սրբյն կղեմայ, բայց քանզի 'ի միոյ կողմանէ այս գործք են յերկբայական կարգի, և 'ի միւս կողմանէ չգտաք և յազգի մերում զհին թարգմանութի սոցին, այլ զայլ համառօտեալ վարս, զառ համարեցաք զայն : Զատուք ինչ վր այսպիսի զգուշուե և յՃարձակ վկայաբանութէ մետափրաստեանց · այն է՝ զորոյ վր մասն եւթ յառաջ բերէ սուրիոս · այլ ամբողջ գործն կայ տպագրէլ 'ի փոխճան գրոց կղեմայ՝ համեալ 'ի յոյն ճառընտրաց · զոր կամիմք առանձին դրոշմել, զսկիզբն բառ առ բառ թարգմանելով, և զընթացս Է խնայից քաղելով, օրինակ զայս :

* Երրորդ՝ հռովմայեցւոց եկեղեցւոյն առաջնորդ եկաց
,, կղեմէս, որ հետեւող եղեալ վէպութեան առաքելոյն
,, պետրոսի՝ այնպէս փայլեաց զարդուք վարուցն, մին-
,, չեւ հրէից եւ հեթանոսաց եւ ամ ժողովրդեան քրիստո-
,, նէից հաճոյ գտանիլ.... Սքանչելիք եւ սոցին մերձա-
,, ւորք բարեմարդութեն ծաղկօք՝ այս. եւ ամ մարդոյ
,, բանաւորի հաճոյանայր. զի անքանից հաճոյ լինել
,, ոչ ունի՝ որ միանգամ այս հաճոյական ցուցեալ լինի.
,, վոկ ոչ երկեան ՚ի նախատանաց մարդոց անքանից այ-
,, նքիկ, որք եդին ՚ի մտի ոչինչ խորշել յանհաճոյ լի-
,, նելոյ բազմաց. որոյ վն դէպ եղեւ երանելւոյն կղէ-
,, մայ՝ հռովմայ գահին եպսի՝ չերկնչել ՚ի բարեկամէ
,, ներոնեայ թագաւորի:
,, Վն զի յորժամ սորին վէպութք կինն սիսինոսի թէո-
,, դորա զարձեալ առ ած՝ փոյթ էր ՚ի կատարութն պաշ-
,, տաման, ը այս վառեալ նախանձու այր նր՝ թակար-
,, դիւք վարանել կամէր զնա ՚ի գնալն յեկեղեցի: Զի
,, ՚ի մտանել նր անդր՝ եւ ինքն ընդ այլ դուրս մտեալ՝
,, սկսաւ խուզարկու լինել իրացն. եւ յաղօթել սբյն
,, կղեմայ, եւ յասել ժողովրդեան զամէնն, սիսինոս ՚ի
,, նմին վայրի եղեւ կոյր եւ խուլ, մինչ ոչ եւս կարօղ լի-
,, նել տեսանել կմ լսել ինչ ||:

Այս (ըստ երկարապատում բանիւք գրի,) զձեռանէ առեալ ծառայիցն՝ հանին զնա արտաքոյ եկեղեցւոյն. իսկ թէոդորայ իմացեալ զիրսն՝ ոչ եւ ՚ի տաճարէ մին-չեւ ՚ի կատարումն աղօթից եւ պաշտամանն, եւ աղաչէր զսբ արտասուօք՝ ողորմել առն իւրում. եւ յետ աղօ-թիցն մատուցեալ առ սբն կղեմէս՝ պատմեաց զեղելսն, թէ որպէս սիսինոս ՚ի յանդգնիլն տեսանել եւ լսել՝ որոց չէր արժանի, պատժեցաւ ՚ի տնէ կուրութբ եւ խլութբ: Եւ սբն ելեալ գնաց ը թէոդորայի ՚ի տուն նր. եւ աղօթս արարեալ ՚ի վր առնն՝ բժշկեաց զնա: Իսկ սիսինոս իբրեւ ողջացաւ, տեսեալ զկղեմէս ընդ-ունկնոյ իւրում՝ առաւել բորբոքեցաւ մոլեգնութբ, որպ թէ կախարդանօք որսացեալ իցէ նր զկին իւր, եւ նա-վին մոլութբ պատուհասեալ զինքն, եւ դարձեալ ողջա-ցուցեալ. վսյ հրաման ետ ծառայից իւրոց ունել եւ կապել զկղեմէս: Իսկ նք շուարեալ՝ կալան կապեցին զսիւնս անկեալս ՚ի գաւիթս տանն, եւ ձգէին այսր

անդր.

անդր . և թուէր սիսինիոսի՝ թէ նք զկղեմէս կապեցին և քարշեցին ։ Յայնժամ ասէ ցնա կղեմէս . խստասրտութիւն քո 'ի քարինս օրինակեցաւ . զի որ զքարինս համարիս ածս, վիճակեցար քարշել փոխանակ մարդոյ զքեզ ։ Իսկ նա ոչ է կապելոյ կարծելով խօսել՝ ասէ . Ես տաց կորուսանել զքեզ 'ի կենաց յօրինակ ամ կախարդաց ։

Յայնժամ սրբն կղեմէս աղօթս արարեալ՝ ել գնաց անտի, պատուիրեալ և թէոդորայի մի՛ դադարել յաղօթից, մինչև այց արասցէ տր սուն նր ։ Եւ 'ի կալ թէոդորայի յաղօթս արտասուօք, է երեկս երեւեցաւ նմա այր մի պատուական ալեօք, և ասէ . վն քո ողջ եղիցի սիսինիոս . ոչ զի լիցի զոր ասացն եղբայրն իմ պօղոս առաքեալ, սր լիցի այրն անհաւատ՝ հաւատացեալ կնաւն . և զայս ասացեալ՝ եղև աներևոյթ . և 'ի միտ եառ թէոդորա՝ թէ պետրոս առաքեալն էր այն, որ երեւեցաւ նմա ։ Յայնժամ կոչեաց սիսինիոս զթէոդորա, և աղաչէր զնա աղօթել առ ած իւր, զի անցուսցէ յիւրմէ զկուրուն . քանզի լուսաւորեալ 'ի տնէ՝ ծանեաւ զմոլորութիւն իւր, և զմոլար կարծիսն՝ զոր ունէր զքրիստոնէից ։

Աղա այդ արարին սրբ հայրապետին կղեմայ . և 'ի գալ նր անդրէն 'ի տուն նց՝ մեծաւ սիրով և պատուով ընկալաւ զնա սիսինիոս . և ունկնդիր եղեալ վրդութե նր՝ հաւատաց, և անկեալ առ ծունկս կղեմայ՝ գոհանայր զայ . և 'ի մերձենալ զատկի՝ մկրտեցաւ ամ տամբ իւրով և մերձաւորօք ։ Եւ եղեն ամ հոգիք 'ի տանէն սիսինիոսի՝ զորս մկրտեաց սրբն կղեմէս, արք և կանայք և մանկունք, անձինք չորեքհարիւր քսան և երեք . զի երեւելի էր այրն . և նովաւ դարձան բազումք 'ի ծանօթից նր՝ որք էին ականաւորք 'ի դրան արքունի, և բարեկամք ինքնակալին ներուայ ։ ( Յայսմ հետէ օրինակէ և սուրիոս զմետափրաստէս ) ։

Ընդ այն ժամանակս 'ի թգրել տրայիանոսի՝ պօպլիոս տարկուինիանոս կոմս, որ վերակացուն էր գենի հռովմայեցոց, տեսեալ զաճումն քրիստոնէութե 'ի հռոմ, խօսեցաւ ը դատաւորս և ը քաղաքապետին վն բանիցս այսոցիկ . և տուեալ նց կաշառս բազում՝ գրգռեաց ը դէմ քրիստոնէից ։ Արդ 'ի քաղաքապետութե մամեր-

տխուր յարեաւ աղմուկ 'ի Հռովմ ընդդէմ Կղեմայ հայրա֊պետին • սակայն էին բազումք և 'ի հեթանոսաց, որք ա֊սէին, զի՞նչ չար արար այրն այն, և զո՞ր բարի ոչ արար մեզ՝ զհիւանդս բժշկելով, և զամ նեղելոց մխիթար լի֊նելով • իսկ այլք ասէին • մոգ է և թշնամի դից մե֊րոց, զորս դևս կոչէ, և ծաղր առնէ և թշնամանէ • արդ կա՛մ զոհեսցէ դից, և կա՛մ բարձցի 'ի կենաց :

Տեսեալ քաղաքապետին զխռովութիւն ամբոխին՝ ետ ու֊նել և ածել զԿղեմէս զառաջեաւ • և ասէ ցնա • գի֊տեմ, զի 'ի պատուական ազգէ ես յազնուականացս Հռովմայ • այլ քանզի մոլորեցար և մոլորութիւն քարո֊զես, վասն չհանդարտի ժողովուրդս • զի ոչ գիտեմ՝ զի՞ պաշտես քո անուն ընդդէմ դից մերոց • և արդ պարտ է քեզ յետս կալ 'ի սնոտի պաշտամանէդ : Պատասխանի ետ սուրբն Կղեմէս • արժան էր քումդ իմաստութեան հասու լի֊նել կարգի օրինաց մերոց, և ոչ այնմ խօսել ընդ իս վասն խնդրոց Ճշմարտութեան • ապա թէ ոչ՝ ամբոխ անբան ռամ֊կին, որ միշտ կախէս յուզէ, ոչ պարտի շարժել զքեզ 'ի վերայ իմ, որ անշարժելի կամ մնամ 'ի Ճանապարհին Ճշմարտութեան :

Յայնժամ քաղաքապետն զեկոյց Տրայիանոսի կայսեր, թէ ամբոխն յարուցեալ է ընդդէմ Կղեմայ նազովրացւոցն առաջնորդի • այլ ես չգտի 'ի նմա պատճառս մահու : Եւ Տրայիանոս ասաց • կա՛մ զոհեսցէ Կղեմէս դից, և կա՛մ արտաքսման լիցի յայնկոյս ծովու և Պոնտոսի յա֊նապատն Քերսոն քաղաքի : Ապա կոչեաց և հարցափոր֊ձեաց քաղաքապետն զԿղեմէս, և տեսեալ զհաստատու֊թիւն մտաց նորա՝ ակամայ կամօք հարկեցաւ աքսորել զնա, ասելով ցնա • Աստուածն՝ զոր դու պաշտես, նա քեզ լիցի օգնական յայս դառն աքսորանաց • և եդեալ զնա 'ի նաւ՝ աքսորեաց 'ի սահմանեալ տեղին • գնացին ընդ նմին և ոչ սակաւք 'ի հաւատացելոց կամակարութեամբ :

Իբրև հասին 'ի տեղին աքսորանաց, եգիտ անդ սուրբն Կղեմէս զբազմութիւն պատժաւորաց քրիստոնէից աւելի քան զերկու հազարաց, որք էին քարահատ 'ի մետաղս • և եղև նոցա անպատմելի ուրախութիւն տեսանել զնորա հայ֊րապետն, և խնդրէին զաղօթս և զօրհնութիւն նորա • և նա ասէ ցնոսա • Տէր առաքեաց զիս այսր՝ չարչարակից ձեզ լինել և մխիթարակից : Եւ զի առաւելապէս նեղեալ

էին

էին նք 'ի կարօտութէ ջրոյ , զոր 'ի վեց մղոնաչափ տեղեաց բերէին ուսովք իւրեանց , յաղօթս եկաց սրբն նոքօք հանդերձ խնդրել յԱյ զջուր . և 'ի կատարման աղօթիցն այսր անդր հայեցեալ՝ ետես , զի գառն մի կայր 'ի տեղւոջ ուրեք՝ 'ի վեր առեալ զոտն իւր զաջոյ , որ̃ թէ ցուցանելով կղեմայ զտեղին . և զայս ոչ ոք ետես՝ բայց 'ի սրբյն . վղ̃ յորժամ գնաց և բախեաց սրբն զայն տեղի յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբյ , վաղվաղակի բղխեաց աղբիւր ջրոյ կենդանւոյ , և յորդեաց իբրև գետ :

Իբրև տարածեցաւ այս լուր ը̃ գաւառն , ժողովեցան առ սրբն անթիւ բազմութիք . զորս և դարձոյց քարոզութե 'ի սր̃ հաւատս . բանզի ասի՝ թէ օր յօրէ իբրև հինգ հարիւր և աւելի ևս հոգիք մկրտէին . և 'ի միջոցի տարւոյ միոյ շինեցան անդ եկեղեցիք եօթանասուն և հինգ . քանդեցան մեհեանք , և բարձան անտառք մեծամեծք :

Այդ եղև այս ամ̃ յականջս տրայիանոսի . վս̃յ առաքեցաւ 'ի նմանէ 'ի քերսոն դատաւոր ոմն աւփիդիանոս անուն , որ զբազումս նահատակեաց 'ի քրիստոնէից քերսոնի . այլ տեսեալ՝ թէ ոչինչ օգտի , շատ համարեցաւ կորուսանել զկղեմէս , որ̃ թէ 'ի բառնալ զառաջնորդն քրիստոնէից՝ բարձցի լինելին քրիստոնէութեին : Արդ կոչեալ զնա հայրապետն յատեան՝ հրապուրէր զոհել կռոց . և տեսեալ զանդրդուելի միտս նր՝ ասէ ցծառայս իւր . տարայք զդա 'ի մէջ ծովու , և կապեալ զխարիսխ նաւուն ը̃ պարանոց դորա՝ ընկեցէք 'ի խորս . զի մի կարասցեն քրիստոնեայք պաշտել զնա փոխան Այ : Յայնժամ զեղեան բազմութիք քրիստոնէից 'ի ծովեզրն , և լային . իսկ աշակերտք սրբյն կոռնելիոս և փիբոս ասեն . միաբան աղօթս արասցուք եղբարք , զի յայտնեսցէ մեզ տր զնշխարս սրբյ հայրապետին :

Եւ յաղօթել բազմուե՝ տեսին , զի տեղի ետ ծովն , և ամփոփեցաւ 'ի ծոց իւր իբրև յերիս մղոնս . և մտեալ ժողովրդեան ը̃ ցամաք՝ գտին պատրաստեալ յԱյ տեղի մի տաճարաձև . ուր 'ի վիմափոր տապանի եդեալ կայր մարմին սրբյն կղեմայ . մինչ զի և խարիսխն երկաթի՝ որ ընկեցեալն էր ը̃ նմա , եդեալ կայր առ նմա : Եւ իբրև կամէին առնուլ զնա մարմին նր , յայտնեցաւ աշա-

կերպաց նր՝ թողուլ զնա անդ. և աղաղեցաւ նց, թէ նոյն սքանչելիք լինիցին նմ՟ ըն ամէ յաւուր նահատակուն նր մինչև ցաւուրս եօթն. և եկեացէ ժողովուրդն ըն ցամաք յայցելութն տապանի նր. որ և լինէր իսկ. որով նմ բնակիչք տեղւոյն պարձան ՚ի տր, և ոչ միայ ոք անդ այր հեթանոս կմ հրէայ և կամ հերետիկոս: Եւ լինէին ազգի ազգի նշանք բժշկուն և սքանչելիք մեծամեծք ՚ի տապանէ սրբյն՝ ՚ի փառս քնի մյ մերոյ. որում և ըն որում հօր ամենակալի և կենդանարար սբ հոգւոյն փառք այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Այս այն վկայաբանութն երևի հին (թող զի անտի առնու մետափրաստէս և այլք զկնի), զոր յիշէ եփրեմ քերսոնացի ՚ի սկզբան ճառին իւրոյ՝ ասելով. * Ցեա
,, կատարելոյ բազմադրոշմաելոյն և երանելոյն կղե-
,, մայ զվճ̃պուն և պաուաքելուն ընթացս, և փոխելոյ
,, յաստեացս կատարմամբ վկայուն, որ և նորուն փա-
,, ռաւորեալ վկային գիրքն յայտ առնեն, զոր ոչ ան-
,, գիտանալ ձեզ հաւատամ || . ևն. մանաւանդ զի և վերջին պատմուն ծովապարձուն, և գիւտի նշխարաց սբյն յար և նման դրի յեփրեմայ. վյ և մեզ ՚ի դէպ էր հետևիլ այսմ վկայաբանութն. այլ որ ասացաք ՚ի վեր անդր, ոչ միաբանին ժմք արայիանոսի ըն սորայ պատմուեց և ժմկագրուեց. թող զայլ հանգամանս բանից, զորս թողումք ընտրութեան այլոց յայտակեր հնախօսութես:



# ՄԱՐՏ

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Կղեմայ՝ անկիւրիոյ հայրապետի, և որոց ընդ նմա։

Հ. յունուար. 24։ Տր եէլ. և Յ. Ժ. յուլ. 23։
Բոլլանդ յոհաննէս 'ի Ե. հտ. յուլ. էջ. 458 = 483։
Ասանիմա։ Մետափրաստէս, և այլք։ (1)

ԲԱԶՄԱՋԱՆՋԱԼ 'ի հանդիսի վկայութե՝ ժամանակակից և հանգունատիպ մեծին գրիգորի հայաստանեայց լուսաւորչի՝ քաջ նահատակն քրի սրն Կղեմէս անկիւրացի՝ պարծանք ծին գաղատացւոց, էր ծննդեամբ 'ի քաղաքէ անտի անկիւրիոյ՝ որ յառաջինն անուանեալ գաղատիա, միամօր որդի առն հեթանոսի վաղամեռիկ եղելոյ, և մօր քրիստոնէի այրիացելոյ, որում անուն էր եւփրոսինէ, կին բարեպաշտ և երկիւղած յայ. որ սնոյց զորդին 'ի սր հաւատս և 'ի վարս ածպաշտութե. և 'ի ժամ վախճանի իւրոյ մարգարէացաւ զմարտիրոսութիւն զաւակին, թողեալ զնա մանուկ ժբ ամաց 'ի խնամս սոփիայի մեծատուն և ածասէր կնոջ։

Իբրև աճեաց մանուկն կղեմէս՝ ուսաւ գիրս, և

և եղև ատեցող Այ և որ ինչ յԱյ, և փառեալ 'ի սէր Հոգևորաց՝ կրօնաւորեցաւ 'ի քաղաքի իւրում. և յետ կոչմանն ոյ քահանայացեալ 'ի ծաղկեայ հասակի՝ հայր եղև աղքատաց բաշխելով 'ի նոսա զինչս ծնողաց իւրոց, զի էր յերևելի տանէ. ժողովէր և զորբ մանկունս հեթանոսաց յաւուրս սովու, կերակրէր զնոսա, և ուսուցանէր նոցա զհաւատս քսի, և մկրտէր։ Սա փայլեալ ամ առաքինի կարգօք՝ ձեռնադրեցաւ քան ամաց՝ եպս անկիւրիոյ, յամի տն իբր 280. և արար բազում ուղղութիւս, և պայծառացոյց զքրիստոնէութիւն 'ի գաղատիա. զի որ խեռայլին յոյժ հեթանոսք։ Սա եղև յաւուրս հալածանաց դիոկղետիանոսի՝ ազդ. արարին վն կղեմայ եպսի՝ դոմետիանոսի բեկարու, Թր կայսերական փոխանորդի և դատաւորի քաղաքին. և կացեալ առաջի Թբ վկայն՝ խոստովանեցաւ զանունն քսի ոյ մերոյ. և եանց զի ամ փորձս քննութե և տանջանաց՝ հրաշալի համբերութե նահատակութե. որք է տեսանել 'ի լիակատար պատմութե նր. որոյ քաղուածն զի յայսմաւուրաց մերոց ունի այսպէս. Քանզի նախ կախեալ զերանելին զփայտէ՝ քերեցին զամ մարմինս նորա մինչև յոսկերսն. և խորտակեցին զբերանն և զկզակն. և դնեալ զնա անդրդուելի 'ի հաւատոցն քսի, և զարմացեալ զի համբերութն սրբյն՝ յուղարկեցին կապանօք 'ի Հռովմ առ դիոկղետիանոս Թգրն։

Փորձել սկսաւ զնա ինքնակալն. հրամայեաց, և եդին առաջի կղեմայ գանձ և սուսերս.

սերս . և նորա տեսեալ՝ ոչ զանձին ցանկացաւ ,
և ոչ 'ի սուսերայն երկեաւ , այլ համարձա-
կութբ խոստովանեցաւ զճշմարիտ որդին այ ։
Կապեցին զնորին յանիւս , և հոլովեցին ընդ-
զառ 'ի վայր տեղիս . մինչև կոտորեցաւ ամ
մարմինն . և այնպէս լուծին յանուոյն , և
տարեալ արկին 'ի բանտ ։ Իսկ բազմութիւն
արանց և կանանց մտեալ 'ի բանտն՝ տեսին
զերեսս նորա պայծառ իբրև զլոյս , և հաւատա-
ցին 'ի քս , և մկրտեցան 'ի նոյն կղեմայ . և
'ի մէջ գիշերին իջեալ հրեշտակ տն՝ կերա-
կրեաց զնա ։ Զոր լուեալ դիոկղետիանոսի՝
առաքեաց 'ի բանտն , և ետ հատանել զգլ-
գլուխս արանց և կանանց և տղայոց նոցա հա-
ւատացելոց 'ի քս ։ Բայց մի ոմն 'ի նոցանէ
փախեաւ , որոյ անուն էր ագաթանգեղոս ,
որ թարգմանի 'ի հայ լեզու բարի հրեշտակ ։
Իսկ զսրբն կղեմէս սկսան գանել , և հրացեալ
շամփրօք զկողսն այրեցին . և ապա ետ հրա-
ման տանել զնա 'ի Նիկոմիդիա առ մաքսի-
միանոս թգր . և եկեալ նոյնժամայն ագա-
թանգեղոս՝ չարչարակից լինել սրբյն , աղա-
ղակէր . և ես քրիստոնեայ եմ , և քնի ծա-
ռայ ։ Զնոյնժամ կապեցին և զնա , և արկին
'ի նաւ՝ տանել ընդ սբյն կղեմայ 'ի Նիկոմիդիա .
կմ ընդ այլոց՝ ինքնին զհետ ընթացաւ ուղեկից
լինել սբյն . զոր տեսեալ կղեմայ՝ ուրախ ե-
ղև յոյժ ։

Իսկ յետ բազում անցից անցելոց՝ յորժամ
հասին 'ի Նիկոմիդիա , քննեաց զնս մաքսի-
միանոս հերակլէս դահակիցն դիոկղետիա-

նու

նոսի. և ետես, զի ամենևին ոչ լսէին խօսից նր̃. ետ զն̃ յագրիպպինոս եպարքոսն. և նր̃ առեալ՝ կախեաց զն̃, և սրով կոտորեաց զմարմինս նր̃. և իջուցեալ 'ի կախաղանէն՝ արկ 'ի բանտ: Զայնժամ ա̃մ պատժաւորք հեթանոսաց՝ որք 'ի բանտին էին արգելեալք, տեսեալ զհամբերութիւն սբ̃ցն, և զսքանչելիսն՝ զոր առնէին, հաւատացին 'ի ք̃ս, և մկրտեցան 'ի կղեմայ. և 'ի կալ նորա յաղօթս՝ բացաւ դուռն բանտին, և ելին ա̃մքն, և գնացին:

Իսկ զսբ̃սն հանին և ընկեցին գազանաց կերակուր. և գազանքն ոչ մերձեցան, այլ երթեալ երկիր պագին նր̃, և լեզուին զոտս նր̃. զոր տեսեալ ամբոխին՝ դիմեցին 'ի վր̃ եպարքոսին քարկոծ առնել զնա, և ինքեանք հաւատացին 'ի ք̃ս: Իսկ անօրինայ առեալ զսբ̃սն զերկոսեան՝ արկին 'ի խորգ, և ընկեցին 'ի ծով. և մտեալ քրիստոնէիցն՝ հանին զնոսա կենդանի 'ի ծովէն, և տարան 'ի տունս իւրեանց, և կերակրեցին և հանգուցին. և նր̃ ելեալ շրջէին 'ի մէջ քաղաքին Նիկոմիդացւոց:

Հրամանն ետ մաքսիմիանոս, և տարան զն̃ կապանօք յանկիւրիա. ուր կիւրիղոս դատաւորն ագոյց նր̃ սաղաւարտս հրացեալս. և ոչ կարացեալ հաւանեցուցանել՝ յղեաց զն̃ արքունի հրամանաւ յամիսոն քաղաք, ուր էր դոմետիանոս բեկարն. և նա յետ կրկին հարցափորձի՝ էարկ զն̃ 'ի մէջ կրոյ: Իսկ 'ի գիշերի տեսեալ պահապանաց լոյս 'ի վր̃ սբ̃ցն,

առ

առ ժամայն հաւատացին 'ի քս, և մերկացան և անկան 'ի կիրն ընդ սրբոյն . և յանվնաս պահիլ բոլորից՝ եկեղ ամբարշտաց հատին զգլուխս պահապանաց . իսկ զորսն կղեմէս և զագաթանգեղոս եղին 'ի մէջ հրացեալ երկաթի մահճաց, և ցանէին 'ի մէջ ձէթ և ծծումբ և ձիւթ . և սրբքն ննջեցին 'ի վերայ հրոյն, և տեսին զտր, զի ասէր ցնոսա . մի երկնչիք, զի ես ընդ ձեզ եմ ։

Իսկ տեսեալ դատաւորին՝ թէ այնչափ տանջանքն ոչ յաղթեցին նոցա, առաքեաց զնս 'ի տարսոն քաղաքն կապանօք առ մաքսիմոս դատաւորն . և 'ի ճանապարհին մինչդեռ երթային ընդ անջրդի տեղի, նուաղեցան զօրականք 'ի ծարաւոյն, որք տանէին զսրբսն . և կղեմայ աղօթեալ՝ բղխեցոյց ջուր, և արբին ամենեքեան, և հաւատացին 'ի քս . եկն և ձայն յերկնից, զի ասէր . ով կղեմէ զամ խնդիրս քո կատարեցից . զօրացիր և քաջ լեր ։

Իսկ իբրև եկին 'ի տարսոն, հարցանէր մաքսիմոս դատաւորն, եթէ դառնա՞ն և զոհե՞ն կռոց . և սրբքն ասեն, ո՛չ . և յաւել մարգարէանալ սրբն կղեմէս, թէ ած յետ սակաւուց քրիստոնեայ թագաւորս յարուցանէ, որ կործանեսցեն զբագինս կռոցն, և դարձուսցեն զամ երկիր յածգիտութի ։ Իսկ բարկացեալ ընդ բանսն դատաւորն՝ արկանէ զնս 'ի բորբոքեալ հուր . ուստի բուրեաց անուշահոտութի, և ելին սրբքն անկիզելի, և գնային 'ի մէջ քաղաքին . զորս կալեալ տարան

րան 'ի բանտն . և էին յարգելանի ամս ե-
րեք :

Եւ յետ երից ամաց հանին 'ի բանտէն, և եդուն յոմն ափրոդիտոս անուն . սա տարեալ զնոսա 'ի տուն իւր՝ եդ առաջի նոցա բաղմածախ սեղան, զի կերիցեն և արբցեն, և ուրախացեալք արասցեն զկամս թագաւորին . իսկ սրբքն ամենևին ոչ ճաշակեցին, և ոչ աչօք իւրեանց նայեցան 'ի կերակուրն : Եւ ապա կապեցին վէմ 'ի պարանոցս նոցա, և անցուցին ը մէջ քաղաքին . և առաքեցին դարձեալ այս երից անգամ՝ յանկիւրիա առ ղուկիոս դատաւորն . որ ետ արկանել զնոսա 'ի բանտ, և պնդել զոտս նոցա 'ի կոճեղս :

Եւ ընդ առաւօտն կոչեաց առ ինքն զագաթանգեղոս միայն, և ողոքանօք խոստմամբ ջանայր պատրել զմիկայն քրի : Իբրև ետես, եթէ ամենևին ոչ լսէ, հրամայեաց, և անցուցին ը ականջս նր շամփուր երկայն, և հանին ը միւս այլ ականջսն, և ապա հատին զգլուխն . զոր առեալ հաւատարիմ կինն սոփիա՝ թաղեաց պատուով յաստիճանս եկեղեցւոյ իւրոյ : Եւ լուեալ սրբոյն կղեմայ զկատարումն սրբոյն ագաթանգեղոսի՝ գոհացաւ զնյ . Իսկ զսրբն կղեմէս կապեցին 'ի վէմի, և այնչափ հարին, մինչև վէմն և հողն լցաւ արեամբ . և տարան 'ի բանտ . և յնմ գիշերի լոյս ծագէր 'ի բանտին, որչափ էր յարգելմանն :

Եւ 'ի հասանել տօնի յայտնուե տն՝ գնաց հաւատարիմն սոփիա առ բանտապանսն, և
տուեալ

տուեալ զանձն՝ եհան 'ի գիշերի զսբն կղե-մէս, և տարաւ յեկեղեցի իւր ։ Որ զգե-ցեալ սբյն զզարդ եպսուե իւրոյ՝ տարածեաց զձեռս իւր յերկինս, և գոհացաւ զայ, և խնդրէր ողորմութի 'ի քնէ վն ամ ազի, և վն այնոցիկ՝ որք կատարեն զյիշատակս նր ։ և քաջալերէր զհաւատացեալսն հաստատուն կալ 'ի սր ։ և ասէր, դադարելոց է հալածումն յերկրէ, և լոյս աստուածգիտութեան ծագեսցի ։ Այլ դրօքն փակելովք սկսան կատարել զամ ածային խորհրդածութիւն ։ և մինչդեռ սբ հայրապետն կղեմէս զպարանոցն 'ի խոնարհ ունէր, և զաղօթսն մատուցանէր պատա-րագի 'ի վր պատուական և սբ մարմնոյ և արեանն քի, դիմեցին յանկարծակի անօ-րէնք յեկեղեցին ։ և այր մի՝ որ էր իշխան քաղաքին աղեքսանդրոս անուն, ինքնին սրով եհատ զգլուխ սբյն կղեմայ, և զսբ խորհուրդն ցրուեաց, և զսեղանն կործա-նեաց ։ Նոյնպէս և զերկուց սարկաւագացն՝ որ ը սբյն կղեմայ էին 'ի սպասաւորութի սբ պատարագին, հատին զգլուխս ։ որոց ան-ուանք էին քրիստափոր և խարիտոն ։

Իսկ մարտիրոսասէր կինն սոփիա պատեաց մաքուր կտաւով զմարմին սբյն կղեմայ, և եդ յեկեղեցւոջն՝ որ կոչէր կոյիփատոյ, կմ յեկեղեցին՝ որ առ կուփտոս, զմն 'ի գետ-նայարկ շիրիմս ծածուկս ։ և զերկու սարկա-ւագունսն մերձ առ նա յայլում տապանի ։

Եղև կատարումն սբյն կղեմայ բազմաչար-չար նահատակի և որոց ը նմա յամի տն 304, կամ

կամ 309 . յետ կրելոյ զբազմադիմի անցս վկայութեան յարևելս և յարևմուտս՝ զամս ծը, կամ իը ։ Գերեզման սբյն կղեմայ հայրապետիս պատուէի ցարդ ևս յանկիւրիա՝ 'ի Սբ խաչի եկեղեցին 'ի մէջ պարսպի քաղաքին մօտ 'ի մեծ դուռն . և առնէ մր անպակաս բժշկութիւնս՝ որոց գնան հաւատով 'ի տապան սբյն . յորոյ 'ի սքանչելի շնորհս առանձին վայելեալ է և իմ 'ի մանկութեան . Թող զայլ հրաշս՝ զորս լսէի յայլոց ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Օրօրինակ զհամառօտութիւն ընտրեցաք Ճարձակ վարուց սբյս, (զոր և յայլազգական անգամ բարբառ գաւանես տպագրել 'ի պէտս գաղղիացւոց . 'ի Վենետիկ յամի 1751 . Թարգմանութբ ամթանաս վրդպի յիտալականէ), նոյնպէս և 'ի համառօտ բերիմք ծանօթութիւնս, յուշ առնելով՝ թէ գրեալքս մեր են առաւել քանի մր իէլի ընտիր օրինակագրի յայսմաւուրաց ։ Իսկ լիակատար վկայաբանութեան կրկին են օրինակք առ յովհաննու բոլլանդայ . մին է հին և անանուն հեղինակի (յոյր սակս անոնիմաս կոչի), և միւսն մետափրաստեսի, երկոքին ևս 'ի յունէ 'ի լատին թարգմանեալ ։ Թող և զոր յայլոց զպէսպէս ծաղկաքաղս նշանակէ բոլլանդ, և յաւուրն զմի և զնոյն պատմութիւն գտանէ ը էութեան ։ Եւ առ 'ի զառաջս առնուլ գխմախօսաց ումանց, բարւոք գրէ . * Զափապանցական իմն արդեօք՝ շատութիւն
„ տանջանաց երևեսցի ումեք, եթէ ոչ ածցուք զմտաւ
„ և զդիմէին և զարբանեկաց նր մոլեգնութիւն, և զսբյ
„ զզօրութիւն՝ որ զօրավիգն էր վկայից իւրոց ։ Եւ ոչ է
„ իսկ պարտ այնպէս համարել, թէ չարչարանքն նմ
„ հետղհետէ անդուլութբ իցեն տարեալ սբյս, այլ
„ յընթացս ժը (ը այլոց՝ իը) ամաց ողջոյն . յորս և

 „ ամօ-

" ամսօրեայ ժամանակս բազումս թողացեալ լինէր ։
" Այս եթէ խուրաքանչիւր չարչարանք ուրոյն ուրոյն
" տեւեցին, չէք գրեթէ և ոչ մի, որ չիցէ առնել յոգունց
" 'ի վկայից 'ի նոյն քաղաքս ասիոյ 'ի նոյն 'ի ժամանակս
" գիոկղետիանոսի և մաքսիմիանոսի · Թող զի բազում
" ինչ 'ի նոսա մեղմագոյն գտանի քան զնորաՀնայս կա-
" տաղութիւս յաբոնացւոց ըդդէմ քրիստոնէից 'ի յետին
" դարս ||: Իսկ զբննուն Ժմկագրուն, զոր առնէ բոլ-
լանդ, թէ երբ ծնաւ, և երբ կատարեցաւ սրն կղեմես,
տեսանեմք հաստատեալ 'ի Թուականն 250, (կամ 257,
կմ 258·) որ գտանի 'ի սկիզբն վկայաբանութեցն նր · այլ
որմ նա ընթեռնու զայս Թուական յայժմու օրինակս
իբրև Թուական մարդեղութեն ՔՆ, և ըստ այնմ չափէ
զծննունդ սրյն, մեք տեսանեմք՝ զի որ լինէ ընթեռնու
258· ամ 'ի համբարձմանէ անտի փրկչին · յոր յաւելեր
և զամս 33 յառաջեալս, լինի ամ ՔՆ 290 · այն է եօթ-
ներորդ ամ գիոկղետիանոսի, ուստի և առուրք չարչա-
րանաց սրյն կղեմայ ։



Թ. I ՄԱՍՆ



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բագարատայ տաւրոմենոյ եպսի:

Հ. յուլիս. 14: Տօն եկեղ. յուլ. 15: Յ. փե-տրվ. 9. նաև յուլիսի. 9. ըստ սինէքսարացւոց: Լ. տար. 3: Ճառընտ. Ա. ծխդ. և Ա. շշէ. և Լ. շծղ: Բոլլանդեանն հենսքենիոս ՚ի տ. հատ. տար. էջ. 237=243: Ներբող Բագարատայ ՚ի Թէո-փանեայ կերամ". և ՚ի Գրեգորի եկեղ": (1)



ԱՇԱԿԵՐՏԱԿԻՑ ԿՂԵ-մայ՝ հռովմայ հայրապետի, աշակերտ պետրոսի վիմի, և հե-տևող առաքելոց՝ սբ եպսն բա-գարատ, (որ է ըստ յունաց բանդրագիոս,) ըստ ծագմանն ասի լինել ՚ի կողմանց անտիո-քայ ասորւոց, և ՚ի լսել զհամբաւ փրկչին քի երևելոյ ՚ի մարմնի՝ գնաց ասեն ընդ հօր իւրում յանտիոքայ յեմ, և ետես զքս, և հաւատաց ՚ի նա. և յետ համբառնալոյ տն ընկալաւ զմկրտութի ՚ի սբյն պետրոսէ ՚ի սբն սիոն՝ հանդերձ հարբն և մարբն: Իսկ յետ մեռանելոյ ծնողացն՝ թողեալ զամ ինչս իւր՝ առանձնացաւ ՚ի լերինս պոնտացւոց. որում հանդիպեալ սբյն պետրոսի՝ դարձոյց ընդ իւր յանտիոք և ՚ի կիլիկիայ. և ձեռնադ-րեալ

բեալ զնա յեգիպտոսէ՝ առաքեաց յարեւմուտս 'ի կղզին սիկիլիա 'ի քաղաքն տառամենայ կամ տաւրոմենեայ՝ (ամկ. տաւորմինա) ը մէջ քաղաքացն մեսսանայ, որ և մեսսինայ, և քաղանիայ՝ յոր մօտ է լեառն եթնա հրաբուղխ։ Արդ մօտել երանելւոյն բագարատայ 'ի նաւ՝ դարձոյց զնաւապետն և զղեկավարն յանծգիտութենէ, որոց անուանք էին լիկայոնիդէս և ագրինոս (յոր յաւելուն ոմանք զամդիոս և զռոմիլոս)։ Եւ յորժամ եհաս 'ի տեղին, եգիտ զամ կղզին և զքաղաքն 'ի կռապաշտութեան։ Յոգւոց եհան երանելին բագարատ հեծեծանօք, և ամբարձեալ զձեռս իւր յերկինս՝ աղաչեաց զա̅ծ վ՛ն մոլորեալ ժողովրդեանն. և ապա սկսաւ երանելին եպ̅ս քարոզել և ուսուցանել՝ առնելով սքանչելիս մեծամեծս։

Յայնժամ հաւատաց գաղտ 'ի ժողովրդենէ քաղաքապետն վոնիփակիոս, (որ 'ի մեզ վոնիփատոս կամ վանիփատոս գրի, այն է ըստ հռովմայեցւոց պօնիֆացիուս՝ որ թարգմանի բարեգործ)։ Նա 'ի գիշերի գնաց ս̅բն բագարատ ը վոնիփատոսի 'ի տաճարն՝ յորում էր բագինն փալկոնիայ մեծի ա̅յ քաղաքին տառամենոյ. և հայեցեալ ս̅բն 'ի բագինն՝ ասէ. ո՛վ փալկոն անզգայ, խուլ, համր և կոյր, ո՞վ ես դու, և զի՞նչ գործես աստ. և քանի՞ ամք են՝ որ ես 'ի մեհենի աստ, և մոլորեցուցանես զատեղծուածս ա̅յ, և տաս զոհս մատուցանել քեզ՝ ո՛վ պիղծ և գարշելի դիւապատկեր։ Ասէ պատկերն դիւաբնակ.

բնակ․ երկերիւր և վաթսուն ամէ, զի բնա-
կեալ եմ աստ և ընդունիմ զօհս և նուէրս 'ի
ժողովրդենէս տոռոմենայ քաղաքիս, յամ
ամի երեք տղայս, և երեք հարիւր յիսուն
զուարակս փափուկս և գեղեցիկս, և խոյս
և նոխազս և զառինս բազումս։

Համբարձեալ զձեռս իւր երանելին Բագա-
րատ՝ ասէ մեծաւ բարբառով․ երդմնեցու-
ցանեմ զձեզ պ՛ղծ դևք յանուն հօր և որդ-
ւոյ և հոգւոյն սրբոյ՝ ժողովեցարուք ամենե-
քեան, և զխուլ և զհամր բալկինդ փալկոնի
ընկեցէք 'ի ծով՝ երեսուն ասպարիսաւ հե-
ռի 'ի ցամաքէն․ և դուք ընդ նմին բնակեսջիք
յանդունդս խորոց։ Եւ առ ժամայն հնչիւն
եղև իբրև ուժգին մրրկի, և լցաւ տաճարն
սևաւ անդեղօք և սևաւ ագռաւօք, և կալան
զբագինն, և աղաղակաւ մեծաւ ընկեցին 'ի
ծով։ Եւ եղև առ սրբն ձայն յերկնից, որ
ասէր․ քաջալերեա՛ Բագարատ, զի ես ընդ քեզ
եմ․ և ոչ թողից զքեզ, մինչև կարգեցից 'ի
դասս առաքելոց․ և ելեալ 'ի տաճարէն գնա-
ցին Բագարատ և Փոնիփատոս 'ի յարկս իւ-
րեանց։

Եւ ընդ առաւօտն երթեալ քուրմքն 'ի տա-
ճարն՝ գտին զդրունսն 'ի բաց, և զբագինս
ածոյն իւրեանց ոչ գտին․ ելեալ 'ի մէջ հրա-
պարակին՝ մեծաւ հառաչմամբ կոծէին և
ասէին․ վա՜յ մեզ, զի քաղաքս մեր կործանի,
քանզի մեծ ածն փալկոն անյայտ եղև․ և
ժողովուրդն դիմեցին 'ի տաճարն, և գտին
նոյնպէս ունայնացեալ զբագինն։ Գնացին
'ի

'ի տուն Վոնիփատոսի դատաւորին , և աղա-
ղակէին արտաքոյ դրանն . ո՛վ պատուական
իշխան՝ պատուօղ և շինող և սիրելի ա՟ծոյն ,
Ե՛կ և տես զկորուստ քաղաքիս : Իսկ նր՟ խո-
նարհեալ 'ի պատուհանէն՝ ասէր , զի՞նչ եղև
ը՟դ ձեզ . և նոքա ողբալով ասեն , մեծ անցք
անցին այսօր ը՟դ մեզ . քանզի բաղձալին փա-
կոն կորեաւ , և վայելուչ և պայծառ բա-
գինն և սեղանն և աւազանն և ոսկիակազմ
անօթոն իւր ունայն մնացին , և խորանն ոչըն-
չացաւ :

Ասէ Վոնիփատոս . ո՛վ հարկաւոր տանու-
տեարք և պատուական քահանայք , լուա-
րուք ինձ , և քննեցէք , միթէ ամբարտաւա-
նեցա՞ւ ա՟ծն մեր , և եթող զմեզ և գնաց
յայլ քաղաք . զի հպարտ ա՟ծ էր . արդ գնա-
ցէք յարկս ձեր , և ես պարապով քննեցից
և գտից զպատճառն : Իսկ յետ ցրուելոյ զամ-
բոխին՝ յորժամ գիշեր եղև , զգեցաւ Վոնի-
փատոս զարքունական պատուոյն իւրոյ ըզ-
պատմուճանն և զքղամիդն , և գնաց 'ի
դուռն երանելւոյն բագարատայ : Նոյնպէս
և ս՟րն զեպսունէ փիլոնն և զեմիփորոնն զգե-
ցաւ , և նստաւ 'ի թիկնաթոռ իւր , առեալ
'ի գիրկս իւր զաւետարանն և զխաչն և ըզ-
տ՟րունական պատկերն՝ զոր ետ նմա առա-
քեալն պետրոս : Իսկ մտեալ Վոնիփատոս ե-
տես զերանելին բագարատ իբրև զբոց , և
շուրջ զանձամբն հուր . անկեալ 'ի վ՟ր երե-
սաց իւրոց՝ երկիրեպագ և ասէ մեծաւ ահիւ .
մեծ է ա՟ծն քրիստոնէից , զոր քարոզէ բա-

գարատ. հաւատամ, զի նա միայն է Ած երկնի և երկրի. և ասէ ցսբն բագարատ. Որպէս կարացից մերձենալ 'ի քեզ, քանզի հուր տեսանեմ շուրջ զքև. և երկնչիմ, մի գուցէ այրեալ կիզիմ ես :

Եւ գիտաց բագարատ, եթէ զշնորհս հոգ-ւոյն սբյ եսես, որ է 'ի պատարագամատոյց զգեստս քահանայից. ձգի նբ ենն. յայնժամ յարուցեալ եհան զեմիփորոնն և զփիլոնն և զուրարն և նստաւ. և այլ ոչ ևս եսես վոնիփատոս զհուրն : Ողջունեաց զնա եպսն 'ի համբոյր սրբուե, և նստոյց մերձ ինքեան, և օրհնեաց զնա յոյժ. և ճաշակեցին յամ բարուեցն՝ զոր տարաւ վոնիփատոս 'ի տանէ իւրմէ. և գոհացան զքնէ՝ հանդերձ բագմութեբն, որ եկեալ էին ը վոնիփատոսի :

Եւ եղև 'ի սաղմոսել նց ուրախուե, բացաւ ձեղունքն, և պայծառ լոյս ծագեաց 'ի վր նց. և յահի լեալ անկան 'ի վր երեսաց իւրեանց. և կալեալ զձեռանէ նց՝ կանգնեաց և նստոյց երանելին բագարատ. և սկսաւ պատմել նց մի ըստ միոջէ 'ի հին և 'ի նոր կտակարանացն՝ յաղագս մինչև 'ի քսի մարդեղութիւնն և 'ի համբարձումն, և 'ի գալուստ հոգւոյն սբյ, և 'ի միւսանգամ գալուստն փրկչին. ոնց և գրեալ է 'ի գիր պատմութե իւրոյ (ասէ ճառընտիրն), զոր գրեաց (ասեն այլք) եւագրիոս կմ ագրիննոս աշակերտ սբյն. և լուսաւորեաց զմիտս որք անդ հանդիպեցան՝ Ածային վրդպութբ :

Յետ այսորիկ կամեցեալ սբյն բագարատայ

մաք-

մաքրել 'ի քաղաքէն և զայլ ևս կուռս՝ գրեաց յերրորդ ժամու գիշերոյն 'ի քարտիսի ձեռամբ իւրով այսպէս. Առ իշխանն կիմսկամանդրոն կուոց բագինն. Ես բագարատ ծառայ յսի քսի տն մերոյ գրեմ առ քեզ պիղծ զազիր և անզգայ տոռոմենոյ քաղաքի փոքր ուծգ. յորժամ ընթեռնուս զգիրս իմ, վաղվաղակի զհրամայեալսն կատարեա՛. Եթէ 'ի կորստեան տեղին 'ի գեհեան հրոյն, ուր է քո աւագագոյն ուծն փալկոն, և 'ի միասին կործեցարուք զկորուստ ձեր. զի մի այլ ևս տիրէք քաղաքիս այսմիկ։

Նա տարաւ ազրինոս զթուղթն, և եդեալ գաղտ զքարտէսն 'ի բագինն՝ փախեաւ. և յետ երկու պահու եղև ձայն յանէրևութից, որ ասէր. բագարատ ծառայ այ բարձրելոյ՝ զհրամայեալսն մեզ 'ի քումմէ սրբուէդ կատարեցաք. քո՛ է այսուհետև քաղաքս. և սրբն անկեալ յերկիր՝ գոհացաւ զայ. և դարձեալ աղաչեաց զած վս մնացեալ կռոցն՝ զի և նոքա խորտակեսցին. և ինքն համապազօր քարոզէր զբանն այ՝ որոց գային առ նա։

Նա յորժամ մերձեցաւ պիղծ տօնն ապողոնի, պատրաստեցին հեթանոսք զզոհս՝ ըղտղայս և զանասունս, և զարդարեալ քրմացն՝ գնացին 'ի բագինն նր. և գտին կործանեալ և խորտակեալ 'ի բազում մասունս։ Յայնժամ սկսան բախել զերեսս իւրեանց, և ասեն. վա՛յ մեզ ապողոն, ո՞ր չար պատերազմ շարժեցաւ 'ի վր քո. և եղեալ անտի սրտաբեկ՝ գնացին 'ի տաճար դիւաց կռոցն. գտին

և զայն կործանեալ և բեկտեալ ։ Ապա ժողովեալ բազմութիւն զխմեցին 'ի տուն Վոնիփատոսի , աղաղակէին արտաքոյ դրանն , և ասէին ․ ով անարժան իշխան՝ 'ի չար ժամու եղեր քաղաքապետ ․ տեսանես զա̃ծսն մեր կործանեալ , և անփոյթ առնես ․ արդ կորուստ և մահ քո հասեալ է ։

Ասէ Վոնիփատոս ․ ընդէ՞ր մոլիք 'ի վե՞ր իմ արտմութե̃ ․ ընտրեցէք արս իմաստունս ․ և մոգս , զի քննեսցեն և տեսցեն՝ թէ վա̃ է՞ր կործանեցան ա̃ծքն ։ Եւ երթեալ ընտրեցին արս երեսուն հմուտ դիւթութեան , որոց եկեալ 'ի մեհեանն լուսոյն՝ կի̃ լուսնեայ , զի նա միայն չէր կործանեալ , սկսան առնել դիւթութիւս , և վիճակս արկանէին ․ և ոչ տուաւ պատգամ ։ Ապա ասէ բաղխին ․ ո՞չ գիտէք , զի ակարացոյց զմեզ վերին զօրութիւն ․ արդ եթէ կամիք՝ որ զօրութիւն գայ 'ի մեզ , որպէս յառաջն , մատուցէք ինձ զոհ զսիրելին իմ և զմեծ բարեկամն Վոնիփատոս ․ և նո̃ քա յոյժ ուրախ եղեն , և երթեալ աւետիս ետուն Վոնիփատոսի ։

Յորժամ լուաւ նա զբօթալից աւետիսն , ել գաղտ 'ի տանէ իւրմէ , և գնաց անկաւ առ ոտս բազարատայ ․ և լալով պատմեաց նմա ։ Ասէ երանելին ․ մի՛ երկնչիր որդեակ ․ գնա՛ 'ի զենումն , և ես եկից զհետ քո , և յաղթեսցուք նոցա զօրութ̃ն քսի ։ Իսկ և եկն Վոնիփատոս 'ի տուն իւր , հնչեցուցին քուրմքն փողս մեծամայնս և ժողովեցին զքաղաքն ամ̃ առ դուրս նր̃ , և հանեալ զՎոնիփատոս՝

մեր-

մերկացուցին, և կապեցին ձեռս յետս. և տարեալ կացուցին առաջի կռոցն լիւսինեայ: Յայնժամ վայրի վոնխիփատոս շուրջ ածէր զաչս իւր, զի տեսցէ զերանելին զբագարատ. և ողբալով ասէր. ո՛ւր ես հա՛յր բագարատ. զիս առաքեցեր, և դու ոչ եկիր. այլ օգնեա՛ ինձ տ͞ր յ͞ի՝ յոր հաւատացի, և փրկեա՛:

Նա ահա 'ի վերայ հասանէր տ͞րն բագարատ՝ զգեցեալ զեմիփորոնն և զուրարն և զփիլոնն, աւետարան 'ի ձեռին. և ը͞ նմա լիկայոնի-դէս և ազրինոս բարձեալ զխաչն և զտ͞րու-նական պատկերն: Ընդ ձեռս յերկինս ամ-բարձեալ տ͞ր եպ͞սն՝ պաղատէր առ ա͞ծ, զի մերձ էին հեթանոսք 'ի զենուլ զվոնխիփատոս 'ի զոհ. և վաղվաղակի վառեցաւ անձն բա-գարատայ իբրև զբոց. զոր տեսեալ ժողո-վրդեանն՝ յահէն անկան յերկիր 'ի վ͞ր երե-սաց իւրեանց. և արարեալ ն͞ր զնշան խաչին՝ կանգնեաց զն͞ս. և ասէ ցկուռսն լիւսինեայ. երդմնեցուցանեմ զքեզ պ͞ղծ դև յանուն հօր և որդւոյ և ս͞բ հոգւոյն, փախիր 'ի տեղւոջէս յայսմանէ, և գնա՛ ուր փալկոնն է՝ 'ի խորս: Նա սաժամայն եղև ճայթիւն մեծ 'ի կռոցն, և վերացաւ բագինն յօդս, և անկաւ 'ի մէջ ծովուն:

Նա յոյժ երկեան ժողովուրդքն, և անկան յորսայս. և 'ի խաչակնքել ս͞րբյն վերստին՝ կանգնեցան. և տեսեալ զսքանչելիսն ահա-ւոր՝ զոր արար ա͞ծ 'ի ձեռն ծառային իւրոյ բագարատայ՝ աղաղակեցին ամ͞ 'ի միոյ բե-րանոյ, և ասեն. հաւատամք մեք 'ի նա՝ զոր

դու

դու քարոզես։ Եւ նոյնժամայն լուծին զվոնի-
փատոս, և զգեցուցին զհանդերձն. և եդեալ
մի սիրտ և մի ոգի ժողովուրդն և քուրմքն՝ ըն-
թացան 'ի մեհեանս, և զխորտակեալ կուռսն
ընկեցին 'ի ծովն ըստ հրամանի սրբոյն բազարա-
տայ, և զսեղանս և զաւազանս դիւական
պաշտամանց խորտակեցին։

Հրամայեաց երանելին փող հնչեցուցանել.
և ժողովեցան ոգիք հարիւր հազար. և խօ-
սէր ընդ զբանն այ. և երթեալ նոքօք 'ի փոքր
մատուռն, զոր գաղտ շինեալ էր վոնիփատոս,
կատարեաց զխորհուրդ պատարագին։ Իսկ
ասաց ժողովրդեանն զեօթն օր սրբել պահօք
և աղօթիւք. և երախայացոյց զնս, և ուսոյց
զբանն ճշմարտութե. և հրամայեաց բերել
իւրաքանչիւր 'ի տանէ իւրեանց նոր հան-
դերձս սպիտակս և մաքուրս, և մոմեղէնս.
և տարաւ զնոսա 'ի գետն, և մկրտեաց 'ի
միում աւուր ոգիս իռ. ռ. և զգեցոյց նոցա
զնոր սպիտակ զգեստն՝ վառեալ մոմեղինօք.
և հաղորդեցոյց զնս 'ի պատուական մարմնոյ
և յարենէ տն մերոյ յի քի։

Իսկ ամենեքեան՝ որք լուսաւորեցան, տեսին
զշնորհս սբ հոգւոյն 'ի նմանութի աղաւնոյ,
զի իջանէր 'ի մաքրութի ջուրցն, և դարձեալ
վերանայր յերկինս. և եղև ուրախութի 'ի
քաղաքին յայնմիկ։ Իսկ դարձեալ ուսուցա-
նէր ժողովրդեան երանելին բազարատ, և
առնէր նշանս մեծամեծս, և բժշկէր զամ
ցաւս. և այնպէս դարձոյց զբաղում քա-
ղաքս և զգաւառս սիկիլեայ կղզւոյն։ Կոր-
ծա-

Ծակից էր նմա և ընդ մարկիանոս կմ մարկե-
ղոս՝ առաջին եպս սիրակուսայ քաղաքին սի-
կիլիացւոց՝ ձեռնադրեալ նոյնպէս 'ի սրբյն
պետրոսէ : Բայց զորս մկրտեաց սրբն բագա-
րատ 'ի քաղաքէն տաւրմենոյ՝ ասին լինել ա-
ւելի քան ղ ի ռ . և յայլ քաղաքաց և 'ի գա-
ւառաց ե ճ . ռ : Բազմեաց զմեհեանս կռոց,
շինեաց եկեղեցիս , և ձեռնադրեաց քահա-
նայս և սարկաւագունս . յորս յանուանէ յի-
շին նիկանոս կամ լիկայոնիդէս սարկաւագ-
նի , և ագրինոս քահանայ . որք վն պատուէի-
րեաց սրբն բագարատ վնիփատոսի քաղաքա-
պետի , թէ յետ իմոյ կատարման առաքեա
զագրինոս 'ի հռոմ առ ընթ առաքեալն պե-
տրոս , և ձեռնադրեսցէ զնա փոխանակ իմ
յաթոռ եպսութե քաղաքիս այսմիկ : Դար-
ձեալ և զեպափրոդիտոս զայր ընտրել ձեռ-
նադրեաց քահանայ , և առաքեաց սերմա-
նել զբանն այ 'ի գիւղս գիւղս :

Իսկ եղև իբրև օր քան զօր աճէր բազմութի
հաւատացելոց ( ասէ գրիգոր միայնակեաց
'ի ներբողեանն սրբյն բագարատայ ) , ակիւ-
ղինոս ոմն բռնաւոր 'ի գլխաւորաց սիկիլիոյ՝
ժողովեալ զօր բազում՝ խաղաց 'ի վր տաւ-
րոմենայ քաղաքի՝ 'ի սուր սուսերի մաշել
զբնակիչս վն դառնալոյ նց 'ի հաւատս քսի :
Իսկ իբրև զահի հարան տաւրոմենացիք , քա-
ջալերեաց զնոսա սրբն բագարատ . ասէ . մի
երկնչիք՝ , մեր է յաղթութիւն , զի ած ը մեզ
է . և թշնամիք առանց մարտնելոյ 'ի քաղաքս
կոր'ի գլուխ դարձցին : Զայս ասացեալ՝

էառ

եառ ընդ իւր զպատուական փայտ խաչին , և զՏէրունական պատկեր Քրիստոսի Աստուծոյ և փրկչին մերոյ , և զանապական մօր նորա և կուսի , և կանգնեաց զնոսա իբրև պարիսպ ամուր ընդդէմ բանակի Թշնամեաց :

Յայնժամ անկաւ խռովութիւն 'ի բանակն . քանզի հայեցեալ յայրն Աստուծոյ և 'ի զէնս նորա զօրաւորս՝ զահի հարան և շփոթեցան . և երևելս առնելով զմիմեամբք՝ սկսան կոտորել ընկեր զընկեր . մինչև յետոյ ուրեմն 'ի միտս եկեալ՝ ընկեցին զզէնս , և ընթացեալ անկան առ ոտս սրբոյն . և հաւատացեալ յԱստուած նորա՝ մկրտեցան . որով և տաւրօմենացիք՝ ևս քան զևս ակնածէին 'ի լուսաւորչէն իւրեանց 'ի Բագարատայ , և յամենայնի ունկնդիր լինէին բանից նորա ախորժ կամօք :

Այլ բարխատեաց բանսարկուն մախացեալ ընդ գործս սրբոյն՝ յարոյց ընդդէմ նորա սատան զոմն յիշխանաց լեռնականաց արտագատոս կիմ արտագորոս անուն՝ սպանանել զնա ոչ խափանիչ պաշտամանց դիցն հայրենեաց . և 'ի միում աւուր գտեալ զսուրբն առանձին յաղօթս՝ եհար և սպան զնա սրով . այլք ասեն՝ թէ միաբանեալ զլեռնականս՝ քարամբք ետ քարկոծ առնել զերանելին որպէս զստեփաննոս . և այնպէս կատարեցաւ սուրբն Բագարատ հայրապետ առաքելական և վկայական արդեամբք :

Իսկ Վոնիփատոս ծառայէր իշխանին կալեալ զանօրէն սպանող սրբոյն՝ չարաչար տանջանօք կարճեաց զնա 'ի կենաց . և յետ առնլոյ սուգ

մեծ

մեծ հանդերձ ամ ժողովրդեամբ 'ի վր հօրն հոգևորի , արարեալ արծաթի տապան՝ մեծաւ պատուով և անուշահոտ խնկօք և մաքուր կտաւօք պատեաց զմարմին նր լուսաւորչին բագարատայ . և մինչև 'ի մահ իւր

սպասաւորէր նր նշխարաց նր :

Նաւ էր Ը դարս բազումս նշանաւոր տապան սոյն բագարատայ անդ 'ի տոռոմենա , որ և էր մի յերևելի քաղաքաց սիկիլիայ կղզւոյն . իսկ այժմ է գիւղաքաղաք Ը արքեպսութբ մեսսինայու . քանզի 'ի վախճան իններորդ դարու յաւուրս լևոնի իմաստասէր կայսերն յունաց առին սարակինոսք ափրիկեցիք զտոռոմենա , և աւերեցին . սպանին և զեպն պրոկոպիոս՝ որ եղև վերջին եպս տոռոմենայ , և այրեցին զմարմին նր և զայլ ևս նահատակաց . գուցէ և զնշխարս սրբց առաջնոց՝ որք էին յերևելի տեղւոջ . մինչև կասկածիլ ոմանց՝ եթէ նոյն անցք անցեալ իցեն և Ը մարմին սոյն բագարատայ . միայն թէ գտանին ցարդ ևս նշխարք ինչ յանուն նորին , կամ համանուան նորա բագարատայ վկայի նահատակելոյ առ մաքսիմիանոսիւ :

Նախորդ սոյն պրոկոպիոսի եղև յաթոռն տոռոմենայ թէոփանէս կեռամէոս յաւուրս վասլի արշակունւոյ . արդ նորին թէոփանեայ՝ թող զայլ բազմապատիկ ճառս նորա յունարէն , կայ և ներբողեան՝ այն է ճառն ԺԷ . 'ի վր սոյն բագարատայ . ուր թէպէտ և համառօտիւ ; բայց համաձայն գրելոցս նշանակէ զպատմութիւն սոյն . և ասէ՝ թէ

զիա

զլիակատար վարս նորա գրեաց Եւագրիոս . ուստի երևի քաղեալ և մեր վկայաբանութիւն ։ 'Ի սկզբան հինգերորդ դարու էր և Գրիգոր միայնակեաց բիւզանդացի 'ի բակուրեան վանաց . որ խօսեցաւ այլ ճառ ներբողական 'ի նըն Բագարատ առ ժողովուրդն Տաւումենայ 'ի Սիկիլիա ։ Այլ պանծագոյն ներբողեանս երգոց և շարականաց նուագեաց 'ի վր̃ սրբոյն Բագարատայ սրբն Յովսէփ երգաբան յունաց . յորում փայլին բանք առաւել քան զվկայաբանութիւնս ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Բանզի սքանչելեօք լի է վարք սրբոյն Բագարատայ , որպէս և պէտք իրացն պահանջէին 'ի զարմացուցանել առաքելաբար զհեթանոսս 'ի քրիստոս , 'ի միոյ կողմանէ հաստատուն մեծ է վկայաբանութիւն նորա գտելոյ առ մեզ միօրինակ 'ի Ճառընտիրս և յայսմաւուրս՝ յիշատակութիւն նախկին գրչի նորին Եւագրիոսի , կամ գուցէ Ագրինոսի՝ գործակցի և աշակերտի սրբոյն . ընդ նմին և որ ինչ յիշատակք լինին պատմականք առ Թէոփանեայ և Գրիգորի 'ի ներբողեանս սրբոյն . Թողից ասել զմիաձայնութիւն ազգի ազգի յայսմաւուրաց և համառօտագիր վարուց առ յոյնս և առ լատինս , զորս յառաջ բերէ և հաստատէ Հենշքենիոս Բոլլանդեան ։ Իսկ 'ի միւս կողմանէ ցաւ է մեզ , զի չէ գտեալ Հենշքենիոսի զվկայաբանութիւն ինչ փոքր մի ճարձակ՝ հին և հարազատ , կամ որ նոյն է՝ զօրինակ ինչ նման մերումս . այլ միայն գտեալ է զերկարապատում և զատայօղ վարս ինչ՝ յանուն Եւագրիոսի յարմարեալ 'ի յետնոց յունաց . մինչև անարժան գտեալ է և զայն տպագրել . այլ մեք զերծ եմք յայնպիսի նորահնար օրինակէ՝ որ խոպան անծանօթ է մեզ . և ունիմք

բա-

բաւական ապացուցանելոց բանից վաւերական դատելոց յաչս հենաքեննիոսի՝ թէ մերս օրինակ չունի ինչ արտաքոյ վաւերականութեան։ Թողից յիշել և զազգի ազգի աւանդութիւնս սիկիլիացւոց՝ գրով և անգիր․ որոց կամէի առաւել հետաքննիչ լինել յանդանելն իմ ՟Ը․ բազմանիս և ՟Ը․ մեսսինա քաղաքս սիկիլիոյ, որոյ ՟Ը․ մեջ է առաւմենա․ բայց քանզի սա է ծովեզերեայ, և ինձ հարկ եղև ընդ ցամաք ճանապարհել, չեղէ արժանի տեսանել ղուխատատեղի սրբոյն բագարատայ։

Համարի հենաքեննիոս, թէ ՚ի հարազատ գրուածոց եւագրի առեալ իցէ ոչ միայն քաղուածոն թէոփանեան, այլև բանն այն՝ զոր յառաջ բերէ վն՟ տրունական պատկերի սրբոյն թէոդորոս ըստուդիտէս Գիրք Է․ Գլ․ 8․ յասելն․ ✱ Պետրոսի առաքելոյ է բորբաւս ՚ի պատմութեան „ սրբոյն բագարատայ․ որդեա՛կ յովսէփ՝ բեր զպատկեր „ տն մերոյ յն՟ի ք՟ի, և ապաւորեա՛ զայն ՚ի պիւրգիս „ ( տախտակ կամ պաստառ ), զի տեսցէ ժողովուրդն, „ թէ ո՛րպիսի էառ կերպարան ծնօրդին․ ո՛չ զի տեսանելով և՛ս քան զևս հաւատասցեն՝ հայեցեալք ՚ի „ տիպ կերպարանացն, և յիշեսցեն՝ որ ինչ միանգամ „ մեզ աւետարանեցաւ նց ||։ Եւ աչա վկայաբանն մեր մեկն գրէ, թէ սրբն բագարատ ունէր զպատկեր տրունական առեալ նմա ՚ի պետրոսէ առաքելոյ․ զնոյն յիշէ կրկին և կրկին սրբն յովսէփ երգաբան յունաց․ թող զի գրիգոր բիւզանդացի յաւելու և զկենդանագիր տիրամօրն։

Ասացի՝ թէ միօրինակ է վկայաբանութիւն բագարատայ ՚ի Ճ․ և ՚ի Հ․ իմա՛ նաև նովին չարադրութ․ միայն թէ Հ․ և տր իւէլ առ համառօտելոյ զպատմութիւն՝ կարճեն փոքր մի զխօսակցութիւս, որք ճոխագոյն նկարագրին ՚ի Ճառընտրի․ թո՛ղ զթէ թև տարբերութիւս օրինակագրաց․ և մեք առաւել պ․ հետ գնացաք ոճոյ տր իւէլի՝ հայելով և ՚ի Ճ․ ո՛չ և զսկզբնաւորութիւն, և զվերջաւորութիւն քաղեցաք ՚ի հաւաքմանց բոլլանդեանց։ Զարմանամք, զի և սուրիոս չէ՛ գտեալ զվարս ինչ սրբոյն բագարատայ առաւմենոյ եպիսի, այլ միայն զմիւս բագարատայ վկայի՝ որ էր փաիւգացի մանուկ ժ՟ը ամաց, նահատակեալ առ մաքսիմիանոսիւ․ և զամանէ խօսի ՚ի մայիսի․ 12։

ՎԿԱՅ-



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Գրիգորի ակռականդացւոց եպսի և վրդպի ։

Հ. Ե. Ա. Նոյեմբ. 23 ։ Յ. Նոյ. 24 ։ Ճառընտ. Ա. ՄլԺ—ԱԺէ ։ Գ. Խանդէոս Բայզանդացւ ։ Մետափր. ստորև ։ (1)



ԸՆԴ ՍՐԲՈՅՆ ԲԱԳԱՐատայ նախկին եպիս սիկիլիայ կղզւոյն, որ 'ի Թարգմանչաց անտի մերոց անշուշտ եղաւ 'ի տօնացուցի յառաջնում կարգաւորութե, յաւելեալ են յետինք յարմարութբ և զնորն գրիգոր եպիսկոպոս նոյն կղզւոյն յայլում քաղաքի՝ զկնի Թարգմանչաց ծաղկեալ 'ի վեցերորդ կամ յեօթներորդ դարու ։ Այլ թերևս ինքն իսկ գրիգոր վկայաբերն մեր՝ որ երևի Թարգման վարուց նորուն, պատուաւորել կամեցեալ է զանուանակից իւր մեծանուն՝ անցուցանել 'ի տօնացոյց ազգիս ։ Արդ ժամ է լսել զվարս սրբոյն՝ համեմատութ Ճառընտրաց հայոց և յունաց, և աւանդութց սիկիլիացւոց և հռովմայեցւոց ։

Այրանելին գրիգորիոս՝ ակռականդացի կոչեցեալ՝ էր ծննդեամբ 'ի պռետորիոն աւանէ՝ իբր վեց մղոնաւ հեռի 'ի քաղաքէն ակ-

ռականդայ ( որ է ըստ յն. ագրիգենդոն , և լտ. ակռիձենդում . ռմկ. ձիռձենդի ) , յարևմուտս 'ի սիկիլիա կղզւոյն , որդի լեալ քրիստոնեայ և պարկեշտ ծնողաց՝ քարիտոնի և Թէոդոտեայ , յաւուրս բարեպաշտ արքային յուստինիանոսի . զոր յոյն վկայագիրք համարին լինել յուստինիանոս ընչատ կոչեցեալ՝ որ Թգ̃րեաց յամի տն̃ 685 . և լատինք՝ մանաւանդ յետինք , յուստինիանոս մեծն՝ որ նստաւ յամի . 527 , մինչև 'ի 564 . վ̃ոյ և զծնունդ գրիգորի դնեն յամի իբր . 560 :

Սա ասի մկրտեալ մանուկն գրիգոր 'ի սր̃յն պոտամինիոնէ եպս̃էն ակրականդացւոց . որ և յետ ութամեայ լինելոյ մանկան՝ ե̃տ ազաչանաց ծնողացն յանձն արար զմանուկն 'ի ձեռս գիտնաւոր և առաքինի ուսուցչի , որում անուն էր դամիանոս , դաստիարակել զնա յուսումն գրոց և 'ի վարս բարիս : Սա տեսեալ եպս̃ին զգեղեցիկ յառաջադիմութի̃ գրիգորի յա̃մի՝ արար զնա կղերիկոս յերկոտասան ամաց հասակի . և մարգարէաբար ասաց զնմանէ , անօթ ընտիր ընծայի այսօր ա̃յ . և յանձնեաց զնա ի̃ վերակացութ̃ դոնատոսի սարկաւագապետի և դրապետի . և ունէր գրիգոր ձայն քաղցր և սքանչելի , և պաշտէր յեկեղեցւոջ եպս̃արանին զցայգ և զցերեկ :

Սա եղև գտանել գրիգորի 'ի մատեանս եպիսկոպոսարանին զվարս սր̃յն բարսղի հայրապետի . ի̃ որ փառեցաւ ա̃ծային նախանձու՝ նմանօղ լինել հետոց նր̃ . այլ ասէր ի̃

միտս իւր, ոչ այլազգ հնար է ինձ հասանել
սրտիս բաղձանաց, եթէ ոչ շրջեցայց յուխտս
և 'ի վանորայս արևելից, ուր սր̄ն բասիլիոս
եհաս այնպիսում շնորհաց: Մովսէս տենչա-
նօք 'ի հասակի ութևտասն ամաց մտեալ
յաւուր միում առանձին յեկեղեցի յառաջին
պահու գիշերոյ՝ խնդրեաց 'ի փրկչէն յաջո-
ղել նմա զճանապարհ իւր. զի տեսօղ լինի-
ցի նոր տեղեաց տնօրէնութե̄ նր̄, և ուխտից
հարցն սր̄ց: Նաև եկեալ 'ի սենեակ իւր 'ի
ննջել՝ լուաւ զձայն, որ ասէր, Գրի՛գորիէ:
Համարեցաւ՝ թէ դռնապան աւագ սարկա-
ւագն կոչէ զինքն, հանգոյն կոչման սամուէ-
լի առ յոյ իբրև 'ի հեղեայ. և ընթացաւ առ
նա միանգամ և միւսանգամ, և իմացաւ՝ թէ
ոչ մարդոյ է ձայնն. մինչև յերրորդում
նուագի յայտնապէս լուաւ, զի ասէր ցնա
հրեշտակ ա̄յ. լսելի եղեն աղօթք քո. արդ
յարուցեալ 'ի վաղիւ անդր էջ 'ի ծովեզրն:
Նաև նր̄ գիշերախառն եկեալ յափն ծովու՝
եգիտ նաւ, որ երթայր 'ի կարքեդոն՝ այն է
կարթագինէ յափրիկէ. եմուտ 'ի նա, և յե-
րիս աւուրս եհաս 'ի կարքեդոն. ուր պտեղի
առեալ զչորեքաւուրբք՝ յայտնի եղև ամենե-
ցուն մաքուր վարուքն և ուսումնասիրութբ̄,
և պատուեցաւ յեպ̄ս տեղւոյն: Ընդ հան-
դիպէր նմա նոր միայնակեացն մարկոս հռով-
մայեցի. որ գիտաց 'ի յայտնութե̄ զխորհուրդս
ճանապարհին գրիգորի. և յանուանէ ող-
ջունեալ զնա՝ էառ ը̄ իւր տանել յեփէմ, ու-
ղեկցութբ̄ սրապիոնի և ղևոնդիոսի կրօնաւո-
բաց

րաց 'ի վանաց հռովմայ :

Նա այնպէս նաւարկեալ 'ի քսան աւուրս հասին 'ի տրիպօլիս . և յետ կալոյ անդ զամիս մի՝ անցին յեգիպտոս . և շրջեալ զամիսս երիս 'ի վանորայս և 'ի միայնարանս եղբարց՝ եկին յեՏէմ : Անդ դադարեաց գրիգոր 'ի միում 'ի վանաց արտաքոյ քաղաքին . և հայեցեալ 'ի կարգ ճգնութե նոցա՝ մանաւանդ յաւուրս քառասնորդաց, հետև օղ լինէր ըմի, առաւելեալ քան զքաղմօք 'ի պահս, 'ի խոնարհութիւնս, 'ի տքնութիւնս, յաղօթս և յամ առաքինութիւնս : Նա արարեալ զտօն զատկին 'ի որյարութե՝ հաղորդեցաւ 'ի ձեռանէ եպիսկոպոսին մակարիոսի ( կոր յովհաննու ) :

Յետ այսորիկ բաժանեցան յականմայս 'ի գրիգորէ մարկոս միայնակեացն դառնալ 'ի հռովմ ընկերօքն հանդերձ . յայնժամ պատրիարգն եՏէմի ընկալաւ զգրիգոր վն բարի համբաւոյ նր . և տեսեալ զառաջինի քաղաքավարութե նր և զմծիմաստ գիտութի՝ պահեաց զնա առժամանակ մի 'ի հայրապետանոցի : Իսկ մարկոս նաւեալ ընդ հովքն յարևմուտս՝ եկն նախ 'ի սիկիլիա, և իջևանեցաւ յեպիսկոպարանի ակրականդացւոց . ուր լուեալ յեպիսկ՝ թէ ծնողք գրիգորի լան զնա իբրև կորուսեալ, պատմեաց զեղելոցն ամ, և մխիթարեաց զծնօղս նր . տեսի ասէ և տեսիլ սքանչելի, որով առաքեաց զիս աձ՝ տանել ՟է իս զգրիգոր զուգահրեշտակ զաւակ ձեր յեՏէմ :

Արդ կացեալ գրիգորի յեՏէմ զժամանակ մի, և զարմանալի գտեալ յաչս բոլորից՝ ձեռ-

նադրեցաւ 'ի պատրիարգէն սարկաւագ յաւուր պենտեկոստէի · ապա Հռոմանն առեալ շրջեցաւ յամ ուխտս պաղեստինու · և զտարի մի նստաւ 'ի վանս Լերինն Ձիթենեաց · և զկնի երթեալ 'ի խորագոյն անապատ՝ եկաց 'ի Հանդարտութեան ընդ ձեռամբ ծեր միայնակեցի միոյ գիտնականի զամս չորս · յորմէ ուսաւ զմնացեալ գիտութիւն ամ և զիմաստասիրութի :

Եւ ապա դարձ արարեալ յեդեմ՝ չուեաց անտի յանտիոք · և եգիտ ընտանելութի 'ի պատրիարգէ տեղւոյն յեւստաթէոսէ ( կամ 'ի գրիգորիոսէ ) · և բնակեաց առ պատմիչն 'ի խցի անդ՝ յորում բարսեղ գրեաց զգիրս վեցօրէից , ( թերևս շփոթելով ընդ բասիլիոսի սելևկիացւոյ ) : Զկնի տարւոյ՝ թողեալ և անդ զանուն սրբութե և իմաստութե՝ էանց 'ի կոստանդինուպօլիս · ուր նստաւ 'ի վանս սրբոյն սարգսի և բագոսի , և անդ ընթեռնոյր զմատեանս ուսկեբերանի : Զարմացել էր վանականն եղբարքն Հանդերձ ընդ վարս գրիգորի և ընդ խստամբերութիւն , զի զերկաւուրբք և զեռաւուրբք առնոյր կերակուր · և այն՝ ոլեռամբք և Հացիւ և աղիւ շատացել · էր զի և զշաբաթն ողջոյն անսուաղ անցուցանէր , անդադարելի յաղօթս և յընթերցուածս :

Եհաս Համբաւ նր առ պատրիարգն · և նա առաքեաց երկուս յիմաստունն սարկաւագաց իւրոց , զկոստանդին թղթապահ , և զմաքսիմոս փիլիսոփոս՝ փորձել զիմաստութի գրիգո-

րի

րի սարկաւագի . և նմ՟ եկեալ և տեսեալ զա-
ռաքինի քաղաքավարութի՟ նր՟՝ մատուցին նմա
զգիրս գրիգորի ա՟ծաբանի՝ վերծանել և տալ
զմեկնութի՟ բանից ինչ : Նա ընթերցաւ և եթ
յունկն նմ՟ 'ի գրոց անտի , և ինչ ոչ ասաց .
ապա յետ 'ի բաց դնելոյ զգիրսն՝ իբրև սաս-
ցին , թէ կամիցաք լսել զմիտս բանիցն , գրի-
գոր ոչ՟ սերտ 'ի բերան ունելով զկարգաց-
մունս՝ գեղեցիկ թարգմանեաց զա՟մն կար-
գաւ . ը՟ որ յապուշ կրթեալ նմ՟՝ դարձան և
ետուն վկայութի՟ առաջի պատրիարգին , թէ
չիք նման նր՟ 'ի մէջ քաղաքիս :
Յայնժամ կոչեաց զնա պատրիարգն 'ի պա-
տրիարգարանն , և ասէ . 'ի բարւոք ժամու
եկիր որդեակ , զի պէտք էին մեզ այսպիսի
իմաստնոյ ա՟ծասիրի . և նա հնազանդ եղեալ՝
հարկեցաւ մն՟ալ 'ի հայրապետանոցի զաւուրս
քան բազում խոնարհութ՟ . որով գտաւ օրի-
նակ բարի համօրէն ուխտի եկեղեցւոյ . և
մեծապէս սատար եղև ուղղափառաց ը՟դէմ
հերձուածոց ժամանակին . Եւ առաւել 'ի
լինել ժողովոյ յարևելեան և յարևմտեան
եպսաց՝ փայլեաց յատենի անդ վ՟դպութի՟
ս՟բյն գրիգորի 'ի յաղթահարել զա՟մ հերձ-
ուածս . մինչև բանի՛ նր՟ բազմաց գալ յուղ-
ղութիւն . վ՟ոյ և կայսրն յուստինիանոս կո-
չեաց զնա առ ինքն , և պատուեաց բազում
գովութ՟ :
Տեսեալ երանելւոյն գրիգորի՝ եթէ մեծա-
ցաւ անուն նր՟ , փութայր մեկնիլ 'ի թագա-
ւորեալ քաղաքէն . քանզի և զերեսս հաս-

տառեալ էր երթալ և 'ի Հռովմ. ապա բարե-
կամացեղն Էր մարկիանոսի ընտանեաց Թգրին՝
Էր նր ձեռն Հաւանեցոյց զկայսրն և զպատ-
րիարգն թողուլ զնա երանելւոյն. և նք
թոյլ ետուն նմ այսու պայմանաւ, զի միւս-
անգամ եկեսցէ ։

Հասեալ սրբյն 'ի Հռովմ, և երկրպագեալ
գերեզմանի ռք առաքելոցն՝ առանձնացաւ
անդ 'ի վանս սրբյն սաբայի աբբայի, և կար-
ծէր անծանօթ լինել 'ի մարդկանէ. բայց
նոՀրակք՝ որ յառաջ քն զնա եկին 'ի Հռովմ,
պատմեալ էին զգործս նր՝ զոր արար 'ի կոս-
տանդնուպօլիս. որպէս և աբբայն մարկոս
Հռովմայեցի քարոզէր զառաքինութին նր ։

Մինչդեռ 'ի վանս Հռովմայ էր գրիգոր, մե-
ռաւ ակռականդացւոց քաղաքին եպսն թէո-
դորոս կմ թէոդոսիոս անուն 'ի սիկիլիա. և
քաղաքացիքն յերկուս բաժանեցան Հակա-
ռակութ. մի կողմն ընտրէր զսաբինոս քաՀա-
նայ, և միւս կողմն զկռեսկենտինոս սարկա-
ւագ. իսկ ոմն ուխտ եպսարանին և իշխանք
քաղաքին ըն խորՀրդոյ եւպուղոսի սարկա-
ւագապետի ասեն. զոր ած յայտնեսցէ, լի-
ցի մեզ առաջնորդ և Հովիւ ։

Եւ յարուցեալ անձինք ընտրանաւ՝ յեկեղե-
ցական և յաշխարհական կարգէ, ըն որս էր և քա-
րոզն Հայրն գրիգորի, նաւեցին 'ի Հռովմ.
և մատուցանէին առ Հայրապետն Հռովմայ՝
մի կողմն զսաբինոս, և միւս կողմն զկռես-
կենտինոս. և մնացեալքն ասէին բերանով
քարիտոնի. զոր տացէ մեզ ած 'ի ձեռն քո ։

Հրամայեաց նմ՟ հայրապետն սիրով միաբանիլ, և զմինն ընտրել 'ի ձեռնադրութի՟. այլ սաքինեանք և կրիսկենտեանք ոչ կամեցան զխաղաղութի՟, մինչև յուզել աղմուկ 'ի մէջ ատենին. վ՟ոյ բարկացեալ հայրապետն՝ հրաման ետ հանել զն՟ս արտաքոյ յերեսաց իւրոց. և ասէ ցիշխանսն մնացեալս և ցքահանայս և ցնախասարկաւագն. ո՞վ է յերկոցունցն արժանի. և ն՟ք ասեն, մեք ոչինչ գիտեմք. (զի չէին հաւան և ոչ ը՟ մի 'ի նոցանէ). այլ դու ինքնին խնդրեա՛ յ՟այ. և զոր յայտնէ քեզ, զնա ձեռնադրեա՛ մեզ եպ՟ս ։

Նա 'ի գիշերին յայնմիկ տեսանէ հայրապետն յանուրջս զպետրոս և պօղոս զք՟ռի առաքեալսն, զի ասեն. մի՛ ինչ տրտմիր վ՟ս ակռականդացուց աթոռոյն. գիտասջի՛ր, զի երկոքեանքն յառաջ մատուցեալք անարժանք են. բայց է 'ի քաղաքիս յայսմիկ 'ի թաքստի այր օտար՝ յոյժ երկիւղած յ՟այ, որոյ անուն գրիգորիոս՝ արգելական 'ի վանս ս՟րյն սաբայի. որ յորժամ լուաւ զգալուստ ժողովրդեանն յերկրէ իւրմէ՝ երկեաւ, զի մի՛ խնդրեսցեն և գտցեն զնա, փախեաւ գաղտ 'ի վանացն, և գնաց յայլ տեղի. զնա կոչեա՛ և ձեռնադրեա՛ և տո՛ւր 'ի նմ՟. զի 'ի նա հանգուցեալ է հոգի ն՟ր. և ցուցին նմա զերանելին գրիգորիոս. և ապա անյայտ եղեն առաքեալքն ։

Յարեաւ հայրապետն ը՟ առաւօտն. կոչեաց զաւագերէցն իւր, և այլ երկու եպ՟սունսն՝ զորս յուղարկեալ էր 'ի կոստանդինուպօլիս առ

առ թգ̃րն վ՟ն նոր հերձուածոյն, և անդրէն դարձեալ էին 'ի հռովմ. զնա առաքեաց 'ի սբ̃յն սաբայի վանսն։ Եւ յորժամ գնացին, զգրիգորիոս ոչ գտին. հարցանէին ցհայր վանացն՝ թէ ո՞ւր է. և նա ասէ. երկու աւուրբք յառաջ եւ 'ի վանացս, և ոչ թէ թաքուցեալ է 'ի վանս սբ̃յն երազմոսի։ Եւ եղև 'ի գալ նց̃ անդր՝ գիտաց գրիգոր, և փախեաւ 'ի պարտէզ վանիցն. և նորա եկեալ գտին զերանելին թաքուցեալ 'ի պարտիզին 'ի մէջ ծառոց և բանջարոց։ Եւ յորժամ տեսին զնա եպ̃սքն, ծանեան զնա, և գիրկս արկեալ համբուրեցին. զի տեսեալ էր նց̃ զպատիւ նր̃ 'ի թգ̃րէն և 'ի պատրիարգէն և յայլ ժողովեալ եպ̃սացն
'ի կոստանդինուպօլիս։

Իսկ նա ծունր եած նց̃, և ասէ. թողութի՛ արարէք ծառայիս ձեր, զի այր մեղաւոր և օտար եմ. և տարան զնա առ հայրապետն. և անկեալ 'ի ծունգս իւր՝ երկիրպագ հայրապետին։ Եւ իբրև ետես զգրիգոր, ծանեաւ զկերպարանսն, որ̃ ցուցին նմա առաքեալքն յանուրջս. և ասէ. բարի՛ եկիր որդեա՛կ իմ գրիգորիէ. որ̃ լուա՛ք՝ նոյնպէս և տեսաք. և համբուրեաց զնա, և նստոյց մերձ առ իւր. և պատմեաց նմա զերևումն սր̃ց առաքելոցն. և ասէ. ընտրեաց զքեզ ա̃ծ, և հրամայեաց ինձ ձեռնադրել եպ̃ս ակռականդացւոց քաղաքի աթոռոյն։

Եւ նա հրաժարէր ասելով, ո՛չ եմ արժանի, և ո՛չ կարացող այդմ մեծ կարգիդ։ Ասէ հայրապետն. մի՛ հակառակիր որդեակ, զի վ̃ն

ան-

անլսողութեն բազումք կորեան : Ասէ գրիգոր. անսամ ինձ սակաւ աւուրս , զի Թերևս կարացից հաւանեցուցանել զմիտս իմ. զայս ասաց , և կամէր փախչիլ 'ի սպանիա . և գիտացեալ հայրապետին' առաքեաց պահապանս . և էին առ նա զգիշեր և զցերեկ : Եւ յաւուր կիւրակէի կոչեաց հայրապետն զամ քահանայս և զժողովուրդս ակրականդացւոց քաղաքին . և ասէ ցնա . եկեսցիք ընդ իս խաչիւ և աւետարանաւ , և երթիցուք սաղմոսերգութեամբ յեկեղեցի գլխաւորի առաքելոյն սրբոյն պետրոսի . և զոր ցուցցէ մեզ աստուած , զնա տաց ձեզ հովիւ և առաջնորդ : Եւ յորժամ գնացին յեկեղեցին , հրամայեաց հայրապետն գրիգորի , և ելեալ յամպիոնն' կարդաց զաւետարանն : Եւ յորժամ կատարեաց , Թռեալ 'ի խորանէն սպիտակ աղաւնի' նստաւ 'ի վերայ գրիգորի . և յոյժ զարհուրեցան ընդ սքանչելի տեսիլն : Եւ 'ի միւս կիրակէին ձեռնադրեցաւ գրիգորիոս յեպիսկոպոսութիւն ակրականդացւոց , ընդ ոմանց 'ի հայրապետէն , և ընդ այլոց' յերկուց եպիսկոպոսաց եկելոց 'ի ժողովոյն :

Եւ յետ տասն աւուր ողջունեցին ակրականդացիք զհայրապետն , և առեալ զնորին գրիգոր' նաւեցին 'ի սիկիլիա . և եկին նախ 'ի թանորմին քաղաք , այն է բալերմօ , և հանդիպեցան եպիսկոպոսի տեղւոյն . անդ ընդ առաջ ել գրիգորի բորոտ մի , և անկեալ յոտս նորա' աղաչէր վասն բժշկութեան . նա ձեռն եդ 'ի վերայ նորա , և աղօթեաց առ աստուած . և առժամայն սր-

բե-

բեցաւ այրն, և եղև մարմինն փափուկ որպէս պատանեկի . և յոյժ զարմացան՝ որք տեսին և լուան ։

Ապա առեալ տարան զգրիգոր յակռականդ, և նստուցին յաթոռ եպիսկոպոսութեան՝ նուագելով, որպէս ասէ պատմիչն, զնք ածն ։ Իսկ ՚ի հրամայել սրբոյն գրիգորի՝ կարդաց եւպուղոս նախասարկաւագն, պռօսխումէն . և գրիգոր ասէ . խաղաղութիւն ամենեցուն . և ժողովուրդն . և ընդ հոգւոյդ քում ։ Սարկաւագն դարձեալ ասէ . սօփիա . յայնժամ ծունր եդ գրիգոր, և ամենայն եկեղեցին ընդ նմա . և զկնի յերկար աղօթից լռութեան՝ եկին ՚ի համբոյր նորոյ եպիսկոպոսի ՚ի մեծամեծաց մինչև ՚ի փոքունս, և եղև ուրախութիւն մեծ . բայց միայն սարինեանք և կրիսկենտեանք խռովին, զի չեղև՝ զոր ինքեանք խնդրէին ։

Ընդ հասանել սրբոյն յաթոռ իւր՝ ծանեաւ զնա ըստ ոմանց հայրն իւր քարիտոն . այլք ասեն՝ թէ ՚ի հռովմ տեսեալ զնա, գիտաց՝ եթէ որդին իւր իցէ . բայց մայրն յետոյ իմացաւ . և յայնժամ տարածեցաւ ՚ի քաղաքին՝ թէ որդին քարիտոնի է եպիսկոպոսն իւրեանց ։ Հարցանէր երանելին գրիգոր ցծնօղս իւր . քանի՞ ամք են՝ յորմէ հետէ կորեաւ որդին ձեր . ասէ քարիտոն . ԺԴ ամք են . և յորժամ կորեաւ, ԺԲ ամաց էր . յայնժամ երկիրեպագ եպիսկոպոսն հօր և մօր իւրում, և խնդրեաց թողութիւն ՚ի նոցանէ՝ համբուրելով զոտս նոցա . և նոքա համբուրէին զաջ և զպարանոց նորա ։ Ասէ եպիսկոպոսն ցմայր իւր . զիա՞րդ կաս մայր իմ . և

նա

նա ասէ . բարիոք որդեակ, որովհետեւ տե-
սի զքեզ ։

Յաւուր՝ յորում եմուտ գրիգոր 'ի քաղաքն, ընթացաւ առ նա կրօնաւոր ոք խուլ և համր, և անկաւ յոտս նորին . և նա կալեալ զլեզուէն՝ կնքեաց նշանաւ սրբոյ խաչի, նոյնպէս և յերկու ականջսն . և առժամայն խօսեցաւ և լուաւ այրն, և ասէր մեծաւ ձայնիւ . մեծ են գործք քո տէր, զոր 'ի ձեռն արդարոյս այսորիկ կատարես ։ Նաև յաւուր տօնի սրբոյ խաչին բերին առ նա բազում հիւանդս և ախտաժէտս և դիւահարս . և նա ձեռն դնելով և աղօթիւք բժշկեաց զամենեսեան . և յայնմ օրէ անուանեցին զնա երկրորդ սքանչելագործ գրիգոր ։ Եւ յորժամ ելանէր ընդ մէջ քաղաքին, տանէին ընդ առաջ նորա զիմնեղէնս 'ի պէսպէս ախտից . և նա ձեռն դնելով ողջացուցանէր . ոչ և զսաբինոս քահանային դուստրն զանդամալոյծ առժամայն ողջացոյց ։ Ձեռնադրեաց նա եպսն և արժանաւոր քահանայս և սարկաւագունս, և ուսուցանէր զնոսա, և պատուիրէր անտես չառնել զաղքատս, զորբս և զայրիս, զօտարս, զհիւանդս և զբանտարկեալս . և զոր քարոզէր՝ անձամբ կատարէր . և էր զօրաւոր բանիւք
և արդեամբք ։

Ընդ որ նախանձեցեալ բանսարկուին՝ յարոյց 'ի վերայ նորա պատերազմ՝ ընկենուլ զնա յաթոռոյն . շարժեաց 'ի նախանձ զսաբինոս և ըզկրեսկենտինոս, և այլ երեսուն անձինս 'ի կղերիկոսաց, և քսանևհինգ յՅականաց .

որք

որք հաստատեցին բանս 'ի միջի , զի ընկե-
ցեալ զգրիգոր՝ դիցեն զլեկլոս ոմն անձա-
նօթ․ սա էր օտարական , և օտար 'ի ճշմար-
տութե․ զոր տեսեալ էր սքչն գրիգորի յա-
րևելս , և 'ի լինել ժողովոյ՝ յանդիմանեալ
էր զմոլորութի նր որ ը̃դէմ մարդեղութե ,
և գործակից լեալ 'ի տալ արտասահմանել
զնա 'ի կողմանս լաւոդիկեայ․ իսկ նա փա-
խըստեայ անկեալ կայր 'ի սիկիլիա՝ կեղծա-
ւորեալ զճգնաւորն վարս․ որով հաճոյ եղև
յաչս ոսոխաց գրիգորի , և արծարծիչ չար
խորհրդոց նց ։

Որդ իբրև չգտին պատճառս ընդդէմ առն
այ , 'ի սադրելոյ դիւին կաշառեցին գեղեց-
կատեսիլ կին մի պոռնիկ․ և 'ի գիշերի մինչ-
դեռ երանելին ննջէր , ետուն զանձ դռնա-
պանին , և արկին զկինն զաղտ 'ի սենեակն․
և նա երթեալ թաքեաւ ը̃ մահճօքն ։ Իբրև
գիշերին ժամն եհաս , սաբինոս քահանայն
և կրեսկենտինոս սարկաւագն առին տասն
այր այլ ը̃ ինքեանս , եկին ընդ աշտիճանսն ,
և բախեցին զդուռն սենեկին․ մտին կալան
զկինն․ աղաղակեին մեծաւ բարբառով․ ե-
կայք ժողովուրդք , և տեսէք զեպսին մերոյ
զպղծութե գործքս․ զի զոր կարծէաք նք և
արժանաւոր , այժմ երևեցաւ պիղծ և անար-
ժան․ և եղև աղմուկ մեծ 'ի քղքին․ և ժո-
ղովուրդն կամէր սատակել զթշնամիս սքյն ,
զի գիտէին՝ թէ առ նախանձու նիւթեցին
զայն հնարս չարութե․ բայց երանելին ար-
գել զամբոխն 'ի պաշտպանելոյ նմա բռնու-
թը̃ ,

թէ, և աղաչեաց թոյլ տալ, զի ինքնին նր յայտնեսցէ զանմեղութիւն իւր ։

Այլան անօրէնք զՌբ եպսն, և 'ի բանտ արկեալ՝ պնդեցին զոտսն 'ի կոճեղս ․ և 'ի գիշերին յայնմիկ հրեշտակ տն եջ և արձակեաց զնա ․ բայց չարքն զգուշացան՝ զի մի իմասցի ամբոխն զսքանչելիսն, ապա թէ ոչ՝ քարկոծ առնէին զնա ․ և եդեալ զնա 'ի միում տան 'ի գիւղահոջ՝ կոչեցին զտիբերիոս սարկաւագ, որ էր գործակալ կմ նուիրակ հայրապետին հռովմայ, ունելով անուն պատուոյ էքսարխոս իբրև զմետրապօլիտ, և կայր 'ի սիկիլիա 'ի վերակացութիւն նաւաց երթևեկելոց 'ի հռովմ ․ զսա որսացան յինքեանս, և ետուն պարտաւոր առնել զգրիգոր, և առեալ գիր ամբաստանութեն ձեռնագրով նր և այլ ևս տասն արանց յիւրեանց՝ տարան զթուղթն և զգրիգոր նաւու 'ի հռովմ ։

Զայն իմացեալ ժողովրդեան՝ հրձիգ արարին զտունն սաբինոսի և զկրեսկենտինոսի ․ իսկ նոքա քանզի ոչ գնացին 'ի հռովմ, միաբանեալ զայլս 'ի համախոհից՝ բռնութբ կալան զեպսարանն, և նստուցին անդ զլևկիոս՝ առնել նովաւ հանդերձ զոր կամէին, իբրև զգայլս՝ որ յարձակիցին 'ի հօտ, ոյր ոչ գուցէ հովիւ ։ Այլ ոչինչ օգնեաց առ այս՝ փոյթ արքեպսին սիրակուսայ, որոյ առաքեալ էր անդր արս յիւրոցն՝ տեսանել զեկեղեցին ակռականդայ առ ժամանակ մի ։

Իսկ հայրապետն հռովմայ իբրև ընթերցաւ զնամակն առաքեալ 'ի գործակալէ իւրմէ՝ հան-

հանդերձ բազմութբ̃ մկայից , բարկացաւ և
եւ բանտարգել առնել զգրիգոր՝ ոչ̃ արդէն
պարտաւորել յատենի ․ ուր ասէ զեւոնդիոս
սիկիլիացի՝ պատմող բանիցս ․ բայց ան-
գթունես , յոր ըմբռնեցաւ և որ ունէրն զա-
ռաջին գահն առաքելական ․ այլ բարկութի̃ն
կուրուսանէ զիմաստութս ։ Այլ ա̃ծ՝ որ ար-
դարացուցանէ զարդարն , դարձոյց զանար-
գանս սբ̃յն 'ի պատիւ ․ քանզի ո̃ք առաքել̃քն
պետրոս և պօղոս երևեցան նմա 'ի բանտի ,
և մխիթարեցին զնա ․ բժշկեցաւ և որդի բան-
տապանին յայսոյն պղծոյ աղօթիւք գրիգո-
րի ․ և այլ բազում սքանչելիք եղեն 'ի ձեռն
սբ̃յն , և հնչեաց լուրն ը̃ ա̃մ քաղաքն ։
Այլ 'ի վ̃ր այսր ա̃մի յերկարեաց դատաս-
տան սբ̃յն զամ մի , զի հայրապետին զբաղել̃
էր յայլ բազում իրս ․ մինչև լու եղև բանն
'ի կոստանդինուպօլիս ․ և առաքեաց թղ̃թն
զապաթարն մարկիանոս , և պատրիարգն ըզ-
կոստանդին սարկաւագ զթղթապահն իւր ,
և զերիս կամ չորս արքեպ̃սունս , զկիզիկիոյ
կամ զեփեսոսին , զանկիւրային և զկորնթու-
սին ․ զի և կայսրն յունաց ունէր իրաւունս
ինչ 'ի վ̃ր կղզւոյն սիկիլիոյ , և մանաւանդ
քաղաքին ակռականդայւոց ․ Նո՛ղ զի և ինքն
գրիգոր և քաղաքակիցք ն̃ր էին բազում մա-
սամբ յունազգի ։ Եւ իբրև հասին նոքա 'ի
հռովմ , և հանդիպեցան երանելւոյն գրի-
գորի , ասէ ցն̃ն ո̃քն ․ ո՜րչափ վ̃ն անարժան
և մեղապարտ դատապարտելոյս աշխատե-
ցայք ը̃ ծով և ը̃ ցամաք ձանապարհորդել ․
բա-

քաւական էր ինձ դատաստան հոգևոր տն̃ն մերոյ հռոմայ հայրապետին . թէ արդարացուցանէր , և թէ դատապարտէր : Իսկ նորա խոստանային փութով տալ հանել զնա 'ի բանտէ , և վրէժ առնուլ 'ի չարախօսացն նր̃ : Իսկ նա ասէ . ոչ այդպէս . նախ քննեցէք զամ̃ վր̃ իմ , և ա̃ծ զճշմարիտն ցուցանէ . զի նր̃ միայն է վրէժխնդրութիւն : Եկին 'ի նոյն աւուրս 'ի հռոմ և ակռականդացւոց քահանայքն և կրօնաւորքն և իշխանքն մր̃ եպիսկոպոսին . գնաց և քարիտոն զկնի . բերին և զկինն չարախօս ը̃ իւրեանս` հանդերձ սաբինոսիւ և կրեսկենտինոսիւ :

Հրամայեաց հայրապետն , և եղև ժողով մեծ իբր հարիւր և յիսուն եպս̃աց . և յառանի անդ ետ բերել զգրիգոր եպս̃ և զչարախօսս նր̃ , որք էին թուով հարիւր տասն : Յայնժամ ասէ հայրապետն . զի՞նչ չարախօսէք ունիք մր̃ եպս̃ին ձերոյ . նք̃ ասեն . կալաք զնա ը̃ կնոջ յանկողնի իւրում : Ասէ հայրապետն . դուք ինքնի՞ն գտէք զնա , եթէ կինն պատմեաց ձեզ . ասեն սաբինոս և կրեսկենտինոս . մեք անձամբ գտաք զայդ այդպէս , և կինն խոստովանեցաւ մեզ առաջի դատաւորին . հարցէք և ը̃ չարագործ եպիսկոպոսդ , և ասէ` եթէ կամի և եթէ ոչ` զճշմարիտն , զի ոչ կարէ ասել առաջի կնոջն` զոր ընդ մեզ բերաք : Եւ ասէ գրիգոր . յարեան 'ի վր̃ իմ վկայք չարեաց . զոր ոչ գիտէի` հարցանեն ը̃ իս . բայց ով եղբարք` և փոխանակ սիրոյ իմոյ մատնէք զիս . ա̃ծ ա-

բաւ-

րասցէ դատ ը̅ն̅ իս և ը̅ն̅ ձեզ ։

Եւ մինչ նա զայս ասէր , վերացաւ կինն 'ի դիւէ՝ որ տիրեալ էր նմա յառաջագոյն , և զարկաւ զգետնի . և սկսաւ թաւալել առ ոտս նոյն գրիգորի փրփրալով . և նա զաչս և զձեռս յերկինս ամբարձեալ՝ աղաչեաց զա̅ծ արտասուախառն պաղատանօք . և ապա ասէ . վ̅ս ս̅ր̅ց առաքելոցն և վ̅ս ն̅ր̅ հարցս ժողովելոց՝ չա՛ր դև ե՛լ 'ի ստեղծուածոյս ա̅յ , զի ողջ մտօք պատմեսցէ զճշմարիտն . և առժամայն ել դևն . և կինն անկեալ կայր ո̅պ մեռեալ . իսկ գրիգոր յարոյց զնա և զգաստացոյց ։

Հարցին ժողովեալքն ցկինն . զի՞նչ անուն է քո . և նա ասէ . եւդոքիա կոչիմ եղկելիս ։ Ասեն ցնա եպ̅քն . ճանաչե՞ս զեպ̅ս քաղաքին ձեր . և նա ասէ . այո՛ , բազում անգամ առի ողորմութի̅ 'ի ձեռանէ նր̅ ը̅ն̅ աղքատս ։ Նոքա ասեն . ասա՛ մեզ զճշմարիտն . ստո՞յգ իցէ գործն՝ որ պատմի ը̅ն̅ քեզ և ը̅ն̅ եպ̅սն ։ Իսկ կինն յոգւոց եհան , և ասէ արտասուօք . կենդանի՛ է ա̅ծ երկնի և երկրի , որ ոչ գիտեմ այդ գործով զդա . այլ սաթինոս և կրեսկենտինոս խաբեցին զիս կաշառօք , և անիրաւ զրպարտեցին զարդարն . դա՛տ արասցէ ա̅ծ ը̅ն̅ նմա , և խնդրեսցէ 'ի նոցանէ զմեղս անձին իմոյ . քանզի յայնմ ժամանակէ հետէ՝ երկու ամ և ամիս վեց ահա տանջիմ 'ի դիւաց ։

Զայս ասացեալ՝ բուռն եհար կինն զոտից գրիգորի , և ասէր . ողորմեա՛ ինձ ծառայ ա̅յ .

այ՟. Թող ինձ զչարիս՝ զոր ես ընդ քեզ արա-
րի 'ի հնարից սատանայի. ոչ թողից զոտս քո
և ոչ կանգնեցայց, մինչև գթասցիս յիս 'ի
թշուառականս : Եւ ասէ ցնա երանելին. ով
կին դու, ոչ է իմ թողուլ զմեղս, բայց միայն
մարդասիրին այ՟՝ որ գիտէ զգաղտնիս մարդ-
կան. Նա ինքն թողցէ զյանցանս ամենեցուն,
որ բառնայ զմեղս Տր՟. և կալեալ զձեռանէ՝
յարոյց զնա :

Յայնժամ ահ կալաւ զամ՟ ժողովն. և ասէին.
օրհնեալ տր՟ ած՟ հարցն մերոց, որ յայտնեաց
մեզ այսօր զայսպիսի ծառայ իւր : Հրամայ-
եցին, և կալան զամ՟ չարախօսսն. և հատաւ
վ՟ն նց՟ վճիռ, զի զկարգաւորսն ա՟ծ կանոնաց
պատժեսցեն և աքսորեսցեն. իսկ զՏականսն
մատնեսցեն դատաւորաց՝ պահել 'ի բանտ և
խոշտանգել : Եւ նք՟ սկսան աղաղակել ար-
տասուօք. մեղաք՝ անօրինեցաք և յանցեաք
արդար ծառայիդ այ՟. և էին աշխարհականքն
Ճ, և կարգաւորքն Ը. և նայեցեալ ը՟ գրի-
գոր՝ գոչէին առհասարակ. ողորմեա՛ց մեզ
ծառա՛յ այ՟, և մի հատուցաներ մեզ չար ընդ
չարի : Եւ նորին ընթացեալ յոտս հայրապետ-
տին՝ աղաչեաց զնա և զամ՟ ժողովն, ասելով.
մի հատուցանէք դոցա չար վ՟ն իմ մեղաւո-
րիս. այ՟ միայն է վրէժխնդրութի՟ :

Եւ ասէ ժողովն. և զի դու ինքնին ներեցեր
չարարարաց քոց, մնայ և մեզ արձակել ըզ-
դոսա յազատութի՟, և այ՟ թողուլ զդատաս-
տան նց՟ : Եւ մինչդեռ յայսոսիկ էին, յան-
կարծ յարեաւ մըրրիկ յոյժ, և շնչեաց հողմ

ուժգին իբրեւ ՚ի խորոց երկրի եւ ՚ի վեր . եւ անկաւ խաւար եւ մէգ , եւ ծածկեաց զնոսա ամպ աղջամղջին . կարծէին՝ եթէ երկիր եկուլ զնս . եւ աղաղակէին միաբան ժողովեալքն , Տր ողորմեա . եւ իբրեւ փարատեցաւ ամպն եւ մէգն , երեւեցան Թշուառականքն , եւ ահա երեսք իւրեանց միակողմանի սեւացեալ ոպ հնդիկ . իսկ սաբինոսին եւ կրեսկենտինոսին ոչ միայն սեւացան դէմքն , այլ եւ ներքին շրթունքն մինչեւ ՚ի կլափն կախեցան , որ ամենեւին խօսել ոչ կարէին . եւ այնպէս յերեսաց ածասաստ բարկութեն զարհուրեալ ամբոխին՝ ասէին . այժմ ծանեաք՝ թէ կեցոյց Տր զօծեալ իւր . մեծ է Տր մեր , եւ անբաւ է զօրութի նր :

Յայնժամ ժողովեալքն ամ երթեալ անկան յոտս սրբյն գրիգորի , ասելով . օրհնեա զմեզ հայր Տր , զի յաւուրս յայսոսիկ դու միայն երեւեցար մշակ համբերութե : Եւ նա նոյնպէս անկաւ յոտս նց , եւ ասէ . թողութի շնորհեցէք ինձ մեղաւորիս , զի ես որդն եմ եւ նախատինք մարդկան . մանաւանդ դուք աղօթեցէք վն իմ : Եւ յարուցեալ համբուրեցին զնա . եւ դարձեալ նստան եւ ածին առաջի զգանեալսն . եւ ասէ ցնս հայրապետն . լուարուք ամենաթշուառք , ահա եղերուք նման հօրն ձերոյ սատանայի , որ բորբոքեաց զձեզ յանօրէն գործն . այժմ հրամայեմք՝ որ լինիք յայսմհետէ դուք եւ որդիք ձեր յազգէ յազգ՝ ծառայք ակռականդացւոց եկղարանին , եւ անարժանք եկեղեցական աստիճանի .

նի . և ամ եպս՝ որ ձեռնադրէ զոք 'ի տանէ այտի , նզովեալ լիցի ։

Բայց այս վճիռ Թումի պահեալ միայն վասն տանն սաբինոսի և կրեսկենտինոսի . զի վն մնացելոցն ասէ պատմութիւն , թէ եպսքն աստացին ցմքն գրիգոր . հրամայեա՛ վն նոցա , զինչ կամք քո իցեն . և նա յանձնեաց զնոսա յաւագերէցն իւր և 'ի սարկաւագապետն և յիշխանս քաղաքին , և ասէ . տարէ՛ք զդոսա 'ի քաղաքն մեր , և տո՛ւք 'ի տունս իւրեանց , մինչև մեք հրամանաւ այ եկեսցուք ։ Իսկ պոռնիկ կինն ոչ դարձաւ 'ի քաղաքն , այլ խնդրեաց 'ի ժողովոյն , զի դիցեն զնա 'ի վանս կանանց . և նր կոչեալ զսարկաւագուհին վանաց որոյն կիկիլեայ՝ յանձն արարին զնա Ը դաստիարակութն նր . ուր և ամս Իը ձգնեալ՝ ապաշխարութբ հանգեաւ ։ Իսկ զլևկիոս անարժան աթոռակալն ակռականդայ՝ վճռեաց ժողովն տարագրել 'ի բաց . որ և աքսորեցաւ 'ի սպանիա ։

Յետ այսորիկ հրամայեաց հայրապետն սրբյն գրիգորի մատուցանել զմծային խորհուրդն որ պատարագին . և տեսին ամենեքեան զզօրութիւնս հոգւոյն զոր սեղանովն և զանձամբ նր . և առեալ կայծակունս 'ի փիլոնն իւր՝ արկ խունկս եկեղեցւոյն և ամ ժողովրդդեանն , և ոչ այրեցաւ փիլոնն . եղեն և այլ սքանչելիք 'ի ձեռն սրբյն գրիգորի . մինչև առաւել ակնածել ամենեցուն , և տալ փառս այ ։

Եւ յետ սակաւ աւուրց հրաժարեցին 'ի հայ-

րապետէն սբն գրիգոր և որ է նմ՝ երթալ ՚ի սիկիլիա․ այլ ասի՝ թէ եպսունք յունաց բռնադատեցին և տարան զնա ը իւրեանս ՚ի կոստանդինուպօլիս․ ուր փառաւորեցաւ կըր-կին ՚ի թգրէն և ՚ի պատրիարգէն․ և ետուն նմ անօթս եկեղեցւոյ և բազում տաղանդս՝ շինել նոր եկեղեցի․ և այնպս մտեալ ՚ի նաւ՝ եկն ՚ի սիկիլիա խաղաղութբ ։ Ելին ը ա-ռաջն նր մնալ զինոք ամ ժողովուրդ կղզւոյն , և եղև ուրախութի յոյժ․ ապա զ՚ի վաղուց կործանեալ տաճար կռոցն շինեաց եկեղեցի մեծ յանուն նց առաքելոցն պետրոսի և պօ-ղոսի ՚ի քաղաքի անդ ակռականդացւոց , և անդր փոխեաց զեպսարանն ։

Եւ յետ տնտեսելոյ զհօտ իւր ամ բարեկար-գութբ ոչ սակաւ ժամանակս՝ առեալ ը իւր զոմանս յուխտէն՝ առանձնացաւ յանապատս և ՚ի լերինս բազում ճգնութբ և ամծամերձ ընտանեօք․ ուր և գրեաց ճառս հոգեշահս․ յորոց գտանին ցարդ մեկնութիք նր ՚ի գիրս ժողովոցի ։ Եւ այնպս զվերջին ժամանակս իւր՝ է զի յաթոռ իւր , և է զի ՚ի ճգնարա-նի անցուցեալ՝ հանգեաւ լի աւուրբք և ար-դեամբք՝ պարծանօք ՚ի քն․ որում փառք յա-ւիտեանս․ ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Մի ՚ի գժուարին պատմութեց եկեղեցականաց է վարք մեծանուն սբյս գրիգորի ակռականդացւոյ․ դըժ-ուարութի իմն ը ժամանակագրութե , և ը հաւատար-մութե․ եթէ ժամանակն ստոյգ լինէր , դիւրին էր

բառ-

բառնալ և զկասկած անհաւատարմութեան յունազգի գրչաց. որք թէպէտև յայնժամ միաբան էին ընդ Հռովմայեցւոց, այլ ազգային մեծաբանութեամբ գրեցին զոր գրեցին, թէպէտև 'ի Հռովմ բնակեալ էին: Այսպիսի են երկու գրիչք երկարապատումք՝ կամ ժամանակակից, և կամ մերձաւոր ժամանակաւ կարծեցեալք. դևոնդիոս՝ որ թուէի սիկիլիացի, կրօնաւոր քահանայ 'ի վանից սրբոյն սաբայի, որ 'ի Հռովմ. և մարկոս աբբայ նոյն վանաց. երկոքին եւս հոռոմք, և յարևմտան գրօղք նմ բանի ծայրէ 'ի ծայր. թող զԱնաստասիոս, որ քաղէ զնոցին բանս այլով ոճով. և զհեղինակն ճառընտրին մերոյ՝ որ զնոյն պատմութի համառօտէ, և տակաւին երկար երևի յոյժ. ապա եթէ զդևոնդի և զմարկոսի բանս կամիցի ոք ընթեռնուլ, ձանձրանայ. զի իբր օրագրութեամբ՝ թող թէ սարեգրութեամբ յերկարեն զբանն հանդերձ աւելորդ կրկնաբանութեամբ: Եւ թէպէտ սովիմբ ոչ փոխասի ստուգութի պատմութե, այլ առաւել հաստատի ընդ իմիք, սակայն յունական ոգին ոչ սակաւ արատ բերէ. մինչև չհանդուրժել բարոնիոսի և այլոց յարևմտեայց, և ջանալ յերկբայս արկանել՝ թէ ոչ զգոյացութի, գէթ զպարագայս ինչ պատմութե:

Միայն թէ անաչառ խօսելով՝ երկուստեք կան իրաւունք. 'ի կողմանէ յունաց իրաւացի է ասել, թէ ստուգապէս յանիրաւի կրեաց սրբն գրիգոր զայնչափ նեղութիս ոչ միայն 'ի քաղաքակցաց իւրոց, այլև 'ի Հռովմայեցւոց. և եթէ յոյնք չլինէին վրէժխնդիր, թերևս յերկարէին հալածանք սրբոյն: Եւ 'ի կողմանէ Հռովմայեցւոց իրաւացի է ասել, թէ այդ հանգամանք բանից՝ որք հային 'ի վրէժխնդրութիւն ցուցեալ 'ի յունաց, և 'ի գալուստ գրիգորի 'ի կոստանդնուպօլիս յետ արդարանալոյ յատենին Հռովմայ, օտար են 'ի սովորութեց աթոռոյն Հռովմայ:

Այլ թողեալ զայսոսիկ՝ յոյնք ցուցանեն զգրիգոր ակրականդացի յեօթներորդ դարու, և ընդ այնմ նշանակեն զթագաւորս և զպատրիարգունս և զեպիսկոպունս ժամանակին այլովք անուամբք. իսկ լատինք կամին դնել 'ի վեցերորդ դարու՝ յաւուրս գրիգորի պապին մեծն կոչեցելոյ. որով փոխին յոյժ պարագայք բզմ իրաց: Պատճառ լատինացւոց է մի միայն, բայց զօրաւոր. զի

'ի կարգս Թղթոց սրբոյն գրիգորի մեծի կայ յիշատակ կմ նշմարանք այդմ պատմութեան . ի գիրք Ա . Թղթ . 72 . ընդիկտ . Թ . ի յամի տն 591 . որ էր երկրորդ ամն հայրապետութեան մեծին գրիգորի , գրէ առ պետրոս կիսասարկաւագ 'ի սիկիլիա այսպէս . * Կամիմք տմ իրօք , զի ,, յառաջ քան զձմեռն եկեսցեն առ մեզ գրիգորիոս ,, ակռականդացի , և լեւոն կատանացի , և վիկտոր պա- ,, նորմացի || : Իսկ ընդիկտ . Ժ . յամի 592 . գիրք Բ . Թղթ . 33 . գրէ առ յուստինոս պրետոր , թէ լեւոն եպս անմեղ գտաւ և արդարացաւ տմ իրօք . վնյ մեծարեա՛ զնա ասէ տմ պատուով . և զի լաւութիւն է զգրիգորէ , կարծի՛ թէ դեռ կայր 'ի գիպահոզ . մանաւանդ զի 'ի յաջորդ ամի . ընդիկտ . ԺԱ . գիրք Գ . Թղթ . 12 . ասէ մեծն գրիգոր առ մաքսիմիանոս եպս սիրակուսայ . * Կանխաւ գրեալ էր ,, իմ եղբայրութե քում , զի զայնոսիկ՝ որոց ասացեալ ,, էր ինչ ինչ հակառակ գրիգորի եպսին ակռական- ,, դայցւոց , 'ի հռոմ քաղաք պա՛րտ է քեզ յղել . զոր և ,, առաջինկայ գրովս առաւել ստիպաւ 'ի գործ դնել ,, ազդ առնեմք . ուստի զայն անձինս և զայլ տեղեկու- ,, թիս , զի զգործս և զխնդիրս՝ որք առ՛ան , փութա- ,, ջի՛ք վաղվաղակի առաքել այսր . և ո՛չ թողացուցա- ,, նեմք դանդաղանս և չքմեղութիս ինչ ամենևին հայթ- ,, հայթել ձեզ . որպէս զի փութով յղելով զնս ձեր 'ի ,, հռոմ քաղաք՝ ոչ ասացաք , գիտասցուք՝ թէ զինչ ,, պարտ է մեզ անօրինել օգնականութեն այ զանձնէ նր ,, առաւել փրկաւէտ || :

Եւ քանզի յընդիկտ . ԺԴ . գիրք Է . Թղթ . 12 . ասէ առ պետրոս եպս արիկաղայ՝ ,, որ մերձ էր յակռականդ , թէ * ակռականդայ եկեղեցին 'ի մեջ յանձնեցաւ 'ի խնամս ,, այցելութե եղբայրութե քո || , ապա մակաբերի՝ թէ չև էր գրիգոր դարձեալ յաթոռ իւր յայնժամ , զի յամի . 595 : Բայց յետ այնորիկ նշանակի իբրև յաթոռ իւրում . քանզի գրէ . ընդիկտ . Ա . զի 597 . գիրք Է . Թղթ . 23 . առ փանտինոս գործակալ , թէ լուաք՝ զի յակռականդայ հրէայք կամեցեալ են քրիստոնեայ լինել . խնամ կալջիր ասէ տմ պխայից նց . և խորհրդակից լեր և խօսեաց * Ը եղբօր մերում՝ եպսի տեղւոյն || :

Արդ՝ ոչ 'ի բանից աստի քաջայայտ երևի արթնութիւն և հոգողութիւն քաջ հովուին սրբոյն գրիգորի մեծի , նոյն-

պէս

պէս և յետ գործոց նորա յայտնի է սրբութիւն և իմաստութիւն նորա սքանչելի․ զոր և բազում գովութ յիշատակէ յայսմաւուրք մեր 'ի մարտի․ 13․ վասն եղեւալ՝ թէ առ նովաւ եղեն անցք սորին գրիգորի ակռականդացւոյ, բազմօք այլազգ պարտ է իմանալ զգրեալս ըստ յունական աւանդից, թօթափելով զծանրացուցիչ պարագայսն․ միայն թէ այնու ամփոփ պայծի սրբութեն պատմութեն, և ոչ անկանի արատ ինչ 'ի վերայ սրբ հայրապետին․ զի ուր թղթովք և վկայիւք և այնչափ բազմութ դատախազից ամբաստանութեն կայր զառնէ եպսկ, թէպէտև զսուտ, հարկ էր մեծին գրիգորի լսել զգատն երկայնմտութ․ մինչև ի սաստկոյ իւրոյ՝ գիտասցէ, թէ զինչ պարտ է ունօրինել օգնականութն այս պանծնէ նորա առաւել փրկաւէտ ։ Այլ տակաւին մեք չեմք հաւատոյ, թէ յիշատակեալն 'ի մեծէն գրիգորէ գրիգոր ակռականդացի իցէ մեծանունն և սոնեցին այն, զորմէ մեր բանքն են․ զի զինչ զարմանք են՝ թէ յայլ ևս այլ գարս գրիգոր անուամբ եպիսկոպոսք եղեալ իցեն 'ի միում քաղաքի, և կոփեք յուզեալ իցեն 'ի վր հանմանմնց յայլեւայլ ժամանակի ։ Այլապէս տեսանեմք 'ի տօնացուցի սիկիլիացւոց կէս ակռականդացւոց և զայլ գրիգոր եպս հնագոյն ժամանակաւ․ վասն յոմանց երևեցին այս կոչի գրիգոր երկրորդ․ և թերևս երրորդ գրիգոր եւս գոյր ։ Սոյգն 'ի վեր էլանէր, եթէ և լուսինք ունէին զվարս ակռականդացւոյն 'ի նախնեաց իւրեանց․ սակայն և նոքա 'ի յունաց կէս 'ի սիկիլիացւոց փոխ առնուն զվարս նորա 'ի տօնէլն զնա 'ի նոյեմբ․ 23․ ըստ սորին կղեմայ հռովմայ հայրապետի հանգոյն մեզ ։ 'Ի սիկիլիա տեսանէի և լսէի, զի ոչ զսին բազմապատ տօնականաց եպս՝ իբրև լուսաւորիչ իւրեանց առաջին ճանաչէին, նոյնպս և 'ի մեծ յարգի ունէին զսին գրիգոր ակռականդացի, ոչ թէ ըստ հասարակ ոճոյ՝ իբրև երկրորդ լուսաւորիչ սոս․ այլ 'ի բուն քաղաքն ակռականդացւոց չեղև ինձ գնալ, զի չէր 'ի վր ճանապարհիս ։ Իսկ եթէ չիցէ կարծիքս օտար, հայելով իմ 'ի բազս սիկիլիացւոց՝ որոց բարք և բնաւորութեն ունի զյատկութիս յունաց և իտալացւոց միանգամայն, ոչինչ օտար գտանէի 'ի նոցանէ զսմ գրեալսն 'ի վարս բագարատայ և գրիգորի ըստ ամ բանի․ այլ զայսցանէ և այսչափս շատ լիցի ։



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Անդրէի առաքելոյ։

Հ. Յ. Լ. նոյ. 30։ Տօնախմբ. Ե. ՃԷ = ՇԻԴ.
Մարտիրոս 'ի Պատրաս. ԿԶ 'ի Ծառաընտրութեան յամաց։



ԽԱՉԱՕԳԵԱՅ ԵՒ քծակիր անձն՝ նախկին և հարազատ աշակերտ երկնաւոր վարդապետին իւրոյ՝ որ առաքեալն Անդրէաս՝ էր որդի յոնանու, և ոչ սակաւ երէց եղբայր պետրոսի վիմին հաւատոյ, 'ի ցեղէն նեփթաղիմայ՝ 'ի բեթսայիդայ քաղաքէ գալիլեացւոց, կանխաւ աշակերտեալ որ մկրտչին յովհաննու, և նովաւ առաջնորդեալ յաշակերտութիւն փրկչին։ Արդ սա այսու օրինակաւ յառաջ քան զամ առաքեալս զհետ երթեալ կենարարին՝ ազդ արար անյապաղ և եղբօր իւրում սիմոնի վն գալստեան Ճըշմարիտ Մեսիային, զի որում վկայ լինէր Աւետարականն՝ ականջալուր նախ 'ի Ճշմարիտ մարգարէէն յովհաննէ, և ապա ականատես անձամբ. և առեալ զեղբայր իւր՝ էած առ քս։ Իսկ տէրն մեր՝ որոյ ընտրեալ էր զԱնդրէաս, ընտրեաց և զսիմոն, և նախապատիւ արարեալ՝ կոչեաց զնա յիւրական անուն վէմ. Եւ

որ

որ ոչ եւեթ 'ի նախանձ շարժի անդրէաս , այլ եւս քան զեւս ուրախ լինի ը̄ պատիւ եղբօրն իբրեւ ը̄ անձին պատիւ . գիտելով եւ զայն՝ թէ յա̄ծայրին ընտրութիւս բազում այն է , զի կրտսերն քան զերէցն երիցանայ . ո̄պ յակոբ , եփրեմ , մովսէս , դաւիթ , եւ այլք ոչ սակաւ ։ Բայց էր եւ ինքն անդրէաս զկնի պետրոսի երեւելի 'ի մէջ աշակերտաց իբրեւ խորհրդական եւ առաջակաց տ̄ն , ը̄ երկուս որդիսն զեբեդեայ . ը̄ որում է տեսանել 'ի պատմութիւս ն̄ր աւետարանի ։

Իսկ յետ համբարձմանն տ̄ն եւ գալստեան հոգւոյն ս̄բյ՝ 'ի սփռիլ առաքելոց 'ի քարոզութի , վիճակ եհաս անդրէի՝ ը̄ հասարակ աւանդութե՝ երթալ յելլադա . որ եւ անդ կատարեցաւ 'ի վ̄ր խաչի 'ի պատրաս քաղաքի աքայեցւոց . եւ զի յետ ժամանակաց ծագ ելլադայ , ը̄ յունաստանի , բիւզանդիոյ՝ եղեւ թ̄գ̄րեալ քաղաք յունաց , այն է կոստանդինուպօլիս , նշխն իւր աթոռ ս̄բյն անդրէի կոչի 'ի յունաց աթոռն կոստանդնուպօլսոյ՝ նոր հռովմ կոչեցելոյ , իբր պատկեր եւ նմանութի հնոյն հռովմայ՝ զահի ս̄բյն պետրոսի ։

Այլ պատմականն աւանդութի քարոզութե եւ կատարման անդրէի բազմօրինակ տեսանի առ մատենագիրս ազգի եւ ազգի . եւ առաւելապէս կրկին օրինակաւ ։ Մին այն , զոր գտանեմք 'ի ճառընտիրս եւ յայսմաւուրս մեր՝ առեալ եթէ 'ի յունաց եւ եթէ յասորւոց , երկարապատում բանիւք , ո̄պ թէ անդրէաս զառաջինն երթեալ իցէ յ̄ն մարգա-

կէ-

կերաց սկիւթացւոց՝ 'ի գործակցութե՛ն մատ-
թէոսի աւետարանչի, այնպիսի անհեթեթ
հանգամանօք՝ որ ոչն վայելեն առաքելական
պատմութե. ընդ որում յիշեցաք 'ի վարս սրբյն
մատթէոսի. և ապա ասի եկեալ և նահա-
տակեալ յելլադա։

Եւ միւսն այն, զոր բերէ սուրիոս յայլ ճառ-
ընտրաց յունաց իբրև 'ի մետափրաստեանց.
ուր լինին բանք զերթալոյ անդրէի յելլադա
ևեթ. և այս ևս թէպէտև յաճախապա-
տում հիւսուածով յօրինեալ, այլ առանց
երևելի դժպատեհութե, ունելով սկիզբն
հաստահիմն կարծեցեալ՝ օրինակ զայս.
* Զնահատակութե սրբյն անդրէի, որում ա-
կանատես եղեաք մք երիցունք և սարկա-
ւագունք եկեղեցեացն աքայեցւոց, գրեմք
համօրէն եկեղեցեաց՝ որ 'ի կողմանս արևե-
լից և արևմտից և հարաւոյ և հիւսիսոյ իցեն
'ի քսի անուն։ Խաղաղութի ձեզ և ամենե-
ցուն, որ հաւատան 'ի մի ած կատարեալ յեր-
րորդութե, 'ի ճշմարիտն հայր անծին, 'ի
ճշմարիտն որդի միածին, 'ի ճշմարիտն սբ հո-
գի, որ 'ի հօրէ ելանէ՝ և յորդին դադարէ.
զի ցուցցէ մի հոգի լինել 'ի հայր և յորդի.
և այն ինչ լինել միածին որդին՝ որ ինչ է և
ծնօղ նր։ Զայս հաւատս ուսաք 'ի սրբյն ան-
դրէէ առաքելոյ տն մերոյ յսի քսի. զորոյ
զկատարումն՝ զոր դէմ յանդիման տեսաք,
առաջի արասցուք ըստ կարի ||։

Եւ 'ի վր բերի պատմութի ձոխ. որոյ բովան-
դակութի այս է։ Եգէաս կմ եգէադէս փո-
խա-

խանակ բդեշխի մտեալ 'ի քաղաքն պատրաս՝ եգիտ զառաքեալն քնի, և ասէ ցնա. դու ես անդրէաս քակտիչ մեհենաց, և մոլորեցուցիչ ժողովրդեան զհետ նոր աղանդոյ, զոր ինքնակալք հռովմայեցւոց հրամայեցին բնաջինջ առնել։ Անդրէաս ասէ. ինքնակալք հռովմայեցւոց չև ես ծանեան զեկեալ փրկութիւն Ծի զյն քն զորդին այ։ Եգեաս ասէ. ոչ նա է խաչելեալն։ Անդրէաս ասէ. իցէ՞ թէ գիտէիր զխորհուրդ խաչին, զոր կամաւորութբ յանձն էառ փրկիչն։ Եգեաս ասէ. զարմանամ, զի դու այր իմաստուն զհետ երթաս խաչելոյն։ Անդրէաս ասէ. մեծ է խորհուրդ խաչին. և եթէ կամիս՝ լուր, և պատմեցից քեզ։ Եգեաս ասէ. մի ասեր խորհուրդ, այլ պատուհաս զխաչն։ Անդրէաս ասէ. նոյն իսկ փայտ պատուհասի՝ խորհուրդ է փրկութե մարդկան. միայն դու լուր ինձ։ Եգեաս ասէ. ես լուայց երկայնմտութբ. բայց դու թէ ոչ լսես ինձ, զնոյն զայն խորհուրդ խաչի ընկալցիս անձամբ յանձին։ Անդրէաս ասէ. եթէ զանգիտէի ես 'ի խաչելոյն, ոչ արդեօք քարոզէի զփառս խաչին։

Եւ յետ խօսելոյ առաքելոյն զբանն կենաց՝ սկսեալ 'ի նախամարգոյն մինչև 'ի չարչարանս և 'ի յարութիւն քնի, ասէ եգեաս. թող զայդասիկ, և զոհեա դից. ապա թէ ոչ՝ 'ի խաչ ելանես։ Եւ իբրև ետես զառաքեալն անխոտորելի 'ի սիրոյն քնի, ետ 'ի բանտ արկանել զնա. իսկ աշակերտեալքն վճպուե ա-

ռա-

ռաքելոյն՝ կամէին զդուրս խորտակել բանտին, և զեգեաս սպանանել. բայց անդրէաս ոչ թողացոյց նմա, և բազմօք խրատեաց զնս զգիշերն ողջոյն։

Ի վաղիւն անդր միւսանգամ հարցփորձ արարեալ դատաւորին, և ոչինչ օգտեալ՝ ետ գան հարկանել զառաքեալն. և ասէր ցնա. լուր ինձ անդրէաս, և նահանջեա զիս յարիւնհեղութէ. ապա թէ ոչ՝ մահու խաչի կորուսանեմ զքեզ։ Անդրէաս ասէ. ես ծառայ եմ խաչին քի, և փափաքող յաղթանակի խաչին. այլ դու երկիր 'ի յաւիտենից կորստենէն. զի չարչարանքն իմ առօրեայ է, իսկ քոյդ մշտնջենաւոր։ Յայնժամ բարկացեալ եգեաս՝ հրաման ետ դահճաց տանել զնա և հանել 'ի խաչ՝ տարածելով զբազուկսն և պրկելով 'ի փայտի առանց բեեռաց, զի յերկարեսցի 'ի չարչարանս։

Յայնժամ ընթացաւ բազմութիւն ամբոխին զկնի նր՝ ձայն բարձեալ ուժգին գոչմամբ, թէ այր արդար և բարեկամ այ զի՞ արար՝ զի 'ի խաչ ելանիցէ. իսկ անդրէաս աղաչէր ըզժողովուրդն մի լինել խափան կատարման նր. և ինքն զուարթութբ գնայր 'ի դէմ եդեալ տեղւոյն՝ ոչ դադարելով 'ի վրդպուէ։ Իսկ իբրև ետես երանելին առաքեալն 'ի հեռաստանէ զխաչն՝ որ պատրաստեալ էր նմա, ասէ 'ի ձայն մեծ ուրախութ. Ողջ լեր պատուական խաչ՝ սրբեալ մարմնովն քի, և զարդարեալ մարգարտովք անդամոց նր. մինչև ելեալ էր տն 'ի վր քո՝ երկիւղալի էիր, իսկ այժմ

այժմ սիրելի և ցանկալի. արդ ուրախ գամ առ քեզ, և դու ուրախութբ̄ ընկալցիս զաշակերտ նր̄՝ որ կախեցաւն զքէն. վս̄ զի յարաժամ տենչացող քեզ եղէ, և փափաքեցի փարիլ զքև. ո՛վ բարի խաչ ա՛ռ զիս 'ի մարդկանէ, և տուր վր̄պին իմում. զի քև ընկալցի զիս, որ քև փրկանաւորեաց զիս ։

Եւ զայս ասացեալ՝ մերկացաւ յանձնէ ըզհանդերձս իւր, և ետ դահճաց. և նք̄ հանին զնա 'ի խաչ և պրկեցին ։ Եւ լային զնա ամ̄ ժողովուրդն և տրտնջէին զդատաւորէն ոգիք իբրև քսան հազար. յորս էր և ստրատոկղէս եղբայրն եգէատայ. իսկ առաքեալն զօրացուցանէր զմիտս հաւատացելոցն քո̄ի, և յորդորէր 'ի համբերութի̄ առժամանակեայ նեղութեց, որոց փոխարէննն է յաւիտենական ։ Բայց ժողովուրդն ամբոխ արարեալ յարձակեցան 'ի վր̄ դատաւորին, և ստիպէին իջուցանել զառաքեալն 'ի խաչէն. և նորա զահի հարեալ՝ եկն անձամբ 'ի տեղին, և հրամանս ետ դահճաց արձակել զնա. բայց ոչ կարացին մերձենալ յառաքեալն՝ կապեալք և սօսափեալք աներևոյթ զօրութբ̄ ։ Սա զի աղաչէր անդրէաս զՏր̄, զի մի թողլ տացէ իջուցանել զնա 'ի խաչէն նախ քան զաւանդումն հոգւոյն ։ Եւ ահա յանդիման ամենեցուն էջ յերկնից լոյս փայլակնաձև, և պատեաց շուրջանակի զանձամբ առաքելոյն. մինչ ոչ կարէին հայել 'ի նա. և յետ իբր կէս ժամու՝ ընդ մեկնիլ լուսոյն արձակեաց զոգին՝ խօսելով ը̄ Քր̄ի ընտանի և քաղցր սիրով ։

Յայն-

Յայնժամ տիկին ոմն 'ի մեծամեծաց մաքսի-միլլա անուն առեալ զմարմին նորա առաքելոյն՝ պատեաց նորա կտաւօք՝ հանդերձ իւղովք և խնկօք, և թաղեաց պատուով յառանձին շիրմի ։ Այս եղև 'ի պատրաս քաղաք աքայիոյ՝ յերեսներորդ աւուր նոյեմբերի ։ Իսկ յետ ժամանակաց յաւուրս կոստանդեայ կայսեր բերաւ մարմին սրբոյն անդրէի 'ի բիւզանդիա, և եդաւ 'ի տաճարի առաքելոց ։ Այս ներբողեան ոսկեբերանի 'ի սրբն անդրէաս. զոր զկնի վարուց նորին դնէ սուրբս ։

'Ի քաղել յայսմաւուրաց մերոց զնոյն պատմութիւն կատարման առաքելոյն՝ յաւելու և զայն աւանդութիւն յունաց, թէ անդրէաս 'ի գնալն յելլադա՝ անցեալ ընդ բիւզանդիա, սերմանեաց անդ զառաջին զբանն կենաց. և ձեռնադրեաց անդ եպս զստաքէոս զաշակերտ զմի յեօթանասնից ։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Գենարիոսի եպիսկոպոսին բենեւենտոյ, և որոց Է նմա:

Հ. փետր. 9 : Յ. Լ. սեպտ. 19 : Ճառընտ. Ա. գէ = մԼ : Բոլլանդեանն ակտերենք. 'ի Է հատ. սեպտ. էջ. 761 = 894 : Սուրիոս 'ի յունդ. սարէկա-ռակէ եկեղ. սբյն Գենար. սեպտ. 23 :



ՍՔԱՆՉԵԼԻՆ Ի սքանչելագործ վկայն քո՝ պարծանք նեապօլսեցւոց սբն Գենարիոս, որ և Յանուարիոս, (ռամկօրէն՝ Ճէննարօ) էր եպս բենեւենտ քաղաքին իտալիոյ՝ 'ի ժամանակս դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի : Նա եղև 'ի բորբոքիլ հալածանաց սաստկապէս 'ի կամպանիա գաւառի անդ իտալացւոց, սոսիոս ոմն Նք սարկաւագ եկեղեցւոյն միսենատայ բազմօք նպաստ լինէր հաւատացելոց 'ի սրտապնդել զնս, միանգամայն և 'ի դարձուցանել զանհաւատս. զի էր այր լի հոգւովն սբյ. զորոյ զբարի համբաւն լուեալ Նք եպսն Գենարիոս՝ սաստէպ կոչէր զնա առ ինքն, կմ յարուցեալ անձամբ երթայր առ նա. և երկոքին միով հոգւով նահատակեալ ճգնէին 'ի

վր

վր՟ ոք հաւատոյ ։

Ի միում նուագի՝ յորժամ գնայր գենարիոս ’ի տես սոփոսի, եգիտ զնա ’ի մէջ ժողովոյ հաւատացելոց, զի ընթեռնոյր զաւետարանն ոք, և մեկնէր նց՟ և քարոզէր լի եռանդմամբ հոգւոյ. և հայեցեալ ետես՝ զի ’ի վ՟ր գագաթան սարկաւագին վառեալ կայր հուր սքանչելի՝ բոցատեսակ բոլորեալ ’ի պսակի անդ գլխոյն. և իմացաւ՝ զի ոչ ոք ’ի ժողովրդենէ տեսանէր զայն տեսիլ, բայց միայն ինքն ։ Իսկ եղև ’ի գալ սոփոսի ’ի համբոյր աջոյ եպ՟սին՝ գիրկս էարկ զնովաւ սբ՟ն գենարիոս, և համբուրեալ զփայլակնաբորբոք գլուխ ն՟ր՝ մարգարէացաւ, և ասէ. վկայական պսակաւ զարդարեսցի ’ի մօտոյ պսակդ այդ երանելի գագաթանդ. և նա յայտ արար, թէ յայտնեալ է և ինքեան յա՟յ նահատակութ՟ե երանելոյն գենարիոսի ։

Իրդ յետ ոչ բազում աւուրց ոք սարկաւագն սոփոս ըմբռնեալ ’ի հալածչաց՝ տարեալ եղև ’ի պատիողոս՝ որ և պուտէոլի քաղաք՝ յատեան դրակոնտիոսի դատաւորին կամպանիոյ. և քաջ համդիսացեալ ’ի պնդնատոկութ՟ի ճշմարտութ՟ե՝ զան հարաւ սաստիկ, և արկաւ ’ի բանտ ։ Յայնժամ եկին ’ի տեսութ՟ն ն՟ր ’ի նմին քաղաքէ պրոկղ սարկաւագ, և երկու արք Ծիկք՝ եւտիքէս և ակուտիոս (որ և տիւքիկոս և ագուղիոս), և միխթարակից լինէին սբ՟յն. վ՟յ և զնն կալան, և յետ չարաչար հարուածոց գանից արկին կապանօք ’ի նոյն բանտ ։

Յաւուրսն յայնոսիկ՝ 'ի վեցերորդ հիւպա-
տոսի մաքսիմիանոսի, և 'ի հինգերորդ հիւ-
պատոսի կոստանդինու կեսարի, առաքեցաւ
'ի դիոկղետիանոսէ նոր դատաւոր կամպա-
նիոյ տիմոթէոս անուն՝ այր գազանաբարոյ
և ծարաւի արեան քրիստոնէից. և հասեալ
'ի քաղաքն նողայ՝ խնդիր առնէր, թէ զի՞նչ
ինչ գործեցին դատաւորք գաւառին առա-
ջինք, զի ոչ կարացին դարձուցանել զքրիս-
տոնեայս 'ի պաշտօնն դիցն ինքնակալաց ։ Եւ
յետ տեղեկանալոյ զանցս հաւատացելոց
բանտարկելոց՝ լուեալ, եթէ գլուխ և ա-
ռաջնորդ արանցն այնոցիկ է եպսն գենա-
րիոս՝ որ նստի 'ի բենեւենտ քաղաքի. և թէ
ցորչափ կենդանի է նա, ամէն քրիստոնեայք,
և ոչ նուաղին ։

Սոյ առաքեաց կալաւ զնա, և ետ ածել
յատեան իւր զսբ քահանայապետն. և յոր-
ժամ եկն առաջի նր, հայեցաւ ընդ նա դա-
տաւորն, և ասէ հրապուրանօք. տեսանեմ
զվայելչութի հասակի քո, և կարծեմ թէ յա-
զատ ազգէ ես. վոյ խորհրդակից լինիմ քեզ
և աղաչեմ, ապրեցո զանձն քո, և յափշտա-
կեա՛ զքեզ 'ի բազում տանջանաց. զի թէ ոչ
դու ինքնին բուժեսցես զքեզ 'ի տանջանաց,
ոչ կարիցէ փրկել զքեզ ածն քո ։

Իսկ ամիմաստն գենարիոս ասէ ցնա. կար-
կեա՛ ո՛վ բռնաւոր, և մի՛ շարժեր զլեզուդ չա-
րաչար ընդդէմ արարչին՝ թշնամանելով զա-
մենազօր ածն, որ ամ ուրեք հրաշագործէ
զիւր զօրութին. կարծեմ թէ զերկայնմտութի

նի՛ տկարութե վարկանիս . և որչափ վայելես յերկայնմտութեն , այնչափ յաւելուս յամ- բարհաւաճութիդ ։

Ո՛վ բռնաւորն . մինչ այնչա՛փ զօրութի առեալ ունիս , որչափ մեք տանջանարան քում անմտութեդ պատրաստեմք . բայց թե- րևս 'ի կախարդութիդ ես վստահացեալ ։ Ո՛վ երանելի եպսն . զօրութ իմ ած է , այն՝ որ յերկինս է . որ զվհուկսն և զաղանդա- ւորսն և զկախարդսն և զկռապաշտսն՝ որ իբրև զքեզդ են , առաքէ 'ի հուրն անշէջ գեհենին ։

Յայնժամ բռնաւորն հրամայեաց հնոց բոր- բոքել , և անդ արկանել զերանելին . և ա- սէր . Ես տեսից զքեզ այրեցից , և տեսից թէ փրկէ՞ զքեզ ածն քո ։ Իսկ սրբն նշանաւ ոք խաչին կնքեաց զամ անդամս իւր ուրա- խութբ մեծաւ , և փառաւորելով զածն՝ եմուտ 'ի մէջ հնոցի բորբոքեալ հրոյն . և սկսաւ ա- սել այսպէս . Ո՛վ տր իմ և ած , որ ճշմար- տապէս քննես զծածուկս ամ մարդկան , դու գիտես զփափագ անձին իմոյ , որ սեռն սի- րով փափագեալ ցանկայ հոգի իմ գալ առ քեզ . բայց աղաչեմ զքեզ , յայտնեա՛ զամե- նազօրութի քո՝ փոփոխելով զենութի կիզա- նող բոցոյս 'ի ցօղ քաղցրութե քո , ոպ երբեմն սքանչելագործեցեր առ երեք մանկամբքն . զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ ած , ոպ յամ ժամ ։ Եւ իբրև կատարեաց զայս բան առ ած , ձայնք հրեշտակաց լսելի լինէին առ նա , և աղօթակից լինէին նմա ։

Իսկ

Իսկ որք շուրջն կային , զարհուրեալք յահա-
գին հնչմանցն՝ փութանակի երթեալ պատ-
մեցին զա̃մ բռնաւորին : Յայնժամ հրամայ-
եր բանալ զհնոցն , և ստուգագոյնս տեսանել՝
եթէ գ̃ արտաքոյ լուսոյ ձայնին և 'ի ներքս
նոյնպէ՞ս իցէ . և իբրև բացին , տեսին զորն՝
ամենևին ոչ վնասեալ 'ի հրոյն . իսկ բոցն
յանկարծակի յայսկոյս յայնկոյս հեղեալ՝
զբազումս 'ի կռապաշտիցն , որք մերձն կայ-
ին , հրդեհեալ կիզոյր : Եւ ս̃ն զուարթ ե-
րեսօք իբրև յաղթող նահատակ 'ի մրցարա-
նէ ելեալ եկաց առաջի բռնաւորին :
Յայնժամ անօրէն բռնաւորն՝ որպէս այն թէ
ոչինչ տեսեալ զսքանչելիսն , մատն եդեալ
իւրոյ փրկութե̃ն , և կափուցեալ զաչս մտացն
'ի միջօրեայ ա̃ծային ճառագայթիցն , փո-
խանակ պսակաց հրամայէր զերանելին ար-
կանել 'ի բանտ . և 'ի վաղիւ անդր հրամայ-
եաց ածել զառաջեաւ : Եւ իբրև եկն , ասէ
ցնա . մինչև յե՞րբ անհնազանդեալ՝ ոչ զոհես
ա̃ծոցն . եթէ 'ի հրոյ և յայլ տանջանաց 'ի
ձեռն կախարդութե̃ զերծար , մի թէ 'ի սրոյ
կարիցե՞ս ապրել : Ասէ երանելին . ո՞չ եթէ
վ̃ն իմ ինչ ցուցանէ տ̃ր զսքանչելիսն , զոր
դու՝ գիճական խաբէութ̃բ խելագարեալ՝ կա-
խարդութի̃ համարիս , այլ զի թերևս զըն-
կղմեալ ոգիդ քո խորին խաւարաւ կռապաշ-
տութե̃՝ լուսաւորեսցէ ա̃ծային ճառագայ-
թիւք 'ի ձեռն սքանչելագործութե̃ :
Ապա հրամայեաց չարիմաց բռնաւորն զջիլս
բոլոր զա̃մ մարմ̃նոյն արտաքս քարշել : Իսկ

երանելին Թէպէտև այսպէս տանջէին եղև , սակայն յօժարութի՛ ընդունէր զանհնարին ցաւս և զբարժանումն յօդուածոյ մարմնոյն . և սիրով որ առ ած և աղօթիւք զդառնութի տանջանացն քաղցրացուցանէր ։ Դարձեալ հրամայեաց բռնաւորն տանել 'ի բանտ ըղ-սքն . և մինչդեռ 'ի բանտին էր , երկուք ոմանք 'ի սպասաւորաց եկեղեցւոյ նր̃ եկին առ նա 'ի քաղաքն նողայ . և իբրև կամէին 'ի ներքս 'ի բանտն մտանել , պահապանքն արգելին զնա . և երթեալ պատմեցին դատաւորին . և նա հրամայեաց հանդերձ քահանայապետին ածել զնա առաջի իւր ։

Եւ իբրև ածին , ասէ դատաւորն ցեպսն . ո՞յք են սք̃ , կամ զի՞նչ են անուանք սց̃ , և կամ զի՞նչ գործ ունին ։ Իսկ սքն իբրև ասաց զանուանս նց̃ և զգործս սպասաւորութե եկեղեցւոյն , դարձեալ հարցանէր իշխանն , թէ՝ և դոքա քրիստոնեա՞յք են իբրև զքեզ ։ Եւ երանելին խաղաղաբար պխնեալ ասէր . եթէ դու ինքնին հարցանես ցդոսա , այսպէս իմանաս զհաւաստիս՝ եթէ ո՛չ միայն բանի՛ , այլև արդեամբք են ճշմարիտ քրիստոնեայք ։ Ասէ դատաւորն ցսքն , որոց անուանք էին՝ միումն փեստոս սարկաւագ , և երկրորդին դեսիդերիոս ընթերցող . քրիստոնեա՞յք էք . և նք̃ բարձր ձայնիւ և զուարթ երեսօք պատասխանի ետուն առաջի ամենեցուն , և ասեն . այո՛ քրիստոնեայք . և պատրաստ եմք յաղագս քսի ունել զմահ՝ որպէս նր̃ հովուապետս մեր ։

Յայն-

Յայնժամ դատաւորն հրամայեաց կապել զերանելի եպսն հանդերձ նոքօք , և տանել 'ի պուտեօղոն քաղաք , և միաւորել ընդ այլ վկայսն՝ որ յառաջագոյն կապեալք էին․ Յն էն Սոսիոս և Պրոկղիոս սարկաւագունք գեղեցիկք սրբյն Պենարիոսի , և Եւտիքէս և Ագուդիոս Ծականք․ որք ուղղափառ խոստովանութբ միաբան կացեալք յայսմ Ծիս՝ և 'ի վախճանին ոչ անջատեցան 'ի միմեանց․ այլ 'ի միասին արժանի եղեն փառաւորիլ խոստովանողական վկայութբ ։

Արդ յորժամ եկին 'ի միասին , սկսաւ երանելին փառաւորել զած՝ այսպէս ասելով․ օրհնեալ է ած՝ որ առնէ զքանչելիս միայն․ որ և 'ի տանջանս թշնամեաց՝ վայելեցաք 'ի սէր միմեանց․ Քզի ոչ եթող զհօտապետն առանց հօտին․ և էին 'ի մեծի ուրախուե ։

Իսկ 'ի վաղիւն անօրէն իշխանն եկեալ յասպարէզ հանդիսից , ուր զգազանսն արձակեին ; անդ հրամայէր զերանելիսն մատուցանել ։ Իբրև ածաւ քաջ հովիւն հանդերձ նուիրեալ ոչխարօքն , սկսան դահիճքն զայրացուցանել զգազանսն հարուածովք առ 'ի յարձակիլ ցասմամբ 'ի վր սրբցն ։ Բայց գազանքն ոչ յոյժ հրամանն առեալ՝ ոչինչ մեղան նցն․ այլ մոռանալով զբարս իւրեանց՝ հոլովէին առ ոտս սրբցն , և փարէին զնոքօք ։

Իսկ ամպարիշտ դատաւորն կուրացեալ հոգւով՝ ոչ ծանեաւ և զայս սքանչելիս․ ասէ․ միթէ և 'ի սրոյ կարիցէ ածն ձեր փրկել ըզձեզ․ արդ տարեալ հատէք զգլուխս կախարդացդ ։

դացդ ։ Յորժամ ընկալան երանելիքն ըղձիան, խնդութբ փառաւոր առնէին զԱծ. և առժամայն յարուցեալ սբ եպսն՝ տարածեաց զձեռս իւր, կայր յաղօթս՝ այսպէս ասելով. Դու Տր սրտագէտ՝ արարիչ շտեմարանաց սրտից մերոց, որ քննես զերիկամունս որդւոց մարդկան, գիտես՝ զի ոչ վրէժխնդիր եմ չարչարանաց իմոց. որ կամիս մատնեմ զանձն իմ վն անուանդ քո, որ վն իմ մեռար և յարեար Տծ իմ. աղաչեմ յայտնել զԱծային զօրութն քո՝ հպարտացեալ իշխանիս. որ 'ի վեր քան զմարդկային սահման ամբարհաւաճեալ՝ հայհոյէ զամենակարող թագաւոր քո. ոչ 'ի բաց բառնալ աղաչեմ 'ի կենաց, որ եկիր 'ի փրկել, և ոչ 'ի կորուսանել. այլ ցուցանել զձեռն քո բարձր, զի ծանիցեն՝ եթէ դու միայն ես Տծ ։

Եւ իբրև կատարեաց զաղօթսն, յանկարծակի հարան աչք դատաւորին կուրութբ. և տանջեալ լինէր աներևոյթ տանջանօք. և սկսաւ զողբումն հարկանել թշուառականն՝ եղուկ զինքն ասելով. և փութով եկեալ անկանէր առ ոտս սբյն, խնդրելով զթողութն մեղացն՝ զոր առ նա արար չարչարանօք. և խոստանայր հաւատալ յԱծ ճշմարիտ ։ Իսկ երանելին թէպէտև գիտէր հոգւով զանձաձանչ խաւար ոգւոյ նր, սակայն նմանող եղեալ Տն իւրոյ՝ որ զմոլեգնեալսն 'ի վր իւր յետս յետս զարկուցանէր և անդրէն յարուցանէր, այսպէս և սբն գենարիոս աղօթս արարեալ լուսաւորեաց զաչս բռնաւորին ։

Եւ

Այս բազմութ̃ի քաղաքին պուտէողայ իբրև տեսին զայն ս̃մ սքանչելիսն , հաւատացին յաւուր յայնմիկ յա̃ծ ոգիք իբրև հինգ հազարք . և սկսաւ ս̃մ բազմութ̃ին փառաւորել զա̃ծ . աղաղակ բարձին և գոչէին առ միմԹեաս . ո՞վ դատաւոր յայսմհետէ մի՛ ինչ մոլիր անզգամութ̃ք . զի ո՛չ եԹէ 'ի մարդկանէ , այլ յա̃յ են սքանչելիքդ : Իսկ արբեալն մոլեկան և դիւական մոլորութ̃ք՝ պատիր բանիւք հաւանեցուցեալ զամբոխն ը̃ կամաց նը̃ առնել , կոչեաց զդահիճսն առանձինն , և հրամանս տայր յանապատ տեղիս տանել զնահատակսն , և անդ սպանանել առանց ուրուք գիտելոյ :

Այս իբրև լուա՛ն երանելիքն զհրամանսն , խնդութ̃ք լցեալ երԹային զճանապարհն սաղմոսելով : Ծեր ո̃մն մերկ հանդիպեցաւ երանելեացն . առաջի անկեալ քահանայապետին՝ խնդրէր 'ի զգեստուց նորա . պ̃նի ետ ծերոյն ս̃ն գենարիոս , Թէ յորժամ փոխիմ առ ս̃րն իմ, զկրկնոցս իմ տաց քեզ : Արդ հասեալ ս̃ցն 'ի տեղի կատարմանն՝ խոնարհեցուցին զպարանոցս իւրեանց . և այնպէս հատան գլուխք եօԹանեցունց վկայիցն , և բարի խոստովանութ̃ք կատարեալ զը̃նԹացս իւրեանց՝ պսակեցան 'ի ք̃սէ : Յայնժամ երևեալ ծերոյն ս̃ն գենարիոս՝ տայր նմա զոր խոստացաւն զկրկնոցն իւր . զոր առեալ առնն՝ ունէր ո՛չ միայն 'ի պատսպարանս աղքատուԹ̃ն , այլև ո̃պ գանձ մեծ՝ վկայական արեամբ ներկեալ . և 'ի նմին աւուր դատա֊


ւորին

ւորն չարաչար սատակեցաւ ։

Յայնժամ ժողովեցան քրիստոնեայք բազ-մութք 'ի կողմանց կողմանց, և արարին այլ-և այլ տապանս սրբոց վկայիցն. և բաժանեցին զնոսա 'ի մէջ իւրեանց ։ Զերանելին Գենա-րիոս ը̅ յայտնութեն ա̅յ առին Նէապօլսեցիք, և տարան փառօք 'ի քաղաքն իւրեանց. պու-տեղացիք առին զպրոկղոս, զեւտիքէս և զագուտիոս. զփեստոս և զդեսիդերիոս ա-ռին յինքեանս բենեւենտացիք. և զսոսիոս առ ժամն առին քաղաքացիք նորին միսենացիք. բայց յետ ժամանակաց բերել ետուն զայն Նէապօլսեցիք 'ի քաղաքն իւրեանց, զի մի՛ բաժանեսցի 'ի սիրելւոյն իւրմէ 'ի սրբոյն Գե-նարիոսէ. որ է պարագլուխ փառաւորեալ վկայիցս, զորս արժան է կոչել յանուն նորին գենարիոսեանս, ո̅պ յանուն սրբոյն ղևոնդի զղևոնդեանս ։

Իսկ թէ քանի՞ սքանչելեօք փառաւորեաց Աստուած զնշխարս սրբոյն գենարիոսի 'ի Նէապօլիս 'ի ժամանակէ անտի մինչև ցօրս ցայս, անմարթ է ընդ գրով արկանել. որպէս և ջերմ պաշտօն Նէապօլսեցւոց առ պանծալի նորին վկայն է ան-պատմելի. և են գլխաւոր նշխարք սրբոյն հան-դերձ արեամբն՝ որ եդեալ կայ 'ի շիշ փոքրիկ, 'ի հոյակապ տաճարի կանգնելոյ յանուն նորին, այն է աթոռանիստ և մայր եկեղեցի մեծի քաղաքին Նէապօլսոյ՝ ոչինչ հեռագոյն 'ի վա-նաց և յեկեղեցւոյ սրբոյն գրիգորի մերոյս լու-սաւորչի. որ և է մի 'ի պաշտպանաց քաղա-քին ընդ նորին գենարիոսի ։

Անզուգական և աննման հրաշք արեան սրբոյն Պենարիոսի, Թո՛ղ զայլ անբաւ սքանչելիսն, մշտատև զարուց ՚ի դարս և ամ յամէ, Ճոխագոյն պատմութիւն և հաւաստի վկայութիւնք յառաջ բերի ՚ի բոլլանդեանց, և հաստատի մեծ օրինակաւ ։ Գեղեցիկ յաջողեաց և մեզ բարեխօսութիւն նորին սբ. հայրապետի և վըկայի՝ ականատես լինել հրաշալի եռացման կամ լուծման պատուական արեան նորին, և համբուրել յամի տն 1810 ․ յառաջնում կիրակէի ամսեանն մայիսի ․ որ է մի յերից նշանաւոր աւուրց, յորս հասարակօրէն կատարին ամի ամի այս սքանչելիք ․ զորմէ ունիմք ասել և ՚ի կարգի ծանօթութեանց ։ (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Յովհաննէս ստիլտինգ բազմայոյզ և խիստ քննիչն բոլլանդեան՝ առանձին խնամով աշխատասիրեաց ՚ի վր վկայաբանութե և պատմութե սքանչելեաց սրբոյն Պենարիոսի ․ մինչև չթողուլ ումեք տեղի այլ ևս խուզարկութե ։ Արդ սա դնեալ է զքառեակ օրինակս վկայաբանութեանց ․ յորոց երեք առաջինքն հնագոյնք՝ են լոկ լատիներէն ․ և ՚ի նոյն երկուքն տպեալ յար և նման՝ յանանուն հեղինակէ ․ իսկ երրորդն ընդարձակագոյն՝ գործ յովհաննու սարկաւագի եկեղեցւոյն սրբոյն Պենարիոսի ՚ի Նէապօլիս ․ այն է՝ զոր տպագրէ և սուրիոս ։ Թո՛ղ ասէ զչորրորդն անպէտ, որ է նոր և անուղղ յօրինուած լատինացւոյ ուրումն ՚ի յոյն բարբառ ։ Եթէ գիտէր ստիլտինգ և զօրինակն մեր՝ որ ՚ի մեծ Ճառընտիրն, ը առաջինս դասէր և գովէր յոյժ ․ զի ոչ տեսաք բաղդատութե, մերս՝ որ է թարգմանութե ՚ի հին յունականէ, տմին հանգիտանայ ը նախկին օրինակս լատինացւոց,

ը

թն սկզբնաւորութեան և ըստ ընթացից, իմն սկսեալ ’ի գալստենէ տիմոթէոսի պատուորի. ուր զնախընթաց բանս գտանեմք միայն առ յովհաննու սարկաւագի. վն զայն հատուած ’ի նմանէ քաղեցաք, և զմնացեալն ’ի Ճառընտրէ օրինակեցաք՝ հայելով և ’ի լատին օրինակս ։

Արդ քանզի ոչ վարք սրբոյն գենարիոսի լի է սքանչելեօք, նոյնպէս և հրաշք նր ’ի սկզբանէ և այսր են անպակասելի, նմին իրի ստիպեալ ’ի հիմանէ և ’ի վեր զննել և քննել անաչառ զնա, և հաստատել ամ իրօք զանժխտելի սքանչելագործութի սրբոյն. և այս այնչափ՝ մինչև ’ի յաղթահարել զթերեհաւատս և զանհաւատս, որք ’ի յետին դարս ունէին առնելն զինչ և է հրաշից, մանաւոր խնդրովք Ճառէ աստանօր և զզգուշութէ և զստուգութէ սքանչելեաց յեկեղեցւոյ. և Ճոխագոյն ևս յառաջ բերէ զանդադարելի հրաշս պատուական արեան սրբոյն գենարիոսի. զոր տեսեալ է քննել և ստուգել մեծաւորի կարգին իւրոյ՝ թ յոնեանց, որ ’ի նէապօլիս, հանդերձ այլովք ’ի բանիբուն և ’ի գիտնաւոր արանց՝ յեկեղեցական և յաշխական կարգէ, և ’ի ձեռն թղթական նօտարի ’ի գիր արձանացուցանել և յղել առ ինքն. զոր և տպագրէ ստիպելով ողջոյն. որ ոք կամի, տեսցէ առ նմա ’ի վախճան վեցերրդ հատորոյ մատենիբերի ։

Մեք զայն և եթ յուշ արասցուք, թէ ոն վաւերական քննութեամբ՝ ամ ոն ամէ յաւուրս հանդիսի սրբոյն գենարիոսի, ցորչափ բերեն զշիշ արեան սրբոյն առաջի այլոց նշխարաց նր, կմ պատուական գլխոյն, սկսանի թանձրացեալ և պնդացեալ արիւնն՝ երբեմն պարզապէս հեղեղկիլ, երբեմն եռալ և պղպջակիլ, և լնուլ զշիշն թերի, և այլ ազգի ազգի յեղանակօք այլափոխիլ. և այս ոն ջերմեռանդ հաւատոց պարզամիտ ժողովրդեան, որք գոչեն և աղաղակեն հանդիսիւ յեկեղեցւոջ՝ ոչ լռեալք ականջօք մերովք, և տեսաք աչօք մերովք՝ առ սբն գեմանոս, թէ ցոյց զսքանչելիս քո. մինչև եթէ երբեք հանդիպեսցի, զի հրաշքն այն չերևեսցի, անհնարին սուգ պաշարէ զքաղաքն, և մեծաց չարեաց գուշակ համարեալ լինի ։

Եւ տեսէ հրաշքն այն՝ օր մի կմ երկու, և ևս աւելի՝ ոն ըստ պէսպէսութէ աւուրց հանդիսի. զոր և մեզ եղև տեսանել աւուրս երկու, յորս գնացաք ’ի տեսիլ հրաշիցս ։

Նախ՝ առընթեր մատուցեալ անմիջապէս 'ի խորանն, ուր բերեալ էր շիշն արեան՝ պատուցեալ 'ի մէջ այլ ապակեայ, տեսաք զնիւթն թանձր և անշարժելի. զի շիշն է կիսով չափ և աւելի ևս լի, և անօթ 'ի վեր դատարկ. զոր բազում անգամ շրջեաց քահանայն, և տեսաք՝ զի ոչ թափի և ոչ շարժի 'ի կայից իւրոց. այլ յետ աղօթելոյ իբր կէս ժամ, և գոչելոյ ժողովրդեան, տեսանէաք՝ զի սկսաւ լուծանիլ, և 'ի շրջ շրջելն՝ լուղէր միջին թանձրութիւն 'ի մէջ լուծեալ մասանց. և այնպէս յերկրորդ աւուր տեսաք մնացեալ 'ի նմին լուծութե. և համբուրեցաք ը անթիւ բազմութե ։ Գեղեցիկ էր և հանդէսն արծաթի արձանաց սրբց՝ յորոց մի է և արձան սրբ լուսաւորչին մերոյ, զորս բերէին թափորով յողջոյն ականակապ արձանի սրբյն գենարիոսի, և այլ բազմապատիկ աղօթք և պաշտամունք հանդիսականք. որ ոչ գրով պատմի, այլ տեսանել պէտք են անձամբ ։ Բայց զբան սքանչելեաց՝ զոր տեսաքն, ոչ կարեմք ծածկել կմ ժխտել. թող պգրեալսն 'ի հաւատարիմ քննութենէ բողոքականաց, ըստ վկայութեան ականատես վկայից յամ ժամանակս. որ մեզ մեծ ինչ երևի, այլ չէ ինչ յաչս այ, զի երբ կամի՝ և որպէս կամի՝ հրաշագործէ 'ի սրբս իւր. և է միշտ սքանչելի 'ի վր սրբց իւրոց, և փառաւորեալ է 'ի նս, և փառաւորէ զփառաւորիչս իւր. նմա փառք յաւիտեանս. ամէն ։



ՎԿԱՅ-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Մերկերիոսի կմ մեռկուրիոսի զօրավարին :

Հ. նոյ. 27 : Հ=Յ. և որ էփն. նոյ. 26 : Յ. Լ. նոյ. 25 : Ռուսըն. Մ. = ող : Մեսաքր. ստ ստորին. նոյ. 24, կմ 25 :



ՅԱՂԹՕՂ ՆԻ ՃԱԳ-նազգեաց վկայն քնի Մերկերիոս, (որ և մեռկուրիոս՝ կամ մեռկիւրիոս,) որ թարգմանի հերմէս կմ փայլածու, էր յարևելեան ազգէ սկիւթացւոց՝ զինուորեալ 'ի բանակն հռովմայեցւոց, որ յառաջին հայս. որպս և կատարումն նր պանծալի վկայութբ եղև 'ի կեսարիա կապադովկացւոց. ըն որում միաձայն աւանդեն Ճառընտիրք մեր և մետափրաստէս՝ օրինակ զայս :

'Ի ժամանակս թգրութեն դեկոսի և վաղերիանոսի 'ի հռովմ քաղաք, հասարակաց հրամանս սահմանեցին զոհել և խնկել կռոցն. կոչեցեալ ապա զնմ սինկղիտոսն՝ ծանուցին նոցա զգուգաձայնապէս առ 'ի նոցանէ զօրէնադրեալ հրամանքն. և գտեալ զնա համախորհուրդս եղեալ կամաց իւրեանց՝ ուրախ

է-

եղեն յոյժ . իսկ և իսկ ապա գրաւորական հրովարտակաւ զթղթական հրամանն ձեռնագրութեամբ սենեկապետոսին առաջի դնել հրամայեցին . որ և առաջադրեցաւ 'ի տաճարին կապիտոլիոնի օրինակաւս այսուիկ .

Թագաւորք ինքնակալք՝ քաջք և յաղթօղք , պաշտօնատարք ( իմա սեբաստոսք , այսինքն պաշտելիք ) և բարենշանք , դեկոս և վաղերիանոս հանդերձ սենեկապետոսաւս՝ առ'ի համաձայն կամաց ։ Վանզի զբարեգործութիւս ձեր և զպարգևս ուսեալ մեր , միանգամայն և վայելեալ 'ի յաղթութեան՝ որ հակառակ ազգաց 'ի ձեռն նոցա մեզ շնորհեցաւ . և ոչ միայն այս , այլև զփարթամ պարգևս բարեխառնութեան օդոց , և զզանազան պտղոց երկրի զհամեղութիւն ընկալեալք . և զի այսպէս ծանեաք բարեգործս զնոսա եղել , և մատակարարս հասարակաց խաղաղութեան , վասն օրինադրեմք միով հրամանաւ՝ բոլորից հասարակաց , ազատաց և ծառայից , զինուորեցելոց և գեղջէից , բարեմտութեամբ զոհս աստուածոցն մատուցանել , և առաջի անկեալ աղաչել ։ Իսկ եթէ կամիցի ոք զաստուածեղէն մեր գրաւորութիւս արհամարհել զհամաձայնաբար առ 'ի մէնջ ստորագրեալ , զայնպիսին հրամայեմք կապանօք արգելեալ լինել , և այնպէս ընդ զանազան տանջանօք արկանել ։ Ապա եթէ հաւանեսցի , զպատիւս ոչ սակաւս առ 'ի մէնջ ընդունել . իսկ եթէ ընդդիմակաց լիցի , բազում տանջանօք հանդերձ՝ 'ի ձեռն սրոյ կրել զպատուհաս . կամ'ի խորս ընկենուլ

ծո

ծովու, կմ հաւուց և շանց տալ կերակուր ։ և առաւել ևս՝ եթէ 'ի քրիստոնէից կրօնս ոմանք իցեն՝ պատժիցին. ապա եթէ կամիցին ածայնոց մերոց հաւանել աւանդութեց, մեծամեծ պատուոյ և պարգևաց արժանասցին. ողջ լերուք բարօրութբ ։

Այն ինչ զառաջինն ելանէր այս հրամանն արքունի, ամ քաղաքք խռովութբ լնուին. զի յամ տեղիս զանած զգիրն զայն բերել ընթեռնուին. և առհասարակ 'ի սուգ մտանէին ածապաշտք ։ Դէպ եղև ըն այնմ ժամանակի պատերազմ յառնել 'ի մէջ հռովմայեցւոց առ 'ի բարբարոսաց. և ինքնակալքն հրամայեցին պատրաստել զինքեանց զինուորութիւն, և ճակատել ընդդէմ նց, պատուէր տուեալ և իւրաքանչիւր գնդից և դրօշուցնատերց 'ի քաղաքս քաղաքս՝ առ 'ի մարտակցութի հասանել. և գային ժողովէին յիւրաքանչիւր գաւառաց յայնմիկ պատերազմի կազմութի ։ Ակն եհաս և լեգէոնն մարտինոսացւոց կմ մարտեցւոց (թերևս աւրեսեանց), որ էր յառաջին հայս ը տրիբունանն՝ որոյ անուն սատուռնինոս կմ սատուռնեղիոս (դն կռոնոսեան) ։

Ելանէ ապա ինքնին դեկոս թագաւոր 'ի պատերազմ, իսկ գահակից նր վաղերիանոս զտեղի առնու 'ի հռովմ ։ Եւ 'ի գումարիլ մարտին և 'ի յարձակիլ բարբարոսաց և հռովմայեցւոց ընդդէմ միմեանց, յերկարէր գործն ժամանակս բազումս ։ Յայնմ վայրի տեսիլ երևեցաւ քաջին մերկուռիոսի, որ էր 'ի թը-

ուոյ

ռ՛ոյ մարտիրոսացուոց եղելոց է առաջին Հայ-
օք ․ այր ոմն լուսաւոր և գերամեծար երևեր նմա՝ յաջոյ ձեռինն սուսեր ունելով , և ասեր ․ Մերկուրիէ , մի երկիցես և մի զանգիտիցես , ՛քզի առաքեցայ օգնել քեզ և յաղթօղ զքեզ ցուցանել ․ ընկալ ապա զսուրս զայս , և մուտ 'ի Հանդէս Հակառակ բարբարոսաց ․ այլ 'ի յաղթելն մի մոռանար զն՛ր ա՛ծ քո ։

Իսկ նա 'ի զարմացման եղեալ՝ ոչ ծանեաւ զՀրեշտակ ա՛յ , այլ մի յիշխանաց զումարելոցն կարծեաց ․ և ընկալեալ ն՛ր զսուսերն՝ սերտեւ յարձակեցաւ 'ի վ՛ր բարբարոսացն , և Հարեալ նովաւ զցե՛ զապետոն ն՛ց՝ որ և թ՛գր կոչէր , սպան ․ և զայլս բազումս կոտորեաց ․ մինչև յոյժ վատակել բազկի ն՛ր , և առ 'ի յարենէն մածնուլ սրոյն 'ի ձեռս ն՛ր ․ և այնպէս փախեցան բարբարոսք յերեսաց Հռովմայեցւոց ․ և յայտնի եղև 'ի բանակին քաջութի՛ն Մերկուրիոսի ։

Յայնժամ դեկոսի իմացեալ զաՀագին մենամարտութի՛ն առնն՝ կոչեաց զնա , և ետ նմ՛ պատիւ ստրատելատութե՛ ա՛յ զօրավարութե՛ , կարգեալ զնա իշխան զօրուն ․ և կարծեալ դեկոսի՝ եթէ 'ի ձեռն նախախնամութեան ա՛ծոց իւրոց յաղթեաց պատերազմին , արձակեր յուրմէ զՀրամանս 'ի զօրականաց յուրաքանչիւր տեղիս ․ և ինքն է քաղաքս շրջելով՝ պատուՀասիրեւ լինէր յամենեցունց մեծամ՛ , զձանապարՀն ունելով դէպ 'ի Հռոմ․
և Մերկուրիոս ստրատելատ է նմա ։

Նու

Եւ մինչդեռ տակաւին յարևելս էր բանակն արքունի, 'ի միում գիշերի ննջելով ստրատելատին՝ մերձ եկաց առ նմա հրեշտակն տն ըստ ձևոյ առաջնոյն. և խնդրեալ զկողս նորա՝ զարթոյց զնա. և նա իբրև՝ յերկեղի եղեալ՝ մնաց հիացեալ, ասէ ցնա հրեշտակն տն. մի՛ երկուաիր յիշեա՛ զոր ինչ ասացաւ քեզ 'ի գումարիլ պատերազմին, թէ մի՛ մոռանար զտր ած քո. քանզի պա՛րտ է քեզ յաղագս նր օրինօք ձգնել, և պսակ յաղթութե ընդունել 'ի փառաւորեալ արքայութեն ընդ ամ սբս. և զայս ասացեալ՝ 'ի բաց եկաց 'ի նմանէ հրեշտակն:

Իսկ նորա եկեալ յինքն և յիշեալ՝ գոհացաւ զայ. քանզի գիտէր 'ի նախնեացն զհաւատս քրիստոնէից. և հայր նր գորդիանոս՝ պումպիլիւոս գոլով նորուն դրօշու՝ ասէր բազում անգամ, թէ երանի՛ որ զինուորեսցի երկնաւոր թագաւորին. զի պարգևի նմա արքայութիւն երկնից. քանզի թգրն այն բոլորակերտեաց բանիւ զամ արարածս. և նա է՝ որ հանդերձեալ է գալ դատել զկենդանիս և զմեռեալս, և հատուցանել իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց:

Զինքն ապա բերեալ զբանս հօրն, և զտեսութիւն՝ որ ինքեան երևեցաւ, շարժեցաւ սիրտ նր 'ի զեղջ 'ի հոգւոյն սբյ. սկսաւ արտասուել՝ խոստովանել և ասել այսպէս. վա՛յ ինձ մեղաւորիս. քանզի 'ի բարի արմատոյ ծառոյ շառաւիղ գոլով՝ եղէ ցամաքեալ, ոչ ունելով պտուղ զգիտութի այ: Եւ յաւել նր զայս՝

առաքեցաւ 'ի Թագաւորէն սեղենտորիոս ,
այն է ըստ Հռովմայեցւոց սինկղիտիկոս ,
( իբր լուրիկ ազդարարօղ , ) հանդերձ այլովք
եւս բազմօք՝ կոչել զնա առ Թագաւորն . և
'ի հրաժարել նորա՝ կապպաղեաց Թզ̃րն զժո-
ղովն , և ժամադրութի̃ արար վ̃ն աւուրն երկ-
րորդի . և 'ի վաղիւն անդր դարձեալ կոչէ զնա .
և հարկեցաւ գալ . եկաւորեալ ապա մեր-
կուռիոսի ե̃ այլոցն՝ լցաւ ժողովն ։ Իսկ իբրև
արձակեցին ժողովեալքն , ասէ ցնս Թզ̃րն .
երթիցուք ամենեքեան յարտեմեան տա-
ճարն , և զոհս մատուսցուք բոլորից ա̃ծոցն .
բայց մերկուռիոս խոյս ետ , և գնաց յապա-
րանս իւր ։

Յայնժամ մի ոմն 'ի մեծամեծացն չարախօ-
սէր զնմանէ առ դեկոս՝ ասելով . ո՛վ մեծ
Թագաւոր՝ քաջ և յաղթօղ , ընտրեալ առ 'ի
յա̃ծոցն՝ զԹզ̃րութի̃ ունելով խաղաղութ̃ ,
լսելի՛ եղիցի . այն՝ որ պատուեալ է առաջի
ձեր , և փառաւորեալ յինքնակալ աջոյդ , որ
խաղաղութ̃ մատակարարէ զհռովմայեցւ[illegible]
իրս , սա ո՛չ եկն ը̃ն ա̃ծեան ձերոյ հրամանի
'ի տաճար մեծի ա̃ծուհւոյն արտեմեայ՝ զոհս
մատուցանել յաղագս ձերոյ զօրութե̃դ ։

Թագաւորն ասէ . ո՞վ է սա . կատուղոս հիւ-
պատոսն ասէ . մերկուռիոս է՝ զոր պայծա-
ռացուցիք և մեծացուցիք յառաջ քան զայլս
զանազան պատուով . նաև զայլս յերկրպա-
գուցանէ՝ ոչ պաշտելով զա̃ծս . ծանուցանէ
ձեզ զելս իրացն՝ յորժամ անձամբ պատաս-
խանէ ։ Դեկոս ասաց . Թերևս մախանօք

ըմբռնեն յայլն՝ բարբառեցար զայսպիսիս. վ՟այ ո՛չ լսեմ քեզ, եթէ ոչ ես ինձէն ծանեայց զճշմարիտն. քանզի արժանի հաւատալոյ այս է քան զականջս. լուեալ այդ, մի՞ ինչ խօսիր դու ը՟ նմա. և ա՟պ ասացի՝ եթէ չարակամ իմիք խորհրդով գրգռեալ բարբառեցար զայսպիսիս, վրէժս առցես ոչ սակաւս. իսկ եթէ ճշմարիտ է՝ որ ՚ի քէն ասացաւդ, պարգևս և պատիւս ընկալցիս յինէն՝ ա՟պ բարեմտաբար միամտութ՟ վարեցեալ առ ա՟ծն.

Հրամայեաց զեկոս, զի կոչեսցի մերկուրիոս զօրավար առ ինքն պատշաճ պատուով. և իբրև եկն, ասէ ցնա թգ՟րն. մերկուրիէ՝ ո՞չ ես զքեզ պատուեցի մեծաւ պատուովդ այդուիկ. զօրավար կացուցի զքեզ առաջի ա՟մ իշխանաց, սակս որ առ ՚ի քէն՝ կամաւ ա՟ծոցն եղելոյ յաղթութե՟ պատերազմին. և զի՞արդ յուշինչ համարեն զիմ պատիւն՝ օրինակ ինչ չարաբարոյութե՟ առընկալար ՚ի քեզ, և ըզպատիւս իմ արհամարհել կամիս՝ ոչ երկիրպագանելով ա՟ծոցն. ա՟պ ահա լուայ յոմանց.

Իսկ հզօր և քաջ զինուորն քրի՟՝ ՚ի բաց մերկացեալ ը՟ս առաքելոյն զհին մարդն հանդերձ գործովք իւրովք և ցանկութի՟ք, և զգեցեալ զնորն՝ որ ը՟ս ա՟յ հաստատեալ մկրտութ՟, և վստահացեալ ՚ի քս՟՝ ձայնիւ մեծաւ ասաց առ թագաւորն. ա՛ռ զպատիւս քո զայս յինէն. քանզի ես ո՛չ ը՟ս պարտեաց, այլ կամօքն ա՟յ յայս եկի. և յաղթելով բարբարոսաց ՚ի ձեռն ա՟ռն մերոյ յի՟ քի՟՝ յաղթեցի սատանայի.

Հա-

Համայն ընկալ զաւ 'ի քէնդ, որ ասացերդ,
ինձ պարգեւեալ պատիւ. քանզի մերկ ելի
յորովայնէ մօր իմոյ, և մերկ դարձեալ յայն
տն երթամ: Իսկ զայս ասացեալ 'ի բաց մեր-
կացաւ զքղամիդն, և լուծեալ զգօտին ըն-
կէց յատս թագաւորին. աղաղակէր և ասէր.
քրիստոնեայ եմ ես. լուարուք ամենեքեան,
քրիստոնեայ եմ:

Յայնժամ դեկոս զարմացեալ ը̅ի̅ համարձա-
կութե̅ նր̅, միանգամայն և ը̅ի̅ գեղեցկութե̅
և ը̅ի̅ մեծութե̅ նր̅ հիացեալ, ոչ կարաց տալ
պի̅նի. այլ բարկացեալ՝ հրամայեն ետ արկա-
նել զնա 'ի բանտ, ասելով. այլս այս ոչ ի-
մացաւ զպատիւն, գոնեա զանպատուութի̅
զգասցի: Կարծէր այնու ահ արկանել 'ի նա,
և հաւանեցուցանել և փոխել 'ի բարեպաշտ
խորհրդոցն. իսկ վկայն երթեալ 'ի բանտն՝
գոհանայր և ցնծայր փառաւորելով զա̅ծ:
Իսկ 'ի գիշերին յայնմիկ առաքեցաւ նմ̅ հրեշ-
տակ 'ի տ̅նէ՝ ասելով. քաջալերեա՛ մերկու-
րիէ, և մի՛ զանգիտեր. հաւատա՛ 'ի քո̅՝ զոր
խոստովանեցարն մ̅ր. քանզի զօրաւոր է առ
'ի փրկել զքեզ յա̅մ նեղութէց. և ա̅ք վկայն
քո̅ի տեսլեամբ հրեշտակին առաւել զօրա-
ցաւ:

Ի վաղիւն անդր նստաւ դեկոս 'ի վէ̅մ բեմին,
և հրամայեաց ածել զնա, և յանդիման կա-
ցուցանել. և ասէ ցնա. այդպէս քեզ վայե-
լէ պատիւ վ̅ն չար բարուցդ: Ա̅ծ վկայն ա-
սէ. այո այսպէս վայելէ ինձ պատիւս այս.
քանզի զանցաւորս առեր. իսկ որ յաւիտեան

մնայ, փոխանակ այդոցիկ՝ որ 'ի քէն, 'ի քնէ ընդունիմ։ Թգրն ասէ. առա՛ դու ինձ զազգն քո և զհայրենիսն ։ Իսկ նա ասէ. զճշմարիտն ես ասեմ քեզ. հայր իմ գորդիանոս կոչիւր՝ սկիւթացի յազգէ, զինուորեալ 'ի դրօշու մարտինոսացւոց. Իսկ հայրենիքն իմ՝ յոր փութամ, է երկնաւորն Երուսաղէմ, որ է քաղաք երկնաւոր Թգրին.

Թգրն ասէ. անունդ այդ Մերկուռիոս 'ի ծնողացդ կոչեցաւ, թէ 'ի զինուորութեդ. ( զի է անուն հռովմայեցի ) ։ Միւսն ասաց. 'ի զինուորութենն 'ի տրիբունէն կոչեցայ Մերկուռիոս ։ Թագաւորն ասէ. զի՞նչ ապա ասես. ըստ հրամանաց ընդունելի եղելոց մեր մարդկան՝ երկրպագանես ածոցն՝ առընդունելով քո զառաջին պատիւն, եթէ մանաւանդ հաճոյ է քեզ տանջանօք մեռանել. առա՛ վաղվաղակի, գիտելով՝ թէ վն այդորիկ կոչեցար յատեան ։

Մերկուռիոս ասաց. հաճեալ եմ ընդ տանջանս՝ որ վն քո, ոչ ասացեր. և յայս եկաւորիմ, զի յաղթեցից քեզ և բանսարկուին գտողի մեր չարեաց. և պսակ յաղթութե առից առ 'ի մարտադրէն իմոյ 'ի մնէ մերմէ յոհէ քնէ. մի յապաղեր և մի յամեր, այլ կատարեա՛ զհաճոյսն քո. քանզի առի ես զսպառազինութի հաւատոյ և զվահանն այ, որով յաղթեցից մեր հնարաւորութեց շարժելոց հակառակ ինձ ։

Յայնժամ թգրն սրտմտեալ և բարկութբ լցեալ՝ ասէ. վն զի ասացեր զէն և ասպար ու-

ունել, արդ 'ի մերկուց հրամայեմ ձգտել զքեզ 'ի չորս ցիցս հեղուսեալս . և բարձրանալ յերկրէ ։ Նա մինչդեռ յայն տանջանս էր երանելին . ասէ ցնա Թգրն . ո՞ւր է սպառազինութի քո . երդուեալ 'ի դիոս մեծն յածս , զի չարաչար ձկտեցար ։ Իսկ սրբն մերկուռիոս ոչ ետ նմա պխնի , այլ հայեցեալ յերկինս՝ ասէր . Տր յս քս օգնեա ինձ ծառայի քո ։ Յայնժամ հրամայեաց Թգրն՝ սուր դանակաւ հատանել և կտրատել զմարմին նր , և յետ այսորիկ հուր 'ի ներքոյ տարածանել . ուր յաճախութե արեանն հուրն շիջանէր . իսկ սրբն հզօրապէս ժուժկալեալ տանէր այնպիսի տանջանաց ։ Ապա հրամայեաց դեկոս լուծանել զնա , զի մի՛ վաղվաղակի մեռցի . և ուրեք 'ի խաւարային տան արգելուլ զնա զգուշութե ։ Արձեալ այնուհետև ընկեցին զնա 'ի տուն անդր , որ սուղ ինչ չնչահան ունէր 'ի վր . և կարծէին յետ պահու մեռանել ։

Այլ 'ի գիշերին յայնմիկ երևեալ նմա հրեշտակ տն՝ ասէր . խաղաղութի ը քեզ հզօր ճգնաւոր , առաքինի նահատակդ . և մերձեցեալ 'ի նա՝ արար զնա ողջ , բժշկեալ ըզվէրս մարմնոյն . մինչև յառնել նմ, և փառս վերառաքել այ 'ի դէմս երևեցելոյն նմա ։ Լուեալ ապա դեկոսի՝ թէ կենդանի է երանելին, հրամայեաց ածել զառաջեաւ . և տեսեալ զնա՝ ասէր ցիւրսն . ո՞չ մեռեալ բարձեալդ առ 'ի մէնջ զիարդ այժմ զգնայ . Թերևս և ոչ սպի ունի 'ի մարմնի իւրում .

և հրամայեաց զխնամորացն մերկացուցանել զնա և շօշափել ։ Այլ նոքա ասեն ցԹագաւորն . երդուեալ 'ի մեծութիւնդ քո բարեյաղթ . ոչ այն թէ՝ և ոչ ապտակ առեալ իցէ , այնպէս ամենայն մարմին նորա փափուկ է ամենևին , վէրս կամ սպիս ոչ ունելով ։

Թագաւորն ասէ . ամենայն իրօք ունի ասել , թէ քոն իմ բժշկեաց զիս . մինթէ զոք 'ի ներքս ածիցէք առ 'ի դարման մխիթարութեան նորա 'ի բանտին ։ Խնամորքն ասեն . երդուեալ 'ի ձեր զօրութիւնդ՝ որ մատակարարէ զամենայն զտիեզերս , և ոչ ոք իսկ ետես զնա . քանզի ակն ունէաք՝ եթէ հանդերձեալ է մեռանել . բայց թէ որպէս առողջացեալ յանդիման կայ՝ ոչ գիտեմք ։ Թագաւորն ասէ . տեսէք զմոգուն քրիստոնէից , թէ որպիսի է . զիա՞րդ յառաջ քան զայս յերիկէ մեռեալ կարծիւր , իսկ այսօր առողջացեալ յանդիման կայ ։

Այլ սրտմտեալ Թագաւորն ասէ ցնա . ո՞վ է՝ որ բժշկեաց զքեզ , ասա՛ համարձակ զամենայն ճշմարտութիւն . քանզի առանց կախարդութեան ոչ կարծեմ ողջանալ քեզ ։ Սուրբն Մերկուրիոս ասաց . ոչ յառաջագոյն ասացէր յականջս , Տէրն իմ Յիսուս Քրիստոս՝ որ ճշմարիտ բժիշկն է հոգւոց և մարմնոց , նա բժշկեաց զիս . այն՝ որ զկախարդս և զդիւթս և զհմայս և զկռապաշտս 'ի բաց տորոհէ , և անլուծանելի կապանօք կապեալ 'ի հուր գեհենին առաքէ . փոխանակ զի ոչ ծանեան զճշմարտութիւն նորա , որ արար զնոսա ։

Թագաւորն ասէ . դարձեալ զմարմինդ քո ծախե-

ցից

ցից տանջանօք, և տեսցուք թէ բժշկէ՞ զքեզ քո՛ն քո, զոր որդի ած այ ասես : Մ՝երկուրիոս ասաց. հաւատամ 'ի տէր յո՛ւ քո 'ի ճշմարիտ ած ն, եթէ որչափ և ածես 'ի վ՞ր իմ զանազան տանջանս՝ ոչինչ կարես յաղթել ինձ. քանզի ինքն ասաց տէրն իմ յո՛ւ քո, մի երկընչիք 'ի սպանողաց զմարմին, և զոգի ոչ կարողաց սպանանել. այլ երկերո՛ւք ասէ մանաւանդ յայնմանէ, որ կարող է զոգի և զմարմին կորուսանել 'ի գեհենի. նա՛ է՝ որ յետ մա՛հուանն պարձեալ յարուցանէ զիս յանհաւոր և յարդար դատաւորութէ իւրում :

Զայս լուեալ Թգրին՝ Հռոմայեաց բերել շամփուրս հրացեալս, և դնել 'ի վ՞ր նր. և ահա զօրութն անուշահոտութ ոմն 'ի խնկոյ հնչէր 'ի մարմնոյ սր֊յն 'ի մերձակայսն. մինչև զարմանալ ամենեցուն 'ի վ՞ր հրաշափառ օքանչելեացն : Իսկ Մերկուրիոս և ոչ յոգւոց հանելով 'ի վ՞ր այնպիսի տանջանացն՝ կայր անվեհեր : Դեկոս ասէ. ո՞ւր է բժիշկն քո, եկեսցէ այժմ և բժշկեսցէ զքեզ. քանզի ասացեր, թէ՝ և 'ի մահուանէ կարող է յարուցանել զիս :

Սրբն Մերկուրիոս ասաց. զի՞ ընունայն աշխատիս. արա՛ զի՞նչ այլ կամիս. քանզի իշխանութի մարմնոյ իմոյ ունելով ունիս, այլ անձին իմոյ ած իշխէ. և որչափ մարմինս իմ ապականի, նոյնչափ և ոգի իմ անապական մնայ : Դարձեալ սրտմտեալ Թգրն՝ Հռոմայեաց կախել զնա գլխ'իվայր՝ կապեալ զպարանոցէն վէմ ծանր. ոմն զի հեղձեալ 'ի քա-

րէն՝ դժնդակ՝ տանջանօք զհոգին հանցէ վաղվաղակի ։ Իսկ ա͞յ զօրացուցանելով զին-քեան վկայն , ոչինչ դժնդակ՝ զօր խորհէին դեկոս , կրեաց սրբն ․ այլ գոհանայր զա͞յ ասելով այսպէս ․ 'ի նեղութեան կարդացի առ քեզ , և լուար ինձ յանդորր ․ և մնաց յայնպիսի տանջանս ժամս բազումս ։

Տեսեալ ապա դեկոսի՝ եթէ հզօրապէս համբերէ եկելոցն 'ի վ͞ր նր͞ , և ոչինչ 'ի դժընդակագունիցն մերձենայր 'ի նա , հրամայեաց լուծանել ․ և կոչեցեալ առ ինքն փորձէր զնա բանիւք փաղաքշանաց՝ հաւանեցուցանել կարծելով ․ իսկ ո͞րն ոչինչ հաւանեալ ամենևին բանից նր͞՝ սաստիկ և անհնարին պնդութե͞ համարձակ կայր նմա ։ Այլ թգ͞րն զայրացեալ հրամայեաց հարկանել զնա պըղնձի գաւազանօք՝ այնքան , մինչ զի արիւն նր͞ զերկիրն ելից ․ իսկ ստուգապէս անպարտելի վկայն ո͞րպս ադամանդ տոկուն կրեաց զա͞մ նեղութիւնն՝ գոհանալով զա͞յ և ասելով ․ փա͞ռք քեզ տ͞ր , զի և զիս արժանացուցեր վ͞ս անուան քո այսչափ չարչարել ։

Յայնժամ ծանուցեալ թգ͞րին դեկեայ , թէ անփոփոխելի ունի զխորհուրդն , և ոչ ունի հաւանիլ նմա , խորհուրդ արարեալ ը͞ աւագանին՝ ք͞ղի փութայր երթալ 'ի հռոմ , եհատ նմ͞ վճիռ սրոյ վախճանի ասելով ․ Զմերկուռիոս՝ որ զա͞ծսն անարգեաց , և զբարեզարդութիւնս մերոյ քաղցրութեան ոչինչ համարեցաւ , հրամայէ բարեփառ զօրութիւնս մեր 'ի գաւառն կապադովկացւոց տանել , և անդ

զգլուխն հատանել ( առաջի գնդի զօրականին ) առ 'ի ցոյցս բազմաց . քանզի որ ոք թշ̃րի հակառակ գործէ , պատուհասեալ և կոծեալ 'ի նմանէ՝ յետ բազում տանջանաց 'ի ձեռն սրոյ կրեսցէ զվախճան մահու ։

Եւ առեալ զնա զինուո́րաց՝ կապեցին 'ի վ̃ր գրաստու . զի լուծեալ էր մարմին երանելոյ մարտիրոսին 'ի գերառաւել տանջանացն . և այնպէս հանդարտութ̃բ̃ իջուցանելով զճանապարհայն , և դնելով անդրէն 'ի վ̃ր գրաստու՝ հասանէին 'ի քաղաքն կեսարացւոց ։

Եւ 'ի վ̃ր կացեալ նմա տ̃ր՝ ասաց . Մե՛րկուրիէ ե՛կ այսուհետև հանգի՛ր , զի զընթացսն կատարեցեր , զհաւատսն պահեցեր . արդ ընկա՛լ զպսակն ճգնութ̃ե քո . քանզի աստ վեճակեցաւ քեզ մեռանելով կատարիլ ։

Եւ վկայն ա̃ծ զօրացեալ հոգւովն ս̃բվ՝ ցընծայր տեսլեամբն զոր ետես , յաղագս հրամանաց և հրաւիրանաց ա̃ծ . յայնժամ ասէ ց̃ն որոց ը̃ն նմ̃ զօրականաց . եկա՛յք եղբարք կատարեցէ՛ք այսուհետև զհրամայեալն ձեզ . իսկ տ̃րն իմ՝ որ զա̃մ մարդիկ կամի կեցուցանել՝ յապաշխարութ̃ի կոչելով , և զձեզ արժանի արասցէ շնորհաց իւրոց , և տացէ ձեզ մասն ը̃ն արդարս իւր . վ̃ն զի մեծատուն է , և առատաձեռնէ զպարգևս մերձեցելոցն առ նա 'ի բոլոր սրտէ ։ Իսկ նք̃ առեալ հանին զնա արտաքոյ քաղաքին կեսարիոյ . և նա գոհանայր և օրհնէր զա̃ծ . մինչև ձգեաց երանելին զպարանոցն , և հատին զգլուխն̃ր , կատարել զվկայութ̃ն փրկչին մերոյ ա̃յ,

յամ-

յամսեանն նոյեմբերի՝ որ օր իե էր, յամի Տն իբր 250 ։

Այլ հրաշափառապէս սքանչելիք եղեն, զոր արժան է յիշատակել. քանզի յետ կատարմանն մարմին մարտիրոսին եղև սպիտակ իբրև զձիւն, բուրելով հոտ իւղոց և խնկոց անուշահոտութ. և մին նշանիս այսորիկ բազումք հաւատացին յՔս. և եդին զՆշն նր 'ի տեղւոջն՝ յորում կատարեցաւ, կմ 'ի նշանաւոր տեղւոջ. ուր և բազում բժշկութիք կատարէին 'ի փառս Այ հօր և Տն մերոյ յի քի հանդերձ ամենասուրբ հոգւովն. որում փառք և պատիւ և զօրութի այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Ունիմք տեսանել և 'ի վարս սրբոյն բարսղի կեսարու հայրապետի զառանձին սքանչելիս քաջայաղթ վկայիս քի սրբոյն մերկերաւիոսի. զոր և աստանօր նշանակէ որ իէլ այսպ.

* Ոսա էտես 'ի տեսլեանն մեծն բասիլիոս կեսարեցի յերկոտեակ լերինն, որ ասէր ամենասրբուհի Ածածինն. կոչեցէք առ իս զմերկերաւիոս, զի երթեալ սպանցէ զյուլիանոս զհայհոյիչ միածին որդւոյն իմոյ ։ Այլ յորժամ զարթեաւ բասիլիոս, գնաց 'ի տապանն, և ոչ եգիտ զմարմին նր վկային, և ոչ զզէնսն. և յետ երեք աւուր դարձեալ եգիտ զզէնսն և զմարմինն, ոպ էր յառաջին. և խսկոյն լուաւ զսատակումն յուլիանոսի 'ի պարսիկս. այլ և յուլիանոս ետես յայտնապէս զմերկերաւիոս, որ եհար զգեղարդն 'ի կողս նր ։

Վ.ԿԱՅ-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Յակովկայ բազմահաւատ վկայի .

Հ . դեկտ . 3 : Հ = Յ . և ըստ եկեղ . և Յ . Լ .
տօնր . ապրիլ . յաղթ . ծառայն . և ղեկտեմ . նոյեմբ .
27 : Ճառընտ . Ա . ոհզ = ոյզ . նոյեմբ . եզ :
Նաւր . տօնեմա . հայտ . ա . եղ . 237 = 258 .
Սուրբս ՚ի Ճառընտրաց յանուց , և այլք : (1)



ԹԱԳԱՒՈՐԱԶՆ , ՄԵԾ վկայ արևելեան՝ բազմայաղթ և բազմահաւատ ՚ի Քն յակովիկ , որ յակոբ նազելի , ել յԱզէն պարսից ՚ի խուժաստանէ՝ ՚ի բիւթլապատ քաղաքէ , որ և լապետաս կմ բեթղապատ կոչի , այր ածապաշտ և յոյժ երկիւղած ՚ի Քէ՝ ինքն և ամուսինն իւր , որ բարեպաշտ ծնողաց իւրոց՝ որք ունէին ջերմեռանդն հաւատս ՚ի Քս . և էր երևելի ըստ ազգի և ըստ պատուոյ ՚ի դրան արքունի , և բազում համարձակութի ունէր առ թագաւորն յազկերտ որդի շապհոյ և յաջորդ վռամ կրմանայ . և պարգևս մեծամեծս և պատիւս ունէր ՚ի յազկերտէ , որպէս և յորդւոյ նր ՚ի վռամայ երկրորդէ :

Այլ ՚ի հնարից բանսարկուին՝ վս բազում սիրոյն , զոր ունէր առ նա թագաւորն , ջանայր

նայր 'ի թաղում աւուրս դարձուցանել զյա-
կոմիկ 'ի քնական հաւատոցն 'ի կրակապաշտ
դենս պարսից . և նա տկարացաւ և հնարա-
ւորեցաւ առնել զկամս թագաւորին , մինչ
ուրանալ նմա զՔն հաւատն՝ զոր ունէր ։ Այլ
այս ոմն երևի 'ի կարգէ պատմութեն՝ եղև 'ի
վերջին ամի յազկերտի առաջնոյ , որում յա-
ջորդեաց վռամ հայրն յազկերտի երկրորդի
հալածչի հայոց ։

Օ այսպիսի անցս յակոմկայ լուեալ երանե-
լի մօր նորա ածասիրի , և քնասէր ամուսնոյ
նր , եթէ 'ի բաց եկաց 'ի ճշմարիտ հաւատոց
վն անձնահաճոյ կամաց թագաւորին , և սի-
րեաց զառժամանակեայ կեանս առաւել քն
զյաւիտենական , առաքեցին առ նա գիր
յանդիմանութե զօրաւոր , քանզի 'ի դրան
արքունի էր , կամ 'ի բանակին . և օրինակ
թղթոյն՝ զոր գրեցին մայր նր և ամուսինն ,
էր այս ․

Լուաք , եթէ դու վն առժամանակեայ կե-
նացս և վն մարդկան հաճութե և անցաւոր
պարգևաց թգրին ,'ի միայնոյն այ՝ որ է ճշ-
մարիտ ած կենդանի՝ յետս դարձար , և ու-
րացող գտար . արդ ո՞ւր է թագաւորն քո ա-
պականելի , զորոյ զկամսն կատարեցեր , ո՞չ
աւանիկ իբրև զմի 'ի մեռելոց 'ի գերեզմա-
նի անկեալ դնի՝ ժառանգ եղեալ տանջա-
նացն յաւիտենից . ոչ պարգևք նորա կարեն
օգնել քեզ , և ոչ պատիւք նր կարեն փր-
կել զքեզ յանշէջ հրոյն ։ Արդ այսուհետև
գիտութեն լիցի քեզ , եթէ ոչ դառնաս 'ի մո-

լո-

ըմբռնէր՝ յորում կայր , և ուրանայր զօրէնս
մազդեզանց , և դառնայր յած ճշմարիտ և
յորդի նր միածին և ՚ի համագոր սբ հոգին ,
դատաստանք և տանջանք ոյ՝ որք կան և մնան
թշուառին քո սիրելւոյ , և քեզ է նմ գործակ-
ցի նր հաստատելոց է ։ Բայց մեք այսուհետև
օտարացեալ եմք ՚ի քէն , և մասն լծակցութ
և սէր ոչ ունիս ը մեզ ։

Նա իբրև զայս թուղթ ընկալաւ յակովբիկ ,
զղջումն մեծ անկաւ ՚ի սիրտ նր ․ և ՚ի միտս
իւր եկեալ՝ արտասուելով ասէր ցանձն իւր ․
եթէ մայր իմ և ամուսին՝ որ են յայսմ ծի ,
այսպէս որոշեցան յինէն երդմամբ , յորմէ
հետէ յետս կացի ՚ի սբ հաւատոցն որ ՚ի քս ,
և ճշմարտութենէն ստեցի , ե՛ս առաւել դար-
ձուցանէ ած զերեսս իւր յինէն , և յծին
յայնմիկ վաղվաղակի վրէժխնդրութի հա-
սուցանիցէ ինձ ։

Նա նոյնժամայն յարուցեալ գնաց ՚ի խորան
իւր՝ ունելով և զռբ թուղթն ՚ի ձեռին իւ-
րում ․ և առեալ վաղվաղակի զեկեղեցական
գիրսն ընթեռնոյր ․ քանզի էր հմուտ հին և
նոր կտակարանաց ․ և բանիւք սբ գրոց զանձն
իւր մխիթարէր , և յուսովն յաւիտենից հաս-
տատէր զսիրտ իւր ․ և եկեալ ՚ի զեղջ և ՚ի
զարհուրումն՝ դարձաւ բոլորով սրտիւ առ
ած ․ և շքեղացան տխուր դէմք երեսաց նր ,
և մեռելուն առաքինութ նր ՚ի կենդանութի
փոխեցաւ ։

Սկսաւ այնուհետև ը անձին իւրում ողորիլ
և խօսել միասանգամ այսպէս ․ ո՛ւր ես անձն

իմ

իմ ողորմելի. եթէ մայր իմ՝ որ ծնաւ զիս, այսօր սգայ ընդ կորուստ անձին իմոյ, և լծակից իմ այնպէս ամօթալից եղեալ կորացաւ վասն նախատանաց իմոց որ յաշխարհս յայտնին. և ամենայն սիրելիք իմ և ծանօթք այսպէս օտարացեալ մերժեցան յինէն՝ վասն դիպելոյ ինձ այսմ ամենայնի. ապա յաւուր՝ յորում լինի խնդութիւն ամենայն աստուածապաշտից, և յորժամ ընդունիցին արդարքն զվարձս վաստակոց իւրեանց, և ուրացողքն զտանջանս իւրեանց, յորում բաժնի արդեօք լինիմ ես. վասն զի փոխեցի զճշմարտութիւն ընդ ստութեան: Բայց արդ գիտեմ, զո՛ր դիւրութիւն խնդրեցից անձին իմոյ, զի մի՛ կորեայց. և ընդ ո՛ր դուռն ելի՝ զնոյն դուռն յաճախեցից բախել. և գիտեմ, եթէ բարերար է տէրն. և նոյնժամայն բանայ ինձ, և մուծանէ զիս:

Եւ մինչդեռ նա զայս զմտաւ ածէր, ոմանք յուրացելոց անտի քանզի լուեան զբանս նորա, և տեսին՝ զի կարդայր զգիրս քրիստոնէից, փութապէս ՚ի ձեռն մերձաւորաց զեկուցին զայս ամենայն թագաւորին: Եւ յորժամ լուաւ Վռամ արքայ զհամբաւն, նոյնժամայն հրամայեաց մուծանել զյակոբիկ առաջի իւր. և ասէ ցնա. քրիստոնեա՞յ ես յակոբիկ: Պատասխանի ետ քաջ նահատակն. այո՛ քրիստոնեայ եմ: Ասէ ցնա թագաւորն. ո՞չ մոգ էիր: Ասէ երանելին. ո՛չ: Թագաւորն ասէ. ո՞չ պարգևս և պատիւս ընկալար յինէն, և յառաջագոյն ՚ի հօրէն իմմէ՝ վասն մոգութեան: Յակոբիկ ասէ. արդ ո՞ւր է հայրն քո՝ յորմէ զպարգևսն ընկալայ:

Բար-

Բարկացաւ թգ̃ւրն և խռովեցաւ յանձն իւր . և խորհէր զանազան տանջանս ածել 'ի վր̃ նր̃ ։ Իսկ կրկնել անդրէն ասէ ցնա . մի կարծեր յանկոյլիկ , թէ փոքր ինչ մահուամբ սպանանեմ զքեզ , եթէ ոչ դառնաս 'ի ճանապարհէդ՝ յոր կաս ։ Նա ասաց . մի աշխատ առներ զանձնդ տէր իմ արքայ , և բազում բանիւ երկեցուցաներ զիս առանց գործոց . ք̃զի ոչ անկաւ 'ի սիրտ իմ , զոր խօսիդ . այլ ա̃ծ հողմ՝ որ հարկանէ 'ի հաստատուն վէմ , նոյնպէս և բանք քո յականջս իմ ։

Ասէ ցնա թգ̃ւրն . յաւուրս հարց իմոց պաշտօնակիցք քո սոյնպէս 'ի հաստատութե̃ կացին յամառութ̃ , և դառն մահուամբ սպառեցան . քանզի ոչ կամեցան ունկնդիր լինել հրամանաց թգ̃ւրաց ։ Ապա եւս երանելին յակոյլիկ , և ասէ . և ես զայս աղօթս առնեմ ա̃յ յա̃մ սրտէ , զի արժանի եղէց ժառանգել զմահ նր̃ , և փոխանն իմ եղիցի իբրև զփոխանն նր̃ . քանզի և մահս այս չէ համարել մահ , այլ իբրև զքուն , եթէ ոք ննջիցէ և յարիցէ ։

Ասէ թգ̃ւրն . մի մոլորեցուսցեն զքեզ քրիստոնեայքն , որք կոչեն զմահն քուն , թէ մի՛ երկիցես . քանզի և թագաւորք և բռնաւորք երկեան 'ի մահուանէ ։ Ասէ ցնա երանելին . ամ̃ թգ̃ւորք և բռնաւորք յիրաւի երկնչին 'ի մահուանէ , քանզի զայն գործեցին՝ զոր ոչ ա̃ծ հրամայեաց . զի գրեալ է , մեռաւ ամպարիշտն , և կորեաւ յոյս նր̃ . և դարձեալ ասէ , յոյս ամպարշտաց չիջցի . Թգ̃ւրն ասէ .

հե-

հեթանոսս զմեզ համարիք ով քրիստոնեայք, և իբրև զձեզ մոլորեալս. որ ոչ զա՟ծս գիտէք, և ոչ արեգական երկիրպագանէք, և ոչ լուսնի, ոչ հրոյ և ոչ ջրոյ, որ են որդիք ա՟ծոյն. վ՟յ և արժանի էք մահու:

Նաև երանելին յակոբիկ. ոչ մեղադրեմ քեզ արքայ, եթէ սպանցես զիս վասն անուանն ք՟ի. զի գրեալ է վ՟ն մեր և վ՟ն այնոցիկ՝ որք արժանի եղեն մտանել յայսպիսի պատերազմս, թէ եկեսցէ ժամանակ, զի ա՟մ որ սպանանիցեն զձեզ՝ համարին պաշտօն մատուցանել ա՟յ: Նա և գիտասջիք, զի ի՟ մոլորու՟ե ձերոյ կարծէք՝ եթէ դուք միայն գիտեցէք զա՟ծ. և փոխանակ արարչին՝ արարածոց երկիրպագանէք խլից և կուրաց. և կոչէք զնա ա՟ծս, որ ոչ են ա՟ծք. և բարկացուցանէք զա՟ծ, որ ետ ձեզ զթ՟գրութ. և լինիք սիրելիք այնոցիկ, որ ոչ կարեն բարի առնել և ոչ չար:

Յայնժամ լցեալ թ՟գրն բարկու՟թ՝ վառեցաւ իբրև զհուր, և հրամայեաց կոչել զա՟մ իմաստունս և զխորհրդականս իւր, թէ զի՞նչ խրատ տայցեն վ՟ն մահուան նր՟ ի՟ յամառութէն. քանզի ոչ կամեցաւ առնել զկամս արքայից արքայի: Յայնժամ խորհրդականք թ՟գաւորին հանդերձ մոգօքն մտին 'ի խորհուրդ, թէ որո՞վ դատն մահուամբ արժան իցէ մեռանել վկային. և ասէր ոմն այսպէս, և ոմն այնպէս:

Իսկ մի ոմն 'ի նոցանէ չարախորհուրդ և անօրէն զայս տայր նշ՟ խրատ. ոչ է արժան ա-

ռէ այսպիսի առն միով հարուածով կմ երկու
կմ երեք , կմ հնգիւ կմ տասամբ մեռանել .
այլ պրկեցի 'ի ձեռաց և յոտից իւրոց , և
կտրեցի մի առ մի ամ անդամաթիւ նր ըստ
յօդուածոցն . և յետ այնր զմի հատցի գլուխ
նր . և հաւանեցաւ ամ ատեանն ։ Եւ իբրև
ել հրամանս այս խիստ յերեսաց թգւորին ,
քարշեցին զերանելին յակովիկ մոլեգնա-
բար , և տարան զնա 'ի տեղի տանջանացն ։
Լու եղև ընդ ամ քաղաքն , և դիմեցին ամ
բազմութի հանդերձ զօրականօքն զհետ ե-
րանելոյն՝ 'ի տեղին , ուր սպանելոցն էր . և
բազումք 'ի հաւատացելոցն իբրև լուան ըղ-
ձիւ նահատակին , անկան յերեսս իւրեանց
արտասուօք , աղաչէին զած և ասէին . Օր-
հնեալ ես ած և տր զօրութեց , որ տաս համ-
բերութի յուսացելոց 'ի քեզ , և զօրացուցա-
նես զտկարսն . որ եկիր 'ի փրկել զկորու-
սեալսն . զօրացո տր զծառայս քո յակովիկ ճշ
բազում ողորմուե քում , զի ելցէ յաղթօղ 'ի
պատերազմէս . քանզի քեզ վայելէ յաղթուի
բարերար տր . զի դու ես գլուխ ամ յաղթու-
թեց՝ քն որդի այ , փրկիչ Յի ։
Եւ յորժամ մերձեցաւ երանելին յակովիկ 'ի
տեղի տանջանացն , խնդրեաց 'ի սպանողացն ,
զի թողացուսցեն նմ պահ մի գոհանալ զքնէ ,
վն որոյ չարչարելոցն էր . և կացեալ յարևելս
կոյս՝ եդ ծունր , և համբարձ զսիրտն 'ի բար-
ձունս առ տր ած՝ որ բնակեալն է 'ի բար-
ձունս . և յաղօթեսն իւրում այսպէս ասէր .
Լուր տր աղօթից ծառայի քո յակովկայ , և

փրկեա՛ զորդի աղախնոյ քո, որ դոչեմ առ քեզ 'ի ժամուս յայսմիկ. և արա՛ ընդ իս նշան բարութե. զի եղէց օրինակ բարի սիրելեաց անուանդ քում սբյ. զի յաղթեցից դառն մահուանս զօրութբ քո մեծաւ. և ընկալայց զպսակ յաղթութե ընդ կատարելովն քո, որք սիրեցին զքեզ և պսակեցան 'ի քէն տր. ոչ զի տեսցեն ատելիքս, և ամաչեսցեն. զի դու տր օգներցեր ինձ, և մխիթարեցեր զիս:

Յայնժամ մատուցեալ պրկեցին զնա 'ի չորից կողմանց՝ 'ի ձեռաց և յոտից նորա անողորմ պարսիկք. և սկսան ասել ցնա դահիճքն. տես, զի՞նչ գործելոց ես. քանզի ահաւասիկ հասեալ կամք կատարել զամ անդամս քո, ոչ եւ հրաման 'ի թգւորէն: Եւ իբրև ոչ ետ պխնի երանելին, դարձեալ ասեն ցնա. տես խորհեա՛ց 'ի միտս քո, և ընտրեա՛ ընդ կեանս քո և ընդ մահ. զի միով բանիւ կարես ապրել 'ի դառն տանջանացս՝ որ կան առաջի քո. ապա եթէ կացցես 'ի նմին յամառութեդ, կրելոց ես զայս ամ պղդառն և զահագին չարչարանս: Եւ լացին բազումք յամպարշտաց անտի՝ որք դիպեցան 'ի ժամուն յայնմիկ, վն պայծառութե դեղոյ նր՝ որ էր պատուական. և ամենեքին իբրև ընդ մի բերան խօսէին ցնա. մի՛ կորուսաներ զայդպիսի գեղեցկութի քո ընդունայն. այլ յանձն առ ըզկամս թագաւորին և կեցցես. յետ այնորիկ կատարեսցես զկամս քո:

Եւ բաց զբերան իւր երանելին յակովիկ, և ասէ ցնս. մի՛ լայք 'ի վր իմ, այլ լացէք 'ի վր ան-

անձանց ձերոց և 'ի վերայ որդւոց ձերոց. որ վայր մի փափկանայք 'ի վայելչութեան անցաւորիս այսորիկ, և յետ այնորիկ ժառանգէք զտանջանսն յաւիտենից. ո՛չ միայն դուք, այլև դուքն՝ որոց երկիրպագանէք. այլ ես այսուհետև փոքր մնհոնամբս յուսացեալ եմ 'ի քեզ, զի զկեանսն յաւիտենից ժառանգեցից. և կատարումն անդամոց իմոց յանձնէ զվարձս 'ի տ̃նէ իմմէ. քանզի ա̃մ որք ա̃ծ վաստակոց իւրոց առնու զհատուցումն յա̃յ, որ ոչ արգելու յումեքէ զպարգևս իւր ։

Յայնժամ ասէ ցդահճապետն իշխան հաւատարիմ թ̃գւորին, որ առեալ էր զհրաման սպանման վկային. զի՞ անցեալ կաս հեղգացեալ, հրամայեա՛ դահճաց կատարել վաղվաղակի զհրաման թ̃գրին. և սկսան այնուհետև կոտորել զմատունս ձեռաց նր̃ ։ Իսկ իբրև կտրեցին զաջոյ ձեռին նր̃ զբոյթն, բացեալ զբերան իւր երանելոյն յակովկայ՝ և ասէ. փրկի՛չ ա̃մ յուսացելոց 'ի քեզ, ընկա՛լ ոստ մի 'ի ծառոյս՝ զոր տնկեցեր ողորմութ̃ քով. վ̃ն զի ո՛րչափ հատանեն ձեռք կտրողաց զտունկս, գայ գարունն և նորոգէ, և պայծառանայ տունկն պտղով ։

Իսկ սկսաւ լալ հաւատարիմ թ̃գրին՝ վերակացու գործոյն, և ասէ ցնահատակն. շա՛տ է քեզ, զի հատաւ մատն մի 'ի ձեռաց քոց. և եթէ կամիս, դիւր է բժշկել զդա դեղօք, զի մի՛ ապականեսցին փափուկ մարմինք քո. և եթէ վ̃ն հօգւոյդ է խնդիր քո, ունիս ոսկի արծաթ բազում, բաշխեա՛ կարօտելոց,

և կեցո՛ զանձն քո. զի մի՛ չարաչար կորիցես:
Իսկ երանելին յակովբիկ յաւելեալ յառաջին բանս իւր՝ ասէ ցնա. ՚ի բարունակէ ո՞չ ուսար, զի յորժամ մերձ ՚ի ձմեռն լինի, անկանի վաղվաղակի վարսաւոր գեղեցկութ̃ն նորա և մերկանայ. իսկ յորժամ գայ գարունն, առաւել պայծառանայ՝ արձակելով զպտղալից շառաւիղս իւր. արդ եթէ առժամանակեայ բարունակին այնպէս նորոգումն լինի, ո՞րչափ ևս առաւել մարդ՝ որ հաւատացէ յա̃ծ, տնկեսցի յայգւոջն, և յետ նեղութե̃ց առաւել ծաղկեսցէ պտղալից լինի ՚ի ձեռն ք̃ի ճշմարիտ մշակին:

Իսկ իբրև կտրեցին զերկրորդ մատն ն̃ր, գոչեաց երանելին մեծաձայն, և ասէ. ցնծասցէ՛ անձն իմ ՚ի տ̃ր, և ուրա՛խ եղիցի սիրտ իմ յա̃ծ փրկիչ իմ. և յաւելեալ ՚ի գովութիւն իւր՝ ասէր. ընկա՛լ տ̃ր զերկրորդ ոստ ՚ի ծառոյս, զոր տնկեցեր ս̃բ հրամանի քում. և այնպէս խնդայր և ուրախանայր յայնպիսի դառն ժամու. և ՚ի փառս ա̃յ իւրոյ խոկայր:

Իսկ իբրև կտրեցին զերրորդ մատն ն̃ր, աղաղակեաց նահատակն ք̃ի, և ասէ. ընկա՛լ զիս տ̃ր ընդ երիս մանկունսն, որք օրհնէին զքեզ ՚ի մէջ հնոցին. զի և ես արժանի եղէց ընդ նոսին գոհանալ զքեզ տ̃ր բոլորով սրտի՛ւ իմով. և ընդ գունդս մարտիրոսաց սաղմոս ասացից անուա՛ն քում բարձրեալ:

Իսկ իբրև կտրեցին զչորրորդ մատն ն̃ր, գոչեաց երանելին և ասէ. յերկոտասան որդիսն յակոբայ ՚ի վ̃ր չորրորդին (յուդայ՝ որ

է խոստովանութին ) հանդերձ օրհնութին Այ ։
և ես յակովբիկս չորրորդ ստոյլ մատուցից զո-
հութին և խոստովան եղէց անուան նր ։ քզի
օրհնութին նր եղև փրկութին մր արարածոց ։

Նա և իբրև կտրեցին զհինգերորդ մատն նր ,
լցեալ երանելոյն զբերան իւր օրհնութբ՝
ասէ ։ հինգերորդ մատամբ թաթի աջոյ իմոյ
մատուցի տնկողի ծառոյ իմոյ պտուղ ։

Նա և իբրև մատեան 'ի ձախոյ ձեռն նր կտրել
զմատունսն , ասէ ցնա իշխանն հրամանա-
տար ։ մարթ է քեզ և արդ ևս կեալ , եթէ
արասցես զհրամանս թգրին ։ քանզի բազումք
են 'ի մարդկանէ , որոց կտրեալ է մի ձեռնն ,
և կան յԾի ։ և դու խնայեա յանձն քո , զի
մի կոտորեսցին փափուկ անդամք քո առ հա-
սարակ առաջի աչաց քոց ։ քանզի ահա որքան
կտրին անդամք քո , ը միոյ միոյ առնուս ըզ-
մորմոքումն վիրացդ ։

Պտխնի ետ երանելին , և ասէ ցնա ։ զոչ-
խարն յորժամ կամիցին կտրել , և առնուլ
զբոլոր գեղմն նր , ոչ եթէ զաջոյ կողմն նր
կտրիցեն և զձախոյն թողուցուն ։ արդ եթէ
ոչխարն՝ որ անասուն է և ապականելի , այն-
պէս զգուշութբ կտրի , զի մի ինքն անպիտա-
նասցի , և մի կտրօղքն 'ի գործ ճարտարութե
բրդեանց թերակատարք երևեսցին ։ որչափ
ևս առաւել ինձ պարտ է գոհանալ զԱյ ,
քանզի և ես ոչխար 'ի նր հօտէ եմ , զի զիս
զորուպս արժանի արար լինել զոհ կենդա-
նի 'ի ձեռն կտրողաց , որպէս և գառն Այ 'ի
ձեռն խաչահանուացն ։ վյ և ես այսօր պա-

տարագիմ ո՞յ իմոյ 'ի Հոտ անուշից զանապան տանջանօքս ։

Այնժամ սկսան կտրել զմատունս ձախոյ ձեռին նո՟, և նախ զճկոյթն՝ որ է վերջին մատն ․ և իբրև հատին զայն, ասէ երանելին առ փրկիչն իւր համարձակութ՟ ․ տրուպ եմ ես առաջի մեծիդ, որ փոքրկացուցեր զանձն քո ․ և բաղում տկարս իբրև զիս ար֊ժանի արարեր պատարագիլ, ո՞պ և դու ինքն եղեր պատարագ փոխանակ և վ՟ ո՞մ արա֊րածոց ․ և վ՟ք ընծամ և ուրախ եմ, և մատ֊նեմ զանձն իմ և զմարմին իմ, զի դու ո՟ր 'ի ժամու իւրում կանգնեսցես զիս հաստա֊տութ՟ ։

Եւ իբրև կտրեցին զեօթներորդ մատն նո՟, այսպէս ասէ ․ վառեալ հոգւոյն ո՞յ իբրև եօթնաջահեան լուսով՝ եօթն անգամ օրհնե֊ցից եօթներորդ մատամբս զհայր և զորդի և զս՟բ հոգին ։

Եւ իբրև կտրեցին զութերորդ մատն, ա֊սէ ․ յութերորդ աւուրն թլփատեցան որ֊դիքն եբրայեցւոց, զի հեռասցին յանթլփա֊տից ․ արժանի՛ արա և զիս զծառայս քո ո՟ր այսօր հեռանալ յանթլփատիցս սրտիւք և յամպարշտացս, և եկաւորիլ առ քեզ ․ ո՟ր ո՞ծ իմ առ քեզ միայն ծարաւի՛ անձն իմ, ե՟րբ եկից երևեցայց երեսացդ քոց ։

Եւ իբրև կտրեցին զիններորդ մատն նորա, ասէ ․ յիններորդ ժամու ո՟ր իմ տարածեցեր զձեռն քո 'ի վ՟ր խաչափայտին վ՟ մեր մեղա֊ւորացս ․ և արդ իններորդ մատամբս գոհա֊

ցայց

ցայց զքէն տ՟ր ա՟ծ իմ, արժանի՛ արա և զիս
զծառայս քո զանարժանս տարածել և կլտ-
րել տալ սիրով զոստս մարմնոյս իմոյ վ՟ն ան-
ուանդ քում ս՟բյ:

Այս իբրև կտրեցին զտասներորդ մասն ն՟ր,
գոհացաւ և ասէ. յովտ՝ մի գիր, որ նշանա-
կեց մի է՝ նշանակ տասնեակ համարոյ կա-
տարելոյ, ընդ զմ՟մ բանս (տասնաբանեան
օրինաց), և զԹիւս (ընտրելոց). որ՟պս և ՚ի
ձեռն Յիսուսի (որոյ սկզբնատառն է յովտ)
եղև փրկութիւն արարածոց. և ես տրուպս և
անարժանս տասնաղեաւ սաղմոս ասացից տ՟ն
իմոյ զերգս օրհնու՟է ն՟ր, և փառաւորեալ
պատուական մեծու՟է ն՟ր, որ արժանի արար
զիս այսօր լինել պատարագ ՚ի հոտ անուշից.
և փոխանակ տասնաղոյն դաւթի տասնե-
րորդ մասամբ և քնարաւ հոգւոյն գոհա-
ցայց զ՟նէ, և սաղմոս ասացից անուան ն՟ր:
Այս սկսան դարձեալ ասել ցնա մեծամեծքն.
եթէ կամիս, դոյ հնար քեզ կեալ յայսմ հե-
տէ, թէպէտև տասն մասունք քո կտրեցան.
են աստ բժիշկք Ճարտարք արքունականք՝
որք կարող են բժշկել զվէրս քո. միայն արա՛
զկամս թ՟գրին, զի մի մեռցիս և կորիցես ՚ի
փափաքելի կես. զի այր թ՟գրազն ես, կա-
րող ես դարմանել և տեսանել զվէրս քո:
Այլ թէ աղքատ ոք էիր, պարտ էր քեզ հոգալ
և ասել, թէ որովհետև տասն մասունք ձե-
ռաց իմոց կտրեցան, զի՞նչ օգուտ է կես այս.
քանզի վաստակել և դարմանել զանձն իմ
ոչ կարեմ. բայց գիտեմք, զի դու այր մե-

ծառուն ես , և կարող ես դարմանել զանձն քո 'ի մեծուէ քումմէ , և 'ի գանձուց թագաւորին՝ որ պարգևին քեզ . և այնպս վայելես զիմ գրգանս Տի . հայիս և 'ի գեղեցկութի ամուսնոյ քո , և մխիթարես գեղով նր զանձն քո . քանզի և նա դուստր մեծատան է , և յերևելի ազգէ . նոյնպէս և դու այր պատուական ես և ականաւոր , ընդէ՞ր կամեյար կորուսանել զանձն քո . զի ոչ ել 'ի բերանոյ քումմէ բան մի ընդ կամաց թգրին . որով նոյնժամայն հնար էր քեզ դառնալ 'ի կեանս քո ։

Եւ հայեցեալ 'ի նա երանելոյն յակովկայ՝ ասաց . հնար իցէ երկուց տրանց ծառայել , կմ միով ձեռամբ երկուս գործս գործել . դնել զձեռն 'ի վր մաճոյ հերկոյն , և դառնալ 'ի յետս , միթէ յաջողեսցի՞ արքայութին երկնից ։ Ոչ եթէ մայր իմ և ամուսին իմ պատուականագոյն իցեն քան զտր ած . և մանաւանդ ասէ իսկ ինքն , թէ ամ՝ որ կորուսցէ զանձն իւր վս իմ , գտցէ զնա . և որ թողուցու զհայր կմ զմայր կմ զկին և զքոյրս և զեղբարս և զիմ ինչ՝ զոր սիրէ յՏիս յայսմիկ , և առցէ զխաչ իւր և եկեսցէ զհետ իմ , և ես տամ նմա զկեանս անմահս և զյոյսն յաւիտենից , որ ոչ անցանէ ։ Եւ ասէ ցնոսա դարձեալ երանելին . ոչի՛նչ պիտոյ են ինձ ձեր շողոքորթանքդ և բանքդ զոր խօսիք . քզի ինձ վնաս է , և ձեզ աւիթ կորստեան . այլ վաղվաղակի կատարեցէք զոր հրամայեալ է ձեզ , և մի խնայէք ։

Յայն-

Յայնժամ մատեան դահճացն արիւնարբուք յաջոյ ոտն նր՟, և կտրեցին զկոճ բութի նր՟. և բացեալ երանելոյն զբերան իւր՝ ասէ. փառք քեզ յս՟ քս՟ որդի ա՟յ կենդանւոյ, որ զգեցար զմարմին տկարութե՟ մերոյ, և տարածեցեր զձեռս քո և զոտս 'ի վե՟ր խաչին. ուր խոցեցին զկող քո գեղարդեամբ. և թացաւ ոտն քո յարենէ և 'ի ջրոյ, որ ել 'ի սբ կողից քոց 'ի փրկութի՟ն ա՟մ արարածոց. վ՟յ և ես անարժան ծառայ քո խնդութե՟ք ը՟ունիմ զտանջանս զայս 'ի մարմնի իմում վ՟ա անուանդ քո սբյ ։

Եւ իբրև կտրեցին զերկրորդ մատն նր՟, ասէ երանելին. մե՛ծ է ինձ օրս այս քան զա՟մ աւուրս կենաց իմոց. քանզի մինչև մտեալ էր իմ 'ի պատերազմն յայս, փոքր 'ի շատէ օրհնէի զա՟ծ իմ. քանզի 'ի հոգս և 'ի զբաղմունս աշ՟ի յափշտակեալ էր սիրտ իմ. և բազում անգամ խափանէր զիս յաղօթից իմոց սէր աշ՟իս այսորիկ. սակայն թէև կայի յաղօթս, միտք իմ անպտուղ էին. և ոչ էին աղօթք իմ սբ առաջի ա՟յ իմոյ. մարմին իմ յեկեղեցւոջն էր, իսկ խորհուրդք իմ ելանէին յերկինս և իջանէին յանդունդս ։ Բայց այսօր առեալ իմ զխորհուրդս իմ փոխեցի 'ի վեր յաշ՟էս յայսմանէ բոլորով սրտիւ իմով և ա՟մ տենչանօք սորա, և փութացայ յառաջեկայ աշ՟ն յայն, որ կայ առաջի աչաց իմոց. վ՟յ և որչափ կոտորին անդամք մարմնոյ իմոյ, խնդութե՟ք փառս մատուցից սբ երրորդութե՟ն, զի արժանի արար զիս այսօր այսմ տան֊

տանջանացս ։

Եւ իբրև կտրեցին զերրորդ մատն նորա, և ընկեցին առաջի նորա, տեսեալ երանելւոյն՝ ծիծաղեցաւ և ասէ. Երթ և դու երրորդ մատն զհետ ընկերաց քոց, և մի՛ ինչ տրտմիր. քանզի և հատ ցորենոյ անկեալ յերկիր՝ ոչ մնայ միայնիկ, այլ ՚ի ժամանակի՝ յորժամ բողբոջքն արձակին և բոյսքն ծաղկին, լիանայ հասկօք, և առեալ ածիցեն զնա բազմօք ընկերակիցքն իւր ընդ իւրեանս. Նոյնպէս և դու յական թօթափել խառնիս ընդ ընկերսն յշտեմարանս արքայութե՛ ՚ի յաւուրն այցելութե՛ ։

Եւ իբրև կտրեցին զչորրորդ մատն նորա, սկսաւ ասել ցանձն իւր երանելին. ընդէ՞ր վհատիս անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ յԱծ և գոհացի՛ր զնմանէ. քանզի փրրկութի երեսաց իմոց Ած է ։

Եւ իբրև կտրեցին զհինգերորդ մատն, ասէր երանելին. այժմ սկսայ խօսել առաջի Տն իմոյ, որ սիրեացն զիս, և հաստատեաց զիս ։

Եւ ապա մատուցեալ ՚ի ձախ ոտն նր՝ կտրեցին նախ զձկոյթ այնր ոտին. յայնժամ ասէ երանելին ցձկոյթն իւր. մի՛ երկնչիր փոքրիկ մատնիկ, քանզի և փոքու և մեծի միապէս յարութի լինելոց է. զի ոչ մազ մի ոչ կորնցէ ՚ի գլխոյ, նոյնպէս և դու ոչ կորիցես ՚ի թուոց ընկերաց քոց ։

Եւ իբրև կտրեցին զերկրորդ մատն նորա, սկսաւ խնդութբ ասել երանելին, քանզի

ցըն֊

ցնծայր 'ի տ՟ր . քակեցէք քակեցէք զխախտեալ տունս . քանզի և գալոց է ճարտարապետն՝ պայծառագոյն ևս առնել և նորոգել :

Եւ իբրև կորեցին զերրորդն, ասէ . օրհնեալ տ՟ր ա՟ծ իմ, որ յաղթօղն է յիմի . 'ի նա յուսացեալ եմ . և նմա փառք յաւիտեանս :

Եւ իբրև զչորրորդն հատին, ասէ ցնո՟ երանելին . գիտէք զսալ դարբնաց . որչափ դանելով զանի, ինքն ոչ վնասի, այլ գործն կատարի . նոյնպ՟ և մարմին իմ թէպէտև տանջելով տանջի, այլ հոգիս իմ ցնծայ 'ի տ՟ր :

Եւ իբրև կորեցին զհինգերորդ մատն, իբրև 'ի քնոյ զարթուցեալ գոչեաց երանելին, և ասէ . դատեա՛ տ՟ր ա՟ծ իմ զդատաստան իմ, խնդրեալ զվրէժ իմ յամպարշտացս՝ 'ի դառն յազգէս յայսմանէ . քանզի ո՛չ խնայեցին 'ի գործս ձեռաց քոց գայլք ապականիչք :

Զայս ա՟մ կտտանս դառն և ազգի ազգի տանջանաց և զհամբերութի՟ վկային ք՟ի տեսեալ անօրինացն և ամպարշտաց՝ սկսան հարցանել ը՟ միմեանս երիտասարդքն և տղայքն, և ասեն ցծերս . լուեա՞լ է ձեր կ՟մ տեսեալ յաւուրս ձեր կ՟մ յաւուրս հարց ձերոց, եթէ մարտիրոսացա՛ւ ոք այսպէս, կ՟մ կրեա՛ց ոք այսպիսի տանջանս անբերելիս : Իսկ երանելին առաւելեալ քաջասրտութ՟բ ասէ ցդահիճսն . ըն՟ր հեղգայք իջուցանել զոստս ծառոյս, և կտրել զսա և զբուն սորա . քանզի ցնծայ ոգի իմ 'ի տ՟ր, և բարձրացաւ սիրտ իմ յայն՝ որ սիրէ զխոնարհս :

Եւ բարկացեալ դահիճքն կրճտէին զատամունս

մունս իւրեանց՝ . և մատուցեալ՝ անողորմն
լուծին զծունգ աջոյ ոտից նր̅ . և ասէ ցնոսա
նահատակն առաքինի . ա̅մ անդամք իմ՝ որ
կտրեցան յինէն , իբրև զպատարագ ընդու-
նելի մատուցան առաջի ա̅յ Թագաւորին երկ-
նաւորի ։

Եւ իբրև լուծին զծունգ ձախոյ ոտից նորա ,
ասէ երանելին . լո՛ւր ինձ տ̅ր , զի քաղցր ես .
և անպատում են շնորհք քո առ ամենեսեան՝
որ կարդան առ քեզ ։

Եւ իբրև լուծին յարմկանէ նր̅ զաջոյ ձեռին
դաստակ , ասէ . բազմացան շնորհք քո տ̅ր 'ի
վերայ իմ , և փրկեցեր զանձն իմ 'ի դժոխոց
ներքնոց ։

Եւ իբրև լուծին զարձեւղ յարմկանէն զձա-
խոյ ձեռին նր̅ դաստակ , ասէ . ահա և մե-
ռելոց առնիցես սքանչելիս տ̅ր ։

Ապա իբրև մատուցեղ ո̅պ արիւնարբու գա-
զանք՝ խլեցին յուսոյ զձախոյ բազուկ նորա ,
յաւելեղ 'ի ձայն իւր երանելին՝ ասաց . օրհ-
նեցից զտ̅ր 'ի կեանս իմ , սաղմոս ասացից ա̅յ՝
մինչև եմ ես . քաղցր եղիցի նմա օրհնութի ,
և ես ուրախ եղէց 'ի տ̅ր ։

Եւ իբրև կտրեցին յուսոյ զաջոյ բազուկ նր̅ ,
ասէ վկայն . բարձրացուս անուն իմ 'ի վր̅ թշ-
նամեաց իմոց , որք պաշարեցին զիս . զօրութի
իմ՝ օգնութի իմ տ̅ր , և եղև ինձ 'ի փրկութի ։
Եւ մատուցեալ լուծանէին զաջոյ բարձք նր̅
յերանւոց նր̅ . և յայս ա̅մ տանջանաց ոչինչ
զանգիտեաց երանելին յակովիկ , այլ ևս էր
բերան նր̅ օրհնութբ̅ , և սիրտ նր̅ բերկրու-
թբ̅ .

թթ̃ • և յաւելեալ 'ի գովութիւն՝ ասէր • Տէր յոյս քո փրկեա՛ զիս , և օգնեա՛ ինձ • Քզի պատեցին զիս երկունք մահու ։ Ասեն ցնա դահիճքն • ո՞չ յառաջագոյն ասացաք քեզ , թէ դառն և անողորմ տանջանք գալոց են 'ի վերայ քո ։ Ասէ ցնոսա նահատակն Քրիստոսի • Ես վասն այնորիկ զամենայն ինչ փորձեցի , զի ծանեայց՝ թէ մարմին զգեցեալ եմ , և առաւել չարչարեցայց վասն անուա՛ն Տեառն իմոյ • իսկ զանողորմ տանջանս՝ զոր ածիք 'ի վերայ իմ , ամենևին ոչ զգացի • քանզի 'ի Տէր իմ Յիսուս Քրիստոս յափշտակեալ էր սիրտ իմ՝ բոլորովին •

Կրկնեալ անդրէն ասէ ցնոսա , Ընդէ՞ր հեղգայք և ափշեալ էք • այլ վաղվաղակի կատարեցէք զոր հրամայեալ է ձեզ • քանզի լքեալ էին դահիճքն 'ի կոտորել զանդամս սրբոյն • ուր նա առաւել զուա՛րթանայր 'ի սէր Տեառն իւրոյ ։ Ապա մատուցեալ այնուհետև լուծին և զձախոյ բարձք նորա յերանաց նորա • և այսպէս կտրեցին զամենայն անդամս նորա • և ոչ ևս մնաց 'ի նմա անդամ ողջ , բայց միայն գլուխն և լանջքն և որովայնն • քանզի նման էր երանելին անուշահոտ լիբանան ծառոյ , որոյ ոստքն կոտորեալ , և ստեղն միայն կացցէ ։ Արդ իբրև յօշեցին զամենայն անդամս նորա , և անկեալ դնէր երանելին յերկրի որպէս զկոճղ կիսամահ , առեալ ոյժ 'ի հոգւոյն սրբոյ՝ սկսաւ աղօթել և ասել • Տէր Աստուած իմ գթած և ողորմած , խնդրեմ 'ի քէն և աղաչեմ , լո՛ւր խընդրուա՛ծոց ծառայի քո • քանզի ահա անկեալ դնիմ 'ի գետնի՝ օտարացեալ յամենայն անդամոց

ի-

իմոյ. ո՛չ կան իմ մատունք՝ թէ աղաչեցից նոքօք զքեզ. և ոչ բազուկք՝ եթէ տարածեցից զնս առաջի քո. և ո՛չ ոտք՝ թէ կրկնեցից ծունր, և փառաւորեցից զքեզ տր. զի ահա լուծեալ քակտեցին զբարձրաբերձ աշտարակ մարմնոյ իմոյ, և խախտեցաւ գեղեցկուէ շինուածոյ իմոյ. և եղէ ստուերացեալ, ոմ մնացէ սակաւ ինչ նշմար աւերածի:

Որդ խնդրեմ 'ի քէն տր, հա՛ն 'ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանն քումն: Այլ 'ի կարդալս իմում և յաղաչելս՝ դադարեսցի սրտմտութի քո, և եղիցի ողորմութի քո 'ի վր Յի, հանդերձ սբ վկայիւքն և խոստովանողօք, որք են յարևելս և յարևմուտս, 'ի հիւսիւսի և 'ի հարաւ. Քզի տն ա՛յ հօր ամենակալիդ, և միածնի որդւոյ քո տն մերոյ յի քի, և կենդանարար սբ հոգւոյդ վայելէ փառք այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն: Այլ երբև կատարեաց զաղօթսն, մատուցեալ 'ի դահճաց անտի մի ոմն՝ դանակաւ եհատ զգլուխ երանելոյն, և այնպէս աւանդեաց զհոգին՝ սբ վկայն քի, 'ի նոյեմբերի իէ՝ 'ի թուոյ հոռոմոց, յաւուր ուրբաթու, յերկրորդ կամ յերրորդ ամի վռամայ արքային պարսից, յամի տն 421. կմ 422. այն ամ էր եօթն հարիւրորդ երեսներորդ երկրորդ կմ երրորդ աղեքսանդրեան թուականի արևելեայց:

Իսկ մարմին սբ վկային կայր յերկիր ընկեցեալ այնպէս. և էին ցրուեալ ամ անդամք նր. և ժողովեալ հաւատացելոցն զանձ բազում

զում՝ մատուցին դաՀճացն, որո՟վ պի՟ առցեն զնշխարս երանելւոյն . և ոչ կամեցան տալ ։ Իսկ յիններորդ ժամուն՝ յորժամ՚ի բաց գնացին ամ՟ ամպարիշտքն, թաքուցեալ մնացին անդէն արք քրիստոնեայք մինչև ՚ի մերձենալ գիշերոյն՝ վ՟ ժողովելոյ և ամփոփելոյ զցրուեալ անդամս ն՟որայն ։ Եւ իբրև երեկոյ եղև, ժողովեցին զամ՟ նշխարս նորա զմեծ և զմանր, զձեռաց և զոտից, որ են թուով ի՟ը . և ա՟ գլխոյն և ա՟ լանջաց՝ լինին լ՟ . և այնպէս Հաւաքեալ միանգամայն զամ՟ անդամս նորա՝ եդին ՚ի միում տեղւոջ թաքստեան . բայց արիւն երանելւոյն այնպէս կայր, որ Հեղեալ էր ՚ի վ՟ խոտոյ երկրին ։

Իսկ առաւօտուն՝ մինչդեռ ժողովեալ էաք (աստ վկայաբանն ականատես) Հաւատացեալքս, և զայս սաղմոսէաք, ողորմեա՛ ինձ ած՟ ըստ մեծի ողորմութե՟ քում, յանկարծակի եղև նշան աՀաւոր . քանզի էջ Հուր, և պատեաց զմեզ ՚ի տեղւոջ՝ ուր Հեղեալ էր արիւն երանելւոյն, և սրբեաց զնա . և մեր տեսեալ զայն՝ յաՀի և ՚ի դողման եղեաք, անկեալ յերեսս իբրև զմեռեալս ՚ի վ՟ երկրի . մինչև կարմրանալ մարմնոց մերոց ՚ի սաստիկ ջերմութէն ։ Եւ յորժամ վերացաւ Հուրն ՚ի մէնջ, դիմեալ մեր առ Հասարակ՝ ուր կային նշխարք երանելւոյն, աղաչէաք բարեխօսել առ ած՟ վ՟ մեր . քանզի կարծէաք ցասումն ինչ ածել ՚ի վ՟ մեր . և յորժամ ծանուցաւ մեզ շնորՀք ամ՟, յաղօթս ն՟որայն ապաւինեալ՝ օրՀնեցաք զած՟ մեր յամ՟ քս՟, որ արժանի արար

զմեզ

զմեզ այսպիսի տեսլեան. քանզի կարծեցաք մեք զառաջինն, թէ վն̃ տանջանաց երանելոյն երեւեցաւ այսպիսի նշան՝ առնել վրէժխնդրութիւն ամպարշտացն. բայց ապա ծանուցեալ գիտացաք, թէ 'ի պատիւ եւ 'ի փառս սրբոյ վկային եղեւ այսպիսի նշան ։

Այնուհետեւ հանեալ մեր զնշխարս սրբոյ վըկային գաղտաբար 'ի տեղւոջէ անտի, եւ օծեալ իւղովք անուշիւք, եւ պատեալ նրբ̃ կտաւօք՝ եդաք 'ի պատուական տեղւոջ, որպ̃ վայել էր իսկ նրբոյ վկային. եւ փառաւորեցաք զա̃ նմա զհայր եւ զորդի եւ զսբ̃ հոգին. որում փառք եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Յայս վայր վկայագիրն, որ 'ի Ճառընտիրի մերում, եւ 'ի քաղդէական կմ̃ յասորի օրինակն եւոդիոսի ասսեմանեայ՝ միօրինակ 'ի սկզբանէ ցվախճան գրեթէ ըս̃ ա̃մ բանի ։ Յաւելու յայսմաւուրքն ղփտոց, թէ իբրեւ լուան ըզմարտիրոսութիւն սրբոյն յակովկայ մայրն եւ կինն եւ քոյրն, եկին ուրախութբ̃ 'ի տեղին՝ ուր պահեալ կային նշխարք նորա. համբուրեցին եւ պատուեցին խնկօք եւ իւղովք եւ այլովք սպասուք՝ արտասուօք հանդերձ. եւ նր̃ առնէր նշանս մեծամեծս 'ի տապանէ սրբոյն. ուր եւ շինեցաւ եկեղեցի մենաստանաւ հանդերձ ։

Զայն լուեալ արքային պարսից՝ հրաման ետ այրել զվանսն, ը̃ նմին եւ զնշխարս սրբոյն. զի մի մնասցէ ինչ յիշատակ նորա ։ Բայց իմացեալ զայն հաւատացելոց՝ փախուցին կան-


խաւ

խաւ զոսկերս սրբոյն յակովբկայ յեդիմ . և ան-
տի բերել եդին յեդեսիա քաղաքի առ պետ-
րոսի եպիսկոպոսի տեղւոյն . որ իբրև երթայր 'ի
տաբեննա՝ կամ 'ի տափնաս քաղաք եգիպ-
տացւոց, ընդ իւր տարաւ զպատուական զանձն.
և անդ արար զժամանակ ինչ ընդ եղբօր իւ-
րում ։ Այլ եղև 'ի միում յաւուրց 'ի կատա-
րել նոցա զվեցերորդ ժամու աղօթսն՝ առաջի
նշխարաց սրբոյն յակովբկայ, երևեցաւ երանե-
լին յակովբիկ պարառեալ 'ի դասուց վկայիցն
պարսից 'ի զգեստ պարսկաց . և սկսան ձայ-
նակից լինել 'ի սաղմոսերգութիւն . և յետ օրհ-
նութեան ասէ յակովբիկ . կամիմ, զի մարմին իմ
մնասցէ աստ, որպէս պատուիրեաց Տէր . և յայն
բան աներևոյթ եղև տեսիլն ։ Բայց պետ-
րոս եպիսկոպոսն ստուգանէր զպատուէր նորին .
քանզի յետ սակաւուց կամեցեալ դարձ առ-
նել 'ի հայրենիս իւր՝ ընդ իւր բարձեալ տա-
նէր և զնշխարս նորա 'ի նաւ անդր . այլ սա-
կայն տապանակ սրբոյն հրաշապէս ելեալ ան-
տի՝ դառնայր յեգիպտոս՝ 'ի տեղին, ուստի
բարձաւ ։

Արդ որպիսի և իցէ այս աւանդութիւն ղպտոց,
յետ դարուց անցելոց՝ մարմին նորին յակովբ-
կայ, եթէ յԶէն պարսից, և եթէ 'ի կող-
մանց եգիպտոսի, նորա մասամբք իւրովք փո-
խադրեցաւ յարևմուտս . և բերեալ յիտա-
լիա՝ եդաւ 'ի վենետիկ . ուր և կայ մինչև
ցայսօր 'ի ծովեզերեայ թեմին կոչեցեալ մա-
լամոք՝ 'ի խորանի եկեղեցւոյն . ուր և կեն-
դանի նկարագրեալ է պատմութիւն բազմա-

չարչար նահատակութե̃ն վկայիս. որ 'ի մէջ բազմահատ կոչի, և 'ի Հռովմայեցւոց միջահատ, վ̃ս անդամ անդամ կտրատելոյ երանելւոյն: Բայց գլուխ սրբոյն կարծի յոմանց լինել 'ի Հռովմ. և ըստ այսմ վերծանի 'ի Հռովմէական ժամագիրս 'ի տօնի սրբոյն յակովկայ այսոքիկ. * Մարմին Նորա 'ի քրիստոնէից զառաջինն ծածկանօք թաղեալ, ապա 'ի ձեռն կիւրղի առն ազնուականի Հռովմայեցւոյ գաղտ բարձեալ՝ ածաւ յիտալիա. և յետոյ գլուխն յաւուրս եւգինէոսի չորրորդի՝ 'ի յորդանիսէ ուրսինոսէ կարդինալէ սաբինացւոյ՝ վատիկանեան տաճարին ( սրբոյն պետրոսի ) աւագերիցունէ՝ այնմ եկեղեցւոյ տուաւ 'ի պարգևս ||.

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Մի և նոյն վկայաբանութ̃ն է՝ ոչ միայն ըստ միաձայնութե̃ն պատմութ̃ն ծայրէ 'ի ծայր, այլև ըստ ընթացից շարադրութե̃, այն՝ որ 'ի Ճառընտրի մերում, և այն՝ զոր բերէ եւոդիոս աստեման 'ի քաղդէական կմ̃ յասորի մատենէ. գործ ժամանակակից և ականատես վկայի. և այն է՝ զոր գոյզն ինչ տարբերութ̃ք քաղէ մետափրաստես, կամ յոյն հեղինակն 'ի կիր արկեալ լատին թարգմանութ̃ սուրիոսի. ուստի և առ այլս ի՛նչ ի՛նչ այլայլութ̃ք ոճոյ կարգեալ. զոր և համառօտեն յայսմաւուրք մեր ազգաց. մինչ զի ոչ մնայ մեզ տեղի կրկնելոյ բանս 'ի պէտս ծանօթութե̃:

Կարող էաք նշանակել զմանրամասն տարբերութ̃ս ինչ ընթերցուածոց՝ որ ըստ մեզ և ըստ եւոդիոս. բայց չէք ինչ գոյացական. ուստի և 'ի ծանօթութիս եւոդիոսի չկայ ինչ արժանի տեղեկութե̃. զի նա առ նմ̃ խօսի պարծանօք՝

որ

որ ոչն ունին զբուն վկայաբանութիւն 'ի ձեռին , որպէս մեք ունիմք · եթէ ես քաղդէարէն կամ ասորերէն գիտէի , և կամ եւոգիոս հայերէն , յայնժամ արժան էր թարգմանութեն առնել ը̄ մէջ օրինակաց · բայց զթարգմանութեն նր լատինական կշռադատել ը̄ մերումս հին և ընտիր օրինակի չէր արժան ։

Անուն յազկերտի և վռամայ արքայից պարսից միապէս գրի առ մեզ և առ նմա · իսկ կատարումն սոյն՝ որ 'ի մեզ նշանակի յերկրորդ կամ յերրորդ ամի վռամայ , առ եւոգեայ գնի յառաջին կամ յերկրորդ ամի ։ Ասպէ մովբրխաւոս , զի զայս վռամ՝ կրման կոչէ · որ է մականուն հաւու կամ հօրեղբօր նր առաջնոյն վռամայ · սխալէ և եւոգիոս՝ որ զայրանայ ընդ մովբրխաւոս , թէ ուստի գտեալ իցէ զանունս կրման , որ լատիներէն գրի կերմանոս , կամ Քերմանուս · զի * ոչ դք իշխան այսու ան-
,, ուանբ հանդիպի ( ասէ ) 'ի պարսկական պատմութե || · որ է անգիտանալ զպարսկական պատմութիւն ։ Այլք զյակովբիկ վկայն ասեն լինել յաւուրս կայսերացն արկադեայ և ոնորիոսի , և նահատակել առ փոքրն թեոդոսիւ · որ է ուղիղ ։ Սոյնպէս պարտ է միաբանել և զայլ բանս այլոց ։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Իրաւափառայ Հովոնի։

Հ. դեկտ. 30 ։ Յ. Լ. դեկտ. 21 ։ Ղ՛աւրենա.
Ա. ռչէ = ռչԾ. նոյեմբ. ԺԹ ։ (1)

ԻՐԱՒԱՓԱՌ ԱՆՈՒՆ, պանծալի՝ է թարգմանուն յունական անուանակոչութեամբ թէմիստոկղէս (կմ՛ թեմոկղիտոս). որ էր այր խաշնարած 'ի լիկիայ գաւառի 'ի սահմանս քաղաքին միռայ կամ զմիւռայ՝ ոչինչ հեռի 'ի զմիւռնիոյ յոնիոյ ծ̃ յիզմիրէ, առ թ̃գրութ̃ դեկոսի կայսեր ։ Իսկ եղեւ՝ զի յաւուրս հալածմանց ոմն յերեւելեացն քրիստոնէից դիոսկորիդէս անուն փախուցեալ անկաւ 'ի լերինս. եւ խնդրակք զհետ առաքեալ յասկղեպիոսէ դատաւորէ՝ ոչ կարացին հասանել նմա. եւ բազմօք յուզեալ զնա, եւ ոչ կարացեալ գտանել՝ հանդիպեցան իրաւափառայ հովոնի. եւ հարցին զնա վ̃ն դիոսկորիդեայ ։

Իսկ իրաւափառ քանզի գիտէր՝ թէ առ ի՞նչ խնդրեն զնա, ո՛չ յայտնեաց. այլ ասէր, թէ պարտապան է ինչ ձեզ, ահա ես փոխանակ նր̃. տարջի՛ք զիս. եւ այնպէս արգել զն̃ա. եւ

խոս

խոստովան լինել եղև, թէ իմ ընկալեալ է զնա և թաքուցեալ. ոչ զի մատնեսցէ զնա, այլ զկինքն փոխանակ տացէ նմա: Իսկ 'ի վարանիլ զօրականաց և 'ի թռնադատել զիրաւափառն՝ սկսաւ նա հարցանել զնոսա, եթէ ո՞յր աղագաւ խնդրի այրն այն 'ի ձէնջ: Նոքա ասեն. վ̅ս զի քրիստոնեայ է, և ուսուցիչ ժողովրդեան հրապարակաւ հակառակ դից. և վ̅ս այնորիկ դատաւորն հրամայեաց յատեան կացուցանել, զի զոհեսցէ ա̅ծոցն. և կեանքն շնորհեսցի նմա. ապա եթէ ոչ՝ չարչարեսցի:

Ասէ ցն̅ս իրաւափառ. թո՛յլ տուք նմա եղբարք. զի թէպէտև քրիստոնեայ է, որպ̅ս և ես եմ, սակայն մարդ է իբրև զձեզ: Իսկ ն̅ք լուեալ զայն 'ի ն̅ր̅ն՝ սկսան զարմանալ և ասել. փոխանակ ն̅ր զքեզ կացուցանեմք առաջի դատաւորին: Ասէ ն̅ն. ես աղաչեցի զձեզ շնորհել ինձ զխնդրելիդ զայդ, և դուք ոչ լուայք. առէք զիս փոխանակ ն̅ր. զի ես նա եմ, և նա ես. քանզի երկոքեան մի ա̅ն ծառայ եմք յի̅ ք̅ի:

Յայնժամ արկին 'ի նա ձեռս, և կալեալ ածին 'ի քաղաքն զմիւռնիայ. և մատուցեալ առ դատաւորն՝ ասեն. զայրն զայն ոչ կարացաք ըմբռնել. վ̅ս զի հովիւս այս առեալ թաքոյց զնա. ոչ միայն թաքոյց, այլև ջատագով լինելով համարձակութ̅բ ասէր, թէ՝ և ես քրիստոնեայ եմ իբրև զնա: Իսկ դատաւորն ասկղեպիոս նստեալ յաթոռ դատաւտանի՝ հրամայեաց ածել զնա զառաջեաւ.

և մեռեալ՝որոյն հոլովական կերպիւն , մաշ-
կեաւն և ցպօքն և պարսիւն՝ եկաց առաջի ,
ոչ իբրև զվայրենաբնակ երկուցեալ ինչ , այլ
իբրև զծառայ այ քաջալերեալ :

Դատաւորն ասէ . զի՞նչ արուեստ է քո : Ի-
րաւափառն ասաց . որպէս տեսանես : Դա-
տաւորն ասէ . ասա՛ յայտնապէս , թէ ո՞րպի-
սի ոք ես : Իրաւափառն ասաց . արուեստի՛
եմ , ոպ կերպարանքս իսկ ցուցանէ . և կրօ-
նիւք ծառայ եմ յի քի , որ լսեսդ : Դատա-
ւորն ասէ . քրիստոնեա՞յ պատասխիս ( ըստ դատա-
նիս ) : Իրաւափառն ասաց . ոչ եթէ միայն
պատասխիմ , այլ եմ իսկ կամօքն այ :

Ասէ դատաւորն . դու՞ ընկալար զփախուցեալ
քրիստոնեայն : Ինքն ասէ . ոչ եթէ ես , այլ
քո , որ հանդերձեալ է զիս ըունել և զնա :
Դատաւորն ասէ . ասա՛ ինձ զճշմարիտն , զի
կեցցես : Իրաւափառ ասէ . զկեալն քս գի-
տէ . քանզի նա իսկ ասաց , ես եմ կեանք և
ճշմարտութն : Բարկացաւ դատաւորն և ա-
սէ . ընդէ՞ր ես այլ իրք հարցանեմ , և դու
զայլ ինչ պխնի առնես . ասա՛ վն որոյ հար-
ցանեմս զքեզ , զոհե՞ս մեծ ածոցն , եթէ ոչ :
Իրաւափառն ասէ . խօսեա՛ց վն այ ճշմար-
տի , և լո՛ւր վն միասնական իշխանութն հօր
և որդւոյ և հոգւոյն սբյ . այլ վն զոհից սուտ
ածոցն մի՛ խօսիր ընդ իս . զի ոչինչ իսկ են , բայց
հնարեալ ՚ի խոհերական արուեստէ որկրա-
մոլ և վատթար մարդկան , որոց ած որո-
վայնն իւրեանց : Արամնեալ ասկղեպիոսի՝
ասէ . աղտեղի՛ և չարադև , թգւորքն հրա-
մայ-

մայեցին ամենևին մի՛ կեալ քրիստոնէից , այլ՝ ամենեցուն զոհել ա̃ծոցն . և դու հակառակ կաս հրամանաց թգ̃րացն :

Պ̃անի ետ ո̃րն լուսաւոր , և ասէ . և ո՞ւմ արդեօք պարտ է լսել . ա̃յ անմահի և զ̃տմ 'ի չգոյէ 'ի գո՛յ ածողի , եթէ մարդոյ մեռանելոյ՝ որք կացին հպարտութ̃ք , և սատակեցան իբրև զոչինչ , և եղեն հող և մոխիր : Ասէ դատաւորն . զիա՞րդ հովիւ և վայրենաբանակ այր՝ այդ̃պ ճարտար խօսիս . ո՞ւր ուսոյց քեզ այդպէս բարբառել . միթէ քրիստոնեայ՞ն այն՝ որ փախեաւն առ քեզ : Լուսաւորն ասաց . ո՛չ եթէ նա , այլ քն̃ է՝ որ ուսուցանէ մարդկան , և տայ իմաստութիւն անմտաց : Դատաւոր ասէ . արդ և դու անմի՞տ ես : Լուսաւորն ասէ . երբեմն էի , այլ այժմ զ̃տրն ընդ իս ունելով զ̃տմ իմանամ որպէս իմաստուն որք :

Յայնժամ ասէ ցնա դատաւորն , ես զճշմարիտն հարցանեմ քեզ ասել , և դու ո՛չ ասես . արդ եթէ իմանաս զ̃տմ , ա՛յժմ գիտասջի՛ր զլինելոյն քեզ . և հրամայեաց պրկել զնա . ասէ . տանջեցէ՛ք զդա այնչափ , մինչև ոգի դորա ելցէ 'ի տանջանսն . Ք̃լի վիճելով ը̃ մեզ քաջահոգի զինքն ցուցանէր , կամ ունակ ա̃ծեղէն ոգւոյ : Իսկ երանելին 'ի տանջանսն սկսաւ ասել այսպէս . փա՛ռք քեզ քն̃ որդի ա̃յ կենդանւոյ , զի խրատիմ ասել ըզճշմարիտն . արդ դու ես ճշմարտութիւն և կեանք :

Դատաւորն ասէ . ա՛յ ամենաթշուա՛ռ՝ և ո՞չ

տանջանքն ընկճեցին զքեզ . զի այդպէս բար-
բառիս հակառակ ածոցն : Վրաւափառն ա-
սաց . քոյն իմ լոյս , և ածքն քո խաւար . 'ի
լուսոյն երևելն՝ խաւարն փախչի , և 'ի քա-
րոզիլ զօրութեն՝ տեղի տայ տկարն . և խա-
ղաղութենն յառաջ եկեալ՝ պատերազմ դի-
ւացն հալածի : Դատաւորն ասէ . տանջա-
նօք 'ի կենացդ վճարեմ զքեզ , եթէ ոչ խոս-
տովանեսցիս՝ ո՞ւր թաքուցեր զփախուցեալ
քրիստոնեայն . և ապա ևս ուրացեալ զքոյն
քո՝ զոհեսցես ածոցն :

Սա 'ի ծիծաղիլ սրբյն ը բանս նր՝ հրամայ-
եաց բռնաւորն տանջել զորովայն նր . և իբ-
րև հարին զփոր նորա ժամ մի ողջոյն , ասէ
սրբն . զարմանամ ո՛վ դատաւոր , եթէ զիա՞րդ
ես հովիւս յայսքան տանջանս ոչ անկանիմ
'ի ճշմարտութենն , այլև յոյժ ցանկայ սիրտ
իմ յերկար տանջանս ըունել վն քոյին իմոյ .
և անխուճապ և անշփոթ առնեմ քեզ պնի .
իսկ դու իշխս ոն մեծ 'ի բարձր աթոռդ նստեալ՝
այդպէս խռովիս և անկարգաբար բարբառիս
իբրև զչարագործ և զդիւահար : Հարցանես
զիս երբեմն վն փախուցելոյ քրիստոնէին , և
երբեմն վն քոյին իմոյ ուրանալոյ , և երբեմն
վն դիւաքնակ մեռելոտի ածոցն : Արդ՝ ե-
թէ զքրիստոնեայն խնդրես , ահա ես նա
եմ . և եթէ վն քոյի հարցանես , լո՛ւր զոր ա-
սեմս . ած մարդ եղև վն բազում մարդասի-
րութե իւրոյ . և եթէ վն զոհից ածոցն հար-
ցանես , զարմանամ՝ թէ զիա՞րդ 'ի բարձրու-
թն նստիս , և ը ժահահոտ դևհս քարշիս .

դար-

դարձեալ եթէ տանջել կամիս, տանջեա՛. զի ես պատրաստ եմ:

Իսկ դատաւորն տեսեալ զանհաւան միտս նր̄՝ հրամայեաց կախել զնա և քերել. ասէ. քերեցէք, զի մինչև յուղեղն և յոսկերս հասցէ: Այլ իբրև քերեցին զնա սաստիկ, մինչև երևիլ ամ̄ ներքին անդամոց նր̄, ասէ դատաւորն. ա՛յ երեքթշուառական, գո՛նեա մինչդեռ 'ի փայտիդ կաս կախեալ՝ խոստացի՛ր զոհել դ̄ցն. տեսանե՞ս, թէ յո՛րպիսի դառն տանջանս կաս:

Սր̄բն ասէ. ո՛վ անմիտ, ո՛չ գիտես՝ եթէ 'ի ձեռն փայտին ծագեաց մեզ փրկութի̃, և փայտիւ՛ փրկեցաք. փայտիւ՛ կռապաշտութի̃ն լռեաց, և քրիստոնէութի̃ն ծաղկեաց. դևք խափանեցան, և սատանայ կապեցաւ. մարդիկ ազատեցան, և քս̃ փառաւորեցաւ, և զփառաւորիչս իւր փառաւորեաց: Տեսանե՞ս, թէ որպէս բարեաց պատճառք եղև փայտ խաչին քսի. ո՛չ իմանաս, թէ՝ և ես վն̃ նորա նահատակիմ, և դ̄ցն քոց ո՛չ հնազանդիմ. արդ ահա կամ 'ի կախաղանիս, և 'ի քերանս փայտի առաւել խոստովանիմ զքս̃: Ասէ դատաւորն. կարծեմ՝ 'ի մահ եգեր զանձն քո՝ զայդպիսիս բարբառելով. որ և ո՛չ 'ի հոգիդ քո խնայել կամիս, և հաւանել. և ո՛չ 'ի տանջանաց երկնչիս. դարձեալ միւսանգամ ը̄ սաստիկ տանջանօք զքեզ արկանելով 'ի մահ յղարկեցից: Սր̄բն ասէ. 'ի սպառնալեաց քոց ես ո՛չ զարհուրիմ, և ո՛չ 'ի տանջանաց քոց երկնչիմ. զըծոն քո ո՛չ ձա-

նա

նաչեմ , և զպարգևատուն կենաց իմոց յ̃ս ք̃ս ոչ ուրանամ , որ այսպիսի համբերութե̃ պարգևեաց ինձ անարժանիս ։

Դատաւորն ասէ . թէ չճանաչես զա̃ծսն , ես ցուցանեմ քեզ . ա̃յ են ասկղեպիոս , արամազդ , ապողոն , եկոնիդոս , և այլ ևս մի ըստ միոջէ ։ Սո̃ն ասէ . ոչ երբէք լուա՛յ վ̃ս բազմա̃ծութե̃ , այլ վ̃ս միոյ ճշմարտին ա̃յ՝ արարչին ա̃մ արարածոց . նա է ա̃ր երկնի և երկրի . իսկ արդ՝ զորս ասացերդ , ո՞ւր են բնակեալ ։

Զայրացեալ դատաւորն՝ ասէ . զտանջանօք խաղ առնես , և ձեռն յա̃ծսն ձգես՝ խաղ առնելով և զնս և հայհոյելով . երդուեալ 'ի բարերար ա̃ծսն , զի ոչ դադարեցից 'ի տանջելոյ զքեզ , մինչև զոհեսցես նց̃ . և դարձեալ հրամայեաց քերել զնա ։ Եւ մինչդեռ քերէին , ասէ Ս̃ն . զդևսն և զպիղծսն և զկախարդսն ա̃ծս անուանես . զոր ես և ոչ լսել անգամ կամիմ , թող թէ զանուանս նց̃ ուսանել ։ Դատաւորն ասէ . եթէ ոչ կամիս բազմա̃ծոցն զոհել , ասկղեպեայ զոհեա՛ ( անուանակցին իմում ) , և ապրեա , և բուժիս ևս 'ի տանջանացդ . ( զի էր անուն չա̃յն բժշկութե̃ ) . և պատիւս ընկալցիս յինէն ։ Սո̃ն ասէ . մոռացար՝ զոր ասացի , թէ ոչ զոհեմ կռոց , զոր ոչ ճանաչեմ . զպատիւ և զփառս քո դու կալ . ես պաշտեմ զճշմարիտ ա̃ծն , զի երթայց 'ի կեանսն յաւիտենից . այսուհետև արա զոր ինչ կամիս , զի ես քրիստոնեայ եմ ։

Տե-

Տեսեալ դատաւորին՝ թէ ոչինչ օգտի, հրամայեաց իջուցանել զնա 'ի փայտէն. եւ բերել տապակ երկաթի, և ցանել, և շրջշրջել 'ի վ՟ր տապակին զս՟բն և քարշել, մինչև անդէն մեռցի։ Իսկ դահճքն արարին զհրամայեալսն. կապեցին զոտս և զձեռս Իրաւափառայ, և այնչափ քարշեցին, մինչև քանցեցաւ ա՟մ մարմինն. և մերկացեալ երևեցան ա՟մ ոսկերքն ն՟ր. և ս՟բն 'ի քարշելն ասէր. Տ՟ր ա՟ծ իմ պահեա զհաւատս իմ անհրապոյր 'ի չարէն. և ամենեցուն առաջնորդեա 'ի գիտութիւն քոյոյ ա՟ծուե՟դ. և չարչարողացդ զիս թողութիւն արա ն՟ր. և զոգիս իմ ընկալ խաղաղութ՟բ ը՟ս ս՟բս քո. և քեզ փառք յաւիտեանս։

Իսկ զայս ասացեալ աւանդեաց զոգին, մինչդեռ քարշէին 'ի վ՟ր երկաթի փշոցն և տապակացն։ Իսկ անդէն ոչինչ հեռի 'ի տեղւոջէն թաղեցին զս՟բն. և կառուցին զգաւազանն 'ի վ՟ր գերեզմանին. և արմատացեալ պտղաբերեաց, և լինէր պտուղ ն՟ր 'ի բժշկութ՟ն հիւանդաց։ Կործեցաւ այս առ Դեկոսիւ թագաւորաւ յամի տ՟ն իբր 250. յամսեանն նոյեմբերի ի՟է. յիշխանութ՟ն Ասկղեպիոսի բդեշխի՝ քանզի և նա թշ՟րազն էր, 'ի զմիւռնիա քաղաքի. և այնպէս կատարեցաւ ն՟բ վկայն Իրաւափառ, որ և Թեմիստոկղէս, 'ի ք՟ս յ՟ս 'ի տ՟ր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն։

Իսկ ը՟ս մարգարէանալոյ ս՟բյն Իրաւափառայ, որ ասաց վ՟ր Դիոսկորիդեայ, թէ ք՟ս զիս և

զնա

զնա ընկալցի , յետ աւուրց կալան և զնա պաշտօնեայք դատաւորին . որ և քաջ համա-դիմացեալ 'ի խոստովանութե Հաւատոյ՝ փոր-ձեցաւ գանիւք և քերանօք և բանտիւ . և Հաստատուն կացեալ 'ի նոր՝ գլխատեցաւ 'ի նմին զմիւռնիա քաղաքի , կմ 'ի զմիռա մօտ 'ի զմիւռնիա , Հրամանաւ նորին դատաւորին . ընդ որում առանձին կատարեն յոյնք զյիշա-տակ սրբոյն դիոսկորիդեայ 'ի մայիսի . 11 . ոմանք և լատինք 'ի մայիսի . 10 ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ ։

(1) Զայս գեղեցիկ վկայաբանութի ունիմք 'ի միջի գո-վելի Ճառընտրի մերում մեծի . զորոյ և զքաղուածն տե-սանեմք յար և նման 'ի յայսմաւուրս և 'ի վկայագիրս իւ-րաքանչիւր ազգի . այլ զընդարձակն ոմն զմերս՝ ցարդ ոչ տեսաք առ այլս ։ Քանզի մի տող 'ի սկզբնաւորութէ պա-կասէր 'ի Ճառընտրի . բայց դիւրաւ կարկատի համեմա-տութե յաջորդ բանից և այլոց համառօտագրաց ։ Ամե-նեքին դնեն զկատարումն իրաւափառայ կմ թեմիստոկ-ղեայ 'ի լիկիա գաւառի , 'ի քաղաքն զոր ոմանք միռա , և ոմանք սմիռնա կոչեն . զոր Ծ . գրէ զմիւռնիա . այլ ընդ ինքեան որոշին երկու քաղաքք մօտ իրերաց . մին 'ի լի-կիա՝ միւռա անուանեալ , թ զմիւռա , որ և զմիռա կամ զմիւռին . և միւսն 'ի յոնիա՝ սմիռնա կմ զմիւռնիա ան-ուանեալ . և սա է՝ որ այժմ իզմիր կոչի ։

ՄԱԻԲ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ

## Հարց Եգիպտացւոց ։

Հարանց վարք Հտ․ ՃԾ․ Ա Լա ։



’Ի ԴՐԱԽՏ ԱՍՏՈՒԾՈՅ հանդերձեալ մեր մտանել, ’ի վարս ասեմ սրբոց հարց ճգնաւորաց փայլելոց յեգիպտոս և ’ի սահմանս նորա, զզանազանեալ ծաղկանց և զպտղոց ընտիր ընտիր քաղաքավարութ՟նց զանուշահոտութի՟ և զհամ քաղցրութե՟՝ դոյզն ճաշակաւ ևեթ խոստանամք աստանօր սեղանաւորել առաքինասէր ընթերցանելեաց առաջի, առաքելով զնս՟ ’ի բուն իսկ տեղին՝ ’ի մատեանն հարանց վարուց. ուրանօր լիակատար պատմութիւնք և առաքինութիւնք և հոգեշահ խրատք նց՟ սփռեալ կան. մանաւանդ զի՝ եթէ ո՛ր յաջողեսցէ, ոմն յաշխատասէր վ՟պաց մերոց ունի զայն գործ մեծ առանձինն ’ի լոյս ընծայել՝ համեմատութ՟ հին և ստոյգ օրինակաց մերոց և յունաց և հռովմայեցւոց. նմին իրի մեզ մնայ ծաղկաքաղ յիշատակութ՟ շատանալ ։

Իսկ պատճառ յայսմ վայրի յիսնակաց տօնելոյ մեր զլուսերամ պարս ն՟ր հարանցս՝ ըստ

որում

որում միօրինակ ունին տօնացոյցն և Ճաշոցն , այլ տեսանի ը՟ յայտնաւուրաց , և այլ ը՟ Ճառընտրաց ։ Վասնզի յայտնաւուրքն դնելով զառաջինսն 'ի հարց սատի զպօղոս և զպօղ 'ի դեկտեմբերի 6 . և 7 . տայ մեզ առիթ կարծելոյ , թէ նովին խորհրդով կարգեալ է և տօն նց՟ և որոց ը՟ նմ՟՝ յայս միջոց առաջին աւուրց դեկտեմբեր ամսոյ ։ Իսկ Ճառընտիրն մեծ քանզի 'ի վ՟ր այբուբենից կարգէ զՃառս վարուց ս՟բց , յարենման տօնիս՝ ը՟ մէջ մերկեւրիոսի և մինասայ դնէ , * Պատմութիւն ս՟բ հօրն մակարայ եգիպտացւոյ և այլոցն || . ուր լինի բան և զմարկոսէ միայնակեցէ . յորմէ մարթ է կարծել , թէ գլխաւոր յիշատակ տօնիս ը՟ կարգաւորութե՟ գրեգորի վկայասիրի հայեցի առ ս՟բն մակար՝ անուանի գտեալ զկնի մեծին անտոնի , և նովաւ առ այլ միանձունս ։

Եւ թերևս յառաջ քան զվերջին կարգաւորութե՟ տօնացուցի և Ճաշոցի 'ի վկայասիրէն և 'ի շնորհալւոյն՝ տօն պօղոսի և պօղայ պարունակիւր 'ի տօնի անտոնի . ըստ որում և յոյնք և լատինք երկու կմ՟ եօթն աւուրբք յառաջ քան զանտոն տօնեն զպօղոս . և լինի հակառակն օրինակք ինչ տօնացուցի և Ճաշոցին մերոյ ը՟ պօղոսի երկրորդեն և զանտոնն . և ոմանք զանց առնեն զպօղ ։ Եւ զի ը՟ մակարայ իմանային նախնիք մեր և զտօն այլոց հարց ս՟կց եղելոց զկնի անտոնի , ոմանք 'ի գրչաց զայս առնուն , և ոմանք զայն առնուն երևելի՝ առընթեր դնեն մակարայ . կմ՟ զանց

առ-

առնեն, եթէ 'ի տօնացոյցս և եթէ 'ի ճաշոցս՝ աննման իրերաց. զի հաշակաւորն պեմէն հասարակօրէն չյիշի բնաւ, բայց 'ի նոր օրինակս. որպէս և 'ի պատարագամատուցի չիք. զանիծել՝ թէպէտև երևելի, բայց ժամանակաւ զկնի, 'ի սակաւ օրինակս գտանի. պակասի և սրապիոն յոչ սակաւս. իսկ փոխանակ մակարայ երկրորդի՝ հասարակօրէն 'ի ձեռագիրս դնի մարկոս, կամ աբբայ մարկոս. բայց է̅ նմին երկրորդեն ոմանք և ըզմակարիոս. ուր և ոմանք հայելով 'ի պատարագամատոյցն՝ եդեալ են և զոնոփրիոս, զոր ուրոյն տօնեմք. և այլք զյովհաննիսեանս և զսիմէոնեանս, որոց չիք որոշ պատմութի. և այլք զբեսարիոն, կամ զթաթուլ և զվարոս: Զայսոսիկ հարևանցի ծանուցեալ՝ քաղեսցուք զվարս միոյ միոյ 'ի հարց անտի գտելոց 'ի սովորական օրինակս առ մեզ:

## Պօղոս անապատական:

Հ. դեկտ. 6: Յ. յունվար. 15: Լ. յուլ. 10: Ղա-ոգնոս. Ի. ՇՅԷ = ՇՅԾ. 'ի սբ̅յն հերոնիմոսէ:

Հնագոյնն 'ի մէջ հարց անապատի մեզ ծանուցելոց՝ ամ̅ նախկին անապատաւոր և միայնակեաց ներանձնաւոր, եղև սբ̅ն պօղոս թէբայեցի. որ էր ծննդեամբ յ[illegible]էն եգիպտացւոց 'ի ստորին կամ 'ի վերջին կոչեցեալ թէբայիդոյ, վարժեալ 'ի մանկութէ իմաստութ̅

յու-

յունաց և եգիպտացւոց . և մնացեալ որբ 'ի ծնողայ՝ ամաց հնգետասանից կամ վեշտասանից , հանդերձ քերբ իւրով ամուսնացելով , կրթէր զանձն 'ի բարեպաշտութե՟ վարս խոնարհութ՟ և սիրովն առ ա՟ծ : Այլ 'ի յառնել հալածանաց դեկոսի՝ կայսեր յամի տ՟ն իբր 250 , զօղեալ էր յագարակի իւիք . իսկ քեռայր նո՟ր անօրէն ագահեալ 'ի բազմութի՟ ընչից և ստացուածոց մնացելոց պօղոսի 'ի ժառանգութե՟ , խորհէր մատնել զնա հալածչաց :

**Իբրև զգայր պօղոս զդաւաճանութի՟ն , ասէր ցանձն իւր . զի՞նչ կայ իմ բնաւ յա՟շխ , կա՞մ 'ի նմանէ զի՞նչ շահ օգտի լինիցի ինձ . և այնպէս խոյս տուեալ յանապատ տեղիս և յամուրս ապառաժ լերանց՝ գտանէ քարայր մի 'ի լեռնատանն , անյարկ , այլ ծածկեալ յարմաւենի ծառոյ , հանդերձ յստակ աղբերբ . և զայն համարեալ յա՟յ նմա պատրաստեալ՝ 'ի նմին դադարեաց զա՟մ ժամանակս կենաց իւրոց , զհարկաւորն կամաւոր առնելով , և զզգեստ և կերակուր յարմաւենեաց անտի ունելով , ձգնեալ հրեշտակակրօն վարուք և խստամբեր առաքինութ՟ , և ա՟ծամերձ ընտանութ՟ վայելեալ յանձառ քաղցրութիւն հոգւոյ :**

**Յետ կալոյ երանելւոյն յայնմ առանձնութե՟ զամս ղ՟է . յորս ոչ զոք ետես 'ի մարդկանէ , իբրև լցան նո՟ր ամք ճ՟ և ժ՟գ , առաքեաց ա՟ծ 'ի տեսութի՟ նո՟ր զմեծն անտոն՝ որ էր յայնժամ իննսուն ամաց . այլ 'ի մերձենալ անտոնի զա-**

ռաջինն 'ի դուռն այրին , ոտնաձայն առեալ երանելւոյն պօղոսի՝ յարուցեալ զմուտն փակէր . և սքն անտոն ժտելով ասէր . գիտեմ, զի անարժան եմ քում տեսութ՟դ . այլ սակայն եթէ ոչ տեսից , ոչ թողում . որ զգազանսդ ը՟ունիս , զմարդիկ ը՟է՞ր հալածես . խնդրեցի և գտի . բախեմ՝ զի բացցես ինձ . որում թէ ոչ դիպեցայց , աստ մեռանիմ առաջի դրան քո . զի գոնեա զմարմինս իմ թաղեսցես ։

Յայնժամ ասէ երանելին պօղոս . ոչ այդպէս սպառնալով խնդրէ ոք , և ոչ հանդերձ արտասուօք յանդիմանէ կ՟մ դատախազի ոք . և այսպիսի բանիւք զուարթութ՟ն բանայ ըզմուտն ։ Այնուհետև զմիմեանս փարէին և ողջագուրէին՝ յանուանէ կոչելով զիրեարս , և միաբան գոհանալով զա՟նէ ։ Եւ յետ ողջունելոյն նստան երկոքեան սքքն . և ասէ պօղոս ցանտոն . զո՞ ոք այդչափ աշխատութ՟բ խնդրեցեր տեսանել . ահա տեսանես հնացեալ ալևոր մարդ , որ յետ սակաւ ինչ ժամանակաց հող լինելոց է . այլ սէր ա՟մի համբերէ ։ Արդ ով եղբայր սիրեցեալ անտոնիէ՝ զարդ անապատի և միանձանց կրօնաւորաց , բարւոք արարեր՝ զի եկիր . զի 'ի վաղուց հետէ խոստացաւ ինձ տ՟ր 'ի ծանօթութ՟ի առնել զքեզ ինձ . և ես կարօտել մ՟այի գալստեան քո՟ոք ։

Եւ մինչդեռ նա հարցանէր զն՟է , և անտոն մ՟շ հրաժարելոյ նորա յն՟է մինչև ցերեկոյ , ահա ագռաւ մի անդուստ 'ի ներքին անա-

պատէն հեղլիկ թռուցեալ յոստս տնկոյ միոյ ընդէմ՟նց՝ ունելով 'ի բերանի իւրում հաց մի ողջ, եդ զայն առաջի երեսաց նց, և թռեաւ ։ Եւ 'ի զարմանալ անտոնի՝ ասէ հայրն պօղոս ․ ո՟ր առաքեաց մեզ ճաշս ․ արդարև ողորմած և մարդասէր է ․ քանզի 'ի վաթսուն ամաց հետէ յետ ծերանալոյ իմոյ՝ կէս կէս հացի ընդունէի այսպէս աւուր աւուր ․ այլ 'ի գալստեանդ քում՝ իւրոց զինուորաց քն կրկին առաքեաց ռոճիկս ։ Եւ այնպէս զա՟նէ գոհացեալք՝ 'ի վ՟ր ականակիտ աղբերն նստան երկոքեան ․ և եթէ ո՞ յառաջ բեկանիցէ զհացն՝ հակառակէին, մինչև մերձենալ գիշերոյն ․ զի պօղոս զհիւրն կամէր մեծարել, և անտոն զալևորն հասակաւ ․ և ուր ուրեմն միաբան բուռն հարեալ զհացէն՝ բեկանէին յանուն տն ․ և այնպէս գոհանալով զա՟յ ճաշակէին ․ և զգիշերն ամ՟ հսկեցին ։ Եւ իբրև առաւօտն մերկանայր, պօղոս ասաց ցհայրն անտոնիոս ․ եղբայր և ծառայակից, քնոյ իմոյ ժամանակ մերձեալ է ․ որում յա՟մ ժամ ցանկայի՝ լուծանիլ և ընդ քսի լինել ․ վ՟յ դու առաքեցար 'ի տ՟նէ՝ տալ զհողս հողոյ ։ Խռովեցաւ անտոն, և աղաչէր արտասուօք, զի մի՛ մնասցէ 'ի նմանէ, այլ ընդ նմա մեռանիցի և ինքն՝ ճանապարհակից լինել ուղւոյ նո՟ր յերկինս ։ Պ՟նի ետ հայրն պօղոս ․ ոչ պարտիս խնդրել զքոյն ևեթ, այլև զընկերին ․ զի թէպէտ և քեզ օգուտ է զբեռն մարմնոյդ 'ի բաց դնել, և զհետ երթալ գառինն ա՟յ, այլ բազում եղբարց չէ՛ օգուտ,

օգուտ , որոց կէտ առաջի եդեալ է , զի քեզ նմանօղք լինիցին : Բայց աղաչեմ զքեզ , թէ չիցէ ծանր՝ զոր ասեմս , զի փութով երթիցես , և զհանդերձն՝ զոր աթանաս եպսն քեզ շնորհեաց , բերցես 'ի պատանս մարմնոյ իմոյ : Զայս ասէր , զի լռիկ փոխեսցի 'ի կենացս՝ առանց ուրուք մօտակայ լինելոյ , և անտոն ոչ կրեսցէ զախրուն 'ի փոխման իւրում :

Եւ հայրն անտոն զարմացեալ ընդ գիտել նր զաթանաս և զհանդերձ նր , այնուհետև առաւել պատկառէր յառնէն այնմ . և համբուրեալ զձեռս և զաչս նր՝ ասէ . աղօթս արա վն իմ ով հայր պատուական . և փութացաւ եկն 'ի վանս իւր՝ իբր երկու աւուր ճանապարհաւ : Յայնժամ ընդ առաջ ելին նմա երկու ձեռնասուն աշակերտքն ամատաս և մակարիոս , և ասեն . ուր էիր այսքան ժամանակս հայր : Եւ նա ասէ . վայ ինձ մեղաւորիս՝ որ կեղծաւորանօք միայն ունիմ զանուն միայնակեցի . քանզի տեսի զեղիա և զյովհաննէս յանապատին , և արդարև 'ի դրախտին տեսի զպօղոս : Եւ նքա ոչ իմացան ըզբանն , և կամէին ուսանել՝ թէ զի՞նչ իցէ . այլ նա ասէ ցնս . ժամանակ է ասելոյ , և ժամանակ է լռելոյ :

Եւ հրաժարեալ 'ի նոցանէ անսուաղ հանդերձ պատանօքն՝ որ խնդրեցաւ 'ի նմանէ , 'ի ճանապարհն փութայր . քանզի ծարաւի էր տեսլեան սրբյն . և կասկածէր՝ թէ գուցէ յառաջ քան զհասանել իւր փոխեսցի երա-

նելին . որպէս և եղև՝ իսկ . քանզի 'ի միւսում աւուր յերրորդ ժամու ետես 'ի Ճանապարհին գունդս հրեշտակաց և դասս մարգարէից և առաքելոց , և 'ի միջի նց 'ի ձիւն սպիտակուն պայծառացեալ զերանելին պօղոս , զի ելանէր յերկինս ։ Սկսաւ կական բառնալ , հող 'ի գլուխ լինել , և ասել . ընդէ՞ր թողեր զիս տէր պօղոս , ընդէ՞ր գնացեր՝ զմերջին ողջոյն ոչ ընկալեալ . այսչափ անագան ծանուցեալ՝ այսչափ փութո՞վ մեկնիս ։

Ապա հանգոյն երագութե թռչնոց վազս առեալ անտոնի երանելի ծերոյն՝ 'ի դոյզն վայրկենի հատանէր զմեծ ուղին . և հասեալ 'ի ցանկալի այրն , տեսանէր զերանելին պօղոս 'ի գունձս բազկատարած . կարծեաց՝ թէ կենդանի իցէ , և ծունր եդ և ինքն կալ յաղօթս ։ Եւ յորժամ ոչ լուաւ զսովորական հեծութիւն նր յաղօթս՝ իմացաւ , թէ նա մարմինն երկրպագութի մատուցանէր այ ։

Այնուհետև քաղցր արտասուօք , սաղմոսիւք և օրհնութբ պատեաց զսբն . և զի չունէր փայտատ առ 'ի զերկիր բրելոյ , և անմարթ էր միւսանգամ դառնալ 'ի վանս , 'ի խոր տրտմութե ասէր մեծն անտոնիոս . ո՛ տր , մեռայց և ես ընդ ծառայիդ քում , ով պարտ իսկ է . և տարեալ մխիթարեա՛ և զիս ով և կամիս , ազատեալ յայս ախտալից կենցաղոյս ։ Յայնժամ վայրի առիւծք երկու 'ի ներքին անապատէն 'ի միասին եկին հասին յընթացս՝ 'ի վայրն , ուր սբքն էին . և անկեալ անբանիցն առ մարմնով սբյ ալևորին վախճանե-

լոյ՝ ռանայլին եւ լայլին ը բաժանումն նր · յետ այնորիկ փորեցին զաւազն ոտիւք իւրեանց 'ի չափ սան ը երկայնուե եւ ը խորութե · եւ եկեալ առ երանելին անտոն՝ լիզեին զոտս եւ զձեռս նր ։ Իսկ սաէ հայրն անտոն · տէր առանց քո կամացդ եւ հրամանի տերեւ 'ի ծառոց ոչ անկանի , եւ ոչ մի 'ի ձնձղկանց յերկիր · դու հատո սոցա՝ որդ եւ գիտես · եւ ձեռամբ նշանացի արտաքեալ՝ հրաման տայր նց երթալ ։

Ապա առեալ զմարմինն նր՝ եդ 'ի գերեզմանի , եւ ծածկեաց · եւ յետ աւուր միոյ անցելոյ իբրեւ օրինօք ժառանգաւոր զմնացեալ պարեգօտն առնոյր , զոր երանելին պօղոս ինքեան արարեալ էր յարմաւենեաց · եւ յուղի անկեալ դարձաւ 'ի վանս իւր · եւ արտասուօք պատմեաց զամ եղեալսն իւրոց աշակերտացն ։ Իսկ 'ի տօնի զատկին եւ պենտեկոստէին միշտ զգեցեալ զնոյն պարեգօտն երանելոյն պօղոսի՝ ուրախ լինէր 'ի վն նր , առաւել համարելով զնա քան զթգրական ծիրանիս ։ Զայս ամ առեալ սքյն հերոնիմոսի 'ի բերանոյ աշակերտաց մեծին անտոնի կամ հարց անապատին՝ անցոյց 'ի գիր · վոյ եւ ձառընտիրն մեր 'ի վերջոյ կարգէ եւ զյիշատակարան նր , որ ունի այսպս · * Արդ ես աղաչեմ զամ ոք՝ որ ընթեռնուն զայս , զերանիմոս մեղաւոր յիշել · որ կամօքն այ զպարեգօտն պօղոսի կամէր հաւատովք (կամ արդեամբք ) նր՝ քան զթգրական ծերանիս հանդերձ պատուով թգրութե նց ‖ ։ Լինի

վախճան երանելոյն պօղոսի անապատակա֊
նիյամի ԴՃն իբր 347․ կմ՟ը ումանց 343 ։

## Պօղ պարզամիտ ։

Հ․ գէշտ․ 7 ։ Յ․ հոլով․ 4 ։ Լ․ ձայն․ 7 ։ Դա֊
տրնտ․ Ա․ ՀՅԹ = ՀՀԷ․ հատէ ԷԸ․ այսէնտն հոլով․ 8 ։
և Բ․ ՅԷԷ ։

Փոքր մի յառաջ քան զփոխումն պօղոսի Թե֊
բայեցւոյ՝ սկսաւ փայլել և անուանակից նորա
պօղոս կոչ պօղ միայնակեաց՝ աքանչելին յա֊
շակերտս անտոնի, պարզամիտ կամ պարզ
անուանեալ ՚ի միայնակեցաց, վասն անկեղծ և
յստակ մտօք, և միամիտ հնազանդ ։ Սա յա֊
ռաջագոյն էր այր հողագործ՝ անարատ վա֊
րուք, և մտաւոր կարգաց բարեաց․ և ա֊
մուսնացեալ էր ՚ի կարգս Դի, այլ կին նորա
չարաբարոյ էր պատահեալ․ և քանզի պօղ ը
ժամանակս ժամանակս բացօԹեայ լինէր ՚ի
վաստակս երկրի, կինն անզգամ ստացեալ էր
իւր սեղեխ օտար․ զոր յաւուր միում յան֊
կարծակի տեսեալ պօղսոյ ՚ի տան իւրում՝ ի
դառնալն յանդաստանաց, և իմացեալ՝ Թէ
անզեղջ են ՚ի չարիս, խորհեցաւ ինքն հրա֊
ժարիլ յԱէ․ քանզի և ծերացեալ իսկ էր՝
իբր վաԹսուն և ուԹ ամաց, և միշտ խընդ֊
րէր հնարս յոյժ պարապելոյ ։
Նա պա ասէ ծերն ցկինն իւր և ցայրն օտար․
մի երկնչիք, զի չար ոչ ունիմ ինչ առնել ձեզ․
այլ ասեմ ձեզ ՃշմարտուԹ ՚իքն․ ահա այսօր
ազա֊

ազատեցայ ես 'ի ձէնջ և 'ի սնոտի ունայնու-
թէ ծի. ա͞մ գոյք իմ և տունս այս ձեր է.
միայն զմանկունս իմ մի՛ անտես առնիցէք.
զի ես ահա հրաժարիմ յերկրէ, և լինիմ միայ-
նակեաց, որում ցանկայի 'ի հերուն հետէ.
և ելից ա͞ծ զփափաքս իմ։

Օ այս ասացեալ ել 'ի տանէ՝ ոչինչ առեալ
թոշակ ͞ը իւր, այլ օտարացեալ վ͞ս ա͞յ՝ գնաց
նախ յեկեղեցի գեղջն, և արտասուօք յանձ-
նեաց զինքն յա͞ծ, զի կործանեսցէ զթշնա-
մին կենաց առաջի ն͞ր. և դիմեցեալ գնաց
յանապատ ութ օթևանօք առ մեծն Անտոն
աբբայ։ Իսկ իբրև եհաս անդր, և բախեաց
զդուրս խրճթին, ելն 'ի դուռն երանելին
Անտոն, և ասէ. ո՞վ ես, և կա՞մ զի՞նչ խնդրես։
Ասէ ցնա Պօղ. ես եմ ո՛վ հայր՝ մարդ գուե-
հիկ, այլ կամիմ միայնակեաց լինել. արա՛
սէր, և ժողովեա՛ զիս առ քեզ, և լի՛ց զփա-
փագս իմ։ Ասէ ցնա հայրն Անտոն. դու այր
ծեր ես և անցեալ ժամանակօք, ո՛չ կարես
միայնակեաց լինել. այլ պա՛րտ է քեզ եր-
թալ 'ի գիւղ մի, և գործել և ուտել զկոտո-
րակն, և փառաւորել զա͞ծ. վ͞ս զի ո՛չ կարես
համբերել նեղութե͞ց՝ որ են յանապատի. և
ես աստ միայնացեալ՝ զհինգ աւուրբք սուղ
ինչ ճաշակեմ։

Իսկ ծերն Պօղ ասէ. զա͞մ զոր ուսուցանես
ինձ՝ առնեմ ո՛վ հայր պատուական. միայն
ժողովեա՛ զիս։ Ասէ հայրն Անտոն ցնա. ա-
սացի քեզ՝ թէ ծեր ես. այլ թէ կամիս, երթ
մնա՛ 'ի միաբանակեցաց վանս, որ կարող են

զծերութիւն քո մխիթարել. և զայս ասացեալ՝
փակեաց զդուռն ընդդէմ նորա, և ոչ ել արտաքս
զաւուրս երիս կամ չորս ։ Իսկ ծերն պօղ ոչ
մեկնեցաւ անտի. և յաւուրն չորրորդի կամ
հինգերորդի իբրև ել անտոն, և ետես զնա,
ասէ. դեռևս աստ ես, և ո՞չ գնացեր. ասա-
ցի քեզ միանգամ, ոչ կարես կեալ դու աստ.
արդ մի՛ ձանձրացուցաներ զիս ո՛վ ալևոր դու.
և զիա՞րդ ոչ երկեար 'ի գազանաց գիշերոյ ։
Ասէ պօղ. ո՛վ հայր պատուական, մի՛ կար-
ծեր, թէ գնալոց եմ աստի ես. զի չի՛ք հնար
այլուր մեռանիլ ինձ, բայց եթէ աստ առա-
ջի դրաց քոց ։ Խորհեցաւ անտոն ընդ միտս
իւր, և ասէ. եթէ ոչ ընդունիցիմ զսա, դու-
ցէ մեռանի աստ անսուաղ. քանզի տխմար
է՝ և ոչ գիտէ պահել. և առնիցն ինձ դատաս-
տանք յոյժ. այլ ընկալայց և փորձեցից ըզ-
ժուժկալութիւն սորա. Յայնժամ ասէ ցնա.
արի՛ եկ 'ի ներքս եղբայր. և սկսաւ անտոն
վարել ընդ նմա օրինօք խստամբերութեան ո̃պ 'ի
տիս մանկութեան իւրոյ. Թրմեաց արմաւենի,
և ետ պօղայ. ասէ. ա՛ռ մանեա՛ զայս չուան,
ո̃պ ես մանեմս. և աշխատ արար զնա մինչև
ցիններորդ ժամն. և հայեցեալ ընդ մանե-
ուածն՝ ասէ ցասմամբ. ո՛հ չարաչար մանե-
ցեր և աւերեցեր. արդ քակեա՛ անդրէն, և
դարձեալ սկսի՛ր մանել ։ Իսկ ծերն պօղ ոչ
տրտնջեաց և ոչ նեղասրտեցաւ ինչ, և ոչ ա-
մենևին կնճիռն ծնաւ յերեսս նորա. այլ քա-
կեաց և անդրէն մանեաց նքթեալ անձամբ
'ի հինգ աւուրց հետէ. զայն տեսեալ հայրն

ան-

անտոն՝ յոյժ ուրախ եղև :

Եւ յերեկոյի ասէ ցծերն . Հա՛յրիկ եթէ կամիս՝ ճաշակեմք փոքր մի հաց . ասէ ցնա պօղոսդ և կամիս հա՛յր . և յայսմ ևս առաւել ուրախ եղև հայրն անտոն . զի ոչ ընթացաւ յուտելն, այլ յանտոն յանձնեաց զիշխանութիւն : Յայնժամ հայրն անտոն եդ ծերոյն սեղան , և արբանեկէր նմա իբրև մանկան . և եթաց երիս պաքսիմատս վն ծերոյն . և մի վն իւր , որ է վեց ունկի հաց : Եւ սկսաւ երանելին անտոն ասել երկոտասան սաղմոս, և երկոտասան ծունր եդ . և յայսմ ևս փորձեաց զծերն . իսկ ծերն առաւել ևս յօժարութբ կայր յաղօթս քան զհայրն անտոն : Յետ աղօթից իբրև սկսան ուտել , եկեր անտոն զմի կտորն , և այլ ոչ մերձեցաւ . իսկ ծերն յուշիկ ուտէր . և տեսեալ՝ զի հայրն անտոն դադարեաց յուտելոյ , յայնժամ և ինքն եկաց : Ասէ անտոն ցծերն . կե՛ր եղբայր . և նա ասէ . եթէ դու ուտես , և ես . և եթէ դու ոչ ուտես , և ոչ ես : Անտոն ասէ . ինձ շա՛տ է , զի ես միայնակեաց եմ . և ծերն ասէ . և ինձ շատ է , քանզի և ես միայնակեաց կամիմ լինել :

Ապա յարեան դարձեալ յաղօթս . և յետ կատարելոյ զսաղմոսն՝ առին մէն մի խոտեղէն , և ննջեցին սակաւ . և յարուցեն զմէջ գիշերաւ սկսան կատարել զպաշտօնն մինչև ցլոյսն : Եւ ետես երանելին անտոն զյօժարութին ծերոյն , և զերթալն զհետ կարգին աչալրջութբ . և ասէ ցծերն . ահա զչափ աւեր .

ւեր. արդ եթէ կա՛րես համապազօր այսպէս առնել, լե՛ր ը՟ իս. և եթէ ոչ, գնա՛ ո՛ւր և կամիս: Պ՟խնի ետ ծերն պօղ. եթէ առաւել քան զայս յաւելուս, ո՛չ գիտեմ. այնմ ես հպատակեմ: Յայնժամ ասէ հայրն անտոն ցնա. ահա յանուն ք՟ի եղեր և դու միայնակեաց:

Եւ հաճեցաւ մեծն անտոն ը՟ վարս ծերոյն յա՟մի, զի կատարեալ ծառայ ք՟ի գտաւ. և արար նմ՟ խրձիթ առանձին բացագոյն յիւրմէ մղոնս չորս 'ի քարայրի միում. և անդ եթող զնա. ուր միայնացեալ սքանչելի համբերութ՟բ ձգնէր 'ի սէրն ք՟ի: Եւ իբրև եղև ամ մի ծերոյն պօղայ 'ի կրօնաւորութե՟՝ տուա՛ն նմա շնորհք յ՟այ բժշկել զհիւանդս և զախտաժէտս. վ՟ն որոյ յորժամ ածին առ հայրն անտոն դիւահար մի չար յոյժ, ասէ ցբերօղն. այս գործ ծերոյն է, զի նա արժանի եղև շնորհացս այսոցիկ. և առեալ եբեր զպատանին առ ծերն, և ասէ. հա՛յր պօղ հրամայեա՛ դիւի՛ս այսմիկ ելանել 'ի պատանւոյն, զի փառաւորեսցի անուն տ՟ն մերոյ յ՟ի ք՟ի. (ըստ այլոց՝ զի փառաւորեսցէ զանուն տ՟ն):

Ասէ պօղ. դու զի՞նչ գործես. անտոն ասէ. ես ո՛չ ժամանեմ, քանզի գործ ունիմ. և գնաց անտի: Իսկ ն՟ր ծերն պօղ յաղօթս եկաց ը՟ս սովորութեան իւրում. և ապա ասէ ցդևն. ո՟պ ասաց հայրն անտոն, ե՛լ 'ի պատանւոյդ, զի փառաւորեսցի անունն ա՟յ. և 'ի թշնամանել զնա դիւ՛ին՝ էառ պօղ զմաշկեակն,

կեակն , և ծեծեաց զԹիկունս նր , և ասէ ․
Ե՛լ աստի , որպս հրամայեաց քեզ հայրն ան-
տոն ․ իսկ դևն նախատէր և զանտոն Է պօ-
ղայ ։ Ասէ ցնա ծերն պօղ ․ ելանես , եթէ
երթամ ասեմ քրի ․ ասէ դևն ․ չելանեմ աս-
տի՝ չելանեմ ։

Յայնժամ սրբն ել 'ի խրճթէն 'ի տօթաժա-
մու , և եկաց 'ի վր վիմի միոյ իբրև զսիւն 'ի
վր խարսխի՝ արևակէզ լինելով իբրև 'ի հուր
հնոցի ․ և ասէ ․ դու գիտես յս քս՝ որ խաչե-
ցար 'ի պոնտացւոյ պիղատոսէ , ոչ իջից 'ի
վիմէս , և ոչ կերայց և ոչ արբից , մինչև հան-
ցես զդևն զայն 'ի պատանւոյդ ․ Յայնմ վայ-
րի աղաղակեաց դևն , և ասէ ․ գնամ աստի ,
զի դատես տարաժամ ․ և ելեալ 'ի պատան-
ւոյն այսն պիղծ՝ գնաց եմուտ 'ի վիշապ մի
մեծ անապատին , (կամ ձևացաւ իբրև զվի-
շապ ․ ) որ սողոսկեալ անկաւ 'ի ծովն կարմիր ։
Յայտնի է և 'ի պատմութէ տայասայ պօնտա-
կին ․ զի յետ դարձին նր յորժամ յանձնեաց
նքն անտոն աղօթս և պահս աշակերտաց իւ-
րոց՝ գիտել եթէ ընկալա՞ւ ած զապաշխա-
րութի նր , հայրն պօղ արժանի եղև տես-
նել զփառս՝ որ պատրաստեալ էր տայասայ
յերկինս ։ Գեղեցիկ է և այն պինի ծերոյն ․
զի յորժամ հայրն անտոն առեալ թուղթ
հրաւիրանաց 'ի մեծէն կոստանդիանոսէ և
յորդւոց նր՝ եհարց զերանելին պօղ վս բա-
նիս այսորիկ , նա ետ պինի ․ եթէ գնասցես ,
անտոն կոչեսցիս ․ իսկ եթէ ոչ գնասցես ,
աբբայ անտոն կմ հայր անտոն կոչեսցիս ։

Այս-

Այսպիսի էին վարք պօղոսի միայնակեցի երանելի ծերոյն . զի խոնարհ էր անչափ , և հեզ ամենևին , և անբիծ և պարզամիտ . և այսպէս եկաց 'ի միայնակեցութեան ամս քառասուն' լի և կատարեալ ամ իրօք' ածահաճոյ վարուք . և եղեն ամ ամք կենացն նր ճ . և Ղ ամիս . և վախճանեալ ննջեաց սբն պօղ յամենեանն հոկտեմբերի , յաւուր ուրբաթու . և թաղեաց զնա ամոնաս աշակերտ սբյն անտոնի յետ վախճանի նր : Եւ գրեաց զվարս նր' բաց յայլոց' հայրն պաղատի , որ և պաղադիոս , լուեալ' որպէս ասէ , 'ի հօրէն հերաքսայ և 'ի կռոնոսէ և յայլոց բազմաց յեղբարց անտի . նոյնպէս և հերակղիդէս 'ի դրախտ անուանեալ վարս հարց :

Մակար առաջին . երկրորդ , և երրորդ . և
Մարկոս միայնակեաց ան և բն . և աբբայ
Մարկոս :

Հ . հարք . 4 . և առք . 2 . 3 . և 5 : Ե . յովհ .
19 : Լ . յովհ . 2 . և 15 : Ճառընտ . Ա . ող :
Պաղադիոս . և այլք :

Մակար կմ մակարիոս անուամբ , որ թարգմանի 'ի յունականէն երանելի , երեք սբ ճգնաւորք կան' մի քան զմի երևելի և տօնելի : Առաջինն և երիցագոյնն ժամանակաւ' կոչի մեծն մակար , կամ ծեր և կամ հին , և պարզապէս եգիպտացի կոչի' զի որում էր 'ի միոյ 'ի յաւանաց եգիպտոսի , և ոչ յերևելի

քա-

քաղաքէ : Կրօնաւորեցաւ յերեսուն ամաց հասակի 'ի ծաղկեալ ժամանակի մեծին անտոնի աբբայի , 'ի վեր քան զաշակերտս ն͞ր : Յառաջին տասն ամս միայնակեցու͞ե իւրոյ այնչափ խստամբեր վարս ստացաւ , և սքանչելի ցուցաւ ա͞ծ առաքինութ͞բ և իմաստութ͞բ , մինչև կոչէին զնա բէտարխողէրօն , այս է մանկածեր . զի 'ի վեր քան զհասակն ասանէին զ.քաղաքավարութ͞ի ն͞ր . որ 'ի քառասնամեայ տիս երևէր ծերագոյն 'ի հարս , ք͞հ գ.երագոյն , առեալ շնորհս հոգետեսու͞ե և իշխանութ͞ի 'ի վ͞ր այսոց չարաց : Եկաց առ. ժամանակ մի յանապատի ո͞րյն անտոնի . և առեալ երթայր առ նա . և նստեալ երկոքին 'ի գործ սիրայի՝ խօսէին զբանս հոգւոյ . և շնորհք բղխէին 'ի բերանոյ ն͞ց :

Ապա արժանի եղև և քահանայութ͞ե . այլ անարժան զանձն համարեալ՝ փախեաւ յայլ տեղի : Օամանէ եղև զրպարտութ͞ի վ͞ս անարժան գործոյ . այլ իբրև յայտնեաց ա͞ծ զանմեղութ͞ի նորա , և սկսան զնա փառաւորել մարդիկ , փախեաւ յառաջին անապատէն , և եկն 'ի սկիտէ . և եղև առաջին հեզինակ անապատին սկիտոյ . ուր բնակէր երկու աշակերտօք հանդերձ . և յաւուր միում սաէ ցյովհաննէս աշակերտ իւր , որ յետոյ եղև 'ի տեղի նորա քահանայ . զգո՛յշ լեր յագահութ͞է , առաւել՝ յորժամ պաշտօնեայ ա͞յ եղիցիս . ապա թէ ոչ՝ բորոտու͞թ գեհզի ունի յարիլ 'ի քեզ . և այն անցք անցին է͞ն նա չարաչար յետ ժամանակաց :

Այս էր երանելիս Մակար՝ հայր հարանց սկի-
տացւոց. և բանք նորա շնորհօք ա̃ն իբրև ա-
ղի՛ համեմեալ, առաւել խոնարհուբ̃. Թէ-
պէտև ինքն էր մեծաւ մասամբ յափշտակեա̃լ
յա̃ծ և յերկնային խորհուրդս, այլ որոց
գային առ նա՝ ոչ խօսէր զբարձունս, այլ
զկարևորս 'ի մեռելութե̃ն ախտից: Սքանչե-
լագործ այս հայր յարոյց 'ի գերեզմանաց
զոմն 'ի մեռելոց՝ 'ի յաղթահարել զոմն 'ի
հերձուածողաց, որ ժխտէր զյարութի̃ն մարմ-
նոց. եւ խօսել և երկուց այլ մեռելոց՝ առ
'ի զերծուցանել զայրի մի տառապեալ 'ի ձե-
ռաց պարտատերց առն նորա, և առ ազա-
տել զայր ոմն 'ի զրպարտութե̃ մարդասպա-
նութե̃:

Պատմեն պալադիոս և հուփինոս և հերակ-
ղիդէս և զայս ինչ անլուր, թէ կին ոմն 'ի
քրիստոնէից կախարդեալ 'ի հեթանոսաց՝
երևէր այնուհետև յաչս առն իւրոյ և ա̃մ
տեսողաց ոչ իբրև մարդ, այլ իբրև ձի. մին-
չև ածին զնա իբրև անբանացեա̃լ առ ս̃ն Մա-
կար 'ի սկիտէ. և 'ի պատմել եղբարց հօրն
Մակարայ, թէ ահա բերին առ քեզ ձի մի
հի՛անդ՝ զի աղօթեսցես վ̃ առողջութե̃ նո-
րա, սաստեաց 'ի նս̃ ս̃ն, և ասէ. դուք էք
ձի, որ աչս ձիոյ ունիք. զի նա կին է բնութ̃.
և անեղծուածոլ, և ոչ փոխեալ 'ի ձի, այլ
ձևացեա̃լ 'ի չարէն առ աչս մարդկան: Յայն-
ժամ ետ բերել ջուր և օրհնեաց և սրսկեաց
'ի վ̃ր գլխոյ նորա. և յաղօթել ս̃բ հօրն՝
նոյնժամայն առողջացաւ. և տեսին ամենե-
քեան՝

քեան՝ զի կին մարդ է ․ և ասէ Մակար ցկինն․
Երթ և մի՛ պակասիր 'ի տանէն ա՟յ , և մի՛ վեր-
ջանար 'ի մատչելոյ առ ս՟բ խորհուրդն ․ քան-
զի վ՟ն այնորիկ պատահեաց քեզ այդ , զի
հինգ շաբաթք են՝ յորմէ հետէ ոչ մերձե-
ցար առ անապական խորհուրդ փրկչին մե-
րոյ ։

Սա ինքն Մակար Եգիպտացի՝ որ և սկիտա-
ցի , ձանձրացեալ յեկեղոցն առ նա՝ ական
հատեղէր 'ի ներքս կոյս սենեկին իւրոյ իբ-
րու կէս ասպարէզ , և շինեալ անդ փապար
հանդարտութե ․ ուր յերթալն ասէր սաղ-
մոս կամ աղօթս ի՟ն ․ Նոյնչափ և 'ի դառ-
նալն ։ Այս եղև վախճան ս՟րբոյն յետ վաթսուն
ամաց միայնութե՝ 'ի հասակի իննսուն ամաց՝
յամի տ՟ն 391 ․ մինչ ամաւ յառաջ քան ըզ-
կրօնաւորիլ հօրն պալատի , ո՟ր պալադիոսի
ե՟պսի՝ բանիցս պատմողի ․ վ՟ն չեղէ ասէ ար-
ժանի տեսանել զնա կենդանի ․ որպէս տեսի
զՄակար աղէքսանդրացի , և կացի ընդ նմա
զամս երիս 'ի սենեակս ․ զորմէ ժամէ ասել
ը՟ր գրելոյ նորա և այլոց աշակերտաց ։

Երկրորդն Մակար , զօրութ՟բ առաջինն՝ և ե-
րևելի քան զառաջինն , է այն՝ որ կոչի աղէք-
սանդրացի և քաղաքացի , զի էր յաղէքսան-
դրեայ մայրաքաղաքէ եգիպտացւոց ․ վ՟ն և
եգիպտացի գրի 'ի ճառընտրի մերում ․ և
պարզապէս՝ Մակար միայնակեաց կամ անա-
պատական ասի , այլ մեռեալ յԾէ և Ծի ,
ո՟պ զանմարմին 'ի մարմնի ճգնօղ ։ Այս սա էր
քահանայ սենեկաց , ո՟ր միաբանութե միայ-
նա-

նակեցաց նստելոց 'ի խուցս մօտ առ մօտ յանապատն եգիպտոսի ։

Գնացեալ սորա երբեմն առ հայր անտոն՝ բախեաց զդուռն սենեկի նր̄ · իսկ հայրն անտոն իմացեալ՝ թէ նա է , փակեաց զդուռն ը̄դէմ · և յետ փորձելոյ զհամբերութի̄ նր̄՝ եբաց և ընկալաւ բազում սիրով , ոչ 'ի մազուց ցանկացեալ տեսանել զնա · և 'ի նստիլ ը̄ նմա 'ի ձեռագործ՝ ասէ · բազում զօրութի̄ ելանէ 'ի ձեռաց աստի ։ Միւսանգամ եկեալ մակարայ առ անտոն՝ խնդրէր 'ի նմանէ տերևս արմաւոյ , ոչ թէ նորայքն լաւ էցեն ։ Իսկ նա ասէ · գրեալ է , մի ցանկար ընչից ընկերի քո · և զոյգ ը̄ բանից ս̄ը̄յն մառեցան տերևքն իբրև 'ի հուր հոտոտեալ · յայնժամ ասէ մեծն անտոն ցմակար · ահա հոգի ո̄յ հանգեաւ 'ի վ̄ր̄ քո՝ լինել ժառանգ առաքինութե̄ց իմոց ։

Եւ 'ի գնալ մակարայ զճանապարհ իւր՝ ը̄ առաջ ել նմա սատանայ , և ասէ · զի՞ աշխատիս և խոնջիս յընթանալ ընդ անապատս , ահա առեր զշնորհս անտոնի , և ը̄է՞ր ոչ մաքես 'ի գործ · ասէ մակար · զօրութի̄ իմ և օրհնութի̄ իմ տ̄ր · այլ դու երթիջիր 'ի կորուստ և մի կար հակառակ բարւոյ · և յայնմհետէ ահաւոր էր զօրութի̄ մակարայ 'ի վ̄ր̄ դիւաց ։

Գնաց երբեմն այս մակար առ մեծն մակար 'ի սկիւտէ · և 'ի նստիլ երկոցունց 'ի միասին յանցս նեղոս գետոյ՝ եկին ընդ այն երկու զօրավարք կայսեր նստեալք 'ի շքեղ կառս

երևելի սպասուք՝ բազմութ̃ սպասաւորաց ․ և տեսեալ զերկոսին Ճգնաւորս աղքատին ձևով՝ ասէ մին 'ի զօրավարաց ․ երանելի՛ էք դուք , որ խաղ առնէք զԱծ ․ ասէ Մակար քաղաքացին ․ այո այդ այդպէս է , մեք խաղ առնեմք զԱծ , և Ած զձեզ ․ և գիտեա՛ , զի ոչ 'ի քէն ասացեր զայդ , այլ՝ մարգարէաբար , թէ երանելի էք ․ զի անուն մեր երկոցունց է երանելի , այն է Մակար ։ Իսկ զղջացաւ այրն 'ի վ̃ր բանին ․ և երթեալ 'ի տուն իւր՝ մերկացաւ զհանդերձս պատուոյն , բաշխեաց զինչս իւր աղքատաց , և ընտրեաց կեանս միայնակեցութե ։

Սա ինքն Մակար աղեքսանդրացին է , որ ըզխաղողն առաքեալ առ ինքն՝ քանզի կարօտէր , ոչ կամեցաւ ուտել , այլ յղեաց առ այլ ոք կարօտեալ ․ և նա առ այլ ․ մինչև դարձաւ անդրէն յետ բազմաց առ Մակար ․ և նա գոհացաւ զԱ̃յ վ̃ն առաքինութե եղբարց ։ Սա ուր և լսէր կամ տեսանէր զառաւել փոյթ առաքինութե յայլս , փութայր յանձին կատարել ։ Լուաւ եթէ 'ի վանս տաբեննիսացւոց չուտէին 'ի քառասնորդս ինչ մի անցել ի̃է հուր ․ արար և ինքն եօթն ամ այնպէս ․ այլ միայն բանջար ուտէր կամ ոսպն թրջեալ ։ Դարձեալ լուաւ զումեմնէ , եթէ հաց կշռով ուտէ զինններորդ բաժին նկանակի միոջ ․ և ինքն առեալ հաց՝ չորացոյց , և մանրեաց ըզչորն 'ի սափոր մի նեղաբերան ․ և որ ինչ գայր 'ի բուռն՝ զայն միայն ուտէր ․ և զայս խըստութի պահոց ծիծաղելով մեզ պատմէր՝

(ասեն կեդրոն կմ կեղւոյն աշակերտոնր, որ եկաց ընդ նմա զամս իէ, և պալատիոս,) Թէ Թէև 'ի բազում կատորակս բաւուն ձգէի, բայց ոչ Թողոյր 'ի ձեռին իմում նեղ բերան սափորոյն. և 'ի բռնադատել մեր զնա առնուլ ինչ աւելի և Թրջեալ, ասէր. ով որդեակք, մաքսաւորն իմ ոչ տայ ինձ ամենևին իսկ ճաշակել: Նա զայս երիս ամս պահեաց. ապա չորս կմ հինգ ունկի ճաշակէր, և ջուր նովին չափով. և մի չափ իւղոյ բաւական լինէր նմա ընդ տարի մի:

Պատերազմեցաւ և ընդ քնոյ՝ յաղԹել նմա, ոչ մտեալ ընդ յարկաւ զաւուրս Ի. և այնպէս ցամաքեցաւ ուղեղն, մինչև մօտ լ յափշտակեալ իբրև անզգայ: Սա է՝ որ վնս սպանանելոյն զմեղ մի՝ գնաց նստաւ զամիսս վեց 'ի շամբս 'ի մէջ գոռեխաց և պիծակաց. և եղև իբրև անշուշտ պատկեր. մինչ զի հազիւ 'ի ձայնէն ծանեան զնա՝ Թէ Մակար իցէ. և զայս արար ասեն ոմանք 'ի յաղԹել իսպառ փորձուԹն մարմնոյ: Գնաց և 'ի վանս տաբեննիսացւոց՝ որ 'ի Թեբայիդ, ծպտեալ. և անմարմին քաղաքավարուԹբ քառասնօրեայ ոտնակացուԹն և անսուաղուԹն յոտին կացոյց զմանկտեակս, որպս ասաց առաջնորդ վանացն հայրն պաքոմէոս, որ և պախոմէոս: Հրամայեաց և մոաց իւրոց չԹողուլ ցրուել ուրեք զհինգ օր. զգոյշ լեր ասէ, մի իջանիցես յերկնից 'ի վայր. ահա դասք դասք վերին զուարԹնոց, որք կան առաջի Այ արարչին բոլորեցունց. ընդ նոսին յաճ պարապեսջիր.

ջո՛ր ։ Է՟ որ չհանդուրժեալ դիմին՝ յետ եր-
կուց աւուրց հուր էարկ 'ի սենեակն̄ր, և
բոցակիզեաց զա̄մ ինչ ն̄ր ։ և 'ի պատիւ հրոյն
զնովաւ՝ հարկ եղև նմա խորհել զանձն և
զերկիր ։ և զայս թերևս թոյլ ետ ասէ՝ ա̄ծ,
զի մի՛ հպարտացայց ։

Նա ստէպ փոխէր զբնակարանն իւր ։ զի էր
ն̄ր սենեակ այլ 'ի խորին առանձնութե̄ն սկի-
տոյ, ա՛յլ 'ի լերինս, ա՛յլ 'ի սենեակս, և ա՛յլ
'ի լեառն Նիտրիոյ ։ էր՝ որ անդուռն, էր՝ որ
անձուկ յոյժ, և էր՝ որ լայն առ ընդունել
զեկեալս ։ Ընչափ դիմահարս բժշկեաց,
ո̄ք և զհիւանդս օծանելով իւղով, կա̄մ ջուր
'ի վ̄ր ցանելով, որոց ոչ գոյ թիւ ։ Մնաց և
յանուանեալ դրախտն կա̄մ 'ի պարտէզ չոր-
մաց յանէսի և յամրէսի մոգուցն փարաւոնի ։
և յամօթ արար զդևս՝ աներկիւղ անցեալ է̄
բազմադիմի փորձանս նց̄, և 'ի վեր հանեալ
զա̄մ խարդախութիս և զհնարս նոցին ։

Յարեան երբեմն 'ի վերայ ս̄րյն խորհուրդք
շրջագայութե̄ և փառասիրութե̄, զի երթի-
ցէ մինչև 'ի հռովմ, և յայտնի արասցէ ըզ-
շնորհս ա̄յ՝ որ տուեալ էին նմա 'ի վ̄ր դիմաց,
և 'ի բժշկութ̄ հիւանդաց ։ և իբրև շատ նե-
ղեցին զնա խորհուրդքն, անկաւ առ դուրս
խրձթին իւրոյ, և զոտսն արտաքս արձակեալ՝
ասէր ցդևս ։ քարշեցէք զիս՝ եթէ կարէք ։
ես իմով ոտիւք այլուր ոչ երթամ ։ Ըսպառ յա-
րուցեալ ելից 'ի սփրիթ մի աւազ և քար և
կոշտ՝ իբր մոթ մի կա̄մ երկու, ը̄ս իբրև զքառս
ցորենոյ, և բարձեալ յուս իւր՝ շրջէր հեծե-

լով 'ի ծանրութենէն. զոր տեսեալ առն ուրումն ածապաշտի անտիոքացւոյ՝ ասէ. զի՞նչ բարձեալ ունիս հայրիկ, և ընդէ՞ր աշխատիս այսպէս. տո՛ւր ցիս զբեռն քո. ասէ սուրբն Մակար. աշխատեմ զաշխատիչն իմ, և տանջեմ զնա չարաչար իմովք տանջանօք. քզի խորհուրդք իմ ընդունայն սուրհանդակ կամէին առնել զիս: Նոյն և այլ սքանչելի քաղաքավարութբ փայլեալ՝ գնաց երանելին Մակար առ անձկալին իւր քս՝ յամի տն իբր 404:

Իսկ որ ինչ գրի 'ի հայերէն վարս հարանց վս եգիպտուէ մակարայ 'ի պաղեստին, որով կարծի նոյնանալ ընդ երանելւոյն մակարայ երուսաղէմայ հայրապետի յաւուրս ժողովոյն նիկիոյ, յայլ օրինակս այն նմ գրի 'ի բերանոյ պալլադիոսի՝ որ եղև եպս հեղինուպօլսոյ 'ի պաղեստին, ընդ գուշակելոյ գիտնաւորին յովհաննու: Պատճառ շփոթութե է նախ այն, զի ուր ասի 'ի յոյն բնագրի, * ես և մակարիոս եւագրիոս և ալբինոս և ամոնիոսն ||. ընդ ես և երանելին եւագրիոս. եւ. ումանք ընթերցեալ են՝ ես մակարիոս և եւագրիոս. և երկրորդ՝ այն. զի զմակար եգիպտացի հայրապետն՝ զոր լատինք տօնեն 'ի մարտի 10. ոչ յիշեն արևելեայք. մինչև ասել լեքենի. * զարմանք են, զի զայսպիսի այր երևելի ոչ յիշատակեն ժամագիրք (կամ տօնացոյցք) յունաց ||. ուր մարթ է կարծել, թէ վս այն ոչ յիշեն ուրոյն, զի գուցէ նոյն համարին ընդ սրբոյն մակարայ միայնակեցի:

Երրորդն Մակար ճգնաւոր անուանի, զոր

օ

օրէ՛ն է կոչել Մակար աբբայ Թեբայեցի , Եր
ձեռատուն աշակերտ և սպասաւոր և կրօնա-
մոս մեծին Անտոնի աբբայի . և յետ փոխ-
ման նր̅ կալաւ զտեղի նր̅ յարտաքին լերին
՚ի պիսպիռեան վանս Անտոնի՝ հայր և առաջ-
նորդ լինելով հինգ հազար միայնակեցաց
բնակելոց ՚ի նեղոս գետոյ մինչև ՚ի ներքին
լեառն սր̅յն Անտոնի : Նա և սմին Մակարայ ըն-
ծային գրուածք ինչ կրօնաւորական կանո-
նաց . այլ ո՛չ զանձն նր̅ շփոթեն ոմանք ընդ
միոյ յառաջնոց , նոյնպս̅ և զկանոնսն : Թո՛ղ
զայլ եւս Մակար անուամբ անծանօթ անձինս
յայլևայլ դարու . երրորդս այս առի վախ-
ճանել նախ քան զառաջինն և զերկրորդն ,
յամի տն̅ իբր 370 :

Չորրորդ Մակար երևելի , կամ առաջին
Մարկոս Ճգնաւորի այն , որ յոմանց Մակարիոս
Հռովմայեցի կոչի , ( տե՛ս և ՚ի Հարանց վարս .
տպ . երես . 465 ) , և յոմանց Մարկոս Հռով-
մայեցի . ( տե՛ս ՚ի յայսմաւուրս . ապր . 3 ) .
որ փախեաւ ասեն ՚ի Հռովմայ յաւուր հար-
սանեաց իւրոց ը̅ս̅ օրինակին ալեքսիանոսի ,
և եկեալ յարևելս Ճգնէր ՚ի խորին անա-
պատի՝ ՚ի վայելուչ վայրի . յորմէ եղ առա-
պելն՝ թէ մերձ դրախտին բնակէր . և ՚ի
խոր ծերութե նր̅ երեք կրօնաւորք ՚ի միջա-
գետաց ՚ասորւոց՝ Թէոփիլոս , սարգիս , և
հիւգինոս կմ̃ զամինոս , եկեալ տեսին զհրեշ-
տակային քաղաքավարութի նորա . յորոյ ՚ի
ձեռս մնեղ էին և առիւծք երկու . և ՚ի վախ-
ճանիլ նր̅ ծերոյն՝ թաղեցին զնա . և Թէո-

փիլոս գրեաց զվարս նորուն . յոր յաւելին
ասորիք և զտարապէպ բանս :

Սա է և Մարկոս՝ որ ծերն եգիպտացի , զոր-
մէ պատմեաց տ՟ն մակար աղեքսանդրացի .
ուր է օրինակաց ինչ պալլադիոսի՝ խառնելն
գործք և անուանց մարկոսի է նմին մակա-
րիոսի : Սա յս երանելիս մարկոս ՚ի հրեշտա-
կէ այ ընդունէր զտ՟ր խորհուրդ հաղորդութե ,
բնակեալ էր սապարիզօք հինգ հեռի ՚ի սե-
նեկաց մակարայ . սերտ ՚ի բերան ունէր ըզ-
հին և զնոր կտակարանս . և էր խմաստուն
կատարեալ , և հեզ քան զամ մարդիկ . և
ոչ եատես զերեսս կնոջ մարդոյ , յորմէ հետէ
եղ յանապատ ՚ի մանկութէ . և եղեն նորա
ամք ՃՂ . որ և բժշկեաց զկորիւն առիւծու
կմ բորենւոյ , յորժամ առնիմէր առն մակար ,
բանալով զաչս զաղանին ՚ի ծնէ կուրի . վ՟ս
և մատակն առիւծն եբեր մարկոսի փոխարէն
՚ի պարգևս մորթ մի վայրի մեծ ոչխարենի .
իսկ երանելին մարկոս շնորհեաց զայն մորթ
մակարայ . և տ՟ն մակար ետ երանելոյն ա-
թանասի հայրապետի . և աթանաս ետ զայն
մելանեայ մօրն աղեքսանդրի եպսի :

Յայսմ է և տ՟ն Սեբայ Մարկոս , կամ
Մարկոս միայնակեաց աթենացի . որոյ յի-
շատակ լինի ՚ի յայսմաւուրս մեր՝ յապրիլի 2 .
և առ բոլլանդեանս ՚ի մարտի . 29 : Սա յետ
կրթելոյ յուսումն գիտութեց՝ ՚ի մեռանել
ծնողացն թողեալ զամ ինչս իւր , տախտա-
կաւ միով անցեալ է ծով միջերկրական՝ եւ
եկն ՚ի ցամաք ելին խափշկաց ՚ի լեառն Թաւր-
մա-

մանկրա . և անդ ծգնեցաւ զամս լէ՝ անտես ՚ի մարդկանէ հրաշալի վարուք . Մինչև ըստ յայտնութեն այ եկն առ նա ոք աբբայն սրապիոն . և ՚ի վախճանիլ նր ամփոփեաց զպատուական նշխարս նորա . և եկեալ պատմեաց հարց եգիպտացւոց զվարս նր ։

Ոսա յիշեմք ՚ի պատարագամատուցի՝ ոչ և արժանի իսկ է . և եթէ երբեք պակասիլ ՚ի տօնացուցի, ոչ միայն իմանամք ըստ հանրական անուամբ և այլոց սրբց հարց, այլև ըստ ձեռագրաց մարկոս ընթեռնումք փոխանակ մակարիոսի կրկնելոյ առընթեր սրապիոնի . և այնպէս ըստ միով անուամբ մակարայ, և ըստ միով անուամբ մարկոսի է իմանալ զամ՝ համանունն ոք հարս ։ Յորս սքանչելի հանդիսացաւ հնազանդութբ, և վկայեցաւ յայ և ՚ի մարդկանէ երանելին մարկոս աշակերտ հօրն սիլուանեի կամ սիղուանոսի ։

## Յուագր ծգնաւոր ։

Ն . փետր . 11 . կմ 2 ։ Պալադիոս . Հոստաֆինոս . Գեննադիոս . սոկրատ . սոզոմ . եւն ։ Մարտ հարց ։

Իցէ՞ թէ և յայլոց ազգաց տօնացոյցս կամ ՚ի յայսմաւուրս լինէր յիշատակ անուան եւագրի ՚ի հաստատութն մերում . և կամ իցէ՞ թէ չլինէր և առ մեզ, զի և մեք զերծ լինէաք յանհնարին դժուարութէ, որ վն ուղղութեն այսր անձին . վն զի ՚ի հին դարուց հետէ կայ զհակառակութին ՚ի մէջ մատենագրաց .

գրաց․ կիսոց երկնիւք չափ բարձրացուցանելով զնա, և կիսոց մինչև ՚ի դժոխս իջուցանելով, ոչինչ ըՀատ ՚ի վիճակէն սողոմընի․ որ է գաղտնիք գաղտնեաց ։ Նաև քանզի ՚ի վաղ ժամանակաց մտեալ է անուն նր ՚ի կարգս ոք ճգնաւորաց յազգի մերում, եթէ չիցէ այլ ոք եւագր համանուն, և յայլոց անտի ոչ պակասին արդարացուցիչք նր, պարտ է և մեզ նշանակել զյայտնի լսուածս նր՝ որովք գովի․ և զոր զնմանէ բամբասանս որոգինեան վրդպուէ՝ կրկտել ՚ի կարգի ծանօթութեց ։ (1)

Սկսեալ ՚ի վկայուէ յետնոց ՚ի քաջ քննչաց, անդրէաս գաղանդիոս ծանօթարար վերջին տպագրուէ մատենադարանի հարց, ՚ի յառաջաբանի Է․ հատորոյ․ ՚ի սկիզբն գործոց եւագրի՝ ասէ վն նր ։ * Մ՝տադիւր արդեօք աստանօր բան յառաջ բերել ի ջատագովական ՚ի ցրել զամբաստանութիս զերբեմն շեղջակուտեալս ըդէմ եւագրի․ բայց լինէր զարարեալն առնել ․․․ Որոց տեսցէ ընթերցասէրն զորս Ճառեննն զայսմանէ՝ զարս մեծախորհուրդս, զտիլլեմոնտիոս․ յէղաւ․ եկեղ․ հատ․ Ժ․ երես․ 378․ և զփոնտանինոս․ պատմ․ Գր․ ակումէղ․ Գիրք․ Է․ Գլ․ 9 ‖ ․ ՃԵ ։ Իսկ ՚ի հնոց անտի՝ պալադիոս աշակերտ համարէր եւագրի, կոչէ զնա այր առաքելանման, անձն Ածահաճոյ, առաքինի նահատակ քնի․ և այլովք բանիւք բազմօք ցուցանէ զնա մի ՚ի մեծամեծ սբց հարց՝ բանիւ և գրով և վարուք կատարելութե ։ Նաև Ռուփինոս ժամա-

կից

կից առէ . * Տեսաք անդ և զամենիմաստ
այրն և զմտմիտ սքանչելին եւագրիոս անուն ‖ :
Նոյնպէս խօսին և սոկրատ և սոզոմենոս
մերձաւորք ժամանակաւ . որ սոկրատ առէ .
* այնչափ սքանչելիք 'ի ձեռս նորա եղեն ,
որչափ և 'ի նորին առաջնորդացն ‖ . և թէ
* զխորհրդ սքանչելի էն գիրք նր , գիտակ են՝
ողք հանդիպին ‖ : Իսկ սոզոմենոս կոչէ զե-
ւագր , * այր բանիբուն , աջողակ յիմանալ
և 'ի ճառել . ներհուն յընտրութի խորհր-
դոց . . . . յայտ առնեն և գրուածքն զորս ե-
թող ‖ : Այլ առաւել քան զամ յայտնի առ-
նէ զանձն նր խորին և զարմանալի մղպութի
նր 'ի հոգևոր գրեանս , զորս եթող , որք ոչ
միայն գտանին թարգմանեալ յամ ազգս 'ի
նախնեաց հետէ , այլև 'ի վարս հարանց յի-
շատակին բանք նորա գովութե 'ի սբց հարց
Ճգնաւորաց :

Վարք եւագրի նր գրելոցն 'ի պալլադիոսէ՝
եդեալ կայ 'ի սկիզբն հայերէն թարգմանութե
գործոց եւագրի . որոյ և քաղուած է եղեալն
'ի յայսմաւուրս մեր ըստ սովորական օրինա-
կաց , ( թէպէտև պակասի առ մր լինելի ) , ի-
մա հանդերձ պատմութե և 'ի պատ-
մութեց սոկրատայ և այլոց ոմանց . և է բո-
վանդակութի մի այս :

Եւագր էր ազգաւ պոնտացի յիբերաց քաղա-
քէ՝ որդի քահանայի , դպրակարգաց լեալ
սբյն բարսղի կեսարացւոյ . և ապա աշակեր-
տեալ եղբօր նր գրիգորի նիւսացւոյ , կամ
գրիգորի ածաբանի նազիանզացւոյ . Ը որս
գտաւ

գտաւ 'ի Թփրեալ քաղաքին յաւուրս՞որ ժո-
ղովոյն կոստանդնուպօլսոյ ․ և զկնի յանձ-
նեցաւ կամ յարեցաւ 'ի նեքտաւրոս՝ որ ըն-
տրեցաւ յայնժամ պատրիարգ տեղւոյն ։ Նա
յայնժամ եւագր սարկաւագ , և եցոյց զու-
շիմուն իւր ընդդէմ հերեսիովտաց ժամանա-
կին ․ այլ զի էր երիտասարդ , ընդ գովութե
վն գիտութենն՝ կրեաց և զփորձութի յերե-
սաց արամբի կնոջ միոյ ․ ոչ և յառաջագոյն
'ի պոնտոս ասի խորատել 'ի սէրն բարոզէ վն
յայրատ հայեցուածոյ 'ի մէջ եկեղեցւոյ ։
Նա եղև եւագրի տեսանել տեսիլ , զի 'ի
դատաստան ձգէր զնա այրն կնոջն այնորիկ ․
մինչև արկանիլ 'ի բանտ և կապիլ 'ի շղթայս ․
և հրեշտակ ոմն երևեալ նմա՝ խոստանայր
ազատել զնա , եթէ երդնուցու յաւետա-
րանն՝ մեկնիլ առ օրին 'ի քաղաքէ անտի , և
երթալ հոգալ զհոգի իւր․ և իբրև երդուաւ,
զարթեաւ ․ և ասէ ցանձն իւր ․ թէպէտև 'ի
յափշտակութե մտաց երդուայ , բայց ստու-
գապէս երդուայ ։

Նա այնպէս 'ի նմին աւուր մտեալ 'ի ծով՝ նա-
ւեաց և եկն յեղ̃մ․ ուր իջևանեցաւ 'ի տուն
մելանեայի տիկնոջ հռովմայեցւոյ , որ ունէր
անուն մեծ բարեպաշտութե ․ և զի դանդաղէր
եւագր կատարել զխոստումն իւր վն հրա-
ժարելոյ յաշ͞խ , և խորհէր իսկ դառնալ յաշ͞խ ,
անկաւ 'ի ծանր հիւանդութի ․ և յասել մե-
լանեայի ցնա՝ թէ ոչ հաւանիմ որդեակ ընդ
այդ քո խօթութի , եբաց նմա զսիրտ իւր ,
թէ այս է ինձ պատիժ վն հեղգանալոյ իմոյ
տալ

տալ զանձն իմ ո՟յ . այսպ ը՟ն խոստաու նորա՝ իսկ և իսկ դիմեաց առ ա՟ծ . և փութով առողջացեալ՝ զգեցաւ զձև միայնակեցի , և գնաց յեգիպտոս 'ի լեառն Նիտրիոյ . և յետ կալոյ է՟ եղբարս զերկեամ մի՝ է՟ աշակերտութ՟ե սր՟ց հարց , և մանաւանդ մեծին մակարայ՝ առաջնոյ և երկրորդի , առանձնացաւ որպ՟ս կատարեալ ճգնաւոր 'ի սկիտէ , կամ 'ի սենեակս զամս չորեքտասան , խստամբեր վարուք յոյժ՝ մշտամարտ հանդիսի՛ ը՟դէմ դիւի և մարմնոյ . մինչև երբեմն նստիլ 'ի մէջ ջրոյ զցայգն ողջոյն . և զի էր ճարտար գրիչ և ուշիմ մտօք , գրեաց գիրս յաղագս տեսական և գործնական գիտուն՟ց հրաժարելոցն յա՟շէ , և դիմախօսութ՟ն առ փորձութ՟իս դիւին ը՟ն ութ խորհրդոց , և վեց հարիւր վճռական առածս , և երկու ոտանաւորս ։ Պատմեցին նմ՟ , թէ մեռաւ հայր քո 'ի պոնտոս . ասէ եւագր . հայրն իմ ոչ մեռանի , զի է անմահն ա՟ծ ։

Եւ իբրև լցան աւուրք կենաց նորա՝ ամք ծ՟է , ասաց ցեղբարս , երեք ամք են՝ յորմէ հետէ աղատեցայ 'ի փորձութ՟է մարմնոյ . և որք լուանն՝ զարմացան , զի 'ի վ՟ր այնչափ ճգնուե՟ց և պահոց և աղօթից , պատերազմաւ կատարեալ է զկեանս իւր . և այնպէս վախճանեցաւ՝ չև հասեալ 'ի ծերութ՟ի , յամի տ՟ն 399 . 'ի տօնի յայտնութ՟ե . և ը՟ն գրեցելումն՝ ասէ պալադիոս , կատարեալ 'ի սակաւուն՝ ելից զժամանակս երկայնս ։ Զսա բազմօք ջանացաւ յեպ՟սութիւն ամբառնալ

թէո

Թէոփիլէ աղեքսանդրացի. բայց եւագր չէառ յանձն. իսկ յետ մահուն եւագրի անկաւ գժտութիւն 'ի մէջ սկիտացւոց և Թէոփիլէի՝ պատճառանօք որոգինեան կռուոյ. և հերոնիմոս ձայնակից Թէոփիլէի՝ համարեցաւ զեւագր ձայնակից որոգինի. այլ 'ի գիրս եւագրի չիք բան՝ որ չիցէ ընդունելի ամ իմաստնոց և առաքինեաց:

## Յովհաննէս գբեցի:

Հ. Մայիս. 23 : Յ. ԺՏ. և Բոլլանդեանք. Մարտ. 30 : Հայրանց վարք. Հյ. և յն. ըստ վարինջանեան Մարքենի. անէ :

Ոսս ոմանք յարդի քննչաց ընդ բոլլանդեանս ասեն լինել յազգէ հայոց՝ 'ի չորրորդ դարու. զի 'ի յունական օրինակի վարուցն ասի լինել 'ի կիւբիստրոն կամ կիւվիստրայ քաղաքէ, որ է ը՟ պտղոմեայ 'ի կատաոնիա փոքուն հայոց. և այն յաւուրս պոմպէանոսի դատաւորի տեղւոյն: Իսկ յայսմաւուրքն մեր դնէ լինել ասորի՝ յերրորդ դարու, 'ի ժամանակս փիլիպպոսի հօրն եւգինեայ կուսի, 'ի կեսարիոյ փիւնիկեցւոց կմ պաղեստինու՝ ը՟ հայերէն օրինակի հարանց վարուց: Արդ էր երանելին յովհաննէս որդի մեծատուն և բարեպաշտ կնոջ այրւոյ՝ յուլիայ (կմ յոհինայ). և յաւուրս հալածանաց կայր ը՟ մօրն և փոքրիկ քեռն Թեմաստիայ 'ի Թաքստի. այլ յելանել երբեմն յովհաննու գնալ

գնալ յեկեղեցի՝ խրատու ծերոյ ուրումն շարժեցաւ հեռանալ ՚ի փորձութենէ հալածչաց. և առեալ հրաման ՚ի մօրէն՝ ՚ի հասակի հնգետասան ամաց դիմեաց յանապատ. և անցեալ Է յորդանան՝ յետ երկուց աւուրց եգիտ ծերունի զոմն եգիպտացի՝ փարմութէոս կամ փարմուտէս անուն. և ասէ ցնա. հայր սբ՝ կամիմ բնակել յանապատիս, և ստանալ զվարս միայնութեան: Ասէ ծերն, ոչ կարես համբերել յանբնակ վայրիս, զի կարի մանկագոյն ես: Ասէ յովհաննէս. ես հայր մերձ կալով առ քեզ ուսանիմ՝ ՚ի քէն զոր ինչ հրամայես վասն փրկութեան իմոյ:

Եւ զի կերակուր ծերոյն էր ՚ի հրեշտակէ ամն միանգամ՝ ՚ի շաբաթու, յետ կալոյ յովհաննու եօթնեակ մի անսուաղ ՚ի լուր խրատուց ծերոյն՝ եկեալ հրեշտակն եբեր կերակուր ծերոյն. և ոչ գոյր բաժին յովհաննու: Յանժամ ասէ փարմութէոս. որդեակ յովհաննէս երթիջի՛ր յայլ տեղի, մինչև այց արասցէ քեզ տր. և նա դիմեաց աղօթիւք ծերոյն ՚ի ներքսագոյն անապատ. ուր հանդիպեցաւ նմա հրեշտակ տն, և ասէ. ո՞ւր երթաս. ասէ յովհաննէս. խնդրեմ տեղի տէր, յորում բնակեցայց. և հրեշտակն առաջնորդեաց նմա մինչև ՚ի ջրհոր մի ցամաք և խոր յոյժ, ոչ ասի՝ քան կանգուն. և արարեալ յովհաննու զնշան խաչին՝ ընկէց զինքն ՚ի գուբ անդր. և հրեշտակ տն իջոյց զնա անվնաս:

Եւ էր ՚ի ներքս անդ անդադար փառաւորելով

լով զա՟ծ , և մխալով այցելուն մ՟ն . և յետ ՟ն
աւուրց առաքեաց հրեշտակն զփարմութէոս՝
տանել կերակուր առ յուլհաննէս . վասն զի
տղայ է ասէ՝ ոչ հրամայեաց ինձ տ՟ր տանել
նմ՟ զկերակուրս , զի մի՛ հպարտացի , և փոր-
ձեսցէ զնա սատանայ ։ Երբև եառ յուլհան-
նէս զկերակուրն 'ի ձեռաց ծերոյն , և լուեալ
զխրատս նորա մ՟տ զգոյշ լինելոյ 'ի պատրա-
նաց չարին , գոհացաւ զա՟յ և զնմանէ . այլ
աղաչեաց մի՛ բերել այլ կերակուր , մինչև
ինքնին տ՟ր այց արասցէ նմա . և յայնմհետէ
եկաց զտարի մի՝ 'ի վերուստ ընկալեալ զօգե-
պահ իւր ։

Յետ այսորիկ եկեալ սատանայի առ փար-
մութէոս 'ի կերպարանս միոյ 'ի ծառայիցն
յուլհաննու , ո՟չ թէ ելեալ 'ի խնդիր նորա ,
և առաջի եդեալ զաղէտս մօրն ՟է կորուստ
զաւակին , շարժեաց զնա արտասուօք խռո-
վք . մինչև գալ փարմութէի և խրատ տալ
յուլհաննու , թէ երթ ո՛րդեակ հանգո՛ ըզ-
մայրն քո , և ա՛ռ 'ի քեզ զստացուածս հօրն
քո , և տո՛ւր աղքատաց . և ապա եկեսցես
այսր ։ Նակ երանելին յուլհաննէս յայտ ա-
րար նմա զպատրանս չարին . և ասէ . պա՛րտ
էր քեզ գիտել , եթէ չարեօք է ճանապար-
հորդ քո . զի 'ի գալդ քո այսր՝ ոչ ետուր
փառս ա՟յ՝ ո՟չ յառաջնում նուագի , այլ իբ-
րև յանզգայութենէ խօսեցար . կնքեա՛ զքեզ
խաչիւ , և ա՛ռ 'ի ձեռս զվահան հաւատոյ ։

Զգաստացեալ փարմութէի՝ խնդրէր զա-
ղօթս յուլհաննու . և ասէ յուլհաննէս . տ՟ր
ա՟ծ

ա՟ծ մի տար կորնչիլ պատկերին քո․ զի բա-
զումձգնութ՟բ ծառայեաց քեզ, և ծանոյց
զքեզ ինձ ։ Յայնժամ դարձաւ ծերն լալով,
և ասէ․ ով սատանայ խաբեցեր զիս զծերու-
նիս․ այլ տղայ մանուկն յովհաննէս նշաւա-
կեաց զքեզ, և զիս յարոյց 'ի գլորմանէ․
արդ և ես ծերունիս յայսմհետէ եղից ջանս
ո՟չ մանուկ ը՟դէմ քո, և յաղթեցից ա՟մ հնա-
րից քոց ։

Իսկ սատանայ թողլ ետ տասն օր․ և ապա
առնու ը՟ խուր բազում դևս, և գայ առ գուբն
յովհաննու․ և աղաղակէր 'ի բացուստ իբրև
'ի բերանոյ մօրն․ նոյնպէս և ոմն 'ի դիւաց
'ի դիմաց քեռն, և այլք 'ի կերպարանս ծա-
ռայիցն․ զի դարձցի 'ի տուն և տնտեսեսցէ
զա՟մ ինչ, և տացէ զաղօթս ն՟ց՝ և առաւել
վարձս յո՟յ․ իսկ յովհաննէս ամենևին ոչինչ
ետ պ՟խնի․ Յայնժամ ասէ դևն․ ով չար սա-
տանայ որպէս յափշտակեցեր զորդին իմ ըզ-
միամօր և արկեր 'ի գուբս յայս․ և դարձեալ
ասէ․ մեռեալ է որդեակն իմ, վ՟ա այնր ոչ
տայ ձայն․ և ապա թողլ ետ վայր մի՝ կար-
ծեալ, թէ տայցէ պ՟խնի ։

Սուլ իբրև յամօթ եղև, և 'ի դերև ելին ա՟մ
հնարք ն՟ր, վիշապ եղև և անկաւ 'ի խոնարհ,
և պատեալ զյովհաննու՝ զգայլեր յերեսս
ն՟ր․ սակայն և այնպէս ոչ կարաց խափանել
զնա յաղօթիցն և կամ զարհուրեցուցանել․
մինչև աւաղելով ասէր սատանայ․ վա՛յ ինձ՝
որ նախատինս եղէ ա՟մ դիւաց․ զի զերկիր
ա՟մ կլայ, և այս մանկանս ոչ կարացի յաղ-
թել․

թել ։ Իսկ յովհաննէս զօրացեալ հոգւովն սրբով կոխեաց զփողս վիշապին, և խեղդէր զնա. մինչև 'ի ծուխ ցնդեալ եղև աներևոյթ ։ Իսկ երանելի Ճգնաւորն քաջ յովհաննէս եկաց 'ի վիրապի անդ ամս տասն. և յամի կենաց իւրոց քսաներորդի հինգերորդի՝ իբրև հանդերձեալ էր գնալ առ ա͞ծ, եկն անդր ազդմամբ ա͞ն կիւրոս անապատաւոր, (որ և վրիպակաւ կիրակոս գրի.) և ողջունեաց զերանելին. և յաւուրն երրորդի բարձրացաւ երկիրն 'ի խորու͞է 'ի վեր. և ետեսին զմիմեանս. և պատմեաց յովհաննէս կիւրոսի զա͞մ անցս իւր. և պատուիրեաց վ͞ն թաղման իւրոյ, և այնպէս հրաժարեալ 'ի նմանէ՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս ա͞յ յապրիլի ի͞գ ։ Իսկ կիւրոս ամփոփեաց զսուրբ նշխարս նո͞ր արտասուօք և օրհնութ͞բ 'ի վ͞ր գբոյն, և եդ 'ի վ͞ր զվէմ մի մեծ. և դարձաւ հողն մարմնով սրբոյն 'ի տեղի իւր, որպէս էր յառաջագոյն խոր գուբ. և 'ի լինել կիւրոսի այլ ևս հող 'ի վերայ վիմին՝ բուսաւ անդ արմաւենի պտղալից. զոր տեսեալ փառաւորէր զա͞ծ. և եկեալ պատմեաց եղբարց, և ետ գրել յեկեղեցւոջ զվարս սրբոյն ։

Օ այս ա͞մ իմացեալ 'ի յայտնութ͞է հրեշտակին և խուսափոն անապատական ծերն՝ անցոյց ասէն և նա 'ի գիր. և գտան համեմատ իրերաց գրեալքն ա͞մ, եթէ չիցէ չփոթեալ յամանց անուն կիւրոսի և խուփուսիոնի, կա͞մ մի ումն յերկուս անուանս տրոհեալ. թող զի յայժմու յունական օրինակի մի և եթ անուն գրի խուսափոս ։ Յոյնք կոչեն զսբն՝ յովհաննէս

նէս միայնակեաց, կմ հայրն յովհաննէս 'ի գուբ . որ 'ի մէջ գրի է հին օրինակաց յովհաննէս գբեցի կմ գբացի . և ըստ յետնոց՝ գընեցի ։

## Յովհաննէս կարճահասակ ։

Վարք հարց . հյ. յն. լա ։

Երանելիս այս յովհաննէս՝ կոչեցեալ յունարէն նանոս և գօլօվօս, յս կարճահասակ կմ կարճիկ, եղև մի 'ի նշանաւոր սրբց հարց սկիտացւոց՝ լի հոգւով այ և խոնարհութբ և գիտնաւոր ընտրողութբ, կրօնաւորեալ է եղբօր իւրում երիցու 'ի մանկութէ ։ Զառաջինն՝ յորժամ կայր է ձեռամբ ծերոյ ուրումն թեբայեցւոյ 'ի հնազանդութե, տընկեաց ծերն փայտ մի չոր, և ասաց ցյովհաննէս . ոռոգեա զդա օրըստօրէ, զի բերցէ պտուղ . և էր ջուրն 'ի բացեայ, զի յերեկոյէ երթայր բերել, և է առաւօտն դառնայր . և իբրև արար զհրամանն զամս երիս, դալարացաւ փայտն և ետ զպտուղ . յորմէ բերեալ ծերոյն յեկեղեցի՝ ասէ ցեղբարսն . առէք կերայք զպտուղ հնազանդութե ։

Ոմն 'ի պատուական երիցանց կամեցեալ մեծարել զսկիտացի հարս՝ որք ճաշէին միաբան, յարուցեալ մատուցանէր նց ջուր բաժակաւ . և յոչ իշխել ուրուք առնուլ զայն՝ եառ յովհաննէս . և իբրև հարցաւ, թէ զիմրդ համարձակեցար դու կրտսերդ ք զա-

մենաւորն , ասէ . եթէ ես տայի , ուրախա֊
նայի ը՟ առնուլ ուրուք , զի վարձս առից . և
վ՟ն այնորիկ կամեցայ ուրախ առնել և զքա֊
հանայն , և ոչ տրտմեցուցանել . և զարմա֊
ցան ամենեքին ։

Սառեալ յովհաննու 'ի պատանեկութե՟ 'ի
սէր կատարեալ առաքինութե՟՝ ասէ ցեղբայր
իւր աւագ . կամիմ լինել անհոգ ո՟պ զհրեշ֊
տակս , և միայն յ՟ած պարապիլ . զայս ա֊
սացեալ՝ մերկացաւ զհանդերձս իւր , և դի֊
մեաց յանապատ ։ Եւ յԼ իբրև դարձաւ զկնի
եօթնեկի , և բախէր զսենեակն , ասէ եղ֊
բայրն . ո՞վ ես դու . նա ասէ . ես եմ յովհա֊
նէս ։ Եղբայրն ասէ . յովհաննէս հրեշտակ
եղև , և ոչ ևս է ը՟ մարդկան . և յետ աշխատ
առնելոյ զնա յերկար՝ եբաց և ասէ . արդ
գիտեա՛ , զի մարդ ես . և աշխատեա՛ , զի կեց֊
ցես . և նա ասէ . թո՛ղ ինձ եղբայր , զի մեղայ ։
Դարձեալ սա ինքն յովհաննէս աղաչեաց
զ՟ած բառնալ 'ի նմանէ զ՟ամ կիրս՝ որք պա֊
տերազմին ը՟դէմ հոգւոց . և իբրև եառ ըղ֊
խնդրելին , գնաց և պատմեաց ումեմն 'ի ծե֊
րոց . և նա ասէ . երթ և աղաչեա՛ զ՟տր , զի
դարձցի 'ի քեզ պատերազմն . զի պատերազ֊
մելով զարգանայ հոգին . և նա արար այն֊
պէս . և այնուհետև այսպէս աղօթէր . ՟Տր
տո՛ւր ինձ զօրութի՟ համբերելոյ և ժուժկա֊
լելոյ ը՟դէմ պատերազմիս ։

Եկին ոմանք 'ի փորձել զյովհաննէս . քան֊
զի գիտէին՝ թէ ոչ թողու զմիտս իւր խոր֊
հել զերկրաւորս . և սկսան գոհանալ զ՟ոյ
վ՟ն

մի առատուէ անձրևաց 'ի տարւոջն , և ուռ- ճանալոյ արմատեննեաց ։ Նաև երանելին · այսպէս է՝ յորժամ հոգին սբ իջանէ 'ի սիրտս մեզ , դալարանան և նորոգին , և բերեն զսաղարթս և զպտուղս ահիճն այ ։ Իսկ ե- ղև յովհաննէս այնչափ ընկղմեալ 'ի հոգևոր տեսութիւս , մինչև մոռանալ նմա բազում անգամ զամ̃ ինչ ցի , և իբրև յայլոյ խելս գործել զձեռագործն ։

Նկն ումն հարցանել 'ի նմանէ խրատ · և յետ դառնալոյ մոռացաւ զբանն , և կրկին և կր- կին եկն հարցանել , խնդրելով զթողութիւն վն ձանձրացուցանելոյն · յայնժամ ետ յով- հաննէս լուցանել նմա բազում ճրագունս 'ի միոյ ճրագէ · և ասէ · միթէ պակասեա՞ց ինչ 'ի լուսոյ առաջին ճրագին · և նա ասէ · ոչ · և յովհաննէս ասէ · սոյնպէս եթէ ամ սկիտէ գայցէ առ իս , ոչինչ արգելու զիս 'ի սիրոյն այ · վն երբ և ցորչափ կամիս , եկ համարձակ ։ Սոյնպէս և ամ բանք երանել- ւոյն էին լի իմաստութբ , և զգալի օրինա- կօք յորդորիչք ամենեցուն յամ առաքինու- թիւս · և առաւել 'ի խոնարհութիւն և 'ի սէր · զոր գործովք յանձին ցուցանէր · որպ յայտ է 'ի գրոց հարանց վարուց ։ Ժամանակ փոխ- ման նր չէ յայտ · այլ էր մի 'ի հին հարց , ընդ որում և հայրն պիմէն բերէր զբանս նորա 'ի վկայութի , և հայրն արսէն էր որպս ձե- ռասուն աշակերտ սորին յովհաննու ։

## Նեղոս աբբայ։

Յ. և Լ. Նոյեմբ. 12։ Մարտ հզ. հյ. յն. լա։

Սբ հայրն Նեղոս՝ այր լի հոգւովն այ, և զօրաւոր բանիւ և գրով, աշակերտ սբյն յովհաննու ոսկեբերանի, եր ծննդեամբ գաղատացի՝ յազնուական տոհմէ՝ յաշխարհական կարգէ՝ զարդարեալ ածպաշտութբ իւրովքն հանդերձ. որ և եղև եպարքոս Թգրական քաղաքին առ փոքրն Թէոդոսիւ։ Յետ այնորիկ հրաժարեալ յաշխարհէ՝ եդ զկին իւր և զդուստրն 'ի վանս կուսանաց. և առեալ զորդի իւր զերանելին Թէոդուղոս՝ առանձնացաւ 'ի լեառն սինայ միայնակեցութբ։

Վարք նր զարդարեալ ած հոգևոր կարգօք և իմաստութբ փայլեն 'ի մեղրահոսան վարդապետութեն նր 'ի պէսպէս հոգեշահ աշխատասիրութիս, 'ի Թուղթս յորդորականս, և 'ի խրատս առ միանձունս, որք օգտեն և աշխարհականաց. զի զուսմանս ած առաքինութեց և մոլութեց, և զբարի բարի պտուղս բարեանկոյն, և զժանտս չարին, մեկն և կենդանի նկարագրէ օրինակօք, և վճռական առածիւք տպաւորէ 'ի միտս և 'ի սիրտս ամենեցուն։ Վախճանեցաւ լի արդեամբք յամի ան իբր 450. որ է վերջին ամ Թգրութեն փոքուն Թէոդոսի. առ որով դնեն զնա ամ մատենագիրք. միայն յայսմաւուրք յունաց վրիպակաւ դնէ յաւուրս մօրկայ։ Վրիպակ մա-

կա-

կաքերութիւն դնէ և Նիկեփորոս կալլիստոս զոքն Նեղոս լինել ծննդեամբ 'ի կոստանդինուպօլսոյ, վասն զի եղև եպարքոս քաղաքին. և այն զի էր կայսերական օրինաց արգելեալ էր զայնու ժամանակօք՝ չլինել ումեք քաղաքացւոյ եպարքոս կամ քաղաքապետ : Ո՛ւղղ զոր ոմանք հայելով յանունս Նեղոս՝ էր մոլի հնարեցին, թէ իցէ 'ի կողմանց Նեղոս գետոյ եգիպտացւոց. և կամ խառնեցին ընդ այլում Նեղոսի Ձգնաւորի եգիպտացւոյ, որպէս և ոմանք էր Նեղոսի ումեմն եպիսի կողմանցն եգիպտացւոց : Մեք յայտնի տեսանեմք 'ի Ներբողեանն սրբոյն պղատոնի վկայի անկիւրացւոյ, զի որքն Նեղոս յայտ առնէ զանձն լինել նոր քաղաքացի. ուր թողից զայն, զի կայ և էարձակ ձառ կամ գիրք նորին սրբոյն Նեղոսի աբբայի՝ 'ի կէ գլուխս բանից բովանդակեալ, զոր գրեաց * առ արժանապատիւ Մագնա սարկաւագուհի անկիւրիոյ՝ վասն անստացուածութեան ‖ :

Այս էարձակ պատմութիւն վասն յարձակման սարակինոսաց 'ի վերայ միայնակեցաց սինեական լերինն՝ գրեալ 'ի սրբոյն Նեղոսէ. (զոր և յառաջ բերէ բուլլանդ 'ի յունվարի 14.) Որ պատմի նահատակութիւն բազմաց, և ազատութիւն Թէոդուլոսի որդւոյ սրբոյն Նեղոսի 'ի գերութենէ. զորոյ զգիրնն տուեալ էր եպիս ոմն. և նա բունադատեալ ձեռնադրեաց քահանայ զփոքրայն Նեղոս և զորդի նորա զԹէոդուլոս. և զսորա ևս առնեն յոյնք զյիշատակ էր հօր իւրում 'ի նոյեմբ. 12. կամ 13. և ասեն, թէ

յուստինոս կայսրն եա թերել զնշխարս սրբոյն նեղոսի և սրբոյն Թէոդուլոսի որդւոյ նորա 'ի կոստանդինուպօլիս, և եդ ընդ խորանաւ 'ի տաճարի սրբոց առաքելոց, որ և սրբոյն պօղոսի առաքելոյ՝ 'ի տեղին կոչեցեալ որփանոտրոփիոն, այսինքն որբանոց կմ որբադարման :

## Արսենիոս Հայրն, կմ Հայրն Արսէն :

Հ. մայիս. 10 : Յ. մայ. 8 : Լ. յուլ. 19 :
Բոլլանդեանն գրենիոս անդ՝ այլովքն հանդերձ : Մե. տաճիր. առ սուր : Մէն Թէոդորոս ստուդէացի :

Արսէն կմ արսենիոս, որ Թարգմանի արու և արի, էր ազգաւ և քաղաքաւ հռովմայեցի՝ յերևելի և 'ի պատուական տոհմէ նախարարացն հռովմայ. (Թող զոր ոմն յանծանօթ հեղինակաց գրեաց՝ թէ իցէ եղբայր եւփիմիանոսի հօր սրբոյն աղեքսիանոսի) . և որպէս մեծութբ, նոյնպէս և գիտութբ հռովմայեցի և հելլենացի դպրութե էր ականաւոր 'ի մէջ հռովմայ, հանդերձ երկիւղած և առաքինի վարուք. վսյ՝ որպէս բազումք աւանդեն յառաջնոց, ընտրեցաւ 'ի սրբոյն դամասոսէ հռովմայ հայրապետէ, և ձեռնադրեցաւ սարկաւագ եկեղեցւոյ :

Յաւուրսն յայնոսիկ յամի տն 383. մեծն Թէոդոս արար իւր գահակից կայսերութե 'ի կոստանդինուպօլիս զերէց որդի իւր զարկադէոս մանուկ վեցամեայ. և զի համբաւեալ էր իմաստութի արսենիոսի՝ եա թե-

րել

րել զնա 'ի վերջին ամի դամասոսի պապին 'ի Հռովմայ 'ի կոստանդինուպօլիս, և կարգեաց զնա դաստիարակ արկադեոսի. 'ի նոյն աւուրս ծնաւ և ոնորիոս կրտսեր եղբայր նր̃. և իբրև եղև ութամեայ, և սա ևս օգոստական պատուով տուաւ 'ի դաստիարակութ̃ի ը̃ ձեռամբ արսենիոսի յամի 392։ Արդ յորժամ եկն արսէն 'ի պալատն արքունի, ըստ ստուգագոյն հաշուի՛ ասի լինել քսանևինն ամաց. և եկաց 'ի պալատան ամս մետասան մինչև 'ի քառասնամեայ հասակ իւր. զոր այլք այսպէս 'ի հաշուէ արկնն. ոմ̃ք թէ ժը̃ ամաց եկեալ իցէ, և ի̃ ամս կացեալ 'ի պալատան։ Իսկ ելք նր̃ 'ի պալատէն՝ ը̃ ոմանց եղև 'ի վերջին ամս մեծին թէոդոսի, և ըստ այլոց յետ մահուն նր̃ յաւուրս թ̃գ̃րուէ արկադեայ և ոնորիոսի, վ̃ն այլևայլ պատճառաց. յորոց ստոյգն է այս։

Տեսեալ արսենի, զի 'ի պալատան ըմբռնեալ կայ 'ի փառս և 'ի գրգանս և 'ի հոգս աշ̃ի՝ որք ընկղմեն զհոգի նր̃ 'ի կորուստ, ստէպ կարդայր առ ա̃ծ արտասուօք. տէ՛ր ցո՛յց ինձ ճանապարհ, յոր գնացից, և կեցից. և յաւուր միում եղև առ նա ձայն. ա՛րսենիէ, եթէ կամիս կեալ, փախի՛ր 'ի մարդկանէ, և կեցցես։ Յայնժամ զօրացեալ տ̃րբ՝ առ ոտն կոխեաց զա̃մ վայելչութի̃ս աշ̃ի, և ոչ ումեք 'ի վեր հանեալ զխորհուրդն՝ ել գաղտ յարքունեաց և նաւեաց յաղեքսանդրիա եգիպտացւոց. և եկեալ յանծանօթս 'ի սկիտէ՝ մատեաւ առ քահանայս եկեղեցւոյ, և ասէ.

վ՟ն ա՟ն արարէք զիս միայնակեաց , և ցուցէք զճանապարհ՝ որով կեցից ։

Եւ նք՟ առեալ տարան զնա առ հայրն յովհաննէս կարճահասակ . որոյ հայեցեալ ընդ նա՝ կամեցաւ փորձել զխոնարհութի՟ նորա , և զճշմարիտ կամս կրօնաւորութե՟ . և հիւրընկալեալ զեկեալսն՝ սկսաւ ուտել սէր ընդ նմ՟ , ո՟պ ոչինչ հոգալով զարսենիոսէ . ապա առեալ պաքսիմատ մի՝ ընկէց հեռագոյն 'ի գետին , և ասէ ցնա . կե՛ր , եթէ կամիս ։ Եւ արսէն խոնարհեալ յափսիթերս գնաց , և առեալ զպաքսիմատն՝ կերաւ ։ Ապա ասէ հայրն յովհաննէս ցեղբարս . երթա՛յք խաղաղութ՟ , և աղօթս արարէք վ՟ն մեր . գիտաջի՛ք , զի փորձ գտաւ եղբայրս այս , եթէ կարօղ է լինել միայնակեաց ։ Ե՟ք հարցին ցարսէն , թէ զի՞նչ խորհէիր 'ի սրտի քում յուտելն զպաքսիմատն . նա ետ պ՟խնի . ասէր , թէ մե՛ծ է ինձ ուտել ո՟պ շուն զփշրանս սեղանոյ ս՟րց ։ Եւ նք՟ զարմացան՝ առանց գիտելոյ , թէ ո՞ ոք իցէ ։

Կացեալ արսենի ժամանակս սակաւ ը՟ երանելոյն յովհաննու՝ ուսաւ 'ի նմէ զա՟մ կարգ միայնակեցութե՟ . և ապա նստաւ յառանձին սենեակ՝ ո՟պ զմի 'ի հարց անտի սկիտացւոց ա՟մ խոնարհութ՟ք և լռութ՟ք . մինչև յայտնի եղև անուն սրբութե՟ և իմաստութե՟ նորա . քանզի և գիր յինքնակալաց եկն առ նա խնդրակօք՝ բազում կարօտանօք հանդերձ , զի թէ ոչ դառնայ , գո՛նեա աղօթեսցէ վ՟ն նց՟ . առաքեցին և ինչս բաշխել միայնակեցաց .

այլ

այլ նա ոչ էառ յանձն. և յայնմհետէ առաւել ակն ածէին 'ի նմանէ ծերքն սկիտոյ ։ Բայց նա փախչէր յա՟մ փառաց, և ոչ տգէտ ոք ձևացեալ՝ հարցանէր խրատս 'ի ծերոց. և յասել ոմանց ցնա, թէ դու գոլով հմուտ ա՟մ գիտութ՟եց՝ զիա՞րդ հարցանես ցգեղջուկ եգիպտացիս, ասէ արսէն. զհռովմայեցւոց և զյունաց զա՟մ իմաստութիւն ուսայ, բայց զա՟ծիմաստ գիտութ՟ն գեղջկացս այսոցիկ և ոչ զայբուբենն գիտեմ ։ Նա այն զի հմուտ էր հին և նոր կտակարանաց. այլ ոչ մխէր մեկնել զբանս գրոց ։

Նա իբրև հանդարտել նստաւ հայրն արսենիոս, դարձեալ ասէր առ ա՟ծ. տէր ցոյց ինձ ճանապարհ, որով կեցից. և լուաւ ձայն, զի ասէր. արսենիէ՝ փախի՛ր, լռեա՛, հանդարտեա՛. զի այսոքիկ են արմատք կենաց անմեղութե՟ ։ Ոչ ևս քան զևս ետ զանձն յառանձնութի՟. դուռն ուրեք երևէր մարդոյ, և ստէպ փոխէր զբնակութի՟ իւր յայլ և այլ սենեակս 'ի սկիտէ՝ փախչելով միշտ 'ի տեսութե՟ մարդկան. և ուր և նստէր՝ ունէր 'ի ձեռին կի՟ 'ի վ՟ր ծնգաց սպունգ իբրև թաշկինակ 'ի սրբել զարտասուս. քանզի տուեան նմ՟ շնորհք աղօթից և արտասուաց առաւել քան զա՟մ հարս. և ի՟ր օրինակի մեծին անտոնի՝ յերեկոյի շաբաթուն թողոյր զարեգակն 'ի թիկանց, և ընդ առաւօտս կիւրակէի տեսանէր 'ի դէմս իւր ծագել. և ինքն երբեմն տեսանիւր որպէս հուր վառեալ. և պարզապէս՝ միայն մարմնով յերկրի էր, և

հող-

հոգւոյն առ Ած ․ առաւել ընկղմեալ 'ի խա-
կումն մահու և ահեղ դատաստանին Այ , որ
հարկաւ բերէ զզեղջ և զՃմ զշնորհս ։ Եւ
իբրև գայր յեկեղեցին , զսիւնիւն կայր ․ զի
մի ոք տեսցէ զերեսս նր , և ոչ ինքն զայլ ոք
տեսցէ ։

Ասէ ցնա երանելին մարկոս ․ Տէր փախչիս
'ի մէնջ հայր ։ Ասէ ծերն ․ գիտէ Ած , զի
սիրեմ զձեզ ․ այլ ոչ կարեմ լինել ընդ Այ և ընդ
մարդկան ․ զի 'ի վեր անդր յերկինս հազարք
և բիւրք հրեշտակաց մի կամս ունին ․ իսկ
մարդիկ բազմադիմի կամս ստացան ․ և ես
ոչ կարեմ թողուլ զԱծ , և պարապել մարդ-
կան ։ Այր ոմն և բախեաց զդուռն հօրն ար-
սենի ․ և նա եբաց , կարծէր՝ թէ աշակերտ
իւր է ․ իսկ իբրև ետես՝ թէ այլ ոք է , ան-
կաւ 'ի վր երեսաց իւրոց ․ և եկեալն աղա-
չէր յառնել և խօսել ինչ յօգուտ ․ և ոչ յա-
րեաւ՝ մինչև գնաց 'ի նմանէ ։

Գնացել երբեմն թէոփիլէ արքեպսն աղեք-
սանդրու և իշխան ոմն առ հայրն արսենիոս՝
խնդրէին լսել 'ի նմանէ բանս կենաց ․ իսկ
ծերն լռեաց փոքր մի ․ և ապա ասէ ցնս ․ ե-
թէ ասացից ինչ ձեզ , պահէք զայն ․ և նք
ուխտեցին պահել ։ Ասէ ցնս ծերն ․ ուր և
լուիցէք զկայն արսենիոսի , մի բնաւ մերձե-
նայք 'ի տեղին յայն ։ Յայլում ժամու յղեաց
թէոփիլոս զոմն առ հայրն արսէն՝ ասել ․ ե-
թէ գամ , բացցես ինձ զդուռն ․ և նա ասէ ․
եթէ քեզ բացից , և ամենեցուն բացից՝ որք
գայցեն ․ յայնմ հետէ այլ ոչ ես նստիցիմ

աստ

ասա ։ Իբրև լուաւ եպսն, ասէ. եթէ Հալա-
ծել զսքն 'ի տեղւոյն երթամ, ոչ ևս գնացից։
Եկեալ 'ի Հռովմայ կոյս ոմն դուստր իշխա-
նի՝ ազգական արսենիոսի, միջնորդ կալաւ
զԹէոփիլոս եպսն, զի հաւանեցուսցէ զծերն՝
տեսանել զնա. իսկ ծերն ոչ էառ յանձն ։
Իբրև լուաւ զայս կոյսն, եկն անձամբ յա-
նապատ՝ ասելով. հաւատամ յԱծ՝ տեսա-
նել զնա. զի ոչ եթէ մարդ խնդրեմ տեսա-
նել, այլ՝ հրեշտակ. և զի գտաւ ծերն ար-
տաքոյ խցին, տեսեալ զնա կոյսն՝ անկաւ ու-
րախութբ առ ոտս նր ։ Իսկ նա յարուցեալ
զնա բարկութբ՝ ասէ. եթէ կամիս տեսանել
զերեսս իմ, ահաւասիկ եմ՝ տեսցես. այլ
նա յամօթոյն ոչ կարաց հայել 'ի նա ։ Ասէ
ցնա ծերն. միթէ ոչ լուեր զգործսն իմ. շա՛տ
էր քեզ զնոյնս տեսանել՝ կալով 'ի տեղիդ.
և զիա՞րդ իշխեցեր գալ հասանել զայսքան
խորս ծովուց. ո՞չ ծանեար՝ թէ կին ես, և
չէր արժան քեզ ելանել ուրեք. կմ թէ զի-
ա՞րդ գնասցես դու 'ի Հռոմ, և պատմեսցես
այլ կանանց, թէ տեսի ես զԱրսենիոս. և
արասցես Ճանապարհ զծով ամ կանանց գալ
առ իս ։ Ասէ կոյսն. եթէ կամեսցի տր, ես
չնայցից, և խրատեցից զայլս՝ զի մի ոք եկես-
ցէ աստ. այլ աղօթեա՛ վն իմ հայր, և յի-
շեսցես զիս յաղօթս քո ։ Ասէ ցնա ծերն,
և ես աղօթիւք խնդրեցից 'ի տնէ, զի խլես-
ցէ զյիշատակ քո 'ի սրտէ իմմէ ։ Դարձաւ
կոյսն առ եպսն լի անչափ տրտմութբ. և նա
բժշկեաց զմիտս նորա, ասելով՝ թէ վն հոգ-

ւոյ

ւոյ քո միշտ աղօթեսցէ ։

Եղբայր ոմն եկեալ առ հայրն արսենիոս, և ոչ գտեալ համարձակութի՟, գնաց առ հայրն մովսէս՝ որ յաւազակացն էր, և եգիտ սէր, և ը՟ունելութի՟ յոյժ ։ Ապա ասէ՝ որ առաջնորդէրն, ցեղբայրն ․ տարայ զքեզ առ օտարն հռովմայեցի, և արդ բերի առ այս եգիպտացի ․ արդ ո՞ 'ի սոցանէ բարի թուեցաւ քեզ ․ իսկ նա ասէ ․ ես ը՟ ժամս զեգիպտացին հաճեցայ ։ Եւ լուեալ զայս ոմն 'ի հարցն՝ աղօթեաց առ ա՟ծ, և ասէ ․ տէ՛ր ցո՛յց ինձ ըզգործս զայս, թէ ո՞րպէս է ․ զի մին այն փախչի 'ի մարդկանէ վ՟ն անուան քո ․ և երկրորդն սիրէ զմարդիկ վասն անուան քո ։ Եւ ահա յայտնեցան նմա երկու նաւք մեծամեծք 'ի գետս ինչ ․ և ետես՝ զի 'ի մինն էին հոգի ա՟յ և հայրն արսենիոս, և անցին յայնկոյս լըռութե՟ և հանդարտութե՟ ․ իսկ յերկրորդումն էին հրեշտակք ա՟յ և հայրն մովսէս, և զի տային ուտել նմա մեղր ն՟ք, և այնպէս անցանէին յայնկոյս ։

Յայտնի են 'ի հարանց վարուց և այլ սքանչելի քաղաքավարութի՟ք և հոգելից խրատք ն՟ց հօրն արսենի ․ զորս չէ՛ տեղւոյս երկրորդել, ո՟ղ և զտեսիլս ն՟ր, և զմրցանս ընդդէմ դիւաց ։ Շատ լիցի յիշել սակաւ զայսոսիկ առածս ն՟ր 'ի շահ մեծ հոգւոց ։ Եւ թէ խընդրեմք զա՟ծ, յայտնեսցի մեզ ․ և թէ կալցուք զնա, բնակեսցի առ մեզ ։ Հնազանդութի՟ և խոնարհութի՟ լծեալք հնազանդեն զգեան ։ Յորմէ հեռի եղի սատ, 'ի վ՟ր բանի զղջացի

բաւ

բազում անգամ . այլ 'ի վ՛ր լռուե՛ ոչ երբէք : Մեր կալցես առ ամենեսեան , բայց մեկնելով մեկնեցիս յամենեցունց : ( ոմանք ընթեռնուն . առ ի՞նչ ելեր դու աստ . 'ի վ՛ր բանի եմ ) : այլ մեք՝ զկարգ պատմուե՛ նորա բովանդակեսցուք :

Արդ յետ կալոյ երանելոյն 'ի սկիտէ ամս քառասուն , յորժամ յարձակեցան 'ի սկիտէ մազիկք բարբարոսք միանգամ և երկիցս՝ յամի իբր 395 , և 434 , և ցրուեցան միայնակեացք առ ժամանակ մի , եանց և հայրն արսէն աներկիւղ ը՛ մէջ բարբարոսաց , և եկն 'ի տրովադա , որ և տրոյէ վերին բաբելոնի մօտ 'ի մեմփիս . և նստաւ 'ի տեղին կոչեցեալ վէմ տրովադայ՝ ամս տասն մի : Յետ այսորիկ յամի 444 , որ է վերջին ամն հայրապետուե՛ սր՛յն կիւրղի աղեքսանդրացւոյ՝ գնաց արսենիոս ծերացեալ՝ 'ի ստորին եգիպտոս 'ի կոնոպէ . և զկնի երից ամաց հիւանդացեալ 'ի կողմանս աղեքսանդրեայ՝ դարձաւ առ աշակերտս իւր 'ի վէմն . ( այն են աղեքսանդրոս և զոյիլէ փառանացիք՝ երբեմն աշակերտք հօրն աղաթոնի , և դանիէլ փառանացի . ) և կացեալ անդ այլ ևս ամս երկու՝ փոխեցաւ առ անձկալին իւր ք՛ս յամի տ՛ն 449 կամ 450 . և թաղեցին զնա աշակերտք նր՛ ը՛ հրամանի նր՛ թաղուածն անշուք 'ի տեղին ստորամէս կոչեցեալ , 'ի հասակի ղե ամաց . զոր ոմանք ձ՛է կամ ձ՛ը թուեն . և այլք կանխագոյն դնեն զմահ սր՛յն յամի իբր 445 . և ոմանք , 430 :

Օվարս ն՛ր հօրն արսենի՝ բաց 'ի բանից գտե-

լոց 'ի կարգի հարանց վարուց , գրեաց մետա-
փրաստէս և այլք իւ՛իք իւ՛իք յաւելուածով ։
այլ լաւագոյն քան զամենեսին և պանծալի
գրեաց ս՟բն Թէոդորոս վանահայր ստուդի-
տաց կ՟մ սպուդէից՝ ծաղկեալ գրով և վա-
տակօք 'ի Ը և 'ի Թ դարու , որ եհաս մինչև
ցամ՟ին 826 ։ Բայց բանք ամենեցուն հաս-
տատեալ են 'ի վ՟ր բանից հօրն դանիէլի ա-
շակերտի ս՟րյն և առաջին գրչի վարուց ն՟ր ։
Պատմեաց և հայրն զոյիլէ քահանայն տա-
միթոյ , թէ արք եօթն սինկղիտիկոսք հռով-
մայեցիք նախանձեալ հօրն արսենիոսի՝ ե-
կեալ միանձնացան յանապատին սկիտոյ ։ որք
յայնպիսի խոնարհութ՟ի և յաղքատութիւն
եդուն զանձինս , մինչև անօթ նոցին էր խեց
կրիայից ։ և ասէին ։ գուցէ տեսցէ տ՟ր զաշ-
խատութիւնս զայս , և թողցէ զմեղս մեր ։
Իսկ ս՟բն հերոնիմոս 'ի կենդանութեան ն՟ր
հօրն արսենի գրէր զայն բան 'ի թղթի իւ-
րում իէ ։ առ այլ ։ * Օ ի՞նչ պատմեցից ես
զմակարիոսաց , զարսենիոսաց , զսրապիո-
նաց , և զայլ ևս անուանց՝ որ սիւնք են ք՟նի ‖ ։
Իսկ իբրև լուաւ հայրն պիմէն՝ եթէ ննջեաց
հայրն արսենիոս , ողբաց և ասէ ։ Երանի՛ է
քեզ հա՛յր արսենիոս , զի ողբացեր զանձն քո
յ՟շխս յայսմիկ ։ զի որ ոք աստ ոչ ողբասցէ
զանձն , 'ի հանդերձեալն ողբալոց է ։ զի կա՛մ
աստ կամաւ , և կամ անդ ակամայ վ՟ն տան-
ջանացն պարտիմք ողբալ ։

Մ-

## Սիսիանոս. և Հայրն սիսոյի։

### 'Ի Վարս հարց։

Ուր 'ի տօնացոյցս մեր գտանեմք աստանօր զանուն սիսիանու կմ սիսաանու, որոյ չիք յիշատակ 'ի Հայերէն Հարանց վարս, պարտ է ասել՝ թէ կամ է սա երևելին 'ի միայնակեացս Հայրն սիսոյի, և կմ սիսինիոս նշանակեալ 'ի պաղադիոսէ և յայլոց. զորոց տացուք փոքր 'ի շատէ տեղեկութն։

Ըստ պաղադիոսի՝ աբբայն սիսինիոս կամ սիսիանոս էր ազգաւ կապադովկացի՝ աշակերտ հօրն եղպիդիոսի կապադովկացւոյ՝ յայրս երիքովի 'ի լերինն լուկայ. և յետ կրթելոյ յոսս ծերոյ զամս վեց կամ եօթն յամ առաքինութիւս, փակեաց զանձն 'ի գերեզմանի միում զամս երիս ոտնակացութբ յաղօթս. և էառ իշխանութն 'ի վր դիւաց. և այժմ ասէ դարձ արարեալ յերկիր իւր՝ արժանի եղև քահանայութէ, անարատ վարուք և անախտութբ, և է հիւրասէր յոյժ, թէպէտև աղքատ, յամօթ ժլատ մեծատանց։

Նորդ՝ ոչ գիտեմք, որդեօք սոյն սա՞ է 'ի ծերունէ յիշատակեալն 'ի յովհաննէ մոսքոսէ 'ի յաջորդ դարու գրելով այսպէս։ Պատմեաց մեզ հայրն մեր գրիգոր արշիմանդրիտ վանաց թէոդոսի աբբայի, թէ յաւուր միում գնացի առ աբբայն սիսինիոս անապատաւոր. և էր սա ծեր, որոյ թողեալ զեպսութն իւր վս

քնի՝

քո՛յն՝ եկեալ էր մօտ՝ յամուրն բեթաբրայ՝ իբր վեց մղոնաւ հեռի 'ի յորդանանէ, և վարէր զկեանս առանձնութե. Իսկ իբրև բախեցի զդուռն նր՝ յետ բազում ժամու եբաց աշակերտն, և ասէ ցնա. արդարև դու աբբայ՝ խոթացաւ ծերն մինչև 'ի մահ. այլ աղաչեաց զնա՝ զի նախ քան զփոխումն իւր լուիցէ բզդարձ քո այսրէն. քանզի երթեալ էր իմ 'ի կոստանդինուպօլիս վն պիտոյից վանաց առ բարեպաշտ կայսրն տիբերիոս. Որդ մտեալ աշակերտին առ ծերն՝ պատմեաց զիմ եկս. այլ յամեաց ոչ սակաւ. և ապա կոչեաց զիս 'ի ներքս. և ահա գտաք զծերն ննջեալ խաղաղութբ, որպս թէ սպասէր լռոյ գալստեան իմոյ. և յողջագուրելն իմում զնա՝ ասէ ցիս վախճանեցն մեզմով, բարեաւ եկն աբբան իմ. և անդրէն ննջեաց։

Յայնժամ ազդ արարի 'ի տեղիսն յայնոսիկ՝ գալ 'ի թաղումն ծերոյն. և իբրև եկին և բրեին զգերեզմանն՝ ասէ ցբրօղս աշակերտ ծերոյն. արարէք սէր, և փոքր մի լայնագոյն փորեցէք, մինչև առնուլ զերկուս. Զայս ասացեալ՝ եդ զանձն 'ի վերայ փախաթին, և հանգեաւ 'ի խաղաղութե. և թաղեցաք զերկոսեանն 'ի միասին՝ զծերն և զաշակերտն նորա։

**Իսկ նք հօրն սիսոյի սքանչելի վարք և բանք սփռեալ կան 'ի գիրս հարանց վարուց. որ զաւաջինն եկաց 'ի սկիտէ Ը հօրն օրայ. և 'ի յաճախել անդ բազմութե՝ իբրև լուաւ զվախճան նք հօրն անտոնի, գնաց 'ի լեառն սրբյն**

անտառնի․ եւ եկաց անդ զամս եօթանասուն եւ երկու․ առ որ գային եղբարք իբրեւ առ հայր հոգւոց ։ Եկին եւ արխանոսք փորձել զնա․ իսկ նա ասաց աշակերտի իւրում աբրահամու ընթեռնուլ 'ի լուր նց̃ բանս ինչ 'ի գրոց սբ̃յն աթանասի․ յորմէ զամօթի հարեալ՝ մեկնեցան անտի ։

Յամեաց երբեմն սպասաւորն հօրն սիսոյի գալ առ նա ամիսս տասն․ եւ ոչ բնաւ ետես այլ մարդ, եւ ել խնդրել զնա․ եւ մինչ գնայր 'ի Ճանապարհին՝ ետես այր մի որսորդ փարանացի յանապատ, որ որսայր զայծս վայրի․ եւ ասէ ծերն․ ուստի՞ ես, եւ քանի՞ ժամանակ ունիս յայս վայրի․ իսկ նա ասէ․ հաւատա՛ հա՛յր, զի երկոտասան ամիս է՝ որ կամ աստ, եւ ո՛չ տեսի զերեսս մարդոյ բաց 'ի քէն ։ Իբրեւ լուաւ զայս ծերն, դարձաւ եմուտ 'ի սենեակ իւր, եւ ասէ․ սե՛ սիսոյի կարծէիր՝ թէ գործեցեր ինչ համբերութի․ եւ ո՛չ միոյ որսորդի Տականի չափ գործեցեր ։ Յարոյց երանելի ծերն եւ զմեռեալ մի․ այլ աղաչեաց զորս տեսինն՝ մի՛ պատմել ումեք ։ Իսկ մինչ հանդերձեալ էր փոխադրիլ յերկրէ ծք̃ հայրն սիսոյի, նստէին հարքն մերձ առ նա․ եւ լուսաւորեցան երեսք նր̃ իբրեւ զարեգակն․ եւ ասէ ցնս̃․ ահա եկն հայրն անտոնիոս․ եւ զկնի սակաւ միոյ ասէ․ ահա դասք մարգարէիցն եկին․ եւ առաւել պայծառացան երեսք նր̃․ եւ դարձեալ ասէ․ ահա բանակք առաքելոցն եկին․ եւ ապա սքանչելի իմն փայլեցին երեսք նր̃․ եւ խօսել սկսաւ

է̃ ամսոյս ։ Հարցին ցնա ծերքն ․ է̃ որոնւմ խօսիս հայր դու ․ և նա ասէ ․ ահա ժողովք հրեշտակաց եկին տանել զհոգի իմ ․ և ես աղաչեմ թողուլ զիս սակաւ մի , զի ապաշխարեցից ։ Ասեն ցնա հարքն ․ ո՛չ է պիտոյ քեզ հա՛յր ապաշխարել ․ զի դու զա̃մ զոր ինչ պարտ էր առնել՝ արարեր ։ Պնդնի եւս ծերն, և ասէ ․ հաւատացէ՛ք ինձ հա՛րք , ո՛չ գիտեմ զիս՝ թէ բնաւ սկիզբն արարի ապաշխարել ․ և երկեան որք լուանն , և փառս մատուցին այ̃ ։

Եւ ապա ասէ ծերն ․ նայեցարո՛ւք և տեսէ՛ք, ահա եկն տ̃րն , և ասէ , բերէ՛ք յիս զանօթ անապատին զայդ ։ Իբրև զայս ասաց , եղև ինքն ողջոյն իբրև փայլակն ․ և լցաւ տունն անպատմելի անուշահոտութ̃ ․ և ապա իսկոյն կատարեցաւ ․ և լի եղեն հարքն ահիւ և խնդութ̃ բազմաւ ․ և զփայլակնացեալ նշխար մարմնոյ նր̃ եղին օրհնութ̃ և մեծաւ պատուով և ողջագուրելով՝ ՚ի գերեզման անդ ։

## Հայրն Դանիէլ ։

### Վարք հարց ։

Ըստ ասացելոցս ՚ի ծաղիկն վարուց սր̃ց՝ զանազան ոք ձկնաւորք եղեն դանիէլ անուամբ ։ Առաջինն քաջածանօթ՝ է հայրն դանիէլ աշակերտ հօրն արսենիոսի՝ պատմիչ վարուց նր̃ , համանման վ̃ճպին ներքին առաքինութ̃ ․ մինչ զի ոչ̃ արանն պատմէր ինչ

ինչ ինչ ոչ զայլոց, զոր ինքն էր արարեալ, նոյնպէս և հայրն Դանիէլ ծածկէր զառաքինութիւն իւր՝ ոչ կատարեալ սկիտացի ։

Երկրորդն է աշակերտ պափնուտիոսի՝ ոչ կեփալայ, այլ բուբալայ կոչեցելոյ՝ քահանայից սկիտացւոց, և սարկաւագ նր՟. որ և բռնադատեալ՝ ի վրդպէն՝ ձեռնադրեցաւ քահանայ. այլ առ խոնարհութե՟ն տակաւին սարկաւագութի՟ և եթ առնէր հօրն պափնուտիոսի. և ըստ փափաքանաց իւրոց փոխեցաւ 'ի կենացս յայնմ պաշտաման, և ոչ եհաս լինել յաջորդ 'ի քահանայութե՟ վրդպին իւրոյ ։

Երրորդն է նշանաւոր քն՟ զառաջինսն՝ մեծն Դանիէլ աբբայ, այն է հայրն Դանիէլ սկիտացի՝ քհ՟նյ սկիտոյ 'ի վեցերորդ դարու 'ի սկիզբն թոռականութե՟ հայոց առ յուստինիանոս կայսերաւ, այր ա՟յ՝ և հոգի միայնակեցաց վերջնոց. որոյ բազում են գործք մեծամեծք ը՟ գրելոցն 'ի վարս հարանց. զի ա՟ծ 'ի ձեռն նր՟ յայտնի արար զբազումս 'ի գաղտնի ծառայից իւրոց, որոց էր հայր հոգևոր. և լի արդեամբք գնաց զկնի նց՟ ։

Այս 'ի սոցանէ է արդեօք և հայրն Դանիէլ եգիպտացի. որոյ աղօթիւք ետ ա՟ծ զաւակ ումեմն 'ի բարեպաշտից. և 'ի բամբասել անդուռն բերանոց զայրն ա՟յ, ոչ թէ ծնօղ լինել մանկանն, ետ հր՟ ծերն բերել զերեխայն քսան և հինգ օրեայ, և եհարց ցնա 'ի բազմականին, թէ ո՞ է հայր քո. և տղայն մատամբ ցուցեալ զայրն կնոջ՝ ասաց. սա է. և որք լուանն՝ փառս ետուն ա՟յ ։

## Սրապիոն Նք. ծերն :

Հ. ապրիլ. 2 : Լուսաւոր. յունուար. 25 : և Մարտ հարց :

Մի է և բազում՝ Նք Հայրն սրապիոն . զի բազումք եղեն սովին անուամբ երևելի Հարք յեգիպտոս . զոր օրինակ Հայրն սրապիոն 'ի նիտրիոյ լեռնէ, Հայրն սրապիոն աշակերտ Հօրն Թէոփնայ, և միւս այլ առաւել անուանի աբբայն սրապիոն՝ քահանայ և առաջնորդ բիւր մի միայնակեցաց 'ի կողմանս արսենոյիտայ . և սրապիոն եպս Թմուայ՝ ձեռնադրեալ 'ի սրբոյն աԹանասէ՝ այր երևելի սրբուԹբ և իմաստուԹբ : Այլ ըստ գրեցելումն մի է ազաւնի իմ, կատարեալ իմ, սքանչելի եղև քան զամենեսին՝ Նք ծերն սրապիոն, որ և աբբայ սերապիոն կմ Հայրն սրապիոն, ժամանակակից մեծին անտոնի, և մեծին մակարայ՝ իբրև աշակերտ նր . այր ազնուական՝ կոչեցեալ 'ի տնէ 'ի միայնակեցուն, և յաջողեալ յամ գործս բարիս . աղքատ հոգւով և մարմնով . մինչև չկարել իւր խրձիթ շինել, այլ շրջէր ընդ երկիրն եգիպտացւոց ոչ զամմարմին՝ առաքելական հոգւով . և այն զի գիրս ոչ գիտէր, այլ 'ի խօսելն՝ զամ գիրս 'ի բերան ունէր :

Սա վաճառեաց զինքն 'ի ծառայուԹի երկուց փողահար հեԹանոսաց . և ծառայեալ նց զերիս ամս՝ դարձոյց զնս 'ի քրիստոնեական հաւատս :

Նյս

Այս եղև յաղէքսանդրիա եգիպտոսի · անտի նաւեաց յաթէնս, և իւրով աղքատին ձեւով քարոզեաց նա զճշմարիտ իմաստասիրութի՟ն · և գտեալ անդ մանիքեցի զոմն մեծատուն՝ յազգէ լակեդեմոնացւոց, վաճառեաց և նմա զինքն 'ի ծառայ · և յետ երից ամաց դարձոյց զնա և զտունն նր՟ և մկրտեաց :

Գնաց անտի ը՟ ծով 'ի հռոմ՝ ո՛չ հաց ունելով և ո՛չ այլ ինչ կերակուր, և ո՛չ դաւազան, բայց միայն մի պարեգօտ կամ կօղօր առանց թեզանեաց, և աւետարան մի փոքրիկ · և գտեալ անդ զկուսան արգելական 'ի ի՟ե ամաց հետէ, որ ամ՟ առաքինութ՟բ էր զարդարեալ, բայց մեծ ինչ համարէր զչերևելն ումեք 'ի մարդկանէ, և կարծէր զանձն մեռեալ յ՟ծէ, կրթեաց յեւս կատարեալ առաքինութեան խոնարհութե՟ն :

Դարձաւ յաղէքսանդրիա, և տեսեալ աղքատ մի մերկ՝ որ դողայր 'ի ցրտոյ, ինքն մերկացաւ՝ տալով նմա զպարեգօտ իւր · և ասէ ոմն ցնա · հա՛յրիկ ո՞վ մերկացոյց զքեզ · նա եցոյց զաւետարանն, և ասէ · սա մերկացոյց զիս · և ապա վաճառեաց զաւետարանն, և թափեաց զոմն 'ի ձեռաց պարտատեարց :

Իբրև եկն 'ի խուցն, ասէ ցնա աշակերտն իւր զաքարիա · հա՛յր ո՞ւր է կօղօրն քո · ասէ ցնա · որդեակ առաքեցի զնա յառաջ՝ ուր պէտն էր մեզ · և նա ասէ · ո՞ւր է և փոքրիկ աւետարանն · իսկ ծերն ասէ · որ ասաց ցիս, թէ վաճառեա՛ զինչս քո և տո՛ւր աղքատաց, ես զինքն վաճառեցի, և իւրեան ետու · զի

## Սրապիոն որ ծերն ։

Հ. տարէլ. 2 ։ Բոլլանդ. յունվար. 25 ։ եւ Մարտ հարց ։

Մի է եւ բազում՝ որ հայրն սրապիոն . զի բազումք եղեն սոյին անուամբ երեւելի հարք յեգիպտոս . զոր օրինակ հայրն սրապիոն ՚ի նիտրիոյ լեռնէ , հայրն սրապիոն աշակերտ հօրն Թէոփնայ , եւ միւս այլ առաւել անուանի աբբայն սրապիոն՝ քահանայ եւ առաջնորդ բիւր մի միայնակեցաց ՚ի կողմանս արսենոյիտայ . եւ սրապիոն եպս Թմուայ՝ ձեռնադրեալ ՚ի սրբյն աԹանասէ՝ այր երեւելի սրբութբ եւ իմաստուբ ։ Բայց ըն̄ գրեցելումն՝ մի է աղաւնի իմ, կատարեալ իմ, սքանչելի եղեւ քան զամենեսին՝ որ ծերն սրապիոն , որ եւ աբբայ սերապիոն կմ̄ հայրն սրապիոն , ժամանակակից մեծին անտոնի , եւ մեծին մակարայ՝ իբրեւ աշակերտն նր̄ . այր ազնուական՝ կոչեցեալ ՚ի տն̄է ՚ի միայնակեցուն , եւ յաջողեալ յա̄մ գործս բարիս . աղքատ հոգւով եւ մարմնով . մինչեւ չկարել իւր խրձիթ շինել , այլ շրջէր ըն̄ երկիրն եգիպտացւոց ոտ̄ զանմարմին՝ առաքելական հոգւով . եւ այն զի գիրս ոչ գիտէր , այլ ՚ի խօսելն՝ զա̄մ գիրս՝ ՚ի բերան ունէր ։

Սա վաճառեաց զինքն ՚ի ծառայուն երկուց փողահար հեԹանոսաց . եւ ծառայելովն զերիս ամս՝ դարձոյց զնս ՚ի քնա̄կան հաւատս .

Բայս

Այս եղև յաղեքսանդրիա եգիպտոսի ․ անտի նաւեաց յաթէնս , և իւրով աղքատին ձևով քարոզեաց նմ̃ զճշմարիտ իմաստասիրութի̃ ․ և գտեալ անդ մանկեցի զոմն մեծատուն՝ յազգէ լակեդեմոնացւոց , վաճառեաց և նմա զինքն 'ի ծառայ ․ և յետ երից ամաց դարձոյց զնա և զտունն նր̃ և մկրտեաց ։ Անց անտի ը̃ ծով 'ի հռոմ՝ ոչ հաց ունելով և՝ ոչ այլ ինչ կերակուր , և ոչ գաւազան , բայց միայն մի պարեգօտ կամ կողոբ առանց թեզանեաց , և աւետարան մի փոքրիկ ․ և գտեալ անդ զկուսան արգելական 'ի ի̃է ամաց հետէ , որ ա̃մ առաքինութ̃ էր զարդարեալ , բայց մեծ ինչ համարէր զչերևիլն ումեք 'ի մարդկանէ , և կարծէր զանձն մեռեալ յԾէ , կրթեացյեւ կատարեալ առաքինութի̃ խոնարհութե̃ ։

Դարձաւ յաղեքսանդրիա , և տեսեալ աղքատ մի մերկ՝ որ դողայր 'ի ցրտոյ , ինքն մերկացաւ՝ տալով նմա զպարեգօտ իւր ․ և ասէ ոմն ցնա ․ հա՛յրիկ ո՞վ մերկացոյց զքեզ ․ նա եցոյց զաւետարանն , և ասէ ․ սա մերկացոյց զիս ․ և ապա վաճառեաց զաւետարանն , և թափեաց զոմն 'ի ձեռաց պարտատեարց ։ Որպէս եկն 'ի խուցն , ասէ ցնա աշակերտն իւր զաքարիա ․ հա՛յր ո՞ւր է կողոբն քո ․ ասէ ցնա ․ որդեակ առաքեցի զնա յառաջ՝ ուր պէտն էր մեզ ․ և նա ասէ ․ ո՞ւր է և փոքրիկ աւետարանն ․ իսկ ծերն ասէ ․ որ ասաց ցիս , թէ վաճառեա՛ զինչս քո և տո՛ւր աղքատաց , եւ զինքն վաճառեցի , և ետու ․ զի

Համարձակ լիցուք անդ ։

Այսմբ ծերս եղև յանապատին ամս կէ․ և է ամ ը հօրեղբօր իւրում եկաց․ զերիս ամս յոտն եկաց, և զերկուս ամս ընդ յարկաւ ոչ եմուտ․ և գտեալ զնա ոմանց արտաքոյ գեղջն՝ զի նստէր և լայր, հարցանէին զպատճառսն, թէ վմ էր այդպս լաս․ և նա ասէր․ վմ այն լամ, զի մր ունիմ․ և նա փոստահացեալ՝ ետ յիս զգանձ իւր․ և ես կորուսի զնա․ արդ չարաւ տանջելոց է զիս ։ Իսկ նք ընկենուին նմա հաց, և ասէին․ ամ երզայր կեր․ և վասն գանձուն՝ զոր կորուսեր, մծ տացէ զայն քեզ․ և նա ասէր․ ամէն ։

Այսմբ հայր սրապիոն է՝ որ առմբն աբբայ մարկոս գնացեալ առաքմամբ հրեշտակաց և ը հրեշտակս, խօսեցաւ ը նմա․ որ 'ի մարդկանէ զսա միայն կարօտեալ էր տեսանել յայնմ ժամանակի, և ամփոփել զնա՝ զառնայ անձառ ուրախութբ՝ արժանաւորել երանութեց ։ Նորանէլիս այս փոխձանեցաւ 'ի սկիտէ 'ի խցի աշակերտի իւրոյ զաքարիայի, 'ի կենդանութեան պիմէնի, արսենի, և այլոց բազմաց, 'ի սկիզբն հինգերորդ դարու ։ Սա էր ազգաւ եգիպտացի․ և 'ի միակ կողոբոյն՝ զոր արկանէր զիւրև, կոչեցաւ սինդոնազգեաց կմ կողոբաւոր ։

Մն անուանն մակարիոսի կմ մարկոսի, զոր յիշեմք 'ի տօնացուցի զկնի սրապիոնի, խնսեցաք 'ի վեր անդր ։

Պի-

## Պիմէն, որ և Հայրն պաստոր ։

### Յ. Լ. օգոստ. 27։ Ս. արք. հարանց ։

Հետևող հարցն առաքինութե՝ հնագունից ասեմ, անտոնեանց և մակարեանց, և հայր հարանց զկնի եկելոց, նը հայրն Պիմէն՝ Թարգմանի հովիւ. այն է յունարէն բիմին, և լատիներէն բասդօռ ։ Եւ էին սորա եղբարք՝ հայրն անուբ աւագ ըստ հասակի, և հայրն պամբոյ այլն սքանչելի, և պայեսիոս, Է ամ եօթն եղբարք՝ միոյ մօր որդիք կրօնաւորեցեալք 'ի լեառն սրբոյն անտոնի և 'ի սկիտէ ։ Բայց հայրն պիմէն էր նշանաւոր 'ի մէջ նոցա հոգևոր գիտունս, իբրև ղեկավար ճարտար հոգևոր կենաց, և իբրև պատգամատու յանձակայս կողմանէ ամ միայնակեցաց. կենդանի օրինակ և հայելի խոնարհութե և ամ առաքինութեց. զորմէ չէ՛ բաւական ժամանակս պատմելոյ. զի սփիւռ ծաւալեալ է լուսափայլ վարք և վկայութիւնք նորա 'ի գիրս հարանց վարուց ։ Որ և 'ի ժամանակի յարձակման բարբարոսաց եկեալ 'ի սկիտոյ հանդերձ եղբարբք իւրովք՝ եկն 'ի տեղին կոչեցեալ տերենուդ. և անդ երևի լինել վախճան մեծին պիմէնի՝ զկնի փոխման նը հօրն արսենիոսի ։

Ընդ սորին իմանամք և տօնախմբեմք և զայլ համօրէն նը հարս եգիպտացիս և զամ միայնակեացս երջանիկ դարուցն այնոցիկ՝ յա-

ւուրց անտի որ՝ լուսաւորչին մերոյ մինչև ցա-
ւուրս սբց Թարգմանչաց և աշակերտաց նց․
յորոց ոչ սակաւք եղեն նմանօղք առաքինու-
թեց հարցն սկիտացւոց 'ի հայաստան Ծի․
վնյ յօրինակս ինչ տօնացուցի կմ Ճաշոցի աստ-
դնի և յիշատակ որ հօրն Թաթլոյ և վարա-
սի ։ Իսկ անուանք սբց յովհաննիսեանց և
սիմէոնեանց յիշատակեալք 'ի պատարագա-
մատուցի , և աստ յօրինակս ինչ ինչ տօնա-
ցուցից՝ զոյգ ընդ ոսկեանց և սուքիասանց ,
կրկնակի միտս ընծայեցուցանեն․ նախ՝ իբ-
րև յովհաննեսք և սիմէոնք , և երկրորդ՝ իբ-
րև աշակերտք կամ հետևօղք յովհաննու և
սիմէոնի մեծանուն Ճգնաւորաց․ և ահա ըն
կրկին մնաց ես գտանես 'ի վարս հարանց և
'ի պատմութիւնս ազգիս այլ և այլ մեծա-
մեծ միանձունս բազումս՝ իմն յովհաննէս և
սիմէոն կոչեցեալս , հանդերձ աշակերտե-
լովք վարուց նց , 'ի դարս դարս ։ Այլ իցէ
թէ և 'ի մեզ յաշակերտեալքս աշակերտաց
նց 'ի յետին և 'ի յետնեալ ժամանակիս՝ ե-
րևեսցին նշոյլք լուսափայլ վարուց և առա-
քինութեց նց․ որպէս փայլեցոյց սքանչելա-
պէս մատն այ 'ի վիճպն մեր և 'ի նախահայրն
մխիթար աբբայհայր սեբաստացի՝ հարազատ
աշակերտ մեծին անտոնի հարանց հօր՝ հե-
ղինակի ամ կարգաց կրօնաւորաց ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ՚Ի Վերայ Նաւագրի :

(1) Թողեալ՝ զոր վասն այլոց հարց եգիպտացւոց, զբազմօրինակ ծանօթութիւնս՝ որք ունէին պատեհ ը̄ ելանել ՚ի լոյս բովանդակ մատենի հարանց վարուց, պէտք եղեն մեզ ՚ի կարգի վարուց սը̄ց գաւելոց ՚ի տօնացուցի ազգիս՝ զԵւագր Ճգնաւորին արկանել ը̄ ծանօթութը̄ . զի մի՛ տացուք զմեզ բազմաց ծաղրել, որպէս թէ զանսը̄ն իբրեւ ո̄ւր տօնէ եկեղեցի հայաստանեայց . զոր քաւ լիցի ասել . միայն թէ իմաստուն լսօղք անաչառ լուիցեն զառաջիկայս դատ Ճշմարտութե̄, որ անպատրուակելին է :

Արդ՝ յառաջ քան զնմ̄ դիւրաւ արդարանայ տօնացոյց մեր, երբ ոչ որոշէ՝ թէ ո՞ է Եւագր կմ̄ Եւագրիոս Եդեալն աշընթեր պօղայ և մակարայ, ոպ̄ և ՚ի պատարագամատուցի յիշատակեալ դնի նեղոսի և արսենի . զի ոպ̄ տեսանեմք առ քննիչս, ոչ մի Եւագր Ճգնաւոր կամ այր երեւելի եղե ՚ի չորրորդ և ՚ի հինգերորդ դարու, այլ զանազան, միայն թէ չէ՛ դիւրին քաջ որոշել զհամանուն անձինս ՚ի նոյն ՚ի դարս . օրինակ իմն՝ Բոսսինոս ասէ, թէ հայրն Եւագրիոս յիշատակեալ ՚ի սը̄յն զօսիմոսէ ՚ի հարանց վարս ոչ է պոնտացին, այլ բազմօք հնագոյն քան զնա . զնոյն կարէ ոք ասել և ըզհօրէն Եւագրէ, որ խօսակից լինի ՚ի նոյն հարանց վարս ը̄ հօրն արսենիոսի . ոպ̄ և այլ կմ̄ նոյն Եւագր խօսակից լինի ը̄ մակարայ . թող պոնտացին լիցի այն՝ ընդ որում խօսակից լինի հայրն պաղատի : Թողից ասել և զԵւագրիոս Թարգմանիչ վարուց սը̄յն անտոնի ՚ի յունէ ՚ի լատին . և զայլ գրաւոր և անգիր անուանակիցս նը̄ց :
Այլ քանզի պոնտացին Եւագր է առաւել հանդիսացեալ գրով և բանիւ, և գործ նը̄ թարգմանեալ կայ՝ ոպ̄ յայլ ազինս, նոյնպէս և ՚ի մեզ, եդեալ եւս՝ թէ անուն նը̄ իցէ մտեալ ՚ի տօնացոյց մեր, երկու պատճառք

կան

կան արդարացուցիչք ։ Առաջինն է այն, թէ աղգ մի որ ոչ երբեք գիտաց կմ լուաւ՝ եթէ կայցէ ընմանէ ամ՟ բաստանութի որոգինեան աղանդոյ. այլ միայն զնք վարս նր և զդովելի գործս իմացաւ, և ըն նմին անխիղճ 'ի կարգ սրց հարց դասեալ ։

Երկրորդ՝ զի և ամբաստանութիւն եղեալ ընդէմ նորին եւագրի պռնտացւոյ որչափ և ծանր թուէիցի յաչս ոմանց, յոչինչ համարեալ է առաջի իմաստուն կրիտիկաց, և լուծեալ և ցրեալ. մինչ զի գտանեա վէճն մնայ վէճ 'ի յետին խաւսումն, և սոյդն ոչ մնայ գիտելի ։

Գլխաւոր և առաջին դատախազ պռնտացւոյն եւագրի է առիւծն հզօր սրն հերոնիմոս. բայց ոչ աղդէ ինքն իրօք. զի կրիւք խօսի՝ գրդեալ 'ի չարախօսաց հարցն սկիտացւոց. և ոչ գտեալ արատ ինչ 'ի վրպութէ եւա՟ գրի՝ զհոմաձայնութիւս նր ևեթ եպերէ, և աշակերտ որոգինի անուանելով՝ ոչ ինչ բերէ 'ի նմանէ, որ ունի՟ ցի զհոտ որոգինեան աղանդոյ ։ Եւ զի թէոփիլոս զդէմ կալաւ հարց սկիտացւոց յուզողաց ղորոգինեան բանս, ուր պարտ էր հերոնիմոսի ցուցանել՝ թէ կէսք 'ի նցէ անմեղք էին, և կէսք շփոթապարտք, ոգւով թէոփիլո՟ սի զամենեսին 'ի մի համար դասէ. եթէ կարէր և զու՟ կեբերան բամբասէր. բայց հւովմ կարձեաց զլեզու նր ։ Միայն սուր գրիչ նր մխեցաւ 'ի սրն յովհաննէս եմայ հայրապետ ։

Արդ թէպէտև 'ի կենդանութն եւագրի ոչ անկաւ պա՟ տիւ նր կմ գրոց նր 'ի դեսին՝ բանիւք հերոնիմոսի, և աւելի քան զհարիւր և յիսուն ամ իբրև ողջամիտ վրպ և սր ճգնաւոր ծանուցաւ՝ մանաւանդ յարևելս, բայց յետ այնորիկ 'ի լինել խնդրոց ընդէմ որոգինեանց՝ ոչ միայն արևմտեայք սկսան վկայութբ հերոնիմոսի դատա՟ պարտ առնել զեւագր, այլև ոմանք յարևելեայց՝ 'ի պնդագոյնս խօսել զորոգինեանց ։

Եւ արդարև ո՞ ոչ պղտորեսցի յաստցուածոց աստի քաջ հռետորին հերոնիմոսի, 'ի Թղթ. Եբէմ. Գիրք. Գ. յառաջբ.

* Յանկարծակի հերձուածն պիւթագորայ և զենոնի, „ աբաթէյաս և անամարդիսիյաս, ցր է (սաէ) անչարչա՟ „ րելութն և անմեղանչականութն, որ երբեմն յորոգի՟ „ նէս, և արդէն յաշակերտս նր 'ի գրութնիւս, յեւա՟ „ գրիոս, և 'ի յովինիանոս խողխողեցաւ, սկսաւ կեն՟

„ դա՟

,, գանանալ . և ոչ միայն յարևմտեան, այլև յարևելեան
,, կողմանս չուել, և 'ի կղզիս կղզիս, մանաւանդ 'ի սի-
,, կիլիա և 'ի հռոդոս, և շաղախել զբազումս, և ածել
,, որ քան զօր || . եճ :

Եւս առաւել՝ յասելն 'ի թղթ. ճլգ . առ կտեսիփոն ընդ-
դէմ պելագիոսի . * Եւագրիոս պոնտացի իբերացի,
,, որ գրէ առ կուսանս, գրէ առ միայնակեացս, գրէ
,, առ այն կին՝ որոյ անունն սևութիւն (այն է մելանիա)
,, վկայ լինի խաւարի նենգաւորութե, 'ի լոյս ընծայեաց
,, գիրս և առածս բէւուն ապաթեյաս, զոր մեք (լատինք)
,, կարեմք ասել անչարչարութիւն կամ անվրդովութիւն (իմա
,, անախտութիւն), երբ ո՛չ երբէք հոգին իւիք ախտիւ
,, վրդովման շարժի . և պարզաբար ասել՝ ո՛չ թէ կամ
,, քար է, և կամ ած : Զսորա զգիրս ը՟ արևելս՝ զյու-
,, նականս, և թարգմանութբ աշակերտի նր հռուփինո-
,, սի՝ զլատինականս, յոլովք յարևմուտս՝ վերծանեն :
,, Որ (յդ հռուփինոս) գիրս ևս գրեաց՝ ո՛չ թէ յաղագս
,, միայնակեցաց . և զբազումս 'ի նմին 'ի թիւ արկանէ,
,, որք ոչ երբէք եղեն (միայնակեաց), և զորս լինել
,, ստորագրէ, որոգինեանս գոլ և յեպիսկոպոսաց դատապար-
,, տեալս (իմա 'ի թէոփիլեանց) չիք տարակոյս . յդ են
,, ամմոնիոս, եւսեբիոս, եւթիմիոս, և նոյն ինքն եւ-
,, ագրիոս, ևս և ովր և իսիդորոս, և այլք յոլովք,
,, զորս ձանձրոյթ է 'ի համար բերել : Եւ ըստ լուկրե-
,, տեան առածի, Իբերն [illegible]
,, [illegible]
,, հնաբնոյ: այնորինակ և նա (հռուփինոս) զմի միայն զյով-
,, հաննէս (եգիպտացի) եդ 'ի սկիզբն գրոցն . (զի գիրք
հռուփինոսի վն միայնակեցաց՝ սկսանի 'ի վարուց յով-
,, հաննու .) զորմէ չիք երկբայութե, թէ ուղղափառ է
,, և ճր . ո՛չ զի պատճառանօք նր զայլ հերետիկոսս՝
,, զորս եդեալն էր, 'ի ներքս մուծցէ յեկեղեցի || :

Այս այն հերոնիմոս է՝ որ և կռիւք զգածեալ ընդդէմ
հետևողաց սրբոյն մելիտոսի անտիոքայ հայրապետի, որք
երեք հիփոստասիս ասէին յերրորդութե, բողոքէր առ
դամասոս պապն՝ թէ հերետիկոսութե փակի յայդմ ձայ-
նի . մա՛հ է ասէ 'ի սանի առա . և սակայն այն իսկ եղև
դաւանութիւն ամ ուղղափառաց . ո՛չ ապաքէն և զանախ-
տութիւն հոգւոյ խնդրէին և քարոզէին ամ ուղղափառք .

զոր հերոնիմոս ջանայ իմանալ անկրականութ̄, և եպերել. և այն զի քաջ գիտէր յունարէն, պարտ էր որոշել՝ թէ ը̄ տեղւոյն այլ է παθος, և այլ է παθη. որպէս կիրք, և ախտք. արդ չէ՛ մարթ անկիր լինել, բայց ջանալոց եմք անախտ լինել. և եթէ այս անախտութ̄ կոչիցի նաև անցաւութ̄ կմ̄ անչարչարութ̄ և կմ̄ անմեղանչականութ̄, իմացեալ լինի յողջամտաց՝ անբաժ լինել ը̄ կարի յախտից և 'ի մեղաց: Եւ եթէ կամի հերոնիմոս մաքառել ը̄ հռուփինոսի, ոչ ստնանէ նովին եւագրի:

Բայց քանզի այսպիսի բանք հերոնիմեանց մնացին գրով իբրև ը̄դէմ որոգինեանց, նմին իրի յետ ժամանակաց՝ ոյք կամէին դատապարտել զորոգինեան վ̄դպութ̄, ը̄ նովին արատով արկին և զեւագր պոնտացի: Այլ այն է զարմանալի և մ̄ դիտողութ̄ արժանի, զի հինգերորդ ն̄ք ժողովն՝ որ եղև առ յուստինիանոսիւ, և դատապարտեաց զորոգինէս և զմոլար վ̄դպութ̄ նր̄, ոչ յիշեաց զեւագրիոս. այլ սակայն յետինք եղեալ 'ի մտի՝ թէ եւագր լցէ որոգինեան, իբրև զդատապարտելոյ խօսին զնմանէ: Եւ ո՞ կարէ տանել այսմ: Գիտեն մ̄ դիտնաւորք, զի 'ի հինգերորդ ժողովն չէ՛ք անուն եւագրի. ոպ̄ և փոտ՝ որ քաղէ զայն ժողով, ուղիղ գրէ 'ի ճառէնագր. ծ̄ը. այսպէս. * Վերծանեցաւ գործք ե̄ ժողո-
,, վոյն. յորս հերքեցան երեք կոչեցեալ գլուխքն. որ
,, ինչ վ̄ս որոգինի. և նզովեցաւ ինքն և չարագրածք
,, իւր. որ ինչ վ̄ս դիոդորի տարսոնացւոյ, և թէոդո-
,, րի մոպսուեստացւոյ. և ս̄ք նմանապէս նզովեցան.
,, նզովեցան և գրուածքն թէոդորետոսի ը̄դէմ կիւրղի
,, գլուխք ժ̄ը̄ ||:

Այլ սակայն՝ քանզի սոփրոնիոս պատրիարգ եմի 'ի թղթի իւրում առ սերգիոս պատրիարգ գրեալ էր ընդ որոգինի և զանուն դիդիմոսի և եւագրի իբրև համախոհից որոգինեան չարափառութ̄, և զի յետ ժամանակաց յաւուրս վեցերորդ ժողովոյն ընթերցեալ եղև յատենի այն թուղթ սոփրոնիոսի, համարեալ եղև՝ թէ դատապարտել̄ լցէ և եւագր, ոպ̄ և դիդիմոս. և այսպէս խօսին պուգոնատոս կոստանդին կայսր, և լևոն ը̄ պապն յաւուրս զ̄ ժողովոյ. տարասիոս պատրիարգ 'ի ժողովն է̄. և մարտինոս ա̄ պապ. և 'ի պատմագրաց՝ թէոփանէս և կեդրենոս. յորմէ եղև և յետնագունից

կո-

կոչել զԵւագր պարզապէս որոգինեան. և յայտ է թէ այս նմ՛ ոչինչ աւելի ազդէ քան զգաստախաղուն հերոնիմոսի: Զայս ես ոչ յանձնէ ասեմ, այլ բանիւ անաչառ քննչաց:

Ապա թողեալ զմեծամեծ գովութիւս պաղադիոսի, հռուփինոսի, գեննադիոսի, սոկրատայ, սոզոմենոսի, և այլոց բազմաց հնագունից և հարց եկեղեցւոյ՝ ՚ի վր բանից և վարուց Եւագրի իբրև զմիոյ ՚ի նշանաւոր սրբց ճգնաւորաց, յառաջ բերից միայն զվկայութն միոյ և երկուց ՚ի յետին քննչաց:

Անտոն պագիոս այրն երևելի ՚ի ծան. ճարտ. յամ 388. համար. ծգ. առ ձէ. ասէ. * Զեւագրիոս պոնտացի՝ ա-
,, շակերտ լինել գրիգորի նազիանզացւոյ վկայէ սոզո-
,, մենոս: Բազում ինչ գրեաց. որոց եթէ հատուածք
,, ինչ, և եթէ կոչմունք վկայութեանց գտանին ՚ի գիրս
,, կանոնաց, ՚ի վարս և յառածս հարանցն, ՚ի շղթայս,
,, ՚ի գիրս քաղուածոց, ՚ի պանձն ճգնաւորական, ՚ի
,, պարապմունս առ կղեմիզոս, և ես առ պաղադիոսի,
,, առ սոկրատայ, առ կղեմաքոսի, առ դորոթէոսի մաք-
,, սիմոսի, ոսկ և ՚ի դամասկացին բիւլլիոսի, և ՚ի պա-
,, ղադիոս բիգոմեան: Գրեաց գիրք մի յաղագս ութ
,, ախտից... Ճառ վճապակին յաղագս սբ երրորդութն
,, առ որս միակեցական վարեն կեանս... և Թուղթ առ
,, անատոլիոս յաղագս գործնական և գիտնական վա-
,, րուց... և գիրս գործնական. և այլ պիտառնու-
,, թի... Յայսոսիկ գիրս բազում ինչ իբր պանծալիք
,, գտանին ՚ի պէտս բարեկարգութն վարուց ||:

Այլ ճոխագոյն քննութին յետ տիլլեմոնտի առն ակնածելւոյ առ նմ՛ կրկնիոս՝ գրեաց յուստոս փոնտանինոս՝ մի ՚ի քարտուղարաց հռովմայ՝ ապպալէվիադօռ առաքելական պալատան կոչեցեալ, ՚ի գործս իւր տպագրեալս ՚ի հռովմ յամի 1742. և ընծայեալս բենեդիկտոսի ժդ. ուր ՚ի Ե գիրս պատմ. ակուիլեայ, ասէ. Այլ և այլեն եւագրիոսք համանունք ՚ի դարս հերոնիմոսի. մի եւագրիոս եպս անտիոքայ, եւագրիոս կարևոր ծանօթն յովհաննու ոսկեբերանի, և եւագրիոս երէց գալեալ ՚ի ժողովն ակուիլեայ. իսկ բան մեր է առ զեւագրէ միայնակեցէ պոնտացւոյ, որ է աշակերտեալ գրիգորի Ածաբանի, գրակարդաց մեծին բարսղի, և տարկաւագ ձեռնադրեալ —

գրեալ 'ի գրիգորէ նիւսացւոյ , առանձնացեալ յանա-
պատն նիտրիոյ և 'ի սենեակս սկիտոյ , և կրթեալ ընդ
ձեռամբ երկուց մակարաց . * ուր յաստի կենաց փո-
,, խեցաւ յամի տն 399 . յաւուր տօնի յայտնութե , ծն
,, ամաց , յետ 'ի բաց հրաժարելոյ 'ի բնաւանէ եպսութե՝
,, զոր ջանայր դնել 'ի վր նր թէոփիլոս աղեքսանդրա-
,, ցի . . . .

,, Այլ թէ քանի՞ սաստկութբ հալածեալ լինէր թէոփիլէի
,, զմիաբանակեացս՝ յորոգինեան անուան կասկածի ե-
,, ղեալս , ասացաւ այլուր : Հերոնիմոս ընդհանրապէս
,, զթէոփիլեայ կարծեաց պնդեալ երթեալ , զեւագր իբր
,, վարակեալ 'ի մոլորութիս ադամանդի ( ըստ որոգինի՝ )
,, նախ զառաջինն 'ի մէջ կարապետաց պեղագիոսի
,, թուէաց . քանզի չար էր որոգինեանէր կարծիլ՝ առ
,, 'ի լինել կասկածելի իբրև պեղագեան . . . . Եւ թէ-
,, պէտ ցանկացաւ , մանաւանդ թէ ժտեաց թէոփիլոս
,, և ընդ նմա հերոնիմոս , զի առաքելական աթոռն հաս-
,, տատեսցէ զդատապարտութե թէոփիլոսի ընդդէմ որո-
,, գինի , այլ ոչ ընկալաւ զխնդրելին . . . . Յովհաննէս
,, մօսքոս կմ սոփրոնիոս պատմութե հիւսեաց ոչ այնչափ
,, յարմար անուան եւագրի . բայց տակաւին տեսա-
,, նեմք զնա տիտղոսիւ սրբութե մեծարեալ 'ի ձեռագիրն
,, բարբերինեան , և յայլ տեղիս ևս :

,, Վր արդարացուցման այնչափ ամբաստանութեց կու-
,, տելոց 'ի վր եւագրի՝ ած է դատաւոր . առ այժմ 'ի
,, կողմն նր կայ այն , զի յանցանք որոգինականութե նաև
,, արանց սբց 'ի վր եդաւ . յորոց միջի զառաջին տե-
,, ղին ունի ոսկեբերան , որպէս յայտ է տմցն : Կարի
,, առոյգ է , թէ գրուածք եւագրի՝ որ կան , առեալ 'ի
,, վկայութե կոչին . ( և թէ՝ անախտութե կմ անչարչա-
րութին , որ վր յաւէտ մեղադրի եւագր , ուղիղ միտք
վարի և 'ի սբց հարց , յերկար ցուցանէ ) . . . . .

,, Զեւագր 'ի կենդանութե յոչ ումէք ամբաստանեալ
,, գտանեմ . ոչ և յետ մահուան ոչ ոք երբեք ամբաս-
,, տան եղև զնմանէ 'ի միջոցի հարիւր և յիսուն ամաց ,
,, բայց միայն հերոնիմոս . և ոչ իսկ նա ինքն թէոփի-
,, լոս աղեքսանդրացի՝ այլով մասամբ դառն հալածիչ
,, բազմաց 'ի միաբանակեցաց եգիպտոսի իբր որոգինեանց՝
,, իսկ և իսկ զկնի մահուան եւագրի : Իսկ հերոնիմոս

,, չաս

,, չափ համարեցաւ չհաւանիլ ը Եւագր՝ վն յարելոյ
,, նր բարեկամութ 'ի մելանիա, 'ի հռուփինոս, յամմո_
,, նիոս, և յայլ միայնակեացս՝ յորս ը ակամբ հայէր
,, Թէոփիլոս ։ Բայց սակայն՝ ոչ ոք 'ի հին մատենա_
,, գրաց առանց կանխելոյ զգովութ յիշատակեաց զԵ_
,, ւագր ․ ոչ պալլադիոս, ոչ հռուփինոս, ոչ սոկրատ ․
,, գ ․ 18 ․ ոչ սոզոմենոս ․ զ ․ 30 ․ ոչ սբն պրոսպեր 'ի
,, ժամկագր ․ և ոչ գեննադիոս ։ Առածք Եւագրի սաէպ
,, ընկալեալ են առ հարցն յունաց, առ նեղոսի, առ մաք_
,, սիմոսի, առ դամասկացւոյն ․ և ևս 'ի պատմութե
,, ճգնաւորաց ոչ գուն ուրեք վարի հեղինակութիւն
,, նր ․ ․ ․ ոմ և 'ի շղթայս հարց յունաց ․ և զնոյն յա_
,, ռաջ բերէ սբն գորոթէոս ․ գիրք ․ ժը ․ յլ ․ վիպու_
,, թեց ։ Բայց արդ՝ եթէ մի և երկու 'ի սոցանէ ( որ
,, պալլադիոս և հռուփինոս ) ոչ լաւ անուն ունին՝ իբր
,, յարեալք յորոգինէս, այսքէն յոլովք են անկաս_
,, կածելի ․ և ոչ գոյ յարաբերութ 'ի մէջ նովատիոսա_
,, կանութ՝ որ 'ի վր դնի սոկրատայ, և 'ի մէջ մոլորու_
,, թե որոգինի և պեղագիոսի ։
,, Ընթերցէր և զկանոն սբյն անատնի աբբայի զ'ի լոյս
,, ընծայեալն յաբրահամէ եկեղացւոյ ․ երես ․ 75 ․ ուր
,, կայ գովութե Երանելւոյն Եւագրի ։ Զինչ ևս ասա_
,, ցեց վարանց սբց մեծամեծաց, ը որս սերտ բարե_
,, կամութ էր ըդդեալ ․ զինչ վն երկոցունց մակարաց ․
,, զինչ զարսենիոսէ, զինչ զիսիդորոսէ պելուսիացւոյ ․
,, որոյ թուղթն մծա ․ գիրք ․ ա ․ գրեալ է առ Եւագր
,, սարկաւագ ․ (կայ և թուղթ 'ի գիմաց գրիգորի ածա_
բանի առ Եւագր միայնակեաց ) ։
,, Զոր ինչ ասացի վն նր, թէ ժողովս հինգերորդ ըն_
,, դունելի եղև յառաքելական աթոռոյն՝ միայն ըդ դա_
,, տապարտութե երից գլխոց, և ոչ Եւագրի, զնոյն
,, համատէ հեղինակութե սբյն բենեդիկտոսի անխաչ_
,, ևոյ ․ որ ոչինչ զանդգիտեաց 'ի ձայնէս անախտուն՝ Եւա_
,, գրի ; եղելոյ 'ի գիրս Եւագրի ․ այլ մանաւանդ զերիս
,, զխրատանուես նր իբրև անմոլարս և կարիօգտակարս
,, կրօնաւորական կենաց՝ փոխադրեաց յիւր կանոնա_
,, գիրս ։ Որ թողից զայն, զի գրոհածք Եւագրի այն_
,, չափ յարգի եղեն առ արևմտեայս, մինչ զի երբեմն
,, գիրք նր յաղագս մրցանաց առաքինութեց և մոլութեց՝

,, ըն

,, ընծայեցաւ գլխաւոր մ̄պաց եկեղեցւոյն լատինաց_
,, ւոց, օգոստինոսի և ամբրոսիոսի, եւս և լեւոնի պա_
,, պին, իսիդորոսի, և աւստերիոսի. տես ՚ի յաւել_
,, ուածն Զ. հատորոյ գործոց օգոստինոսի. և ն. . . .
,, Այսպիսի մի մ̄պուն եւագրի : Իսկ որ ինչ մի մա_
,, րուց նորա բանք իցեն, ապաքէն չէ՛ մարթ մատծել
,, ինչ աւելի պարզագոյն և սրբագոյն քան զպատմու_
,, ն̄ն, ը̄ որում պատմէ զայն պալագիոս, որ ինն ամ
,, ողջոյն ծանեաւ զնա ||:

Եթէ զխուէին լատին քննիչք՝ որք և յօգոյ զխուեն փաստս որսալ, թէ եկեղեցի հայոց ոչ միայն ոռնէ զեւագր, այլև ՚ի պատարագի յիշէ յանկիշատակ ժմկաց հետէ, անհրաժեշտ ապացոյց ՚ի ձեռս առնուին զայն՝ առ ապացուցանել զմի յերկուց սատի. զի թէ կամ գոյ այլ մի̄ եւագր ճգնաւոր՝ որիչ ՚ի պոնտացւոյն, և կամ թէ պոնտացին խրատմինք ջատագովլ՝ յորոց ջատագովի : Եւ ահա մեք զայս ևեթ կամեցաք ակն յայտնի նշանակել, և ոչ եթէ մխիլ ՚ի խնդիրս ստորապարտս. զի մի լուծիցուք զխրատացն կշտամբուն զրիգոր կաթուղիկոսին մերոյ, թէ զի՞ է ազգի մերում թեկն ածել օտարանձանց ը̄ կռուով եղելոց՝ իբրև սր̄ց. մինթէ զուճնցի՞ք էին նոքա, կմ̄ վաւերշապատեցիք. և ն: Այս մեզ ազգիս անաչառ քննել զնմ̄ ասացեալս, և ըստ նմին առնել՝ զոր արժանն է :





# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Նիկողայոսի սքանչելագործ հայրապետին զմիւռնայ , ք̃ղ միւռայ ։

Հ․ դեկտ․ 11 ։ Տն էէլ և ճառընտիր․ դեկտ․ 6 ։ Յ․ Լ․ դեկտ․ 6 ։ Ղուկաս․ Ա․ ԾԶ=ԾԷ ։ Ի․ ՃՅ=ՃՅԷ ։ Գ․ ոժը=ոլէ․ և Ն․ ոժէ=ոլ ։ Մենոլոգ․ առ սուր․ դեկ․ 6 ։ Մեծ ղեպքոս փաջանու Նեքէ․ Նեկող ։ և այլք ։ (1)



ԱՇԽԱՐՀԱՔԱՐՈԶ և ամենահռչակ՛նք հայրապետն Նիկողայոս սքանչելագործ , ՛ի սկզբանէ և այսր մեծապէս մեծարեալ յարևելս և յարևմուտս , և առագահաս օգնականութ՛ն ո՛պ հրեշտակ ազատարար կարդացեալ ՛ը ծով և ՛ը ցամաք , յապուշ կրթէ զգրիչս վարուց ն՛ր՝ թող թէ զընթերցօղս , եթէ զիա՛րդ մարթասցին բովանդակել զգործս ն՛ր զմեծամեծս ՛ի ծննդենէ մինչև ՛ի փոխումն ՛ի կենաց , ո՛պ և զանբաւութիւն հրաշիցն՝ որ ՛ի կենդանութե՛ն և յետ մահուան ։ Այլ այս այնչափ , զի ոչ ոք յառաջնոց կմ՛ ՛ի յետնոց մարթացաւ զլիակատար պատմութի՛ն ն՛ր տիրապէս ծաղկաքաղութ՛ գլխաւորել․ այլ է՛ որ զայս , և է՛ որ զայն մասն

վարուց կա՛մ զգործս կա՛մ զսքանչելիս նր̃ արձա-
նագրեաց , և կա՛մ ներբողենի՛ դրուատեալ
սակաւուք զբազմամբ յայտնի կացոյց ։

Այս առցես ինձ օրինակ զսկիզբն բանից
սր̃յն պետրոսի դամիանոսի ( որ էր ժամակից
սր̃յն գրիգորի վկայասիրի 'ի ժա̃ դարու ) 'ի
ներբողեան սքանչելագործ Հայրապետիս ,
ասելով ․ * Նիկողայոս՝ իմ , մանաւանդ թէ՝
և ձեր , ընտրեալ յորովայնէ , ո՞ք 'ի մանկու-
թէ̃ , պարծանք երիտասարդաց , պատի՛ ծե-
րոց ․ քահանայից փառք , քահանայապետաց
պայծառութի̃ , զժողով ձեր իւրովն ուրախ
առնէ տօնախմբութե̃ ։ Նայս այն Նիկողայոս
է , որոյ սքանչելիք զեղուն ը̃ ա̃մ լայնութի̃
ծի , զոր գովեն տիեզերք և ա̃մ բնակեալքն
'ի նմ̃ ։ Ո̃ զի այնչափ և այնքան հրաշք են
նր̃ յաճախութե̃ , զի ոչ հանճար գրագրաց
առհասարակ բաւական լինին 'ի դրոշմել , և
ո՛չ մեք 'ի վերծանել ․․․ քանզի փառաւորու̃
խոստովանող հայրապետիս յաղթէ ձայնի և
մտաց , լեզուի և գիտակցութե̃ ։ Ո̃ զի ա-
ճեն օր քան զօր սքանչելիքն , և ոչ դադարէ
հոգի ա̃յ առ 'ի յիշատակէ զօրականին իւրոյ
համապազորդել զիւր հրաշս ։ Փառաւորի 'ի
ծովու , գովի 'ի ցամաքի , կարդացեալ լինի
յա̃մ 'ի վտանգս ։ Այլ ի՞նչ ասեմ 'ի ծով նա-
ւուք ․․․ ն̃ք անցեն զգործս ա̃ն , և զնիկո-
ղայոսի ա̃ն զսքանչելիս 'ի խորս ․․․․ Նմօք
ունի առիթս բերկրանաց , իբրև զի ման-
կունք զմանուկն գովեսցեն զպահեցող ․ երի-
տասարդք զերիտասարդն աղատարար երի-

տա-

տասարդաց ․ կուսանք զփրկանակն կեղտ ան-ուա՛ն կուսից ․ ծերք զկարեկիցն կարեաց ծերոց ․․․ Այլ արդ յետ հանդիսապէս քարոզելոյ գործոց նր՟ գեղապանծ լեզուօք յունաց՝ զի՞նչ ևս համարձակի թոթովել բանս աղքատին ‖ ։

Արդ 'ի բազմապատիկ յունական գրութե՟ց անտի վարուց սբ՟յն Նիկողայոսի՝ երեքկին և չորեքկին օրինակք կան և 'ի զանազան ձառընտիրս մեր ․ յորս գլխաւորն՝ որ այն իսկ է թարգմանեալն 'ի վկայասիրէն , է գործ ուրումն 'ի նախնեաց՝ երախտաւորելոյ 'ի սբ՟յն Նիկողայոսէ սքանչելեօք ․ որ այսպէս սկսանի խօսել 'ի յառաջաբանի իւրում ․ ✻ Օ ամ՟ սբ՟ս և զերջանիկ ընտրե՟լս ոյ՟ գովել և պատուել ամենեցուն արժան է , և զյիշատակս նց՟ գովասանութ՟բ կատարել ․․․ և 'ի նց՟է դարձեալ զայնոսիկ՝ որք նշանօք ևս պայծառագոյնք ․․․ խնամակալք և ապաստանք կենաց մարդկան ․ յորոց մի է՝ գլուխ և առաջին ք՟ զայլսն՝ մեծս այս և լուսաւորիչ քահանայապետս՝ սքանչելագործ հռչակաւոր ․ և առաջնորդութ՟բ համբաւեալ , մեծ և բազմասքանչ անուն՝ արագահաս օգնական ․ որ 'ի ծագաց մինչև 'ի ծագս եր՟ի քարոզելով մեծանայ և փառաւորի ․․․ Ազգք և լեզուք , ամ՟ հասակ և ամ՟ որդիք մարկան՝ օգնական զսա 'ի վիշտս և 'ի փորձութիս կոչեն ․ ․ ․ քանզի թէ և 'ի պատկեր նշանագրի , կամ աղօթիւք յիշեալ լինի , և եթէ միայն անուա՛մբ կոչեսցի , ժամանէ ամ՟ ուրեք , սքանչելագոր-



ծէ ,

ծէ, հանապազ օգնէ իւրաքանչիւր ումեք անպակաս . . . և յամ յՃէ աներկբայ առնու վկայութի՛ն յարաժամ առ ամենեսեան

բարեգործելով . . . . .

Բազումք յառաջնոցն և յայժմու արանց՝ ոմանք բանիւք գովասանութե՛ զհռչակաւոր զայրս զայս զմեծս Նիկողայոս գովեցին . և այլք փոքր 'ի շատէ մասնաւոր զարմանազան սքանչելեաց նորա պատմութի արարին . և կէսք դարձեալ զսքանչելի գործս նորա, որ յաճախապէս յիշեալ լինի ամ ուրեք . . . . Եւ ես իսկ 'ի փորձանս և 'ի նեղութիս եղեալ յոլովակի վայելեցի յարագահաս նորա օգնականութեն, և պարտական նորա մեծութեն կացի . . յոյժ ամաչելով 'ի հրամայողացն՝ հարկեցայ գրել (զլիակատար պատմութի սրբոյն) ։ Արդ յարձակ բանից այսր գրչի՝ համեմատութե այլևայլ ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, քաղեմք և մեք զառաջիկայ վարս ։

Հռչակաւորս այս և երջանիկ քահանայապետս Նիկողայոս՝ այն է ըստ յունականին Նիկոլաոս, յաղթող ժողովուրդ. կամ ժողովըրդեան՝ թարգմանեալ, էր ծննդեամբ ասիացի՝ 'ի լիկիացւոց նահանգէ, 'ի քաղաքէն միւռիոյ, կամ ըստ ոմանց՝ 'ի պանթեռայ, կամ 'ի պատարայ՝ որ մօտ է 'ի միւռա կամ 'ի զմիւռին, ոչինչ հեռի 'ի զմիւռնիայ կամ սմիւռնայ քաղաքէն յոնիոյ, որ յիզմիրէ ։ Անուն հօր նորա եպիփան, և մօրն նոննէ կամ նոննիս, որք գրեթէ 'ի ծերութե ընկալան ուխտիւք զաւակ միամօր զնիկողայոս՝ յորովայնէ սրբեալ,

և

և նախ քան զյղանալն ընտրեալ յԱյ ։ Եւ ածային յայտնութիւն յաղագս սբյս այսորիկ առ ծնողսն նր կատարէր ։ Քզի իբրև ծնաւ , և եղև եօթնօրեայ , մատուցեալ ոմանց առ 'ի գայեկել՝ տեսին , զի կանգնեցաւ 'ի վր ոտից իւրոց 'ի քնարանի անդ՝ գրեթէ իբրև ժամս երկուս ։ և այնուհետև բարեպաշտու- հի մայր նր ոչ 'ի նոր սամուել հայէր 'ի նա , և սնուցանէր ըստ այ ։ Եւ 'ի դիեցուցանել նմ զդարմանս կաթին՝ յաւելանէ և այլ սքան- չելիք ։ զի 'ի չորեքշաբաթի և յուրբաթի՝ միանգամ՝ միայն առնոյր զստինսն 'ի մօրէն յինն ժամուն ։

Եւ էր եղբայրն նոննեայ՝ քեռի Նիկողայոսի մանկանն՝ տր Նիկողայոս եպս միւռոյ՝ այր սբ և ընտրեալ առաջի այ ։ վսյ իբրև պատմե- ցին նմա վն սքանչելի ծննդեան և զարմա- նալի սննդեան քեռորդւոյ իւրոյ՝ իւրումն ան- ուանակցի , գոհանայր զայ ուրախութբ մե- ծաւ ։ և ինքն պատմէր ամենեցուն՝ զոր ե- ցոյց նմ տր տեսլեամբ 'ի ձեռն հրեշտակին՝ վն երանելի մանկանն նիկողայոսի 'ի քն յա- ռաջադիմութեն ։ և ասէր ։ նոր արեգակն տեսանեմ ծագեալ յերկիր ։ երանելի է հօտն՝ որ հանդերձեալ է այսպիսի ունել հովիւ ։

Իբրև եղև մանուկն ամաց հնգից , ածեցին և ընդ նմա առաքինութե շնորհքն ։ ետուն զնա 'ի պատուական դպիր ուսուցանել նմա գիր ։ և եղև 'ի միում աւուր՝ յորժամ երթայր նա 'ի դպրոցն , պատահեաց նմ կին մի 'ի գեղջէ անտի մօտ 'ի քաղաքն , անուն նորա նոննիս ,

գօսացեալ ոտիւք և տառապեալ յոյժ ․ ա-
ղաչէր զմանուկն՝ զի հանդիպեսցի բժշկութե ․
և նր աղօթս արարեալ, և կնքեալ զնա նշա-
նաւ խաչին՝ ազատեաց յախտէն ։

Իսկ իբրև տեսին ածասէր ծնողքն զպատա-
նեակն Նիկողայոս 'ի դուզնաքեայ ժամանա-
կի բաւականապէս լցեալ իմաստութբ հոգ-
ւոյն, ապա խորհուրդ 'ի մէջ առեալ ը նը-
քեռւոյ նր անն Նիկողայոսի՝ զառնեալն յոյ
իբրև զպտուղ ոք ընծայեցին 'ի կղերիկոսու-
թն եկեղեցւոյ սբյ ։ Որ և պաշտեալ ամ
սրբութբ և անարատ քաղաքավարութբ իբ-
րև հրեշտակ 'ի մարմնի՝ ձեռնադրեցաւ քա-
հանայ իննևտասն ամաց՝ յեկեղեցի սբյն սիո-
նի, զոր շինեալ էր քեռւոյ նորա գեղեցկա-
զարդ տաճար այ ․ և յետ սակաւուց յորժամ
գնաց Նիկողայոս եպսն վն ուխտի յէմ, ըզ-
հոգս եկեղեցւոյ յանձն արար երկուց եղ-
բարց իւրոց՝ արտեմեայ և երմիանի, որք էին
վանաց երիցունք, ը քեռորդւոյ իւրում Նի-
կողայոսի քահանայի ․ վն այլք համարին
զնա և հայր վանաց լեալ ։

Յետ այսորիկ իբրև վախճանեցան ծնօղք
Նիկողայոսի քահանայի, եղեւ ժառանգ ըն-
չից բազմաց՝ լռելեայն բաշխէր զամն աղքա-
տաց ․ և արար նաև զայսպիսի գործ ողոր-
մութե 'ի փրկութն հոգւոյ ․ լուեալ թէ այր
մի մեծատուն 'ի քաղաքին տնանկացեալ, և
անձեռնհաս գտեալ տալ զերեսին դստերս
իւր արանց՝ ըս աստիճանի իւրում առաջնոյ,
խորհէր 'ի պոռնկատուն դնել զկոյս աղջ-
կունսն ։

կուսանն ։ Յայնժամ փութացաւ եկաւ սրբն Նիկողայոս ընդ իւր ոսկի 'ի ծածուկ, որչափ բաւական լինէր 'ի պէտս հարսանեաց անդրանիկ դստեր առն. և տարեալ 'ի գիշերի՝ ընկէց զծրարն ընդ պատուհան ։ Իսկ իբրև այգ եղև, և ետես այրն զծրար ոսկւոյն 'ի յատակս տան իւրոյ, հիանայր՝ թէ ուստի՞ իցէ. համարէր պարգև այ. և այնու ամուսնացոյց զառաջին դուստր իւր ։ Իբրև գիտաց Նիկողայոս՝ թէ 'ի բարի գործ կատարեցաւ ողորմութիւն, միւսանգամ ընկէց 'ի գիշերի այլ ծրար. և առեալ հայրն հարսնացոյց և զերկրորդն 'ի դստերաց ։ Իսկ յորժամ զերրորդ դստերն զմանն ձգեաց սրբն 'ի սովորական տեղին, իմացեալ առն՝ փութապէս եհաս զկնի Նիկողայոսի. և անկեալ յոտս նր՝ գոհանայր, և փրկիչ հոգւոց և մարմնոց կոչէր զնա. և սրբն պատուիրեաց մի ումեք ասել մինչև 'ի մահ իւր ։

Եհատ սրբն Նիկողայոս և զնոճի ծառ մի, որոյ լայնութիւն էր երեք կանգուն և կէս, իսկ երկայնութիւն քառասուն կանգուն. յորում բունեղէին դևք և զարհուրեցուցանէին ըզգեղջուկս՝ առնուլ պաշտօն 'ի նոցանէ. ետ սղոցել զտախտակս նորա, և տանել 'ի պէտս սրբյն սիոնի ։ Արբեաց աղօթիւք և զջուր աղբերն, յոր ընկղմել էր կին մի այսահար. բղխեցոյց և այլ աղբիւր բարեհամ 'ի լերին ։ Եբերին այր մի առ սրբն կապեալ կրկին շըղթայիւք՝ Նիկողայոս անուն, որ ունէր այսհար, և ընկեցին առ ոտս սրբյն. և նր գթա-

ցեալ՝ ասէ. արձակեցէք զկապեալսդ, և մի՛ երկնչիք. զի ո՛ր մերձ է օգնել դմա. և ասեն. յորժամ արձակեմք, փախչի, և ոչ ոք կարէ ժամանել զհետ նր. ասէ սբն. առաջի՛ թէ արձակեցէք զդա, և թողէք երթալ 'ի խաղաղութի. և այնպէս բժշկեալ՝ գնաց այրն 'ի տուն իւր ուրախութբ։

Իսկ երանելին Նիկողայոս քահանայ կամեցեալ փախչել 'ի փառաց, միանգամայն և առանձնանալ միայնակեցութբ յանապատն եգիպտոսի՝ որ յայնժամ ծաղկէր ընդ առաջնորդութբ մեծին անտոնի աբբայի, պատրաստեաց յեղծմ երթալ. ընդ որում և փափաքէր երկրպագանել տր տեղեացն։ Եւ եղև 'ի միջածովել նաւին՝ ետես սբն, զի հակառակորդն սատանայ ունէր 'ի ձեռին իւրում սուր երկսայրի, և շրջէր զնաւուն և սպառնայր, մինչև 'ի կտրել զմալուխս առագաստին. և սբն պատմեաց զտեսիլն՝ որոց էին 'ի նաւին. և ասէ. որդեակք ամենեքեան յաղօթս կացէք. քանզի բարկութի մեծ հասանել կամի 'ի վր մեր։ Եւ ահա յետ երեկոյեան աղօթիցն յանկարծակի եղև մրրիկ յոյժ և հողմ սաստիկ և ալեկոծութի մեծ 'ի ծովուն. մինչև անկանել խաչին՝ որ կայր 'ի գլուխ կայմի նաւուն. և մերձ լինել ընկղմել յերեսաց ալեաց. վյոյ ամենեքին՝ որ 'ի նաւին, զահի հարեալք անկանէին արտասուօք առ ոտս սբյն։ Իսկ նա ասէ. մերձ է ո՛ր առ ամենեսեան՝ որ կարդան առ նա որդեակք. և յաղօթել սբյն՝ դադարեաց հողմն և մրրիկն, և եղև

խա-

Նիկողայոսի հայրապետին ։

խաղաղութիւն ։

Սակայն ոչ դադարեաց բանսարկուն 'ի խռովելոյ զնաւորդս . զի յորժամ եւ երիտասարդ մի ամոքին անուն հրամանաւ սրբոյն 'ի վերայ առեանն , զի հաստատեսցէ զխաչն 'ի տեղի իւր , յիջանել անդ նորա՝ ընկէց զնա սատանայ 'ի վայր , և մեռաւ . և ամենեքեան սուգ մեծ առին 'ի վերայ մանկանն , և ողբային անմխիթար ։ Իսկ սուրբն Նիկողայոս ասէ . մի այդպէս ողբայք , այլ աղաչեցէք զաստուած՝ զի կենդանասցի յամօթ դիւին . և իբրև մերձեցաւ սուրբն առ մեռեալն , և արար աղօթս , զարթեաւ պատանին ողջ 'ի քնոյ . և առհասարակ փառաւոր առնէին զաստուած ։

Իբրև հասին յաղեքսանդրիա , նաւավարք համբաւեցին զսքանչելիս սրբոյն . վասն որոյ զեղաւ զնովաւ ամբոխն . և բերէին առ նա զախտաժէտս . և նա աղօթիւք բժշկեաց զամենեսին . ընդ որս և զկոյր մի անտոնիոս անուն առ դուրս տաճարի՝ օծել ձիթով ճրագի եկեղեցւոյն ։ Նաւ յետ շրջելոյ աւուրս քանի մի 'ի կողմանս եգիպտոսի՝ գնաց երանելին յերուսաղէմ , և երկիրեպագ սրբոց տեղեաց , ընդ ոմանց՝ և պատուական խաչին . զի համարին զերթ նորա լինել զկնի գիւտի խաչին 'ի ձեռն հեղինեայ . և այն ինչ խորհէր դեգերիլ յայն տեղիս , և առանձնանալ յանապատ , երևեցաւ նմա հրեշտակ տեառն , և ասէ . դարձ 'ի տեղի քո , և մի թողուր զեկեղեցիդ . և այնպէս եմուտ անդրէն 'ի նաւ . և դարձեալ աղօթիւք ազատեալ զնաւն յալեկոծութենէ եհաս խա-

ղա-

ղաղութ͞ն 'ի միւռա լիւկիոյ :

Սա ելեալ ͞է առաջն͞ր եղբարք վանաց և ե-կեղեցւոյն իւրոյ՝ ուրախ եղեն յոյժ ։ և յետ աւուրց 'ի շինել սը͞յն զաղօթարան՝ ասաց իւ-րոցն պատրաստել արուեստաւորաց ընթրիս ։ և զի ոչ գոյր հաց, բայց միայն նկանակ մի, առեալ զայն սը͞յն 'ի ձեռս՝ օրհնեաց և մանրեաց առաջի ութսուն և երեք արանց ։ կե-րան ամենեքեան և յագեցան, և յաւելաւ 'ի կերողացն՝ յինն սեղանոյ երեք զամբիղ լի ։ արար և զայլ սքանչելիս 'ի պտղաբերութի անդոց յամհաննու վաստակաւորի :

Սա եղև 'ի միում յաւուրց 'ի նիրհել սը͞յն 'ի սենեկի իւրում, ետես այր մի լուսաւոր նըս-տեալ 'ի վ͞ր երիվարի, և 'ի ձեռին ն͞ր երեք մանգաղք հնձոց ։ հարցանէ՝ եթէ 'ի հը-նձողաց աշխատելոց իցէ ։ ասէ ցնա 'ի պաշտօ-նէից ։ բեր գմա երիս նկանակս հաց ։ և նա ոչ կամէր տալ յօժարութ͞բ ։ վ͞ոյ ասէ նիկո-ղայոս ։ արդ երկու աղաւնիս առցէ և գնաս-ցէ ։ և ն͞ր առեալ զաղաւնիսն՝ եթող զմի 'ի մանգաղաց 'ի ձեռս նիկողայոսի, և ասէ ։ հասկ հնձոց հանդերձեալ է գալ 'ի վ͞ր ծի ։ պարտ է քեզ ունել զէն առ 'ի կնքել ըղ-հունձս, և աւանդել ͞տն ։ զայս ասացեալ թռեաւ երիվարաւն :

Զարթուցեալ նիկողայոսի, և դարձեալ այլ տեսիլ տեսանէր ։ զի մեծ սեղանն եկե-ղեցւոյ անշքացեալ էր, և առաստաղն յաջ-մէ կողմանէ յերկուս հերձեալ ։ ուստի կա-թեալ էր անձրև, և ջուրն ժողովեալ առ

մեծ

մեծ դուռն՝ արտաքս ելանել ։ Եւ յաճի-լեալ 'ի նմին՝ աղաչէր զՏէր յայտնել նմա զխորհուրդս տեսլեանն ։ Ապա զկնի աւուրց եօթանց երեւեցաւ նմա այր հրեշտակ 'ի ձեւ աւաջնոյ ․ եւ ասէ ․ ես եմ միքայէլ՝ որ հանապազ կամ եւ պահեմ զքեզ ․ եւ այժմ առաքեցայ 'ի Տեառնէ յայտնել քեզ՝ զոր ինչ հանդերձեալ է անցանել ԺԵ ամս ․ եւ պատմեաց նմա զպատառումն եկեղեցւոյ յերեսաց արիանոսաց ժամանակին ․ իսկ խորհուրդ մանգաղին ասէ՝ որ տեսար քեզ, այս է ․ օժանդակել քեզ 'ի հունձոն՝ աղօթս առնելով վն հոգւոց, որ հանդերձեալ են աւանդիլ 'ի ձեռս այ յԴէս լիկացւոց ։ Ասէ Նիկողայոս ․ Ես այր մեղաւոր եմ, զիարդ կարեմ այդպէս օգնել ․ Եւ հրեշտակն ասէ ․ մանգաղն՝ զոր տեսեր, զօրութիւն այ է ․ եւ նովաւ աւանդես զհոգիս մարդկան առ ած ․ զի ահա հունձք մերձեալ են, որ է մահ մարդկան ։

Եւ ահա իբրեւ անցին աւուրք քառասուն եւ հինգ, եհաս մարդկան մահտարաժամ, ընկիզեն արարեալ 'ի միւսոյ քաղաքէն ․ զի կալեալ զնս ցաւ այսմանն փողից՝ փութապէս աւանդէր զհոգիս նոցա ․ Եւ յետ այնորիկ եհաս կարօտութիւն հացի, զի 'ի բաց կացին վաճառականքն յիջանելոյ 'ի քաղաքն ։ Իսկ երանելին Նիկողայոս ոչ դադարէր բարեգործել ամենեցուն առատապէս՝ մատակարարելով զպէտս հոգւոյ եւ մարմնոյ, արագահաս առ 'ի փրկութիւն, եւ լսող այնոցիկ՝ որ 'ի նեղութիս, հանդերձ նշանօք սքանչելեաց ․

Մե

Մեռեալ էր յայնժամ քեռի նր Նիկողայոս եպս, կմ յաջորդն իւր նր 'ի միւռա ։

Այս երևեցաւ Նիկողայոսի քահանայի յանուրջս զօրութի իմն ածեղէն. և եցոյց նմա աթոռ փառաւոր և զգեստ պատուական քահանայապետութե. և ետև նմա հրաման նստել 'ի վր աթոռոյն ։ Եւր 'ի վերայ բերէ պատմաբանն. * ոչ թէ յանուրջս միայն, այլ ոմ ունիմ ասել, յայտնապէս երևեալ նմա տր յս քս հանդերձ ոբ և ածածին կուսիւ, մինն տայ նմ զաւետարանն, իսկ միւսն զքահանայապետութեն վերարկուն. որ և մինչև ցայսօր կենդանագրեալ 'ի տախտակս 'ի պաշտօնատեղւ արանց՝ երկրպագելի պատկեր երանելոյն ||։ Այս զկնի այսմ ածային տեսլեանս՝ ոչ եղև միջոց ինչ բազում, և անդէն ըս վախճանելոյն տյ՝ 'ի ձեռն ժողովոյ եպսաց բռնադատել ընկալաւ մեծն Նիկողայոս ըղձեռնադրութի եպսութե և զառաջնորդականն վերակացութի միւռիոյ մեծի մայրաքաղաքին, որ և զմիւռին ասի՝ մերձ 'ի զմիւռնիա ։

Լինէր այնուհետև հօտապետ քաջ՝ բանաւոր հօտին քի. և ածային շարժմամբ խընդրէր զարժանիս սպասաւորութե հոգւոյն գալ 'ի քահանայական պատիւ. քարոզէր և ինքն զաւետարանն շնորհաց ուղղափառապէս և առաքելադաւան. և ուսուցանէր ժողովրդեանն տն զհամագոյ և զմիասնական նա երրորդութին, ունել 'ի մտի զածաբանութի ճշմարիտ, և 'ի բաց կալ 'ի հայհոյութեց

ածա

ա̃ծամարտիցն արիոսական և սաբէլական հե-
րեսիովտաց, որ 'ի ժամանակին յայնմիկ զտի-
եզերականն ընկղմէին զնաւ՝ զանհաստատսն
յանդունդս խորոց իջուցանելով ։

Թող և զյառաջագոյն հալածանս դիոկղե-
տիանոսեանց հեթանոս կայսերաց . առ ո-
րովք և ս̃բն Նիկողայոս 'ի բանտ և 'ի կապանս
և յաքսորանս մատնեցաւ վ̃ս անուանն ք̃սի,
և մարտիրոսական ձգանց համբեր, վտանգս
և վիշտս և հալածանս վ̃ս ք̃սի ընկալեալ .
այլ 'ի բառնալ ա̃յ յերեսաց մեծին կոստան-
դիանոսի զա̃մ բռնաւորս՝ դառնայ 'ի տեղի
իւր ը̃ արքունի հրովարտակին . և սրբէ ըզ-
գաւառ իւր յա̃մ պղծութենէ հեթանոսական
պաշտաման՝ քակելով 'ի հիմանց զբագինն
արտեմեայ, որ 'ի միւռիա . մինչև յայտնա-
պէս աղաղակել դիւաց, թէ յաղթեցաք 'ի
նմանէ, և արտաքսեցաք 'ի բնակութենէս մերմէ ։
Այլ 'ի լինել ս̃բ և տիեզերական ժողովոյն
Նիկիոյ ը̃դէմ արիոսի պղծոյն՝ մի էր 'ի մե-
ծամեծ և յառաքելանման հարց անտի ս̃բ
հայրապետն Նիկողայոս . որ և եկեալ յա-
թոռ իւր՝ պարսպէր զհօտ իւր ամրափակ կա-
նոնօք սուրբհոգւոյն . և փառաւորեալ լինէր
յամենեցունց վ̃ս սքանչելեացն ։ Հեզ էր առ
մեղուցեալս՝ որ յապաշխարութիւն դառնային .
խիստ առ հեշտասէրսն և արհամարհօղս պատ-
ուիրանացն ա̃յ սաստկագոյն երևէր անակն-
առու յանդիմանութ̃բ . աղքատասէր էր և
ողորմած, այլ անխնայ յանձն իւր . զի ոչ
երբէք պակաս առնէր զսովորական ձգնու-
թիւնս

թիւնս իւր և զաղօթս և զպահս՝ միանգամ ևեթ յաւուր ճաշակելով նաև յետպութե ։

'Ի ժամանակին յայնմիկ եղև սով յասիա , և քաղաքին միւռոյ պակասէին պէտք կերակրոյ ։ իսկ մեծն նիկողայոս՝ որ բազում ունէր հոգս վ̃ն իւրոյ հօտին , զօրութբ̃ տ̃ն երևեցաւ 'ի ծովուն նաւապետի ումեմն՝ որ բարձեալ տանէր բազմութի ցորենոյ 'ի սիկիլիայ կղզւոյն 'ի սպանիա ։ և իբրև վաճառական պայման եդեալ ընդ նմա բանի՝ ետ ցնա և դահեկանս երիս՝ ասելով ։ զառհաւատչեայդ ընկալ , և նաւեա յասիա հանդէպ քաղաքին միւռոյ ։ Իսկ նաւապետն համարէր՝ թէ յանուրջս իցէ ։ այլ իբրև զարթեաւ 'ի քնոյ անտի , ետես՝ զի ոչ էր անուրջք և ոչ առ աչօք , այլ ճշմարտութբ̃ ։ քանզի ունէր 'ի ձեռին իւրում զերիս դահեկանսն ։ և զահի հարեալ զարմացաւ ։ և փաղփաղակի դարձոյց զնաւն , և դիմեալ եհաս 'ի նաւահանգիստն միւռոյ ։ որով շահեցաւ բազումս , և էլից զպէտս քաղաքին ։ այսպէս նիկողայոս 'ի մարմնի հրեշտակապէս երևէր ։

Ընդ աւուրսն է̃ այնոսիկ 'ի լինել խռովութե 'ի լերինն փռիւգիա 'ի մէջ փաղընացւոց՝ առաքեաց կոստանդիանոս թգ̃ր 'ի խաղաղացուցանել զն̃ն երիս ստրատելատս , որոց անուանք էին նեպոտիանոս , ուրսոս և երպիղիոն՝ հանդերձ զօրօք ։ և իբրև ելին ս̃ք 'ի նաւահանգիստն անդրիակի , որ իբրև չորս մղոնաւ հեռի էր 'ի միւռոյ , մնացին անդ աւուրս քանի մի՝ սպասել հողմոյն յաջողակութե ։

կուն ․ իսկ զօրք նց սկսան առնել յափշտա-
կութիւն և հարստահարութիւն ․ վսյ եհաս
անդր երանելւոյն Նիկողայոս , և խրատեալ
դադարեցոյց զնս յանզգամութէ և հրաւիրեաց
զստրատելատսն գալ ընդ իւր և ճաշել և հանգ-
չել 'ի միասին ։ Մինչ յայս կայր տր հայ-
րապետն , եհաս գուժկան զինի նր 'ի մի-
ասին՝ թէ վերակացու քաղաքին , որ էր ստա-
թէոս զօրավար ամիր , կաշառս առեալ յոք-
սրոսէ և 'ի սխմէնէ՝ որք էին փառաւորք քա-
ղաքին , առանց պատճառանաց 'ի սպանումն
որոյ դատակնքեաց զերիս արս անպարտս ։
Յայնժամ հրեշտակահանդէտ արագահաս
տր հայրապետն զհեռագնաց ճանապարհն
փութապէս հատեալ՝ յական թօթափել ե-
հաս 'ի տեղին , եգիտ զպրպարտեալսն խո-
նարհեալ 'ի զէնումն՝ ձեռս յետս կապեալս ,
և աչք նոցա պատեալ կտաւով ․ և արիաբար
յափշտակեալ 'ի դահճացն զսուրն՝ ձգեաց
յերկիր , և արձակեալ զարսն 'ի կապանաց՝
հիացոյց զամ տեսօղս , և զդահիճսն զարհու-
րեցոյց սպառնալեօք ․ և նովին համարձա-
կութբ եկեալ առ իշխանն՝ սպառնայր նմա
յոյժ՝ գրել առ բարեպաշտ թգրն վս անօրէ-
նութեն նր ․ ապա թէ ոչ ասէ՝ ես պատրաստ
եմ մեռանիլ փոխանակ անպարտիցս այսո-
ցիկ ․ և այնպէս ազատեաց զերիս անմեղս ։
Նաև երեքին ստրատելատք նախաճառեալք
յետ տեսանելոյ զառաքինի գործս սրբյն Նի-
կողայոսի և զմարդասիրութի նր՝ երկրպա-
գեալ նմին՝ գնացին 'ի Փռիւգիա ․ և կատա-
րեալ

րեալ զգործն արքունի՝ դարձան փառօք 'ի կոստանդնուպօլիս , և մեծամեծս ընդունելութ̃ գտին 'ի թագաւորէն և յամենեցունց վ̃ն աջողակ գործոյն , և յաղթօղք անուանեցան ։ Յայնժամ նախանձեցան ընդ պատիւ նոցա ոմանք յիշխանաց քաղաքին , և գաղտ կաշառեցին զեպարքոսն . ու̃չ . լիտր ոսկւոյ , զի մատնեսցէ զերիս ստրատելատսն 'ի մահ իբրև զապստամբ չարախորհուրդս . և եպարքոսն առեալ զկաշառն՝ գնաց չարախօս եղև զնոցանէ առ թ̃գն . և նա հաւատաց նմա , և հրամայեաց առանց քննութ̃ե արկանել զն̃ս 'ի բանտ . և 'ի կալ նց̃ անդ աւուրս բազումս՝ ստիպէին չարախօսքն զեպարքոսն , զի շուտով կորուսցէ զնոսա . վ̃ոյ մտեալ առ թ̃գն՝ ասէ . և 'ի բանտին նիւթեն չարիս թ̃գրութ̃ քո . և այնպէս առնու հրաման վ̃ն գլխոց նց̃ ։

Իսկ յերեկոյին գայ պատուէր յեպարքոսէ առ բանտապետն՝ հանել զարսն առ վաղիւն կապեալ ձեռօք 'ի տեղի գլխատման . և բանտապետն մտեալ առ նս̃ լալագին՝ պատմեաց զյանկարծակի մահս նց̃ ։ Իսկ նոցա լուեալ՝ մեծաւ հառաչանօք կարդային առ ա̃ծ , թէ ո̃րպէս ներես տ̃ր որ անիրաւութ̃ մեռանիմք . յիշեցին և զս̃րբն նիկողայոս , և ասեն արտասուօք . ով ս̃րդ ա̃յ , ո̃չ փրկեցեր առաջի մեր զերիս արսն յանիրաւ մահուանէն , օգնեա՛ և մեզ . թէպէտև հեռի ես մարմնով , սակայն մերձ ես 'ի լսել զհեծութիս մեր ։ Իսկ ահա 'ի գիշերին յայնմիկ առաքեաց ա̃ծ

ոգանչելապէս զՏէրեշտակ իւր զՆիկողայոս , որ եկն եկաց առաջի կոստանդիանոսի , և ասէ ․ արձակեա՛ զերեսին ստրատելատսն , զի անիրաւ զրպարտեալ են ․ և ապա լինիցիս յարենէ արդարոցն ․ ապա թէ ոչ՝ ունիմ պատերազմ յարուցանել 'ի վ͞ր քո 'ի կողմանց գիւրաքիոյ ․ և յայնժամ 'ի փորձէն ծանիցես , թէ որչափ լաւագոյն է լռողութիւն , և մանաւանդ յորժամ ա͞յ լինիցի հրամայեալս ։ Նաև ցնա թ͞գըն ․ և դու ո՞վ ես , կ͞մ զիա՞րդ տարաժամ մտեր 'ի պալատս և 'ի սենեակս , և այսպէս սպառնաս ինձ ․ և նա ասէ ․ ես եմ Նիկողայոս մեղաւոր՝ եպ͞ս միւռիոյ քաղաքին 'ի լիկիա ։ Զայս ասացեալ՝ անյայտ եղև յերեսաց թ͞գրին ․ և երևեցաւ 'ի սենեակ եպարքոսին՝ որում անուն էր ալաբիոս կ͞մ եւլաւիոս , և նմա առաւելապէս սպառնացաւ՝ ա͞ծ գիտակ կաշառացն և չարախօսաց ։

Իսկ ը͞ռ առաւօտն կոչեաց թ͞գըն զեպարքոսն , և պատմեաց նմա զտեսիլն ․ նոյնպէս պատմեաց և եպարքոսն զոր ինքն ետես ․ և միաբան փութացին առ ժամայն զվճիռ մահու յարձակումն ․ և կոչե͞լ զստրատելատսն՝ ասէ ցնոսա թ͞գըն ․ կախարդութե͞ամբ արդեօք ցուցէք ինձ զտեսիլ գիշերիս այսմիկ , առաքել առ իս զՆիկողայոս ։ Իսկ ն͞ք իբրև լուան զանուն Նիկողայոսի , ասեն ․ չեմք ինչ գիտակ չարարուե՛ստ աղանդոյ կախարդութե՛ ․ այլ միայն յօգնութի՛ մեր կարդացաք 'ի բանտի զայրն ա͞յ զՆիկողայոս ։ Յայնժամ քաջալե-

րեաց և ազատեաց զնս կոստանդիանոս ․ ասէ ․ մի՛ ինձ լինիք շնորհակալ, այլ՝ սբյն ․ և եդ 'ի ձեռս նց նուէրս՝ տանել նիկողայոսի, աւետարան ոսկի, և մոմակալ ոսկի կմ պատուանդան լապտերաց, և սկիհ և մաղզմայ, և այլ անօթս ազգի ազգի ․ և ասէ ․ երկիր պագէք նմա յինէն կողմանէ, և ասացէք, թէ որպէս հրամայեցեր ինձ՝ արարի ․ ընկալ զընծայս, և յիշեա զիս յաղօթս քո ․ և նք գնացին մեծաւ խնդութբ ․ և առեալ զօրհնութիւն սբյն՝ դարձան առ թգւրն ․ և յայնմ հետէ կային 'ի պաղատանն՝ պատուեալք առաւել քն զառաջինն ։ Այս անցք յամենեցունց քարոզեալ՝ հնրկօրէն պատմին յետոյ քան զժողովն նիկիոյ ․ այլ ընթացք նկարագրութն ոմանց ցուցանեն լինել յառաջագոյն ․ և ապա յիշեն՝ թէ մի էր երանելին նիկողայոս յերեքհարիւր տասն և ութ հարցն սբց ․ ոչ և զայլ գործս նր ոմն յառաջ և ոմն զկնի կարգէ՝ առանց խըտրելոյ զկարգ ժամանակին ։

Արդ այսքան և այսպիսի բարեգործութբ, սքանչելագործութբ, և վարուք սրբութե և ուղղափառ վրդպութբ փայլեալ նր հայրապետն նիկողայոս՝ հօգւոց և մարմնոց բժիշկ երևեցաւ, և գրեթէ ը ամ տիեզերս տարածեցաւ անուն նր ․ և յմ բերանոյ օրհնութի մերաբերիւր վն նր ․ նաև հրեշտակական տեսիլ երևեացն, և հոտ անուշութե երկնային քաղաքավարութե սբյ քահանայապետին՝ ամ հանդիպողացն լինէր պատճառ

փըր-

փրկութե. մինչև աշակերտել զքաղաքումս 'ի
հերձուածողաց և 'ի թերահաւատից և յան-
հաւատից 'ի հաւատս ճշմարտութե ։
Յետ այսորիկ հանդերձեցաւ երթալ առ ա-
րարիչն իւր, և անկաւ 'ի մարմնական հի-
ւանդութի. և անդ ևս մինչդեռ 'ի վր մահ-
ճիցն կայր, կնքեաց նշանաւ խաչի և փողփա-
ղակի բժշկեաց զկին մի եւգինուհի անուն
լուսնահար յայսոյ պղծոյ 'ի սոկղմն դեղջէ ։
Իսկ իբրև ետես երանելւյն եկեալ առ ինքն
զհրեշտակն Տր՝ առնուլ զհամահրեշտակ հո-
գին, ամբարձ զգլուխ իւր 'ի մահճաց ան-
տի, և կնքել զամ մարմին իւր՝ երկիր եպագ-
ան, և ասէ. 'ի քեզ Տր յուսացայ, մի ամա-
չեցից յաւիտեան. և կատարեալ զսաղմոսն՝
օրհնելով և փառաւորելով զԱծ՝ աւանդեաց
զհոգի իւր 'ի վեցն դեկտեմբերի ամսոյ, 'ի
վերջին ամս մեծին կոստանդիանոսի. զոր ո-
մանք դնեն յառաջին ամս որդւոցն կոստան-
դիանոսի. իմն, գրեթէ 'ի նոյն ամս փոխ-
մանն Տր լուսաւորչին մերոյ ։
Իսկ զպատուական մարմինն նր զզարդարեալն
ամ առաքինութե՝ տարեալ ամփոփեցին պատ-
ուով յեկեղեցին. յորում պահու յանկար-
ծակի բուրեաց անուշահոտութի բազում. և
բղխէին այնուհետև զօրութիք 'ի տապանէ
սքանչելագործ հայրապետին 'ի բժշկութի
հիւանդաց և ամ ախտացելոց. ուր և աւելի
անպակաս 'ի Տր մարմնոյ նր՝ ուր մնան կի
իւղ անոյշ. և անուն նր կենդանի՝ կարդա-
ցեալ յամ դարս և 'ի ժամանակս՝ էր և է

նեղելոց օգնական, և ապաւէն վտանգելոց՝ երագահաս օգնականութիւն. զի տուեալ է նմա յԱստուծոյ զօրութիւն՝ արագահասութիւն օգնել ամենեցուն սքանչելապէս։

## Սքանչելիք սրբոյն Նիկողայոսի 'ի հին գրոց՝ յետ փոխման իւրոյ։

Գնային երբեմն ուխտաւորք 'ի տանայիսայ դղրանց 'ի Միւռա՝ այց առնել տապանի սրբոյն. այլ 'ի մտանել նոցա 'ի նաւ՝ դեւն կերպարանեալ 'ի կին ցուցագար՝ ետ նոցա անօթ մի ձիթոյ տանել առ Նիկողայոս իբրև 'ի պատիւ տաճարի նորա. Իսկ եղև 'ի վերայ ծովուն ալեկոծութիւն յոյժ, մինչև գոչել ամենեցուն առ սուրբն Նիկողայոս. և նա յանկարծակի երևեցաւ նոցա, և ասէ. արկէք 'ի ծով զանօթն դիւական, և դադարեսցի մրրիկդ. և իբրև արարին զոր բանի սրբոյն, եղև խաղաղութիւն։ Այս պատմութիւն գրի յօրինակն սուրիոսի. իսկ յետագայքդ 'ի ճառընտիրս մեր։

Յովհաննէս ոմն ջերմեռանդն ծառայ սրբոյն Նիկողայոսի նաւարկեալ էր ծով 'ի կոստանդինուպօլսոյ 'ի կողմանս Թրակիոյ, և մերձեալ 'ի յոնիկոն, վտանգի 'ի հակառակ հողմոյ, մինչև պատառիլ նաւուն. և մտեալ 'ի կուր մի ընդ եօթն արանց՝ անկանիլ 'ի ցամաքն, սուզանի 'ի խորս. և քանզի արագութեան ժամանակին ոչ ետ թոյլ բանս ինչ բազում պաղատանաց արձակել, զայս միայն ասաց.

սրբդ

սրբ՟դ տ՟յ Նիկողայոս օգնեա՛ ինձ ․ իսկ սրբ՟ն ա-
րագուե՟ փայլատակման նմանեալ՝ փութա-
նակի եհաս նմա ․ և դարձոյց զնա յանկար-
ծակի 'ի տուն իւր , մինչդեռ զգեստ նր՟ լի
էր ջրով ծովու ։

Վահանայ ոմն 'ի միտիլինէ կղզւոյն ամի ա-
մի գայր յերկրպագութի՟ գերեզմանի սրբ՟յն
Նիկողայոսի 'ի քաղաքն միւռիոյ ․ և 'ի միում
նուագի գերեալ 'ի հինից արաբացւոց՝ վա-
ճառեցաւ 'ի կրետէս կղզի ․ ուր թագաւորոքն
վիճակ արկին գերեաց՝ զոմանս վաճառել ,
զոմանս 'ի բանտ արկանել , և զայլս սրոյ
տալ ճարակ ․ և քահանային վիճակեցաւ յե-
աինս այս մահ ․ և իբրև տարան զնա 'ի գլխա-
տել՝ յաղաղակել նր՟ առ սր՟ն Նիկողայոս՝ ե-
րևեցաւ նմ՟ 'ի տեղւոջն ․ և քաջալերէր զնա
մինչև ցյետին ժամն՝ մի երկնչիլ ․ և ընդ վե-
րացուցանել դահճին զսուրն՝ յափշտակեաց
զայն սրբ՟ն 'ի ձեռաց նր՟ , և 'ի բաց ընկէց հե-
ռագոյն ․ և 'ի խօսել դահճին դժնդակս ը՟
քահանային իբրև ը՟ կախարդ , նա պատմեաց
զարագահաս օգնութի՟ սրբ՟յն Նիկողայոսի , թէ
նա ինքն է՝ որ աներևութաբար ընձեռեաց
նմա զփրկութի՟ ․ և այնպէս ապրեցաւ քահա-
նայն և դարձաւ 'ի տեղի իւր ․ ուր ասէ պատ-
միչն ․ Որպէս սքանչելի է ա՟ծ 'ի սր՟ս իւր , ըս-
քանչելի են և սր՟քն յա՟ծն իւրեանց ․ յորմէ
տուեալ նց՟ գործել զսքանչելիս մեծամեծս ։

Այր ոմն պետրոս անուն կոչեցեալ՝ որոյ յի-
շատակն օրհնութեամբ , խոստացեալ էր լի-
նել կրօնաւոր ․ այլ յուլացեալ գնաց ընդ

դունդս հռովմայեցւոց 'ի պարսս 'ի պատերազմ. և ձերբակալ եղեալ՝ ածաւ 'ի սամարաղան (կամ սմրղանդ), և արկաւ 'ի բանտ զօրավարին պարսից. և 'ի միտ առեալ զյանցանս իւր՝ զի յապաղեաց կատարել զխոստումն կրօնաւորութէ, մեղադրէր անձին իւրում։ Եւ յետ կալոյ զտարի մի՝ յիշեալ զսքանչելագործն Նիկողայոս, սկսաւ կարդալ զնա 'ի սրտէ, և ասէ. զքեզ հայր նք միջնորդ և երաշխաւոր ունիմ առ արարիչն իմ. զի թէ աղօթիւք քո ազատեցայց 'ի բռնութէ վտանգիցս, ոչ ևս դարձայց յաշխ իմ և 'ի տունն իմ, այլ գնացից 'ի հռոմ 'ի տաճար սբյն պետրոսի, և անդ կատարեցից զսահման կրօնաւորութէ ըստ չափոյ զօրութէ իմոյ. և յայս միտս անսուտ լինէր այրն զշաբաթ մի ողջոյն։

'Ի կատարիլ եօթնեկին երևեցաւ նմա արագահաս օգնականն Նիկողայոս, և ետ նմա յոյս ազատութէ. և 'ի պնդիլ նր 'ի պահս և յաղօթս՝ դրձ երևեցաւ և յորդորեաց դիմել նաև 'ի միջնորդութն և 'ի բարեխօսութն սբյն սիմէոնի ծերունւոյ՝ որ արժանի եղև բառնալ 'ի գիրկս զփրկիչն քի. զի 'ի միասին մատուսցուք ասէ պաղատանս առ ած վս արձակման քո 'ի խաղաղութն։ Ապա յերրորդումն երևեցաւ սբն սիմէոն ընդ սբյն նիկողայոսի. և առեալ 'ի պետրոսէ զխօսս վս անյապաղ կատարելոյ զխոստումն իւր՝ ձրգեաց զգաւազանն՝ զոր ունէր 'ի ձեռին իւրում, և մերձեցոյց 'ի կապանս նորա երկաթիս.

թիս. և ոչ մոմ հալեցաւ երկաթն. և ել 'ի բանտէն այրն զկնի սբ̃ցն. և աղաչէր զն̃ա՝ զի արտաքոյ քաղաքին գտցի. և եղև այնպէս. յայնժամ արդարն սիմէոն յանձնեաց զնա Նիկողայոսի, և անյայտ եղև։ Իսկ սբ̃ն Նիկողայոս առաջնորդեաց նմ̃ մինչև յծն յունաց. և անդ առէ ցպետրոս, ժամ է արդ կատարել զխոստմունս քո. ապա թէ ոչ՝ զսմրղանդ ճանաչէս, անդր 'ի նոյն բանտ մտանիցես։ Նու 'ի հաստատել նր̃ զխոստումն՝ եղև սբ̃ն աներևոյթ. և պետրոս դէպուղիղ գնաց 'ի հռոմ. և կատարեաց անդ զուխտ իւր, և կրօնաւորեցաւ. որպէս ձոխագոյն գրի 'ի ձառընտիրս։

Այր ոմն կապադովկացի ազգաւ՝ ը̃ իշխանութեան զօրավար ծին իւրոյ, ետես զորդին իւր ըմբռնեալ 'ի չար աղանդն մանիքեցւոց. և ոչ կարացեալ յետս նահանջել զնա 'ի մոլորութենէ՝ ոչ խրատուք և ոչ սպառնալեօք և ոչ գանիւք, սկսաւ մարտիւ պատերազմի կռուիլ ը̃ աղանդաւորսն և յաղթահարել զնա. իսկ նք̃ դարան գործեալ նմա՝ կալան և արկին զպատուհական այրն 'ի տղմուտ և 'ի մօրական գուբս շղթայակապ՝ հանդերձ այլովքն որ ը̃ նմա էին. իսկ նա ոչ դադարէր աղաչել զա̃ծ՝ բարեխօս ունելով զսքանչելագործ հայրապետն Նիկողայոս, զորոյ զյիշատակն ջերմ հաւատով միշտ կատարէր. որ և տաճար էր կանգնեալ սբ̃յն, և զանազան պայծառութբ̃ վայելչացուցեալ։

Իբրև կատարեաց վեց օր անսուաղութբ̃,

ասէ. ո՜վ սբ՟դ այ՟, կամք միայն պիտոյ է քեզ. կարողութի՟ն յայ՟ տուեալ է քեզ. գիտես իսկ, թէ զիա՛րդ 'ի սկզբանէ մինչև ցայսօր զա՟մ յոյս իմ 'ի քեզ եդի, և զտաճար քո՟ որ բազում խնամակալութ՟բ յօրինեցի. արդ ամ՟ուրեք սքանչելագործես, ընդէ՞ր թողեր զիս յայսպիսի կապանս անմխիթար։ Նոյն եղև 'ի նիրհել ասուն ը՟ երեկս երևեցաւ նմ՟ սբ՟ն Նիկողայոս. և զսա ևս յորդորեաց դիմել 'ի բարեխօսութիւն ծերունւոյն սիմէոնի արդարոյ. զի նա առաւել համարձակութի՟ ունի աաէ առ փրկիչն բոլորից։ Յայնուհետև սկսաւ այլն կարդալ առ սբ՟ն սիմէոն՝ նոյնչափ աւուրս անսուա՛ղ կացեալ. և երևեցաւ նմա արդարն և ասէ. ո՞վ արդեօք զգուշացոյց քեզ 'ի բաց կալ յեղբօրէն մերմէ Նիկողայոսէ. զնա աղաչեա՛, և ազատեսցէ զքեզ. քանզի արագահաս օգնականութե՟ առաւել ընկալաւ նա շնորհս քան զա՟մ սբ՟ս. և զայս ասացեալ՝ աներևոյթ եղև։ Նոյն ապա յարևնման աւուրին սքանչելեաց ազատեն և զսա սբ՟քն. և նա նոյնպէս երթայ 'ի հռովմ, և անդ տայ փոքրել զհերս. ուստի գնացեալ 'ի սահմանս գաղղիոյ՝ բնակէ յանապատ տեղի, և անդ կատարէ զկեանս իւր. եթէ չկայցէ ինչ շփոթութի՟ ը՟ նախընթաց պատմութե՟։ Քանզի և ինքնին միսրթի շփոթիլ կմ՟ նոյնանալ, ը՟ որում կայ մերձաւորութի՟ ը՟ կապադովկացին և ը՟ կեփաս՝ որ և պետրոս, որոյ յիշատակն ասի օրհնութ՟ք՝ թերևս վա՟ շինելոյ զեկեղեցի սբ՟յն Նիկողայոսի. ոմ՟ և պատե-

րազ-

բազմելն ը՟ մանիքեցիս՝ չէ՛ ինչ ը՟ հաւատ 'ի գնա-
լոյ 'ի պատերազմ 'ի վ՟ր պարսից ։ Այլ է և
պետրոս աբբայ սուբլակայ վանից, զոր յի-
շէ բարոնիոս յամի տ՟ն 1003 ․ արձակեալ 'ի
շղթայից տեսլեամբ ս՟բյն նիկողայոսի յա-
ւուր տօնի ն՟ր ։

Այր ոմն կրօնաւոր սիմէոնէս անուն՝ դեկա-
պօլեցի կոչեցեալ, նշանաւոր ճգնութ՟բ, ա-
ռաքեաց զգործակից իւր նիկողայոս անուն
վ՟ր պիտոյից իրիք 'ի կողմանս արևմտից ․ և
'ի նաւել ն՟ր քաղցր օդով՝ յանկարծակի ե-
հաս 'ի վ՟ր մրրիկ սաստիկ և ծուփ ալեկոծու-
թե՟ն, մինչև 'ի բաց առին զառագաստն, լքին
զղեակն, և անյոյս եղեն 'ի կենաց ․ և ոչ
այլ ինչ հնարս իմացան, բայց միայն զանուն
արագահաս օգնականին նիկողայոսի կար-
դային ․ և ո՛չ վրիպեցան 'ի խնդրուածոցն ․
քանզի տեսանէր կրօնաւորն այն յայտնապէս
զմեծ սքանչելագործն նիկողայոս, զի գնայր
'ի վ՟ր ծովուն իբրև 'ի ցամաքի ․ և քաջալե-
րեալ զնաւուղիղն՝ ասէր ․ արի՛ եղբայր, մի՛
լքանիր տարակուսանօք ․ պինդ կալ զսպա-
սաւորութի՟ն նաւիդ ․ քանզի ը՟ ձեզ եմ ․ զայս
ասացեալ՝ անյայտ եղև ․ և նոյնժամայն եղև
խաղաղութի՟ն մեծ 'ի վ՟ր ծովուն ։

Մնայ պատմել և զայն հանդիսացեալ հրաշս՝
հանգոյն հրաշից ն՟բյն գէորգեայ վ՟ր ազա-
տութե՟ն պատանւոյ միոյ 'ի գերութե՟է ․ զոր
ամենեքին պատմեն՝ առեալ 'ի ճմկակից գըր-
չէ ․ որ 'ի հինգերորդ ճառընտրի մերում ու-
նի այսպէս ։

Յետ

Յետ բազում սքանչելեացն՝ զոր արար մեր քահանայապետն Նիկողայոս, եցոյց և այսպիսի նորասքանչ նշանս յաւուրս ժամանակաց մերոց, զոր պատմել կամիմք քնասէր եղբարց մերոց։ Այր ոմն էր բնակեալ՚ի նմին քաղաքի զմիւռնացւոց, այս է ՚ի ծովեզերս միւռոյ, որում անուն կոչիւր ագրիկողոս (կամ աքրիգոս, կամ գրագիոս. ըստ այլոց՝ գերոն)։ ունէր և ամուսին բարեպաշտ և երկիւղած յԱյ (ըստ ոմանց եփրոսինէ անուն)։ և էր որդի մի միամօր նց, որում անուն էր բասիլիոս կամ վասիլիոս. և սովորութիւն էր նց ամ յամէ կատարել զյիշատակ սբյն Նիկողայոսի յիւրեանց արդար վաստակոց մեծապայծառ տօնախմբութբ. քանզի բազում կարօտեալս կերակրէին, և կազմէին ընթրիս մեծածախս։

Արդ մինչդեռ պատրաստէին զերախտիսն հրաւիրելոյն կոչնականաց, և դասք կղերիկոսացն գեղգեղելով երաժշտական եղանակօք կատարէին յեկեղեցւոջ զպաշտօն երեկորին ժամուն, յանկարծակի յեղակարծում պահու հասին բազմութի նաւաց իսմայէլացւոց յեզերս ծովուն սպառազինեալք. և զեղեալք ՚ի քաղաքն՝ յաւարի առին, և գերեցին զարս և զկանայս, և զմանկունս նոցա յափշտակեցին. ընդ որս և զորդի ագրիկողոսի զբասիլիոս, և տարան ՚ի կղզին կրետացւոց. և յաղագս չքնաղ գեղոյ նր և վայելուչ հասակին մատուցին զնա ազգապետին իւրեանց. և նա կացոյց զբասիլիոս՝ իւր մատռուակ, մա-

տռու

տուցանել զբաժակն ինքեան. և յոյժ սիրե-
լի էր նա յաչս նր̃ :

Նաև ծնօղք պատանւոյն 'ի դառն սուգ ըն-կղմեալ՝ մոռացան զտօն յիշատակի սր̃յն հանդերձ մերձաւորօք, և առ յանկարծահաս աղէտիցն 'ի վր̃ միամօր մանկանն կոծէին և աշխարէին յոյժ. մինչև ասել ոմանց, ո՛վ Սր̃ Նիկողայոս՝ որ երբեմն զերիս զօրավարսն փրկեցեր յանիրաւ մահուանէն՝ զարհուրեցուցանելով տեսլեամբ զԹագաւորն, և զլալիւն երեկորին յառաւօտուն յուրախութի̃ փոխեցեր, զիա՞րդ աստանօր թողացուցեր յափշտակել 'ի գաւթէ քումմէ զպաշտօնեայն քո, և ոչ դարձուցեր, և ոչ յայտնեցեր՝ ուր գերեցաւ, կա՛մ ուր մեռաւ. քանզի ետուն իսկ ծնօղքն քննել զբազում մօտաւոր կղզիս, և ոչ երևեցաւ ուրեք :

Այլ 'ի գալ միւսում ամի՝ յաւուր տօնախմբութե̃ սր̃յն, յորժամ ընթանային ամենեքին 'ի գերեզման սր̃յն ուրախութբ̃ և պտղաբերութբ̃ ըս̃ սովորութե̃ իւրեանց, ծնօղքն մանկանն անփոյթ արարեալ՝ 'ի տրտմութե̃ կային ան̃դ խռովեալք ը̃դ սր̃ն. քանզի և կրկին արծարծեցաւ ցաւ սրտից նց̃ : Ապա ասէ այրն ցկին իւր. լո՛ւր ինձ կի՛ն դու, և 'ի բաց եդեալ զանօգուտ տրտմութիւն՝ պաշտեսցուք զսր̃ն Նիկողայոս սքանչելագործ ըս̃ սովորութե̃ մերում 'ի տանի նր̃. և նա կարօ՛ղ է յայտնել մեզ զորդեակն մեր. ապա սթափեալք՝ պատրաստեցին ընթրիս և սէր ողորմութե̃ և լուցմունս լապտերաց. և յետ կատարման ե-

երեկորին պաշտաման՝ կոչեցին զժողովուրդն 'ի տուն յեկեղեցւոյ. և մինչդեռ ուտէին ժողովեալքն՝ առեալ գինի՝ յիշեցին զանուն Մանկանն, և ասեն. ո՜վ Տէր Հայրապետ յայտնեա՛ 'ի քո տօնիս զծառայն քո զԲասիլիոս, որ յայսմաւուր յափշտակեցաւ յանօրինաց։

Զայն բան եղև դղրդիւն 'ի գաւթի տանն ադրիկողոսի, և շունք՝ որ էին յապարանս անդ՝ զարհուրեալք հաչէին մեծաձայն. և սկսաւ խուճապիլ բազմութիւն, և իւրաքանչիւր ոք պատրաստ լինէր ապրեցուցանել զանձն զաղտագողի լռութ՝ մինչև չիջուցանել բազմաց զջահս, կարծելով՝ եթէ ըստ առաջնումն օրինակի ասպատակք յարձակեցան։ Իսկ Հայր Մանկանն ելեալ 'ի բարձրաւանդակ տեղի ապարանից իւրոց՝ դիտել կամեցաւ, զի՞նչ իցեն եղեալքն. և այն ինչ կարկառեալ հայէր 'ի խոնարհ՝ տեսանէ 'ի մէջ գաւթին իւրոյ կանգնեալ զորդին իւր՝ զգեցեալ և զարդարեալ շքեղութ՝ իսմայէլացւոց ձեռօքն. և 'ի ձեռին նորա բաժակ՝ հանդերձ պատուական անօթիւ՟. ձայն եբարձ և ասէ. ո՞վ ոք արդեօք իցէ սա. ո՜վ որդեա՛կ իմ Բասիլիոս՝ միթէ դո՞ւ իցես. արդեօք տեսի՞ց զքեզ ո՜վ անձկալիդ իմ և ցանկալի՛ զաւակ. և ո՞ տայր ինձ աւետիս վն՟ քոյոյ գալստեանդ առ իս։

Իսկ նա՛ ձայն արձակեալ՝ ասէ. ես եմ որդին քո՝ միամօրն Բասիլիոս, զոր խնդրեսն. աւաղի՛կ եմ. որ երբեմն ըմբռնեցայ 'ի ձեռս հագարացւոց, և վարեցայ գերի մինչև 'ի կղզին

կրե-

կրետէ ։ Եւ հօրն ուրախութիւն ընթացեալ ամենայն ընտանեօքն և կոչնականօք՝ բուռն եհար և եմոյծ զնա առ ինքն ։ և ասէ ։ ո՛վ որդեակ իմ, ո՞րպէս կա՞մ զիա՞րդ կա՞մ ո՞վ փրկեաց զքեզ 'ի ձեռաց նոցա ։ Նա ասէ բասիլիոս ։ ո՛վ հայր իմ պատուական՝ լո՛ւր ինձ, և ասացից քեզ զամենայն պատահեալսն ինձ ճշմարտութիւն ։ մինչդեռ կայի այժմ 'ի սպասաւորութեան առաջի իշխանին իսմայէլացւոց՝ որում մատուցին զիս դերիչքն իմ, և մատուցանէի նմա զբաժակս զայս, ահա զօրութիւն մեծաւ յափշտակեցայ՝ ո՛չ թէ հողմով իմն թռուցեալ, զի ոչ գիտէի զհետս անձին իմոյ, մինչև գտի զիս 'ի դաւիթս, ուր յանո՛ւանէ զիս կոչեցեր ։ բայց զայս գիտեմ, զի 'ի գերութեան իմում երևէր ինձ ոքն Նիկողայոս, և հալածէր զտրտմութիւն իմ, և քաջալերէր զիս ։ Զայս լուեալ ծնողաց մանկանն և ամենեցուն՝ ուրախանային և օրհնէին զԱստուած, և փառաւոր առնէին զարագահաս օգնականութիւն սրբոյն Նիկողայոսի ։ և եղ համբաւ սքանչելեացս ընդ ամենայն քաղաքն և ընդ [illegible] մինչև 'ի կղզիս և 'ի կրետէ ։ մինչև այլազգեաց անգամ մեծարել զսքանչելագործ հայրապետն, և տեսանել զազգի ազգի հրաշս նորա ։

Եւ այս է ասելն երանելւոյն դամիանոսի 'ի ներբողեան սրբոյն ։ *ո՞չ ապաքէն զկնի յիշատակի անուան տիրամօր կուսի՝ այնչափ քաղցր բարեպաշտութիւն, կամ բարեպաշտ քաղցրութիւն տնկեալ է 'ի սիրտս հաւատացելոց, զի յաւուր նեղութեան անուն Նիկողայոսի յա-

ծի

ծի 'ի բերանի , և հանգչի 'ի սրտի ։ Եթէ փայլատակունք շանթեն և յահեղ որոտմանց սպառնալիք վերուստ 'ի վայր խաղան , Նիկողայոս 'ի պաշտպանութի կոչի , Նիկողայոս անուշակ ձայնի ։ եթէ մրրիկ փոթորկեալ և ծով անողորմ՝ մահաբեր լինել նաւորդաց ցուցեալ լինին , ամենեքին առ Նիկողայոս աղաղակեն արտասուօք՝ զի լռիցէ , պաղատելով կարդան՝ զի եկեսցէ , և թախանձեն՝ զի փրկեսցէ բարեգթութբ ։ Եթէ բաղխիմք 'ի ձախողութեց , կամ ցաւագնիմք վշտօք , խուկխուկ անուն նորա սբ եկաւորի 'ի բերան մեր ։ Նիկողայոս Նիկողայոս երկրորդէ , օգնականութի խնդրի Նիկողայոսի ։ Եւ մի ոք համարեսցի ճարտասանօրէն բեմասացութբ բարբառել ինձ զայսոսիկ , կամ սեթևեթիւք հռետորաց մեծացուցանել զփառաւորսն ։ ուր Ծ ամ վայելէ 'ի բարեբարունս խոստովանօղ հայրապետիս ։ և չէ ոք՝ որ թաքուցանիցէ զանձն 'ի սիրոյ նր ։ 'Ի վկայութի են ուխտաւորունք առ մարմինն նր սբ՝ 'ի ծագաց երկրի ճանապարհ առնելով՝ 'ի տեսանել զսքանչելիս , որք լինին նովաւ ։ Եւ ոչ եթէ քրիստոնէից միայն , այլև հեթանոսաց ափիւռ քարոզեալ՝ այնչափ պատկառելի եղև սբ անուն նորա , մինչև այր զարամբ ելեալ խուռն ընթանալ 'ի գովել և 'ի փառաւորել զանուն սբ նր ։

Թողեալ զայլ բազմապատիկ սքանչելիս ածյն՝ արժան է լսել և զայն երևելի հրաշս , որ եղև 'ի պատկերին նր 'ի դարձումն անհաւատից ,

տից, ըստ գրելոյ յովհաննու սարկաւագի ՚ի մե-
թոդիոսէ պատրիարգէ . զոր և յառաջ բերէ
լիպոմանոս : Ի ժամանակին՝ յորում զօրք
վանդալաց դիմեալ նաւուք յափրիկոյ՝ ելին
յերկիրն կաղաբրիացին, և հրձիգ արարին,
ոմն ՚ի բարբարոսաց գտեալ զպատկեր սրբոյն
՚ի տան ուրեք՝ պահեաց առ իւր . և ապա
տեղեկացեալ ՚ի քրիստոնէից գերելոց՝ թէ
որն այն կոչի նիկողայոս սքանչելագործ, ոչ
եցոյց զայն ումեք յընկերաց իւրոց, այլ ՚ի
դառնալն յափրիկէ՝ եբեր ՚ի տուն իւր . և
զի ինքն էր լամայափոխ կմսեղանաւոր, եդ
զպատկերն ՚ի խանութ իւր ՚ի խորշ մի . և
ասէ ցնա՝ իբրև ընդ կենդանւոյ խօսելով . տես
նիկողայոս պահել զիմ խանութ, ուր են ար-
ծաթ, ոսկի, և ամենայն ինչ . զի ես գնամ ՚ի գործ
այլուր . և գնաց : Յայնմ գիշերի միաբանեալ
գողոց՝ բարձին զամենայն ինչս առնն, և մնաց մի-
այն պատկերն : Իսկ եկեալ առն ՚ի վաղիւն
անդր՝ իբրև ետես կողոպտեալ զխանութն
ողջոյն, և թողեալ զպատկերն, սկսաւ լալ
դառն արտասուօք . և առ զայրոյթ սրտին՝
գանէր և զպատկերն անշունչ իբրև զկեն-
դանի, և ասէր . զի՞նչ արարեր նիկողայոս,
տուր ինձ զինչս իմ, զորս ոչ պահեցեր . ա-
պա թէ ոչ՝ ՚ի հուր արկանեմ զքեզ :

Մինչդեռ յայս կիրս դառնութեան կոծէր բար-
բարոսն և կռուէր ընդ սրբոյն, յանկարծակի ե-
հաս նիկողայոս ՚ի նմանութիւն տեսլեան պատ-
կերի իւրոյ՝ առ աւազակսն, որք բաժանէին
զգողօնն ՚ի մէջ իւրեանց . և ասէ ցնա . զի՞նչ

գոր-

գործեք ով թշուառականք. եթէ ոչ գիտէք, զի ես անդ էի՝ յորժամ գողացայք զայս ամ. ոչ ես ինձէն տեսի աչօք իմովք. և պատմեմ ձեզ մի ըստ միոջէ զկշիռ և զթիւ ընչիցն ամի, առէ ցնս. եթէ ոչ դարձուցանիցէք զամն 'ի տեղի իւր, մատնեմ զձեզ դատաւորի. զի ինձ յանձն եղեալ էր պահպանութիւն իրացդ. և ես 'ի պատճառս ձեր գանս արբի սաստիկ։ Իսկ նց զահի հարեալ՝ եթէ այնպէս յայտնի եղև բանն, և մահ առաջի կայ նց, խոստացան ըստ հրամանի սբյն դարձուցանել զամն 'ի ծածուկ. և դարձուցին իսկ 'ի միւս գիշերի։ Նա դարձեալ յառաւօտու եկեալ այրն 'ի խանութ իւր՝ իբրև ետես զամ ինչ անթերի 'ի տեղւոջ իւրում կշռով և թուով, յապուշ կրթեցաւ ընդ ահագին սքանչելիսն. և 'ի խնդութեն առեալ զպատկեր սբյն՝ համբուրէր արտասուօք, և ասէր. ով սբ Նիկողայոս հաւատարիմ և արդար, գթած և ողորմած ծառայ այ բարձրելոյ, որպէս հրաշալի և մեծ և կարող ցուցար, և ընտանի այ անմահ արքայի. մինչև և ինձ առն հեթանոսի այսպիսիս հրաշագործել 'ի պղնձի պատկերէ քումմէ. և ահա յայսմ օրէ հաւատամ 'ի քս։ Իսկ հաւատաց այրն 'ի քս, և մկրտեցաւ ամ տամբ իւրով. և շինեաց եւս յափրիկէ եկեղեցի յանուն սբյն Նիկողայոսի. և անդ վախճանեցաւ ինքն և կինն իւր և որդիք նց, փառաւորելով զաէր և զսքանչելագործ ծառայ նր։

Ըստ այսմ օրինակի փառաւորեալ է սբն Նի-

կողայոս Հայրապետ 'ի սկզբանէ և այսր ը̄
ա̄մ տեղիս, և կան յանուն նր̄ կանգնեալ 'ի
քաղաքս քաղաքս հոյակապ եկեղեցիք և վա-
նորայք : Իսկ վն̄ նշխարաց նր̄ ասի, թէ սա-
րակինոսք յարձակեալ 'ի ժա̄ զարու 'ի մե-
ռա՝ աւերեցին զշիրիմ սր̄յն, և ցիրւցան ա-
րարին զոսկերս նորա. վս̄յ և 'ի մեկնիլ խու-
րեանց անտի՝ նաւաբեկ եղեն. բայց այլք
գրեն, թէ յայնժամ ոչ զնիկողայոսի, այլ
զայլոյ տապանն նման նորայումն խանգարե-
ցին : Հաւաստի համարեալ է այն, զոր պատ-
մէ սիգոնիոս յմնեբորդ գիրս իտալական
թգ̄րուե, թէ յա̄մի տն̄ 1108, յաւուրս խա-
չակիր զօրաց՝ որք առին զե̄ղմ, գիմեալ գեն-
ուացւոց և վենետիկեցւոց՝ նաւուք 'ի քաղաք
անդր միւռայ լիկիոյ՝ բարձին անտի գեն-
ուացիք զնշխարս ո̄բյն յովհաննու մկրտչի,
զոր և գտին, և վենետիկեցիք առին զոսկերս
ո̄բյն նիկողայոսի եպս̄ին միւռացւոց կէս ըղ-
միւռնացւոց : Իսկ ըստ այսմ 'ի վենետիկոյ
սփռեալ լինին մասունք ո̄բյն՝ ուր և գտանի-
ցին. զոր օրինակ 'ի հռովմ 'ի տաճարի ո̄բյն
պօղոսի առաքելոյ կայ ատեն աջ ո̄բյն նիկո-
ղայոսի. և 'ի վերին բաւարիա 'ի թեմն աւ-
գուստեան նշխարք ինչ նր̄, և մասն յիւղոյ
կաթելոյ երբեմն 'ի մարմնոյ ո̄բյն. նոյնպէս
և 'ի տոռնակ հաննոնիոյ՝ մասն յիւղոյ ան-
տի, և երեք մանր ոսկերք. յորոց մին է ար-
մաւոն բոյթ մատին. նոյնպ̄ և յայլ տեղիս :
Այլ առաւել հանդիսացեալ աւանդութի̄
է այն՝ որ գրի 'ի վկայագիրն հռովմէական

'ի Մայիսի 9 . այսպէս . * 'Ի բարիոն ապու-
լիոյ փոխադրութիւն սբյն Նիկողայոսի եպսի
'ի միւռայ քաղաքէ լիկիոյ ‖ : Ուր խոստաբա-
նեն բոլլանդեանք խօսել զայսմանէ 'ի բուն
օր տօնի սբյն , յս 'ի դեկտ . 6 . և սակայն
ոչ եղեն ժամանն հասուցանել զգործս իւր-
եանց անդր : Առ այժմ շատ լիցի գիտել ,
թէ ըստ աւանդութիւն բարիոնացւոց կամ պա-
րիացւոց՝ ոմանք 'ի քաղաքակցաց իւրեանց
յորժամ գային 'ի կողմանց անտիոքայ իբրև
անձինք քառասուն և եօթն յամի տն 1087 .
ընդ իւրեանս բերեալ իցեն զմարմին սբյն՝ յետ
աւար հարկանելոյ սարակինոսաց զմիւռա .
և այժմ 'ի քաղաքի անդ՝ որ ասի ռամկօրէն
պառի բուլիայ գաւառի իտալիոյ , մայր եկե-
ղեցին է յանուն սբյն Նիկողայոսի . և երևե-
լի նշխարք նր ասին լինել անդ . ուստի և
յիտալացւոց անխտիր կոչի սբն Նիկողայոս
միւռացի և պարիացի . այլ 'ի մեզ կոչի ըզ-
միւռնացի , ոչ թէ զմիւռացի կմ զմռսացի .
զի միռռա զմուռս թարգմանի . այն է՝ որ յի-
շի 'ի գործս առաքելոց . իէ . ե . թէ * յայն-
ժամ ընդ մէջ ծովուն կիլիկեայ և պամփիլեայ
նաւեալ իջաք 'ի սմիւռա լիկիացւոց ‖ . և
այժմ տեղին կոչի ըսդրումիքա :

XXXXX XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) 'Ի չորս ճառընտիրս մեր ունիմք զօրինակ վարուց սրբոյն Նիկողայոսի, այսու տարբերութեամբ · զի Ա. օրինակն ճառօրէն սկսեալ, որ խոստանայ զվարս սրբոյն լիակատար գրել՝ հանդերձ սքանչելեօքն, յետ պատմելոյ զծնունդն և զսնունդն մինչև 'ի քահանայութիւն, անցանէ ուրոյն վերնագրով 'ի հրաշս նր̃՝ որ զկնի փոխմանն · յայտ է թէ յուլութեամբ գրչին, զի վաստակեալ է յերկար գրչութենէ։ Բայց օրինակն Գ. հանդիպեալ նոյնպիսի գաղափարի՝ գրէ ծայրէ 'ի ծայր և զգործս սրբոյն որ 'ի քահանայութեան և յեպիսկոպոսութեան, հանդերձ սքանչելեօք՝ որ 'ի կենդանութեան և յետ մահուան · թէպէտև ինչ ինչ համառօտս թողեալ իցէ կամաւ կամ ակամայ։ Իսկ օրինակքն Բ. և Ե. ճառընտրաց՝ են լոկ մասն 'ի վարուց սրբոյն, սկսեալ յաղագս երից զօրավարաց, յայլ թարգմանութեանց հանեալք · և ոչ համաձայնք իւրեանց · զի Բ. 'ի ներբողեան իւրում սրբոյն գլխաւորէ զբանն իբրև 'ի բերանոյ ազատելոցն սքանչելեօք նր̃ · իսկ Ե. յաւելու զպատմութիւն բասիլիոսի մանկան ազատելոյ 'ի գերութենէ, իբրև բանիւ ժամանակակից գրչի · ուստի այլազգ համառօտի նոյն անցք 'ի Ա. և Գ. օրինակս։

Իսկ սուրիասեան օրինակն է հետևողութիւն Ա. և Գ. Ճառընտրաց մերոց ը̃ ամ̃ բանի վարուց սրբոյն, բայց այնչափ երկարաբան ոճով, մինչև և սորա ձանձրացեալ՝ կարճէ 'ի վերջոյ զսքանչելիս սրբոյն յետ փոխման, ուր զառաջինսն բազում մասամբ պատմէ · ոչ̃ և զյառաջաբանն կամաւ 'ի բաց թողու։ Պատճառն է, զի 'ի վերայ մետափրաստեան ոճոյ պատուաստեալ է և ոճն վենետիկեան, ունելով խորագիր այսպիսի · * Վարք սրբոյն
„ Նիկողայոսի եպիսկոպոսին միւռայ, 'ի յունական վաւերական
„ մատենագրաց՝ մանաւանդ 'ի սիմէոնէ մետափրաստէ-
„ սէ՝ հաւաքեալ և շարագրեալ 'ի ձեռն լէոնարդոսի
„ յուստինեան պատրկի վենետիկեցւոց՝ եղբօր սրբոյն
„ լաւրենտիոսի յուստինեան պատրիարգին վենետիկոյ ·

,, որ կայ 'ի ա͞ հատորն աշխարհի ընդհանուր յառա-
,, ջաբանութ͞ հանդերձ հեղինակին, զորով զանց առ-
,, նեմք առ համառօտասիրութ ||:

Քաղուած ժմի սց է և Հ. Ց. Լ. իբրև բաղադրեալ յամենեցունց կմ' 'ի զանազան օրինակաց. միայն թէ որ ինչ կալեալ է 'ի սկզբան զընթացս Բ. և Ե. Ճառընտրաց, և 'ի նոյնս յարմարեալ զաւանդեալն 'ի Ա. և Բ. որով յետևաւառ գրին բազում ինչ: Բայց յամենեսին է միաձայնութիւն պատմութե յժմի, զոր միանգամ ոչ զանց առնեն յիշել. և այլևս ժմի է հին վարքն՝ որ ը Ճառընտրաց. ուստի բերէ հատուած մի երևելոյ սբյն 'ի անուանեալ կոստանդիանոսի՝ եւստաթիոս քահանայ կոստանդնուպօլսեցի 'ի վեցերորդ դարու. զոր և բերէ լեքէն. հատ. ա. երես. 967: Վ͞յ չգիտեմ ուստի անձունի իմաստակութ թերեհաւատութե գրեալ է նոր հեղինակ բառարանի յատուկ անուանց՝ լատօգաղ անուանեալ.

* Նիկողայոս սբ՝ հռչակաւոր եպս միւռայ 'ի լիկիա,
,, որ հաւատացեալ լինի՝ թէ կեցեալ իցէ 'ի չորրորդ
,, դարու: 'Ի վեցերորդ դարու սկիզբն եղև վերապատ-
,, ուելոյ զնա հանդիսական խորանօք (յեկեղեցիս):
,, Չիք ինչ ստոյգ պարագայ 'ի վը կենաց և մահուան
,, նորա ||: Ո՞հ կարծէ է կամակար անգիտութիւս. թող ասէր համարձակ զստոյգն, թէ վս այն անստոյգ համարիմ, զի ոչ կարեմ տանել այնպիսի սբյ՝ որոյ բովանդակ կեանքն է սքանչելիք և սքանչելագործութ: Այլ յամօթ առնէ զայսպիսիս տիեզերահռչակ վարք և սքանչելիք սբյն հրատարակեալ 'ի հինգերորդ դարէ հետէ յժմ եկեղեցիս. զոր և սուղ բանիւք՝ բայց լիով նշանակեաց սբն պետրոս դամիանոս, ոպ տեսաք. մեզ չէ արժան գիմախօսել ինքնաձեռնադրեալ հեղինակաց՝ երիկեայց ոմանց. զի մի աւելի ինչ ասացից: Տես զմիքայէլ լեքէն, որ ոչն հաւանի այսպիսեաց. իսկ վասն դատնելոյ սբյն 'ի ժողովն նիկիոյ՝ հաստատէ, թէ կայ անուն նր յօրինակն արաբացւոց:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն մեծին Մինասայ, Երմոգինեայ, և Եւգրափոսի։

Դ. Յ. Ա. դեկտ. 10։ Նաւասրդ. Ա. ոճ=ոճէ. և Բ. շհգ=շղգ։ Մեսաւէր. առ սուր. դեկ. 10. երեւ. 915=929։ (1)



ՄԻՆԱՍ ՄԵԾ ԵՒ սքանչելագործ վկայ Քնի՝ մին ՚ի մեծամեծ սրբոց երագահաս օգնական անուանելոց, էր ազգաւ և աշխարհաւ և ուսմամբ աթենացի. այլ քանզի յաղէքսանդրիա եգիպտացւոց եղև իշխան, և անդ կատարեցաւ նահատակութք, նմին իրի մեծն աթանաս հայրապետ աղէքսանդրու՝ մերձաւոր ժամանակաւ՝ հեղինակ վարուց մեծին անտոնի աբբայի՝ գրեաց և զվկայաբանութի մեծին մինասայ. զոր որում է տեսանել ՚ի հին ճառընտիրս մեր. ուստի առնուն և այլ վկայաբանք հետևողութք մետափրաստեսի. այլ մեք ՚ի բուն աղբերէ անտի յառաջ բերցուք։

Եւ նախ այսպէս յիշատակագրէ սրբն աթանաս ՚ի յառաջաբան կարգի. * Ես ողորմելի աթանասիոս՝ եպս աղէքսանդրացւոց եկե֊

ղեցւոյն արժանաւորե՛լ քնի շնորհօքն , պատ-
մեմ'ի կաթողիկէ եկեղեցիս այ̄ սակաւ ( կմ̃
կարգաւ ) զաստ գործելոյս , 'ի ձեռն ըն-
կերի իմոյ արագագրի կարգեալ ( զպատմու-
թի ) զմեծանուն և զերիցս երանելեաց ա-
րանցն յաղագս քնի աստ վկայեցելոյս . որոց
և ցայտուն արեանցն մինչև ցայժմ տեսա-
նի՝ անուշահոտացուցեալ զամենեսեան . և
ոչ այսչափ միայն , այլև ա̄մ մարդ՝ որ յախտ
հիւանդութեց անկեալ՝ համբուրէ զնշխարս
սբ̃ցն , նոյնժամայն բժշկութեց արժանա-
ւորի ║ :

Արդ ասէ՝ յետ մարդասիրին քնի առ մեզ իջա-
նելոյն , զկնի ամաց երկերիւրեր̃դի վաթսնե-
րորդի վեցեր̃դի ըս̃ առաքելուե , իմն հաշուե-
լով 'ի համբարձմանէ փրկչին , վն̄յ յաւել-
ուածով երեսունևչորս ամաց՝ յամի տն̃ իբր
300 , եզև յաղեքսանդրիա 'ի պատճառս դա-
տաստանի խռովութի յոյժ 'ի մէջ նշանաւոր
արանց քաղաքին . և բազում անգամ ինքնա-
կալն մաքսիմիանոս օրէնս և հրամանս տուեալ
հրովարտակօք վն̄ նոցին իրաց՝ ոչ կարաց խա-
ղաղել կմ̃ գտանել զիրացն յարմարութի :
Ապա 'ի դէպ ժամու զմտաւ ածեալ մաքսի-
միանոսի՝ առաքեաց զայր ոմն իմաստուն և
հանճարեղ՝ ճարտարասան ուսողութբ յոյժ ,
զկոչեցեալն Սինաս . զի 'ի ձեռն նր̃ վախճան
ընկալցի դժուարագիւտ դատաստանն : Իբ-
րև եհաս մինաս յաղեքսանդրացւոց քաղաքն,
գեղեցիկ 'ի գլուխ տարեալ զգործն , և զի-
րացն ուղղեալ զճանապարհն՝ դրէ առ մաք-
սի-

սիմիանոս թագաւորն զերս իւրացն . և նա ու-
րախ եղև , և եթող զնա կալ անդ իբրև իշ-
խան և վերակացու արքունի :

Այլ էր Մինաս յոյժ հաւատացեալ 'ի Քս , այլ
ոչ յայտնէր զինքն' եթէ քրիստոնեայ իցէ .
և մնացեալ 'ի քաղաքին ամ մի' մասն ինչ 'ի
հաւատոյն Քի յայտ ածէր' շրջելով և տե-
սանելով զհիւանդսն . և ձեռն 'ի վր եդեալ
և արարեալ զՔի նշանն' փարատէր զչար
ախտս հիւանդութեց . և բազում անդամա-
լոյծս բժշկեաց . և պատճառանօք' յայտնի
և 'ի ծածուկ' փշրէր զդրօշեալս դից . մինչև
յայտնի եղև կատարեալ ածպաշտութի նր ,
և նշանագործ զօրութի' որ պարգևեցաւ նմ
'ի տնէ :

Յայնժամ վարդապետն կռապաշտից դաղա-
նացեալ' գրեաց թուղթ առ թագաւորն , և
ազդացոյց նմա զգործս Մինասայ' ծանր ծանր
ամբաստանութբ : Այս մաքսիմիանոս իբրև
ընթերցաւ զգիրն , լի եղև բարկութբ . և
ոչ գտեալ հնարս այլ' խորհեցաւ զմի ոք 'ի
պատուական պաշտօնէից առաքել ստիկա-
նութբ 'ի վր նր . և իբրև հաճոյ թուեցաւ
խորհրդակցացն , առաքեաց զփառաւորա-
գոյն եպարքոսն Երմոգինէս անուն' վն ամի
հմտութե . որ և սա էր աթենացի ազգաւ'
փորձ ամ արուեստից և իմաստութե , այր
արդարակորով և ողորմած և զգաստ :

Ելեալ սորա 'ի ճանապարհ 'ի կողմանց բիւ-
զանդիոյ կմ նիկոմիդեայ' նաւարկեալ յաղեք-
սանդրիա , յառաջնում գիշերի անդ տեսա-

նէ յանուրջս երիս արս ձառագայթատեսիլս, որք և ասէին առ նա . Երթ երթ , և ծանիր զՃշմարտութիւն զՃշմարիտ Թագաւորին , որ առցէ զքեզ իւր ընծայաքեր . և զբազումս ածցես առ նա 'ի ձեռն պատուոյ փառաւորութեն՝ որ տուաւ քեզ ։ Զարթուցեալ երմոգինեայ 'ի քնոյն՝ համարեցաւ , եթէ վս երկրաւոր Թգաւորաց իցէ տեսիլս . և սաստկագոյն հրամանաւ փութացոյց զիւրսն ընդ ծով և ընդ ցամաք փաղփաղակի հասանել 'ի դէմ եդեալ տեղին , և կատարել զհրաման Թգրին . մինչև 'ի տագնապէն և 'ի շփոթոյն շարժել զամ վայրս՝ ոչ որ անցանէր ։

Եւ 'ի հասանել յաղէքսանդրիա համբաւոյ գալստեան եպարքոսին՝ ելին արտաքոյ քաղաքին 'ի հանդիպումն նր Թմբկօք և փողովք և լապտերօք ամբոխն ամ . և մտեալ 'ի քաղաքն՝ եմուտ յապարանս . և իբրև երեկոյ եղև , մնաց առանձինն ։ Յայնժամ հնարեցաւ իմաստունն մինաս , և ինքնին եկեալ աղաչեաց զդռնապանսն և եմուտ 'ի ներքս , մինչդեռ նստէր երմոգինէս . և խոնարհեցուցեալ զգլուխն՝ ընծայեաց զպատշաճ երկրպագութի , և ասէ . Հարցանեմ ով դատաւոր ընտանութք ոչ հայրենեօք բնակակից . յի՞նչ պատճառս եղև գալուստ քո աստ . և նր դարձուցեալ զերեսս 'ի նմանէ՝ ասէ ցնա . ոչ սիրելուէ ինչ յառաջ բերես բանս ճարտարութք , և ողոքանաց խօսս . անսա մինչև 'ի վաղիւն . և փոքր մի զկնի որոշեացի որ ինչ հակառակ քեզ մնան դժնդակք յատեան

տեան հրապարակի . և պատուէր ետ պահապանացն զգուշանալ նմա ։

Իբրև այդ եղև, քարոզն աղաղակէր զաւ բազմութե քաղաքին 'ի միասին 'ի դատ քննութե գործոցն Մինասայ . և ժողովուրդն իբրև զաւազ մանր 'ի մրրկէ բերեալ լինէին . և հրամայէր Երմոգինէս զքնի զօրականն յառաջ կացուցանել . և հարցանէր, զի՞նչ է այդ՝ զոր լսէ զքէն թագաւորն վն անուան քրիստոնէութե, և առ դիսն թշնամութե ։

Յայնժամ կացեալ Մինաս առաջի դատաւորին, ոչ ոպ դատապարտեալ, այլ ոպ դատախազեալ, համարձակ 'ի մէջ առնոյր զիրաւունս ճշմարտութե . և զձեռն շարժեալ և զքաղցր բարբառն արձակեալ՝ յերրորդ ժամէն մինչև յեօթներորդ ժամն, քարոզեաց զածպաշտութեանն խորհուրդ, և զքնի առ մարդիկ զգալուստն պատմեաց կարգաւ, և զանհաւանիցն զկարծիս լուծեալ՝ ունայնացոյց զկռոցն մոլորութի . մինչև աղաղակել ամբոխին, մի է ած մեծ և հզօր, զոր թարգմանեաց մեզ քաղցաբարբառն Մինաս . հաւատամք ամենեքեան 'ի նմանէ ասացելոցն ։

Իբրև ետես դատաւորն զբազում մասն ժողովրդեանն, եթէ խոնարհեցաւ առ Մինաս, արձակեաց զամբոխն առ օրին . և 'ի վաղիւն ածեալ զՄինաս՝ կացոյց յատենի . և սկսաւ փորձել զնա ողոքանօք և սպառնալեօք 'ի բաց կալ 'ի քնէ . բայց երիցս անգամ յանդիմանեալ 'ի նմանէ ընդդիմակաց բանիւք առաւելօք, ձեռն էարկ 'ի տանջանս անխնայ ։

Հրա-

Հրամայեաց զներքանս ոտիցն կտրել, և զտեսանելիսն փորել, և զլեզուն արմատաքի խլել. և զմնացեալ մարմինն պահել, ո՜վ զի վաղի՜ն գիշակեր թռչնոց ընկեցեալ՝ 'ի նոցանէ ծախեսցի. զի մի՛ մասն ինչ յանդամոց ն̃ր գտցի ։

Եւ ահա 'ի գիշերին յայնմիկ՝ մինչդեռ անկեալ կայր 'ի բանտի երանելին իբրև զմեռեալ, յերրորդ ժամուն յանկարծակի լոյս ծագէր զնովաւ իբրև զփայլակն. քանզի իջեալ մարդասէրն քո՝ կանգնել զզօրականն իւր զմինաս, յա̃մ կողմանց զուարթագոյն զնա գործեաց և աջողագոյն. փչեաց 'ի նա զկենդանական հոգին, և քաջալերութ̃ի եդեալ 'ի սրտի ն̃ր՝ ասէ ցնա. Ե՛ս եմ՝ որ էն, և մերձ եմ և եղէց ը̄ քեզ յաւիտեան. և զդատաւորն երմոգինէս՝ զոր կարծես քեզ թշնամի գոլ, եդի զնա քեզ սիրելի. վ̃ն զի յիշեաց զչարն՝ զոր անցոյց ը̄ քեզ անգիտութ̃բ, և սորջացաւ. և ես յիշեցի զգթութ̃ի նորա առ տնանկս, և զի առաջի իմ գործէր զհաճոյսն իմ, զնա կարգեցի քեզ քաղաքակից և ուղեկից հանդիսի՛ նահատակութ̃ե. այսուհետև քաջալերեա՛ց, զի ոչ ևս առցես զփորձ տանջանաց 'ի նմանէ. և անուանք ձեր գրեալ են 'ի դպրութ̃ի կենաց ։

Իսկ դատաւորն երմոգինէս չէր 'ի քուն մըտեալ զայն գիշեր 'ի տրտմութէն, զի սիրէր զմինաս. և յարթունս եղեալ՝ զմտաւ ածէր զոր ինչ գործեաց ը̄ ն̃բ վկայն. լայր դառնապէս՝ ասելով. զո՛ւր արարի ը̄ արդարոյն

ը̄

է̄ այնմիկ, և ոչ մի ինչ հոգւոյս իմոյ օգտա-
ցայ. և այնպէս արտասուէալ նր̄ մինչև ցա-
ռաւօտն՝ քանզի կարծէր իսկ զնա մեռեալ,
ասէ ցինքն. Թէպէտև բարկութ̄ր սպանել
զայնպիսի և զայնքան այր, գոնեա հրապա-
րակաւ առաջի եդեալ զնր̄ պատուական մար-
մինն՝ լացից 'ի վր̄ նր̄, և 'ի նշանաւոր տեղի
հրաման տաց թաղել. ոչ̄ զի մասն ինչ դա-
դարեցուցէ զտրտմութ̄իս իմ :

Յայնժամ էր̄ հրամանի նր̄ քարոզքն աղաղա-
կեցին, և բազմութ̄ին ժողովեցան, մինչ ոչ
տանել թատերաց տեղեացն. և նստեալ դա-
տաւորն՝ առաքեաց հինգ այր 'ի սպասաւո-
րացն՝ բերել զնշյն զմնացեալ մարմինն : Իբ-
րև չոքան, գտին զմինաս ողջանդամ, և ա-
ռաւել քան զյերեկն և զյեռանդն զուար-
թագոյն և պայծառագոյն. և զհրեշտակս
այ̄՝ զի կային առաջի նր̄. և անկեալ արանցն
առ ոտս սր̄յն՝ հաւատացին 'ի տր̄, և ոչ կա-
մեցան ելանել 'ի բանտէն :

Իսկ 'ի յամել սոցա՝ առաքեցան այլ սպասա-
ւորք. և տեսեալ զհրեշտակսն՝ անկան առա-
ջի նր̄. և ապա աղաչեցին զսր̄ն գալ 'ի թեա-
տրոնն, զի տեսցեն ամենեքին զնա կենդա-
նի, զոր ոչ̄ մեռեալ բերել կամէր դատա-
ւորն : Յայնժամ յարուցեալ առաջի երթայր
երանելին մինաս ոտիւք հաստատագոյն, և
զաչսն ունելով սրատես քան զառաջինն, և
զլեզուն նս աջողակ 'ի բարբառել. որով մա-
տուցեալ համբուրեաց զդատաւորն՝ և ասէ.
ուրախ լեր երանելի և փառաւորեալ բարե-
գործ.

գործ . ծանի՛ր զիս , և 'ի մի՛տ առ զզօրութի̃
քո̃ի ո̃յ իմոյ . զի ուր երէկն սկիզբն արարեր
դու իբրև զգայլ յափշտակօղ անդամնկոտոր
առնել զիս , ո̃րն իմ եկեալ վէրասատեղծեաց
զիս . և զքեզ իւր ընտանեցուցանել կամի .
տե՛ս այժմ զոր յերէկ յօշեցեր զոտս իմ՝ այ-
սօր հաստատագոյնս գնալով . և զոր երէկ
փորեցեր զաչս , այսօր յստակատես լեալ . և
զոր երէկ արմատաքի հատեր զլեզուս , այս-
օր արագագոյն բարբառի . մի՛ անգիտանար
զայն՝ որ զքեզ ճանաչել կամի . քանզի պա՛րտ
է քեզ ընդունել զմ̃ծպաշտութիս և զհան-
դէս առաքինութե̃ս ։

Այս իբրև լուեաց մեծն մինաս 'ի խօսելոյ ,
յայնժամ ամբոխն աղաղակեաց՝ ասելով .
գոչեա՛ իմաստասէրդ գոչեա՛ . որ երէկ սրով
խողխողեցար , այսօր զանազանապէս բար-
բառիս քո̃ի զօրութ̃ն . ծանեաք ա̃ծ ճշմարիտ
զսա 'ի քէն քարոզեալն քո̃ ։ Այս երանելին
բացեալ զբերան իւր՝ խօսէր ն̃ց զբանն կե-
նաց . և բազմութի̃ ժողովոյն կայեալ մինչև
ցինն ժամն՝ ոչ կամէին գնալ , լուսաւորեի̃ք
'ի ն̃ր վկային մ̃րպութե̃ն ։

Յայնմ վայրի դատաւորն հանդերձ իշխա-
նօքն և ժողովրդեամբ տեսանէր երկուս հրեշ-
տակս ճառագայթատեսիլս , որք պաճուճէին
թևօքն հոլանի ունէին 'ի վ̃ր գլխոյն մինա-
սի ։ Այս 'ի դողման եղեալ դատաւորն՝ ասէ
'ի միտս իւր . Ստուգապէս ա̃ծ ճշմարիտ
թարգմանէ քաղցրաբարբառն մինաս . բա-
րի՛ոք է հաւատալ 'ի քո̃ և ապրել . ես զնա
ա̃ծ

ած խոստովանիմ, որ այսպիսի ընծայաբերս առաքէ իւրոց սիրողաց 'ի սպասաւորութի․ ցայս վայր Քնունայն վաստակէի՝ կարծելով ածս զդիս կռոցն, և զխաբէութի՝ ճշմարտութի համարէի․ այլ այժմ անկանիմ առաջի քու- րի և Տր քաղաքակցի իմոյ, ո՞վ զի 'ի ձեռն նր հասից ուղիղ ճանապարհին ։ Եւ նոյն- ժամայն յարուցեալ յաթոռոյն՝ ընթացեալ առ Տր վկայն․ սակայն ոչ իշխեաց մերձե- նալ, վս զի մերձ կային հրեշտակքն․ և փոքր ինչ հեռացեալ՝ դարձաւ անդրէն․ իսկ ամբոխն աղաղակեաց ասելով․ համբե՛ր դա՛- տաւոր և մի՛ գնար, մինչև ծանիցուք զըստու- գաբանութի իմաստասիրիդ ։

Յայնժամ ածասէր դատաւորն խոնարհե- ցուցեալ զգլուխն յերկրպագութի սբյն, և բուռն հարեալ զնմանէ՝ համբուրեաց զնա․ և կալեալ զձեռանէ սբյն՝ եհան զնա արտա- քոյ քան զամբոխն, և ասէ․ աղաչեմ զսբդ այ զքնարդ հոգևոր, զքաղցրաբարբառ վը- կայդ․ զգեղեցիկ առաջնորդդ, զալեկոծե- լոց նաւահանգիստդ, զճշմարտութե լոյսդ, աղօթեա՛ վս իմ․ զի տեսի հրաշալի նշան այսօր, և հաւատամ յածն քո՝ զոր դուն քա- րոզես․ այլ յերկմիտս եմ, գուցէ ոչ ընդու- նի զիս քն՝ վս յառաջագոյն պաշտելոյն իմոյ զդիս կռոցն ։

Ասէ ցնա սբն Մինաս․ մի՛ երկնչիր, բայց մի- այն հաւատա՛ յօժարութբ․ քանզի ած մար- դասէր և անյիշաչար է և ողորմած․ այլ և ինձ յայտնեաց ած զատուգութի հաւատոց քոց,

և

և անուն քո գրեալ է 'ի դպրութ՟ն կենաց ։
Նոյն յետ համբուրելոյն զմիմեանս՝ հրամայ-
եաց դատաւորն արձակել զամբոխն, պատ-
ուէր տուեալ՝ զի վաղիւն ժողովեսցին. և մնա-
ցին առանձին դատաւորն և ս՟բ վկայն յապա-
րանս զա՟մ գիշերին մինչև ցառաւօտն. և մեկ-
նեաց նմա զառ 'ի ք՟ս հաւատսն ։

Իբրև այգ եղև, քարոզքն աղաղակէին, և
ժողովեցան բազմութ՟ն քաղաքին. լուեալ բդ-
հրաշալեացն և երեքտասան եպիսկոպոսացն՝
որ գտան 'ի սահմանս աղեքսանդրիոյ, եկեալ
հասին 'ի միասին առ ս՟բն. գային և բազումք
'ի հեթանոսաց վ՟ս համբաւոյ իրացն փրկու-
թ՟ե, զոր թարգմանէր ս՟բ վկայն ։ Յայնժամ
յարուցեալ՝ դատաւորն երմոգինէս՝ գոչեաց
առ ս՟բն մինաս, և ասէ. բարիոք դատեցեր
իմաստութ՟բ, և բարիոք ուսուցեր մեզ զառ
'ի ք՟ս զհաւատսն ով ամենաբարի իմաստա-
սէրդ ։ Աղաղակեաց և ա՟մ ամբոխն միաբան՝
ասելով. մե՛ծ է ածն քրիստոնէից. որ և զբա-
րեպաշտ դատաւորդ զայպաւէնդ տնանկաց
հոգին ս՟բ վերածգեաց 'ի գիտութ՟ն ճշմար-
տութ՟ե, և 'ի հաստատուն հաւատսն՝ որ 'ի
տ՟ր մեր յ՟ս ք՟ս ։

Յայնժամ առաքեաց երանելին մինաս զիւր
բարեվայելուչ դպրապետն՝ արագագիր ան-
ուանեալ, զի այս է Նուգրափոս՝ որ և Պրա-
փոս ասի, բերել նմա ջուր. և առեալ զջուրն՝
մատոյց առաջի ս՟բ և ա՟ծասէր եպ՟սացն. և
դատաւորն խոնարհեցուցեալ զգլուխն ա-
ռաջի ն՟ց՝ խնդրէր զմկրտութ՟ի. և ն՟ք հեղին
զջուրն

զջուրն զերանելեան Երմոգինէսի՛ յանուն Հօր և որդւոյ և Հոգւոյն սբյ . և այնպս շնորՀօքն քնի և աղօթիւք սբյն ընկալաւ զլուացումն վերստին ծննդեան՝ 'ի թողութիւն մեղաց և 'ի յարութիւն կենացն յաւիտենից :

Եւ յետ աւուրց ձեռնադրեցաւ յերեքտասան եպսաց , մերձ կալով խմբոյ նուաստութեան՝ ամէ սբն աթանասու ( որ էր յայնժամ մանկաՀասակ ) , և ընկալաւ զպատիւ եպսութե . և 'ի վեցերորդ աւուրն բաշխեաց զամ ինչս իւր աղքատաց , և ուսուցանէր Հեթանոսաց խուռնն օրինակաւ զճշմարիտ Հաւատսն՝ որ 'ի տր մեր յս քս , և դարձուցանէր զբազումս գործակցութբ սբյն մինասայ և գրափոսի , մկրտելով որքան զօր Հարիւրաւորս և Հազարաւորս . և զչարչարեալսն յայսոց պղծոց բժշկէր . և զբագինսն քակէր . և զցրուեալ Հօտսն 'ի պատճառս Հալածանաց՝ 'ի միասին Հաւաքէր շնորՀօքն քնի :

Մ՝ի ոմն 'ի ժողովրդոց անօրինացն՝ անուն ռուստիկոս , ընթացեալ պատմեաց թագաւորին մաքսիմիանոսի զբանս զայսոսիկ , թէ դատաւորն և սինկղիտոսն աղեքսանդրացւոց եղեն քրիստոնեայք . և զամ քաղաքն և բղգաւառսն արևելից կողմանցն դարձուցին յերկրպագութիւն խաչելոյն . այլև զգեղեցկայարմար տաճարս բարեյաղթ ածոցն այրեցին : Եթէ ոչ ժամանեսցէ քո ինքնակալութիւդ , ոչ միայն զարևելից կողմանսն , այլև զամ Ձին Հռովմայեցւոց իշխանութիւն յինքեանս դարձուցանեն :

Զայս

Զայս լուեալ Մաքսիմիանոս թագաւորն՝ անբաւ սրտմտութբ շարժեցաւ, և առեալ տասն հազար արանց զօրաւորաց՝ գնաց յԵգիպտոս․ և ըմբռնեաց զերանելի եպսն Երմոգինէս, և զքնի զօրականն զմինաս․ կացոյց զնս առաջի հրապարակին մերկս, և ասէ սաստելով․ զի՞ եղև քեզ Երմոգինէս․ ոչ ամենեցուն շնորհեցի զքեզ օգնական, և զպտմ իշխանութի ծովու և ցամաքի ետու 'ի ձեռս քո, և կացուցի զքեզ 'ի վր իշխանաց իմոց և դատաւորաց․ և առաքեցի զքեզ դարձուցանել զերբեմն երևելի և զպիտանացու այրդ զմինաս, որ այժմ մոլորեալ առ 'ի խրատել և դարձուցանել զքեզ առ 'ի պաշտամանէ ածոցն մերոց․ զի՞նչ տեսեալ՝ ունայնութե դորա հաւանեցար, և զերևելի գլխաւորութիդ կորուսեր, և նմանեցար որոց 'ի թատերս ծաղրածուք լինին ։

Իբրև հանդերձեալ էր սբ եպսն Երմոգինէս պխնի առնել թգւորին, ահաւասիկ երկու հրեշտակքն՝ որ զմինասիւն երևեցան նմա, նք և այժմ երևեցան ոպ փայլակն լուսոյ, և հովանի ունէին 'ի վերայ վկայիցն քնի, ասելով ցնս․ քաջալերեցարուք, քանզի առաքեցաք յօգնականութի ձեզ ։ Յայնժամ պխնի տուեալ երիցս երանելի եպսն՝ ասէ․ եթէ կամիս գիտել ինքնակալ թգր, թէ զի՞նչ տեսեալ՝ գործեցի զայս, վկայ է ժողովուրդս այս․ և ես զիրսն առաջի աչացդ բերեալ՝ պատմեցից զեղեալսն ։

Արդ զոր օրինակ սաստիկ պատուիրանաւ ե-

Հաս՛ քո ինքնակալ թգ՟րութ՟իդ 'ի վ՟ր մեր 'ի
կատարել զսրտմտութ՟ի բարկութ՟դ , նոյնպ՟ս
և ես սաստկագոյն մոլեգնել սպառնալեօք
և զարհուրանօք երթայի առ արդարև երա֊
նելի այրս այս ․ խոստովանի և բազմութ՟իս
այս , զի գտի զայրն կատարեալ քրիստոնեայ ,
և ձեպէի առ 'ի լնուլ զհրամանս քո աւան֊
դութ՟եցդ ․ վ՟յ զսորա զոտսն հատի , և զաչսն
փորեցի , և զլեզուն արմատաքի խլեցի ․ կա֊
մ՟ի և զմնացեալ մարմինն թռչնոց երկնից
և շանց գազանաց ընկենուլ առ վաղիւն ․ և
ահա 'ի վաղիւն անդր գտի զդա առաւել գե֊
ղեցկագոյն քան զանցեալ ժամանակն ։

Իսկ ոմն ոք տեսանելով զհրաշալիս զայս՝ յերկ֊
միտս լինէր 'ի խոստովանել զա՟ծն երկնաւոր ,
որ զայսպիսի սքանչելիս գործեաց ։ Արդ
զի՞նչ հանդերձեալ ես առնել՝ արա վաղվաղա֊
կի ․ և զոր ոչ կարես զմտաւ ածել զտան֊
ջանարանս՝ յուշ քեզ ածեմ ․ գազանընկէց
արա , 'ի խորս ծովու ձգեա՛ , սրով խողխո֊
ղեա՛ , հրո՛յ մատնեա , յօդակոտո՛ր արա ․ ո՛չ
և ես արարի լուսաւորչիս իմոյ մինասի , որ
և լուսաւորեաց զխաւարեալ միտս իմ , և
պայծառացոյց ճշմարիտ գիտութ՟ն ։

Յայնժամ բարկացեալ թագաւորն՝ ինքնին
տիգաւ խոցեաց զորովայն երանելւոյն երմա֊
գինի ․ և զձեռսն եւ յուսոց անտի հատա֊
նել , և զոտսն կտրել 'ի ծնգացն ․ և այնպ՟ս
զինքն և զկոտորեալ անդամսն հրամայեաց
ընկենուլ 'ի գետն՝ որ մերձ կայր ։ Իսկ զսուրբն
մինաս ետ կախել 'ի խաւարին բանտի , և

վէմ մի ծանր կախել զոտից նո̃ր . և պատուէր ետ չթողուլ զոք երթալ առ նա ։ Եւ բարկացեալ ՚ի վ̃ր քաղաքացւոցն՝ գրեաց ինքնին թ̃գրն անպիտանանալ քաղաքին՝ եթէ՛ անպատուութ̃բ և անկանելով յազատութ̃է , և եթէ յապականութ̃ դնելով աւերածով . և ասէր անօրէնն մաքսիմիանոս . ո՛ւր է զօրութ̃ գալիլեացւոյն . ահաւասիկ երմոգինէս անպիտանացեալ գետընկէց եղև . իսկ մինաս շանընկէց եղև ՚ի մահ . վ̃յ և դուք անպատուիք , զի նց̃ հաւատացիք . և քաղաքս ձեր անպիտան լինիցի . և եղև ողբումն մեծ ՚ի ժողովրդեան վ̃ն հրամանի թ̃գրին ։

Իսկ ՚ի գիշերին յայնմիկ հրեշտակք ա̃յ ըղմարմին երից երանելոյն երմոգինէի հաւաքեալ ՚ի գետոյն՝ դան ը̃ նմա ՚ի բանտն , ուր էր կախեալ մինաս . և իջուցեալ զնա ՚ի կախաղանէն , և զերկոսեանն հոգիացուցեալ՝ քաջալերէին զնոսա առաւել յօժարիլ ՚ի գործն . և մինչև ցառաւօտն խօսելով ը̃ նս̃՝ զօրացուցանէին զնս̃ , և ասէին . քաջալերեցարուք , քանզի ը̃ ձեզ եմք ՚ի ծածուկ . մի՛ համարիք , թէ ՚ի բաց կացցուք ՚ի ձէնջ , և մի՛ զարհուրեսջիք ։

Ապա ը̃ առաւօտն մինչդեռ պատուհասել կարծէր թագաւորն զաղէքսանդրացիս , եկին կացին երանելի վկայքն առաջի երեսաց մաքսիմիանոսի , և միաբան ասեն . դադարեսցին բանք քո ով թագաւոր . մեք ք̃ի անապական թ̃գրին զինուորեցաք , և ոչ հաւանիմք ապականացու թ̃գրութ̃դ՝ որ հա-

կա-

կառակ կայ ծ̃այ . քանզի ոչ հուր և ոչ սուր և ոչ ժանիք գազանաց և ոչ այլ ինչ տանջանք կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյն ք̃ի . այսուհետև զոր ինչ առնելոց ես՝ արա փաղփաղակի . քանզի փութամք ժամանել առ յաւիտենից

թ̃գ̃րն մեր ք̃ս ։

Յայնժամ ս̃րբյն Մինայի երագագիրն եւգրափոս ասէ ցՄաքսիմիանոս . զի՞նչ օգուտ գործեցեր քեզ ով թագաւոր առ մեզ գալովդ . ահա ոչինչ զօրեցեր՝ վ̃ն որոյ եկիրդ . քանզի եկիր 'ի վ̃ր մեր որպէս առիւծ մռնչելով , և դարձար ո̃պ աղուէս տկար . և դադարեցար 'ի յանդգնութ̃էդ քումմէ , և թեթևացար 'ի յունայն խորհրդոց քոց . զի ոչ կարացեր հասանել յանգ գործոյդ . այսուհետև հա՛րկ է քեզ տրտմել , և մեզ ուրախանալ հանա-

պազ ։

Իսկ նո̃ր բարկացեալ ը̃ պինին՝ զն̃ըն գրափոս կատարեաց սրով իւրովք ձեռօքն . հրամայեաց և զերկոսինն նոյնպէս սրով կատարել ։ Շնորհս խնդրեաց 'ի նմանէ երանելին մինաս՝ զմարմինն իւր թաղել 'ի բիւզանդիոն քաղաքի . իսկ Մաքսիմիանոս ոչ կամեցաւ կատարել զխնդրուածս նո̃ր . այլ յետ գլխատելոյն եդ զն̃ն յերկաթեղէն տապանի , և հրամայեաց ընկենուլ 'ի ծով . և ինքն ամօթա-

լից գնաց 'ի բիւզանդիոն ։

Իսկ ահա յետ քսան աւուր ելանէր տապանն 'ի բիւզանդիոն յաւուր կիւրակէի . և նախ 'ի 'ի հասարակ գիշերի երևէր տապանն մերձ յեզր ծովուն քաղկեդոնի յարևելից կողմա-

նէ .

նէ. և երկու հրեշտակքն կային ջահիւք առ նշխարօք սբցն. և էր կցեալ ի տապանն սիւն ամպոյ պայծառ լուսով. և զգացուցին եպիսկոպոսի քաղաքին հրեշտակքն զսբցն գալուստ, և յորդորէին նոյնժամայն հանել զնշխարսն:

Իսկ եպսն ժողովեալ զքահանայսն մեծաւ փութով և զարս հաւատացեալս և առաքինիս՝ դիմեաց ի տեղին ի տեսիլ լուսոյն. և եկին կացին առ ափն ծովուն. և միաբան ամենեքին տեսանէին զհրեշտակսն այ, զի ուղղէին զտապանն, մինչև բերեալ մատուցին եպսին և քահանայիցն. և պատուէին նք՝ որպէս և զիարդ պարտ է հանգուցանել զնշխարս սբցն, եղեն աներևոյթ. և նք առեալ եդին ի ծածուկ տեղի յշտեմարանս եկեղեցւոյն, մինչև ցվախճանն մաքսիմիանոսի. որ յետ երկուց ամաց տանջեալ աներևոյթ սրով ի հրեշտակէն՝ եհան զոգին մեծաւ տագնապաւ:

Յայնժամ եդին զպատուական զանձն յերևելի տեղւոջ ի բիւզանդիա մերձ առ ափն ծովուն՝ լինել աշտարակ ամուր և նախամարտիկ քաղաքին և ամ Ֆի. հիւանդաց ի բժշկութիւն, մեղաւորաց ի թողութիւն մեղաց. ճանապարհորդաց գաւազան զօրութեան, նաւելոց անքոյթ նաւահանգիստ. ամենեցուն յամ վտանգից դեղ փրկութեան: Կատարեցան նք վկայքն յամսեանն դեկտեմբերի, որ օր տասն էր, ի քն ի տր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն: Իսկ տարին կատարման նց՝

նմ̃՝ զոր ոչ գնէ որոշակի սբ̃ն աթանաս, 'ի պարագայից պատմութ̃են անկանի է̃ մէջ 300 և 310 ամի տ̃ն ․ յորում ժամանակի էին երեքին իսկ կայսերք մաքսիմիանոս անուանեալք, մականուամբ՝ հերակլէս, արմենտարիոս, և դաժ ․ յորոց վերջինն առաւել տիրէր կողմանցն եգիպտոսի ։

## Սքանչելիք սբ̃յն Մինասայ ( առաջնոյ՝ կամ Երկրորդին ) ։

Ըստ հնութեան գրչի վարուց մեծին մինասայ, այն է սբ̃ն աթանաս, հին է և գրիչ սքանչելեաց սբ̃յն մինասայ, այն է տիմոթէոս աշակերտ նորին աթանասի, և յաջորդ յաթոռ հայրապետութեան աղեքսանդրիոյ՝ զկնի եղբօր իւրոյ պետրոսի ․ Այլ այն է անգիտելի, թէ պատմուածն սքանչելեաց արդեօք առ մինասիւ այս աթենացի նայեցի, որ յաղեքսանդրիա կատարեցաւ, և մարմին նր̃ 'ի բիւզանդիա փոխադրեցաւ, եթէ առ մինաս եգիպտացի՝ որ 'ի կոտիա նահատակեցաւ, և մարմին նր̃ յաղեքսանդրիա փոխադրեցաւ ․ Վս̃ զի զոր օրինակ երկոքեանն իսկ նշանագործ վկայ ճանաչին, և երկոցունց անխափան մարթի պատկանիլ նշանաւոր տաճար սբ̃յն մինասի՝ որ յաղեքսանդրիա, ք̃ն նմին և բանք տիմոթէայ յայս և յայն 'նը կարեն հայիլ ․ մինչ զի ճառընտիրք մեր, որպէս և յայսմաւուրք, զկնի վարուց այսր մինասայ պատմեն

զնոյն սքանչելիս՝ առանց անուան գրչի՝ ոպ շարունակուէ բանից աԹանասի, և սուրխոս որպս և ժամագիրք յունաց՝ զկնի վարուց եգիպտացւոյն մինասայ 'ի նոյեմբ. 11. զնէ զնոյն պատմութիս յանուն տիմոԹեայ. այլ վն վկայասէր ջերմեռանդից չէ հարկ հայել յայս զանազանութի (զորմէ լիցի բան և 'ի ծանօԹուէ), այլ հաւատով կարդալ զսբն մինաս 'ի բարեխօսուէ, և ըն նմին լսել զառաջիկայ անցս հրաշալիս:

Յաւուրս մեծին կոստանդիանոսի՝ յորժամ տիեզերք ածպաշտութբ ծաղկեցան, և համարձակ էր քրիստոնէութի յամ տեղիս, շինեցին և աղեքսանդրացիք տաճար հոյակապ յանուն սբյն մինայի յաղեքսանդրիա մօտ 'ի ծովեզրն, և խնդրեալ զնշխարս սբյն՝ եդին անդ (եԹէ եգիպտացւոյն իցէ՝ որ և կուտիայի ըն կատարմանն, և եԹէ աԹենացւոյն կամ բիւզանդացւոյն). և տր սկսաւ ցուցանել ազգի ազգի զօրութիս 'ի տաճարի կն 'ի տապանէ սբյն մինասայ:

Այր ոմն էր 'ի ժամանակին մեծատուն յոյժ՝ եկեալ յերկրէն խաւրացւոց յաղեքսանդրիա 'ի պատճառս վաճառականութե. և լուեալ 'ի քաղաքի անդ զամ սքանչելագործութիս և զբժշկութիսն՝ զոր առնէր սբն մինաս, ասէ. կամէի և ես երԹալ և աղօԹել 'ի տաճար սբյն մինայի, և երկիրպագանել նշ նշխարաց նր, և տալ անդ փոքր ինչ օրհնութիւն յընչից իմոց, ոպ զի օգնեսցէ ինձ ած բարեխօսութբ սբյն: Եւ յարուցեալ էառ

ըն

ընդ իւր զքսակ ոսկւոյն, և էանց նաւակաւ է̃ ծոց ծովուն կմ̃ է̃ լձ̃ն. և հասեալ ՚ի տեղին կոչեցեալ լոքսոնեստա, եւ ՚ի պանդոկ մի, և ասէ ցպանդոկապետն. ը՛նկեր, որա՛ է̃ իս ողորմութի, և ընկա՛լ զիս ՚ի տուն քո. քանզի է̃ երեկս է. և ոչ իշխեմ միայն գնալ է̃ ձ̃պ̃հս իմ։ Իսկ ասէ պանդոկապետն. մ՛ուտ եղբայր մինչև ցառաւօտն. և բերեալ սեղան՝ եդ առաջի. և յետ ընթրեաց իբրև կամէր ննջել այրն, ետես պանդոկապետն ըզքսակն. յայնժամ եմուտ սատանայ ՚ի սիրտ նը̃ր, որպէս հանապազ մարտնչի ընդ ազգս մարդկան ։

Իսկ իբրև ննջեաց վաճառականն, յարեաւ պանդոկապետն, առ զսուրն և սպան զնա. և առ զքսակն ո̃մ զանձիւ՛ն. և ասէ է̃ միտս. զի՞նչ արարից զմարմինն սորա. մի՛ գուցէ տեսանիցէ ոք, և վտանգ լինի հասանիցէ. արդ յարուցեալ կոտորեցից զո̃մ անդամս նը̃ր, և արկից ՚ի սակառին, և նովաւ ՚ի լձ̃ն. և իբրև այն ինչ յօշեաց զնա, և կախեաց զսակառին, ոչ̃ զի ժամ գտցէ տանել ընկենուլ ՚ի խորս ծովուն, լուսացաւ օրն, և երկեաւ տանել զոր կամէր. և առեալ զգլուխն՝ կամէր մանրել վ̃ս անյայտ առնելոյ.

Իսկ ահա եհաս Տ̃րն մինաս ձիընթացիւք և բազում արամբք ոչ̃ ձևով ՚ի Թագաւորէն առաքեալ. զոր տեսեալ պանդոկապետին է̃ պատուհանն՝ փութացաւ կախեաց զգլուխն է̃ այլ մնացունս ՚ի մէջ պանդոկին. և ո՛չ գիտաց՝ զի՞նչ գործեաց՝ յերկիւղէն ։ Իսկ Տ̃րն մի-

մինաս բացեալ զդուրս տանն, և կալեալ զպանդոկապետն՝ ասէ ցնա. ասա՛ ինձ ըզ-ճշմարիտն. ու՞ր է այրն՝ որ օթեցաւն առ քեզ. նա ուրացաւ և ասէ, ոչ ոք օթեցաւ աստ: Ասէ ս̃բն. եթէ ոչ կամիս խոստովա-նել վ̃ն առնն, ես գտից զնա. և նոյնժամայն առեալ ս̃բյն զաւազանին՝ եգիտ 'ի նմա ըզ-գլուխն այլ և սնդամօքն: Յայնժամ սկսաւ աղաչել զնա պանդոկապետն, և գոչէր՝ մե-ղայ. քանզի տեսանեմ ասէ զշնորհսն ա̃յ ը̃ քեզ. և խոստովանիմ զյանցանս իմ. զի յոր-ժամ տեսի զքսակ առնն, լցաւ սիրտ եղկե-լոյս յիմարութ̃բ. և յարուցեալ սպանի զնա. և ահա ո̃ր իմ քսակ ն̃ր լի գանձիւն. տաց քեզ և յիմոց գանձուց հարիւր դահեկան. միայն ազատեա՛ զիս 'ի սպանմանէս յայս-մանէ:

Պ̃ինի ետ նմա ս̃բն, և ասէ. զզջացի՞ր, և թողում քեզ զյանցանս քո. և նա ասէ. տէ՛ր իմ, որպէս հրամայես ինձ՝ առնեմ. և եթէ փրկիմ 'ի թշ̃րէն, երթամ 'ի տաճար ս̃բյն մինասի և ապաշխարեմ և առնում զաքեմ կրօ-նաւորութ̃ե: Երբև ետես ս̃բն զզղջումն, ասէ ցնա. դի՛ր 'ի միջի զաւազանին՝ յորում կան անդամք առնն. զի յայտնի լինիցի փառքն ք̃նի 'ի ս̃բս իւր: Եւ կրկնեալ ծունր ս̃բն մինաս՝ աղօթեաց յերկար. և ապա ասէ ցսպանեալն. քե՛զ ասեմ յանուն յ̃ի ք̃ի, որ հաստատեաց զիս 'ի վէմն խոստովանութ̃ե իւ-րոյ, արի՛ վաղվաղակի հաստատութ̃բ ա̃մ ան-դամօքդ քո. և ծանիցեն՝ 'ի ձեռն քո հերձուա-

ծողք

ծօղք և հեթանոսք զփառս ք՟ի ա՟յ իմոյ. ուսուցիս և դու՝ թէ ես եմ ծառայն ա՟յ մինաս ։

Նոյնժամայն յարեաւ, ո՟ր էր յառաջագոյն. և կրկնեալ ծունր՝ երկրպագէր ս՟րյ վկային, և բազմութեն՝ որ է՟ր նմա. և ասէ. գոհանամ զտ՟նէ ա՟յ, որ արար ողորմութի ը՟ն իս 'ի գալստեան քո ս՟րդ ա՟յ. քանզի ծանրացեալ էի 'ի քնոյ, և եկիր տ՟ր զօրութ՟բ բազմաւ և զարթուցեր զիս. զի ոչ գիտաց այրն՝ զինչ գործեցաւ առ ինքն. այլև ոչ պանդոկապետն պատմեաց նմա. և օրհնեաց զս՟ր վկայն զպանեալն. և եղև աներևոյթ 'ի նոցանէ ։

Իսկ առեալ պանդոկապետն հարիւր դահեկան՝ զոր խոստացաւ ս՟րյն, և վաճառականն զքսակ իւր, գնացին 'ի տաճար ս՟րյն մինայի. և կատարեցին զուխտս իւրեանց ։ Յայնժամ խոստովանեցաւ պանդոկապետն առաջի ամենեցուն՝ որ ինչ գործեցաւ 'ի նմանէ առ վաճառականն, և թէ որպէս յարոյց զնա ս՟րն. և փառաւորէին ամենեքեան զա՟ծ. հիանայր և վաճառականն 'ի լսել անդ, թէ արդարև սպանաւ ինքն և յարեաւ. և տայր փառս ա՟յ, և երթեալ պատմէր ամենեցուն զփառսն ա՟յ ։ Իսկ պանդոկապետն կրօնաւորեցաւ, և եկաց հինգ ամ, և վախճանեցաւ ը՟ունելի ապաշխարութ՟բ, քարոզելով միշտ զզօրութի ս՟րյն մինասայ. որով և ոչ սակաւք 'ի հեթանոսաց և 'ի հերձուածողաց եկին 'ի հաւատս ճշմարտութե ։

Դարձեալ՝ այր մի եւտրոպիոս անուն յաղեքսան-

սանդրիա խորհեցաւ առնել երկու սկուտեղս արծաթի, տալ զմին 'ի տաճար սրբոյն Մինայի, և զմիւսն 'ի սպաս սեղանոյ իւրոյ. կոչեաց առ ինքն արծաթագործ մի, և ասէ ցնա. ա՛ռ յինէն արծաթ ընտիր, և արա՛ երկուս սկուտեղս նմանս միմեանց. և 'ի մինն գրեա՛ զանուն իմ, և 'ի միւսն զանուն սրբոյն Մինասի. և արար այնպէս. և հանդիպեցաւ լինել սրբոյն Մինասին գեղեցիկ քան զմիւսն առաւել. և տեսեալ առնն՝ նախանձեցաւ ընդ անօթ սրբոյն. և ասէ ցմիտս իւր. երթայց 'ի սուրբ վկայն, և տաց զսկուտեղն՝ յորում գրեալ է արծաթագործն զիմ անունս. և զսրբոյն կալայց ինձ 'ի պէտս. և յետ մահուան իմոյ տաց և զայն 'ի տաճար սրբոյն:

Մինչդեռ երթայր նաւու 'ի սոյն միտս, եղև ժամ ճաշոյ, և ծառայն եդեալ սեղան՝ եբեր զսկուտեղն սրբոյն 'ի սպաս տեառն իւրոյ ըստ հրամանի նորա. և յետ ճաշոյն առեալ ծառայն զանօթն՝ գնաց լուանալ յեզր նաւուն. և հարեալ ալեաց՝ էառ զսկուտեղն 'ի ձեռաց նորա. երկեաւ ծառայն՝ եթէ գանեսցի 'ի տեառնէ իւրմէ, ընկէց զինքն 'ի ծովն զկնի անօթոյն ընկղմելոյ: Իբրև գիտաց այրն զեղեալսն, ասէ. վա՛յ ինձ, զի մեղայ առաջի Աստուծոյ՝ նախանձելով ընդ անօթ սրբոյն, և վասն այնորիկ կորուսի զծառայն իմ. և եթէ գիտասցեն մարդիկ, եթէ զանօթ սրբոյն կալայ ինձ 'ի սպասաւորութիւն, զո՞ր նախատինս ոչ նախատեսցեն զիս. եթէ յառաջագոյն գիտացեալ էր իմ զայս, լաւա-

գոյն

դոյն էր փոխանակ միոյ անօթոյն երիս տալ սրբյ վկային, և ոչ մտանել յայսպիսի աղէտս և յամօթ դառն մահուանս ։ Յայնժամ ուխտեաց և ասէ. եթէ արժանաւորիմ մեռել մարմնոյն՝ զի թաղեցից, տաց երկու սկիհս կմսկուտեղս ՚ի տաճար սրբյ վկային Մինասի, և զկորուսեալ անօթոյն զգինն ։ Իբրև եհաս յաւուրն երկրորդի ՚ի նաւահանգիստն, հայէր յեզր ծովուն յայսկոյս և յայնկոյս. զի թերևս ալիքն հանցեն ՚ի ցամաքն զմեռելն ։ Ասեն նաւավարքն. զի՞նչ այդ անմտութի է քո, զի յետ երկուց աւուրց նաւելոյ մեր յուզես զմարմին նր ։ Ասէ ցնս այրն. յուսամ ՚ի տր ած բարեխօսութբ սրբյն Մինասի, զի որ զխողխողեալն անդամօք յարոյց ոսկ ՚ի քնոյ, գոնեա զմարմին սորա ցուցանէ ինձ նախ քան զվախճան իմ ։

Եւ յասել նր զայս՝ ահա ծառայ նր ՚ի լող անկեալ գայր՝ ունելով զանօթն ՚ի ձեռին իւրում ՚ի վր ծովու, և հարցանէր զնաւուն վն տն իւրոյ. և տեսեալ նաւավարացն զծառայն՝ ձգեցին զլարն. և նր կալեալ՝ ել ՚ի ցամաքն ։ Իբրև ետես զնա տրն իւր, գիրկս արկեալ համբուրէր զնա արտասուօք. և հարցանէր, ո՞րպէս փրկեցար ՚ի ծովէ ։ Եւ նա ասէ. յանկանիլ իմում ՚ի խորս՝ տեսի այր մի լուսաւոր, որ ասէ ցարս երկուս՝ որ էին նմա. կալարուք զդա, զի մի ընկղմեսցի. և ՚ի ժամէն յայնմանէ ոչ բաժանեցան յինէն, մինչև եկի ՚ի տեղիս յայս ։ Եւ զայս լուեալ տռն տմ բազմութբ հանդերձ՝ փառս

ե

եսուն օրյ, և հաստատեցին՝ թէ արագահաս
է յօգնականութի՟ սր. վկայն մինաս. և գնաց
այրն ՚ի տաճար սրբյն, և ետ անդ զերկու
սկուտեղս և զայլ ևս նուէրս առատապէս.
և զծառայն եդ ՚ի սպասաւորութի՟ սրբյ եկե֊
ղեցւոյն. և ինքն դարձաւ ՚ի տուն իւր՝ գովե֊
լով և օրհնելով զա՟ծ ։

Հրեայ ոմն էր յաղէքսանդրիա վաճառական՝
բնակեալ մօտ առ քրիստոնէի ումեմն. և յոյժ
սիրէին զմիմեանս հրեայն և քրիստոնեայն.
իբրև հանդերձեցաւ հրեայն գնալ ուրեք ՚ի
վաճառականութի՟՝ եկն ՚ի տուն քրիստոնէին,
և ետ ցնա զքսակ իւր՝ կնքեալ մատանեաւ
իւրովն ՚ի պահեստ, մինչև դարձցի ։ Չո֊
գաւ վաճառականն. և իբրև դարձաւ ՚ի ճա֊
նապարհէն, առաքեաց քրիստոնէին պար֊
գևս. իսկ նա ծիծաղեցաւ ՚ի միտս իւր, և
ասէ. ես զպարգևսն առի. և եթէ խնդրէ
զինչսն, առնու և ոչինչ. քանզի խորհեալ
էր ը՟ կնոջն՝ ասելով. ով կին՝ եթէ հնար է՝
ուրացուք զքսակ հրէին. և եթէ երդմնե֊
ցուցանէ զմեզ, երդնումք, և ոչինչ վնասէ
մեզ. վ՟ զի հրէի երդնումք, և ոչ եթէ քրիս֊
տոնէի. և այնպէս խորհրդակցութ՟ բան֊
սարկուին ուրացաւ այրն զքսակն՝ ՚ի խնդրել
հրէին ՚ի նմանէ. մինչև ժողովեցաւ բազմու֊
թիւն ՚ի վ՟ նց. և լինէր հակառակուի՟ յոյժ,
զի ոչ գոյր վկայ ՚ի միջի ։

Ապա զմտաւ ածեալ հրեայն՝ ասէ ցքրիստո֊
նեայն. լուայ եղբայր վ՟ սրբյն մինասի, ե֊
թէ մեծ են փառք նր. և յամօթ առնէ զայ֊

նս

նոսին՝ որ սուտ երդնուն 'ի նա. արդ արի՛ գնասցուք անդ. և եթէ երդնուցուս 'ի փառս նր̄, եթէ ոչինչ առներ յինէն, երթ 'ի խաղաղութ̄ի ։ Ասէ քրիստոնեայն. և զիա՞րդ լինիցի այդ, զի ոչ մտանէ հրեայ յեկեղեցի քրիստոնէի ։ Ասէ հրեայն. եթէ ոչ լինի ինձ մտանել, ես մնամ արտաքոյ 'ի դաւթին, և դու մտեալ երդնուցուս առաջի այլոց ։ Իսկ քրիստոնեայն ոչինչ համարելով զերդումն՝ ասէր ը̄ միտս, թէ ներէ ինձ ս̄բ մինաս վ̄ս երդմանս. և այնպէս յարուցեալ գնացին 'ի դուռն տաճարի ս̄բյն մինայի ։

Անդ ասէր հրեայն ցքրիստոնեայն. երկի՛ր դու յա̄յ ը՛նկեր, և ողորմեա՛ անձին քում. և որչափ կամիս 'ի գանձէն՝ ա՛ռ քեզ, և զմնացորդսն տո՛ւր ցիս. միայն մի՛ երդնուր ։ Այլ իբրև ոչ կամեցաւ լսել քրիստոնեայն, բողոք կալաւ հրեայն առ ս̄բն 'ի դաւթին ն̄ր, և ասէ. սուրբ մինաս՝ թէպէտև ո՛չ եմ արժանի կոչել զանուն քո, ցո՛յց այսօր զսքանչելագործութ̄ի քո. ո̄պ զի և ես փառաւորեցից զքեզ ։

Այլ մտեալ քրիստոնեայն՝ ոչ ունելով զերկիւղն ա̄յ 'ի սրտի իւրում, երդուա՛ւ. և նայէր հրեայն՝ եթէ լինիցի ինչ նշան վ̄ս երդմանն. սակայն երկայնամտեաց նմա ս̄բն ։ Այլ իբրև կատարեցաւ երդումն, դարձան երկոքեանն, և գնային երիվարաւ. իբրև չոգան մղոնս երիս, յանկարծակի փաղեալ ձիոյ քրիստոնէին՝ ձգեաց զնա 'ի գետին. և անկաւ 'ի նմանէ քանալին արկեղն, յորում

էր

էր քսակ հրէին, հանդերձ մատանեաւն. յուզեաց և ոչ եգիտ. և խնդաց յոյժ բ̅ անկումն իւր և բ̅ յառնելն ողջանդամ, համարելով թէ այն է հատուցումն երդման իւրոյ։ Իբրև եկին 'ի տեղի մի, և նստան՝ զի ճաշեսցեն, սորջացաւ հրէայն և ասէ. ընդէ՞ր հաւատացի սբ̅յն մինասի իբրև սքանչելագործի. զի ոչ մի ինչ տեսի նշան՝ յորոց լսէի. և եթէ չէր իմ երդմնեցուցեալ զքրիստոնեայն, յետ սակաւ աւուրց արդեօք տայր ինչ ինձ յիմոցն. զայս ասէր և լայր. և դարձեալ ասէր. ընկեցից զհոգս իմ 'ի տ̅ր, և 'ի ն̅ք վկայ ն̅ր մինաս։ Իսկ մինչդեռ նստէին նոքա երկոքեանն, ահա գայ ծառայ քրիստոնէին՝ ունելով զքսակ գանձուն. և տեսեալ զնա՝ սքանչացան երկոքինն. և տ̅ր ծառային երկեաւ յոյժ, և ասէ ցծառայն. ուստի՞ գաս, և զի՞նչ է՝ զոր ունիս։ Պ̅խնի ետ և ասէ. եկի վ̅ն որոյ առաքեցեր տ̅րդ իմ կատարել զհրաման քո։ Ասէ ցնա տ̅ր ն̅ր. զո՞վ առաքեցի, և զո՞ր հրաման եկիր կատարել։ Ասէ ծառայն. այսօր եկն, տէր իմ, հեծեալ մի բարձր և ահեղ յոյժ առ տիկինն իմ, և ունէր զմատանին և զբանալին արկեղին՝ յորում եդեալ էիր զգանձս. և ասէ ցտիկինն իմ. ճանաչե՞ս զայս. և նա ասէ. այո՛։ Ասէ հեծեալն. այրն քո աղաչեաց զիս և առաքեաց զիս առ քեզ՝ ասելով. արձակեա՛ ինձ զքսակ հրէին 'ի ձեռն ծառայի իմոյ, զի տանջիմ դժնդակ 'ի սբ̅յ վկայէս. և վ̅ն այնորիկ ընթացեալ բերի զքսակդ. ահաւասիկ և մա-

տա

տանիդ և բանալի գանձուդ , զոր եբեր հե-
ծեալն այն առ ոտկնոն իմ ։

Յայնժամ յարուցեալ հրէին , և առեալ յինքն զքսակն նովին կնքովն , աղաղակէր ուրախութբ̃՝ ասելով . մե՛ծ է ա̃ծն քրիստոնէից , և մե՛ծ է սբ̃ վկայ նր̃ մինաս . հրաշալի՛ք են հաւատք քրիստոնէից . զի ոչ ոք յուսացեալ ՚ի քեզ տր̃ և ՚ի բարեխօսութի̃ սբ̃յն մինասի՝ դարձցի ամաչեցեալ . ահաւասիկ տր̃՝ լինիմ և ես քրիստոնեայ՝ վս̃ սքանչելագործութե̃ սբ̃յ վկային մինասայ ։ Նաև եկեալ անդրէն ՚ի տաճար սբ̃յն՝ ետ անդ զերրորդ մասն քսակին , որ համարեցաւ կշռով հազար դահեկան . և ասէ . դու գիտես սբ̃դ տ̃յ , զի առաջի քո ասացի ցայրն , թէ ո՛րչափ և կամիս՝ ա՛ռ քեզ , և զայլն տո՛ւր ցիս . և ո՛չ կամեցաւ . արդ տաց զայս քում սրբութե̃դ ։

Նաև փախուցեալ ՚ի պաշտամանէ հրէից՝ մկրտեցաւ ինքն և ա̃մ տունն իւր , և թուեցան յարկք նց̃ է̃ հաւատացեալս ՚ի քս̃ . և բարեպաշտութբ̃ և ճշմարտութբ̃ օրհնէին զա̃ծ , և զսբ̃ վկայն նր̃ մինաս . և յայնմ օրէ հետէ ոչ ոք իշխէր երդնուլ ՚ի տաճար սբ̃յն՝ ո՛չ սուտ , և ո՛չ ճշմարիտ ։ Իսկ քրիստոնեայն գնաց ՚ի տուն իւր լի ամօթով և տրտմութբ̃ . և ապա առեալ զկէս ընչից իւրոց մատոյց տաճարի սբ̃յ վկային , և անդ ապաշխարէր զյանցանս իւր . և ոչ մեկնեցաւ անտի , մինչև յայտնեցաւ ընդունելի գոլ ապաշխարութի̃ նր̃ . և այնուհետև օրհնէր զա̃ծ և զսբ̃ վկայն մինաս մինչև ցօր մահուան իւրոյ ։

ՕՄ.-

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Մի և նոյն պանծալի վկայաբանութիս մինասեանց, աթանասեանն ասեմ, կայ 'ի Ա. և Բ. Ծաղկնոցիս նովին չարագրութբ, սկսանելով այսպէս. * Քոյին շնոր_ „ հացն յաճախման, և յեկեղեցեաց բազմանալն, 'ի „ մահուանն խափանելն, և յարութե երեման || . են. Թող զտարբերութի գրչաց, ուր Բ. ուրեք ուրեք Թուէի կամաւ պարզել զԱ. այլ մեք ուր անկարօտ տեսաք պարզաբանութե՝ զառաջնոյն պահեցաք զոճ անփոփոխ ոճ արդարև վայելչական մեծին աթանասի։ Այլ մե_ տափրաստէս առ սուրբոսի, կմ ոմն 'ի յոյն մեկնաբանից, զնոյն վայն պատմութի Թէպէտև պահել պահէ բ̃ էութե ծայրէ 'ի ծայր, բայց կրկնապատիկ և եռապատիկ եր_ կարութբ բանից ընդայնելով, եթէ 'ի զարդ, և եթէ 'ի դիւրիմաց ձև՝ մտ եդեալ նկարագրութբ. յոր և հայե_ ցաք 'ի պէտս բաղդատութե, այլ ոչինչ առաք 'ի նորին ոճոյ. ոչ եթէ բ̃ վայր հարկանելով զայն, այլ ջանալով զաղբիւրն պահել յստակագոյն։ Եւ սորա սկիզբն է. * Ցեա փրկչին քոյ յերկիր գալստեանն || . են։ Թող զհամառօտութի յայսմաւուրաց իւրաքանչիւր ազգաց, որք պէսպէս օրինակաւ քաղեն զնոյն վկայաբանութի. զոր չունիմք պէտս մասնաւոր ծանօթութեց. եթէ ոս_ մեք կամք լցեն, բաղդատեսցէ և տեսցէ զանճխաս զա_ նազանութե միոյ միոյ յիրերաց։

Այլ գործ է իմանալ, թէ ո՞ր օրինակ իցէ ընտրելի 'ի խօսելն զսքանչելեաց սոյն մինասայ. զի թէպէտև զայն առաւել միաձայնութբ և պաճմամբ չարագրութե բ̃ մե_ ծի մասին՝ ունին օրինակք մեր և սուրխոսին, բայց ոճ սասացաք՝ մերքն ասա պատմեն, իսկ ժմ. յն. և սուրխոս 'ի վարս մինասայ եգիպտացւոյ՝ բանիւ տիմոթեայ։ Հաստատէ զընթերցուած մեր չարականն, որ արագա_ հաս օրնական կոչէ զնոյն զայս զընկերն երմոգինեայ և գրափոսի, զոր և խրաւամբք մեծն մինաս անուանէ. և ենթադրէ՝ թէ յանուն նը են հաստարակօրէն եկեղե_

ցիք, որք կանգնեալ են ՚ի մինաս անուամբ ։ Եւ ժա-
մագիրքն իսկ յունաց՝ որ յաւուր մինասայ եգիպտաց-
ւոյ գրէ վայն հրաշս, գրէ և ՚ի վախճանի վարուց մե-
ծին մինասայ, երմոգինեայ և գրափոսի, թէ * բերեալ
,, եղեն պատուական նշխարք նոցա ծածային կարգաւորու-
,, թեան, և եդան ՚ի բիւզանդիոն · ուր և ցարդ սքանչե-
,, լագործեն, և նշանս առնեն անբաւս ‖ ։ Եւ եթէ ար-
դարև՝ ոչ աթանաս գրեաց զվարս մեծին մինասայ ըստ
մեզ, աշակերտ նորա տիմոթէոս լցէ գիրսն սքանչելեաց,
երևի և նա զնմին մինասայ խօսել ։

Ինչ մի միայն ճգնէ զմեր կողմն՝ անուշառ տեսութ՟ · իբր
զի հրաշք սորին մինասայ՝ որ յաղեքսանդրիա, առաւել
պատշաճին մինասայ եգիպտացւոյ, որոյ նշխարք ՚ի կո-
տիայ քաղաքէ փոխադրեցան յաղեքսանդրիա · և տա-
ճար սորին՝ որ անդ, ենթադրի չլինեալ ՚ի վերայ նշխարաց
նորա, կամ թէ դոյր նորա տապան և ուխտատեղի ՚ի տաճարի
անդ ։ Զայս թերևս յայտնել կամի և այն չփոթ գրուածն
ճառընտրին մերոյ Բ, ՚ի վերջաբանութեան (ուր թուղթ
պակասի ՚ի ճառընտիրն Ա) · * Այսպէս (է) ճշմարիտ
,, վկայութեան սորին մինասի, և սոցին երմոգինէի և գրա-
,, փոսի, որ վկայեցին ՚ի կոտուացւոց մայրաքաղաքին
,, յամսեանն աթիրի ժէ · որ է յառաջ քան զերիս նոյեմ-
,, բերի, և ը աւուրց գլուխ տասնն ։ Զոր ստուգիւ
,, գրեցաք զվկայութիւն սոցին, և զսքանչելագործութիւն
,, սոցին · և զսքանչելագործութիւնն՝ որ լինէին ՚ի ձեռն
,, սորին մինասի, ՚ի փառս ամենասուրբ երրորդութեանն ‖ ։

Ուր քաղաքն կոտուացւոց, այն է կոտուխ՝ յայտ առնէ
զտեղի նահատակութեան մինասայ եգիպտացւոյ, ոչ և
նոյեմբեր ամիսն հայի ՚ի ժամ կատարման նորա · և զխամրդ-
գնէ լինել զոյգ ընդ երմոգինեայ և գրափոսի · յայտ է
թէ ՚ի հին օրինակս ուրեք՝ զկնի միմեանց գրեալ կային
վարք երկոցունց սոցա մինաս անուանելոց, և ՚ի վախճա-
նի պատմութեան սքանչելեաց նոցա · զորս ՚ի բաժանել գրչաց
յայլևայլ տեղիս՝ չփոթ ընծայեցուցին զբանն, զոր չէ
մարթ մեզ որոշել, մինչև ստուգեսցի այլուստ խնդրե-
լին մեր ։ Առ այժմ մեք անդ եգաք զսքանչելիս՝ ուր
ճառընտիրք մեր պատմեն · ոչ և յայսմաւուրքն ։

Միւս ևս հրաշք գրի ՚ի ժամագիրս յունաց և առ սու-
րիոսի ։ Այր ոմն էր խեղ և կաղ ՚ի մանկութէ՝ անկա-

րող ՚ի գնալ կմ̃ ՚ի գործել ինչ ձեռօք. և լուէր զսքան-չելագործութիւնս սբ̃յն Մինասայ՝ եւ տանէր զինքն ՚ի տա-ճար նր̃. անդ գտաւ յաւուրսն յայնոսիկ և կին մի կաղ յոտից և համր լեզուաւ, և երկոքեանն խնդրէին օգ-նականութիւն ՚ի սբ̃յն. զոր և գտին իսկ. զի համրն խօ-սեցաւ, և երկոքին առին զզօրութիւն գնալոյ ողջանդամ։ Այլ վն̃ անհեթեթ պարագայից մուծելոց արդեօք յայս պատմութիւն ՚ի տգիտաց՝ զանց առնեն զայնոսիկ Ճառըն-տիրք մեր. և կմ̃ թէ չեն գտեալ ՚ի հարազատ օրինակս ախմոթեայ ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Յովհաննու կամաւոր աղքատին ։

Հ. յունվար. 16 ։ Յ. Լ. յնվր. 15 ։ Մարք հա-րանց ։ Ճառընտ. Օ. Ն̃Գ = ՆԷԲ. Խ̃Խ Գ. ՅՂ = ՅՂԷ ։ Բոլլանդ. յովհաննէս. հատ. ա. յնվ. ԺԵ. 1029 = 1038 ։ Սուրիոս. ի. այլ. ։ (1)



ՃԳՆԱՒՈՐ ՆԱՀԱՏԱԿՆ քնի Յովհաննէս՝ աղքատա-ցեալն վն̃ քնի, Գալիվիտէս կո-չեցեալ ՚ի յունաց, որ նշանակէ կամ հիւղաբնակ, էր ծննդեամբ ՚ի կոստան-դնուպօլսոյ՝ որ կոչեցաւ նոր Հռովմ. մինչև ոմանց համարել զնա Հռովմայեցի. թող զի յայն դարս սկսեալ էին և յոյնք կրել զա-նուանս ռոմէոս կամ հռոմ, որ թարգմանի հռով-

Հռովմայեցի ։ Իսկ ժամանակն անկանի յաւուրս փոքուն Թէոդոսի , կին փոքր մի զկնի՝ նր թագմաց , այլ նր ոմանց փոքր մի յառաջ՝ ըստ որում հայրն նր ասի լինել յաւուրս արկադէոսի կայսեր և յովհաննու ոսկեբերանի ․ ում թէ կամ ժամանակակից էին երկոքին կամաւոր աղքատքն յովհաննէս և ալեքսիանոս , և կին յովհաննէս քանի մի ամօք յետոյ եղև հետևող ալեքսիանոսի ։

Այլ էին ծնօղք յովհաննու ՚ի մեծամեծաց և ՚ի պատուականաց թգուորեալ քաղաքին ․ անուն հօր նորա եւտրոպիոս ստրատելատ , և մօրն թէոդորա , երկոքեան ևս երկիւղածք այ ․ եղեն նց որդիք երեք ․ և զերկուս ՚ի նոցանէ եդուն ՚ի ծառայութի դրանն արքունի ․ իսկ զկրտսերն յովհաննէս յետ սնուցանելոյ ՚ի տան ննծապաշտ կարգօք՝ եդուն յուսումն գրոց սրբց ․ և ապա եդին ՚ի մարզս ճարտասանութե և փիլիսոփայութե ․ և յոյժ զօրաւոր էր մտօք մանուկն յովհաննէս ․ մինչև ՚ի սակաւ ժամանակս բովանդակել զնմ ուսմունս ․ այլ սիրտ նորա առաւել վառեալ էր յածայինս , սիրէր զաղօթս և զեկեղեցիս այ և զվկայարանս սրբց ․ և յընթերցմանէ սր գրոց ոչ երբէք ձանձրանայր ։

Այլ իբրև եղև ութևտասնամեայ , հանդիպեցաւ նմա միայնակեաց մի յանհանգստից վանաց , որ և ագիմիդոս կամ ակէւմիտ , յր անքուն կոչեցեալ՝ ՚ի վերին սահմանաց բիւզանդեան նեղուցի ․ զորոյ զհրեշտակակերպ տեսիլն և զձև տեսեալ յովհաննու՝ եհարց և

իմացաւ զա͞մ կարգ ուխտին. և ցանկացաւ մտանել 'ի վանս նց͞՝ գաղտ 'ի ծնողացն. քանզի գիտէր՝ թէ ոչ թողուն զնա. ա͞պ և պատմեաց կրօնաւորին զկիրս սրտի իւրոյ. զի սիրեն զիս ասէ ծնողքն իմ առաւել քան զերկու եղբարս իմ. և արդ կամին զինուորել զիս 'ի դուռն թագաւորին 'ի դասս սինկղիտոսացն. և յայնժամ ամուսնացուցանեն զիս և զբաղեցուցանեն 'ի հոգս և 'ի զբօսանս սնոտի և անցաւոր կենցաղոյս: Այլ ես յարաժամ երթալով յեկեղեցին, և լսելով զա͞ծաշունչ գիրս՝ զոր ընթեռնուն, իմացայ և ծանեայ՝ զի ոչինչ են կեանք շխ͞իս այսորիկ. և ա͞մ ունայնութի է՝ խաբողական և կորստական. և միայն այն է մարդ՝ որ արհամարհէ զկենցաղս զայս՝ ը͞ նմանուե͞ ձերոյ, և ապրի 'ի յաւիտենական հրոյն, և ժառանգէ զանմահ զյաւիտենական կեանսն. վ͞յ ով հայր պատուական անկանիմ յոտս քո և աղաչեմ, զի տարցես զիս զկնի քո 'ի վանս քո, և թողակից և դասակից արասցես զիս այլոց կրօնաւորացն:

Յայնժամ խոստացաւ նմա երդմամբ միայնակեացն կատարել զխնդիրս նր͞ ա͞ծահաճոյ՝ 'ի դառնալ իւրում յեջ͞մէ, յոր դէմ եդեալ էր գնալ: Իսկ 'ի գնալ կրօնաւորին զճանապարհ իւր՝ հնարեցաւ յովհաննէս ստանալ իւր առանձին աւետարան մի փոքրիկ, զի ստէպ զնոյն ընթեռնուցու. և պատճառանօք՝ որպէս եթէ ուսումնակիցք իւր զայն ընթեռնուն և լուսաւորին, և ինքն մնայ յետանեալ

նեալ և ամաչէ 'ի նոցանէ , հաւանեցոյց ըզ-
մայրն , և նա զհայրն' առնել նմա աւետա-
րան գեղեցիկ գրով և զարդու ։

Ապա ը՟ հրամանի հօրն կազմեաց ոսկերիչն ոսկի աւետարանի ոսկեկուռ' ականակապ և մարգարտայեռ . նոյնպ՟ս և գրիչն գրեաց ըս քանչելի և չքնաղակերպ գրով, նկարագրել 'ի նմին և զպատկեր յովհաննու , և զհօրն և զմօրն . զոր առեալ յովհաննու' պահէր յինքեան առանձինն , և անյագ փափքմամբ անէպ ընթեռնոյր , և հաստատեալ լինէր 'ի բարի մտածութ՟ իւրում . մինչև դարձաւ անդրէն միայնակեացն յեճ՟մէ 'ի թգ՟րական քաղաքն ։ Որ տեսեալ յովհաննու' ուրախ եղև յոյժ . և իբրև կամեցան 'ի գործ դնել զխորհուրդն առաջին , և վարձել նաւ առանձին լուելեայն , նաւապետն առաւելութ՟ գին խնդրէր' մինչև 'ի հարիւր դահեկան . ուր չէր ինչ հեռի վանքն անհանգստից , այլ ոչ՟ ասէին ոմանք' իբր վաթսուն ասպարիզաւ ։

Յայնժամ գնաց յովհաննէս , և պատճառանօք սէր և ը՟ունելութ՟ առնելոյ ուսումնակցաց իւրոց' խնդրեաց 'ի ծնողացն հարիւր դահեկան . և հայրն միջնորդութ՟ մօրն անսաց նմա և ետ , և առաքեաց ծառայս զկնի նր՟ , զի մի ծախեսցէ վայրապար իբրև զմանուկ ։ Իսկ նա հնարեցաւ զճանապարհայն առաքել զծառայսն յայլ գործ . և ինքն գնաց առ միայնակեացն . և տուեալ նաւապետին զգինն խնդրելի' նաւեցին վաղվաղակի աջողակ հողմով . և հասին խաղաղութ՟ 'ի վանս

ակումբստայ կին անհանգստից :

Այլ պատմեաց միայնակեացն զա̃մ անցս և զջերմեռանդն յօժարութի յովհաննու . և ուրախ եղև աբբայն . և ասէ ցերանելին յովհաննէս . որդեակ՝ դու դեռևս մանուկ ես փափկասնունդ , և կարգ միայնակեցացս ճգնութե̃ խիստ , վ՛ոյ պա՛րտ է զաւուրս քառասուն տեսանել քեզ զընթացս ժուժկալութե̃ տեղւոյս , և ապա առնուլ զձև կրօնից , զմազեղէն պարեգօտն և զկրկնոցն և զմաշկեղէն գօտին և զսանդալ հողաթափին : Այլ ասէ յովհաննէս . աղաչեմ զքեզ հա՛յր , այսօր վաղվաղակի զգեցուցես ինձ զայդոսիկ զասացեալդ 'ի մեծուէդ , և փոքրեցես զհեր գլխոյ իմոյ , զի յոյժ ցանկամ զգենուլ զայդպիսի ձև հրեշտակական :

Այլ աբբասուն տեսեալ զյօժարութի ն̃ր՝ նոյն ժամայն ժողովեաց զա̃մ դասս միայնակեցաց , և կատարեաց 'ի վ̃ր ն̃ր զա̃մ կանոն և զկարգ պաշտամանն , և յանձն արար զնա ամենախնամ շնորհացն ա̃յ : Իսկ երանելին յովհաննէս սկսաւ այնուհետև խստակրօն ճգնութ̃բ և անմեղկելի վարուք քաղաքավարիլ յաղօթս և 'ի տքնութիս և 'ի պահս . և հեզութ̃բ և հնազանդութ̃բ և եղբայրսիրութ̃բ և ա̃մ բարեյօրդոր կամօք կայր . և մտօք միշտ յա̃ծայինս խոկայր՝ արհամարհելով զստորինս ա̃մ . մինչև յոյժ զարմանալ ծերոցն ը̃ առաքինութի պատանւոյն , և ա̃մ եղբայրութե̃ն օրինակ առնուլ յերանելւոյն՝ թէ որպէս պարտ է ծառայել ա̃յ :

Ասէ

Ասէ ցնա հայր վանացն . կարի շատ և ան-
ըմբերելի ձգնութե՛ ետուր զանձն քո որդեակ,
զոր ոչ կարես 'ի գլուխ հանել . զի անչափութի՛
քաղցու և ծարաւու և այլոց ձգանց տկարա-
ցուցանէ զանձն, և խափանումն առնէ հա-
նապազորդ աղօթից և ծնրադրութե՛ն . և
բազում արտասուքն պակասեցուցանէ զլոյս
աչացն : Իսկ երանելին այն ոչ պակասէր 'ի
կայծէ աղօթիցն, ուր անընդհատ էր պաշ-
տօնն՝ հետզհետէ փոխանակելով զմիմեանս
'ի դասուն զցայգ և զցերեկ, յորմէ և ան-
քուն կո՛ անհանգիստ անուն վանաց . միան-
գամայն ևս ք՛ զևս ճնշէր զանձն իւր 'ի խիստ
պահս . զի էր կերակուր նր՛ և ըմպելի՝ պատ-
ուական մարմնոյն և արեանն ք՛սի . և 'ի շաբա-
թուն և 'ի կիւրակէի հաց և աղ և ջուր սա-
կաւ . և արար 'ի վանսն անդ ամս վեց հրեշ-
տակային վարուք :

Ընդ որ նախանձեալ բարիատեաց բանսար-
կուին, զի ոչ կարայ յաղթել տղայական հա-
սակին՝ որ միայնեալ էր 'ի սէրն ք՛սի, արկա-
նէ 'ի սիրտ նր՛ զգութ տեսութե՛ ծնողացն՝
հանդերձ ա՛մ հայրենի մեծութե՛ն . և այն-
պէս վարանեցուցանէր զնա զտիւ և զգիշեր
բազում տրտմութե՛ և հոգովք . թող զտքնու-
թ՛ին և զբազում ձգնութ՛ին . մինչև հալէր
և մաշէր անձն նր՛, և իբրև զանշունչ պատ-
կեր եղև :

Զայն տեսեալ հայր վանացն՝ երկեաւ, ե-
թէ 'ի տկարութե՛ մեռանիցի, և ասէ ցնա .
որդեակ ա՛ծ զայն պահանջէ 'ի մարդոյն,

զոր տանել կարիցէ ։ Ասէ յովհաննէս ․ աղա-
չեմ զքեզ հայր, հաւատա ինձ, զի ոչ որպէս
դու կարծես՝ պահք և ճգնութիք մաշեն զիս,
այլ՝ մեղք իմ ․ զի 'ի բազում աւուրց հետէ
ընկենու սատանայ 'ի սիրտ իմ զգութ կարօ-
տութե ծնողաց իմոց, և զտեսութի ընտանեաց
և ծառայից ․ այլ ես հաստատուն յուսով
պարծիմ յած և յաղօթս սրբութ ձերոյ, զի
և անդ երթեալ յաղթեցից սբ թշնամւոյն ։
Ասէ ցնա աբասն ․ ո՞չ ասացի քեզ յառաջա-
գոյն որդեակ, թէ ոչ կարես յանդ հանել
զայս ծանր և զդժնդակ վարս ․ արդ զի՞նչ
կամիս, զի արարից քեզ որդեակ ։ Ասէ յով-
հաննէս ․ արասցես ինձ աղօթս հայր սբ հան-
դերձ միայնակեցօքդ, և կամօքն այ և ձեր
երթայց զճանապարհս իմ ․ քանզի մաշէ և
հալէ զիս կարօտ ծնողացս, և ոչ երկնչիմ ա-
ղօթիւք սբ ուխտիս, այլ յուսամ յօգնականն
տարակուսելոց, զի և անդ կոխեցից զխայ-
թոց չար վիշապին ։ Եւ իբրև իմացան՝ զի
կամի երթալ, լացին ամ եղբարք զբաժա-
նումն նր ․ և աղօթեալ 'ի վր նր արձակեցին ։
Իսկ յովհաննէս իբրև գնաց քարընկեց մի,
դարձաւ յետս, և հայեցեալ յանապատն՝
յորմէ հրաժարեաց, արտասուալից հառաչ-
մամբ 'ի ծունկս անկեալ՝ ասէ ․ ողջ ամ սբ
ուխտ միաբանից սբց, հրեշտակաց բնակա-
րան ․ ողջոյն և ձեզ դասք և ժողովք սբ մի-
այնակեցացդ, որ բարւոք ընկալայք և սնու-
ցիք զիս ․ յոյս իմ հաստատուն է առ ած, զի
մարտակցութբ աղօթից ձերոց և 'ի տան հօր
ի-

իմոյ կոխեցից զգլուխ կամակոր վիշապին և
դաւաճանող թշնամւոյն ։

Իսկ մինչդեռ գնայր երանելին արտասուե-
լով և սաղմոսելով, ետես աղքատ մի՝ որ ընդ-
դեցեալ էր քուրձ պատառատուն . ետ նմա
զիւր այծեայն, և առեալ զգեցաւ զնո̃ր հին
հանդերձ ։ Իսկ իբրև եհաս 'ի քաղաք ծննդ-
եան իւրոյ մերձ յապարանս հօր իւրոյ, ա-
ղաչէր զա̃ծ և ասէր . տ̃ր իմ յ̃ն ք̃ն մի թո-
ղուր զիս 'ի ձեռանէ քումմէ . զի առ քեզ ա-
պաւինեցայ, օգնեա ինձ . գոհանամ զքէն
տ̃ր իմ և ա̃ծ իմ, որ և զերկրաւոր յարկս
ծնողաց իմոց ցուցեր ինձ . և արդ տուր ինձ
զկատարեալ յաղթութիւն ը̃դդէմ սատանայի,
և մի տար զիս 'ի փորձութիւն նր̃ . և մինչև 'ի
վախճան իմ յշ̃է աստի՝ մի թողուր զիս յայտ-
նի լինել ծնողաց իմոց 'ի կենդանութեան ի-
մում . և աւարտեալ զաղօթսն՝ ննջեաց առ
դուրս տան իւրոյ ։

Իսկ տեսեալ զնա դռնապանին ը̃ առաւօտն՝
ասէր . արի գնա աստի ով դու, զի մի տես-
ցէ զքեզ տ̃րն իմ աստ, և բարկասցի ինձ ։
Նա ասէ յովհաննէս . մարդ եմ օտար և աղքատ
և տնանկ . հայցեմց դու 'ի բարձունս առ ա̃ծ,
և արա ինձ ողորմութիւն . և թոյլ տուր ինձ
բնակել յանկիւն մի փողոցիս . և յելս և 'ի
մուտս տ̃ն քո ա՛զդ արա ինձ, և ես հեռա-
նամ 'ի ժամուն . և ոչ ծանրացայց ումեք .
և դու վարձս առցես յա̃յ . և դռնապանն
գթացաւ 'ի վ̃ր նր̃, և արար ըստ բանի նր̃ ։
Իսկ իբրև ետես երանելին զծնօղս իւր, լցան

աչք

աչք նորա արտասուօք, և իջանէր արտօսրն յաչաց նր՟ իբրև զվտակս ջուրց. և ասէ. տե-սի ճշմարտա՟պս զծնօղսն իմ ը՟ն կամելոյն իմ՟յ. և զխայթոցն սատանայի զհնացեալն կոխե-ցից զօրութ՟ն իմ՟յ՝ որ է յիս. և դարձեալ ա-ղօթիւք ամրացոյց զանձն 'ի տ՟ր:

Եւ եկաց 'ի նմին տեղւոջ մեծաւ տաժան-մամբ և համբերատար ժուժկալութ՟բ ան-յարկ զտարի մի. մինչև ասել հօր նր՟, սքան-չացեալ զարմանամ յոյժ ը՟ն համբերութի՟ աղ-քատին այնորիկ, որ անկեալ կայ 'ի տեղ-ւոջն յայնմիկ արտաքոյ դրանն, և որպէս համբերէ դժնդակ օդոց, և ոչ երբէք մտա-նէ յապարանս մեր. այլ շատանայ դոյզն ո-ղորմութ՟բ՝ զոր ը՟ունի 'ի մէնջ: Եւ հրա-մայեաց ծառայիցն առնել նմա խուղ պրտ-ուճեղէն. և ասէ. կարօղ է ա՟ծ և վ՟ն դորա ողորմիլ մեզ. զի վ՟ս այնորիկ եած զնա ա՟ծ 'ի դուրս մեր, զի 'ի ձեռն դորա ողորմեսցի մեզ:

Դէպ եղև յաւուր միում մօրն նր՟ տեսանել զնա, և ո՟պ վայրենի չնչաւոր երևեցաւ նմ՟, և ասէ ցծառայսն. առէք տարէք զդա աս-տի, զի ոչ կարեմ ես անցանել ը՟ն տեղիդ. և նք՟ քարշեցին զնա հեռագոյն. այլ նա դար-ձեալ անկանէր անդ, և ոչ հեռանայր. և 'ի սաստել ծառայիցն՝ զի մի՛ տաղտկացուսցէ զտիկինն, ասէ յովհաննէս. աղաչեմ զձեզ, ո՟պ յառաջնումն ողորմեցայք ինձ, նոյնպէս և այժմ գթացէք յիս. և ը՟ն բանի ա՟ծ ձերոյ արարէք ինձ 'ի տեղւոջս յայսմիկ խղիկ մի փոք-

փոքրիկ , և օրհնիք զուք յայ . և նք արա-
րին : Եւ. Հայրն նր Եւտրոպիոս ստրատե-
լատն առաքէր նմա կերակուր օրըստօրէ 'ի սե-
ղանոյ իւրմէ . այլ նա 'ի ծածուկ աղքատաց
բաշխէր զայն , և ինքն խոշորագոյն հաց չո-
րացեալ թրջէր ջրով , և ը երեկս զայն ու-
տէր և եթ . և եկաց այնպէս 'ի հիւղն յայն
զամս երկուս՝ ոպ անմարմին ճգնող . և ոչ
յայտնեցաւ , թէ ո՞ ոք իցէ :

Եւ յետ երից ամաց զալստեան իւրոյ 'ի
դուռն տան հօր իւրոյ , տեսեալ քնի զմեծ
ճգնութի քաջամարտիկ նահատակին իւրոյ
և կատարեալ միայնակեցի , առաքեաց առ
նա զհրեշտակ իւր . որ և ասէ ցնա . ողջոյն
քեզ ծառայ այն յովհաննէս՝ բարի և հաւա-
տարիմ . ասէ տր ած քո՝ զոր սիրեցեր դու 'ի
բոլոր սրտէ քումմէ , ըս յորջորջման անուան
քում դասեցիս դու ը յովհաննու մկրտչին ,
և բնակեցես 'ի յերկնային խորանսն ը ամ
սբ ճգնաւորս իմ . և կատարումն և վախճան
լիցի տառապանաց քոց . և ահա յետ երից
աւուրց փոխեսցիս առ իս :

Յայնժամ համբարձեալ զհանապազատա-
րած ձեռսն՝ ասէ երանելին արտասուաթոր
ձայնիւ մեծակական հառաչանաց , ած հարցն
և որդ ողորմութե՝ հայր տն մերոյ յի քի
գոհանամ զքէն , որ զանարժանութիս իմ
խառնեցեր 'ի թիւ սիրելեաց քոց , որք 'ի
սկզբանէ հաճոյ եղեն քեզ . աղաչեմ զքեզ ,
յիշեա՛ մարդասիրութը քո զծնողսն իմ , և
թո՛ղ զմեղս և ջնջեա՛ զձեռագիր յանցանաց
նց .

ն՟ց · ողորմեամ և միանձանցն այնոցիկ , որք զիս ընկալան սիրով , և սնուցին անարատաբար ։ Եւ յետ աղօթիցն աղաչեաց զմատակարար և զհոգաբարձու տան հօր իւրոյ՝ երթալ և ասել ցտիկինն , թէ աղքատիկն այն՝ զոր 'ի դրանէն հալածէիր , ասաց՝ թէ մի՛ գարշիր յինէն , այլ արժանի՛ արա զիս գալստեան ձերոյ առ իս , զի ունիմ բան ինչ ասել քեզ ։

Իսկ մայրն ասէր · զի՞նչ է բանն՝ զոր ասել կամի ինձ աղքատն այն · զի ո՛չ կարեմ 'ի ժահահոտութենն գնալ և տեսանել զնա · և ասէ ցնա այրն իւր , երթիջի՛ր , և մի՛ գարշիր յաղքատաց · զի զն՟ս ընտրեաց ա՟ծ ։ Եւ իբրև ծանեաւ յովհաննէս , զի ոչ կամի գալ մայրն իւր , առաքեաց զայլ ոք 'ի ծառայիցն , և ասէ · յետ երից աւուրց վախճանելոց եմ ես · և եթէ ոչ եկեսցես և տեսցես զիս , ապաշաւել ունիս յետոյ յոյժ · և զղջացեալ ինքնին դու քեզ մեղադիր լինիցիս , և ոչ կարասցես մխիթարել զքեզ · և ո՛չ ելցէ խիղճն 'ի սրտէ քումմէ յաւիտեան ։

Զայն իբրև լուաւ տիկինն , երկեաւ · և երթեալ առ դուրս խղին յովհաննու՝ ետ բառնալ և բերել զնա առ ինքն ։ Յայնժամ շնորհս կալաւ յովհաննէս վ՟ն երախտեաց ն՟ց , և մաղթեաց ն՟ց բարիս 'ի տ՟նէ · զի լցիք ասէ առ իս զբան աւետարանին , թէ զոր արարէք միում 'ի փոքրկանցս յայսցանէ եղբարց , ինձ արարէք · այլ ես աղքատս ոչինչ ունիմ նշան օրհնութե՟ն՝ զի տաց ձեզ ։ Բայց

ա-

ասեմ քեզ տի՛կին , երդուի՛ր դու ինձ , զի զոր միանգամ ասացից քեզ՝ արասցես ինձ ։

Եւ իբրեւ երդուաւ յանուն ա̃յ եւ 'ի սէր զաւակին իւրոյ կորուսելոյ՝ արտասուօք հանդերձ , ասէ յովհաննէս . լո՛ւր ինձ տի՛կին՝ զոր ասեմս . այս մազեղէն քրձովս՝ զոր զգեցեալ եմ , թաղեա՛ զիս յայս տաղաւարիկս . եւ մի՛ այլ ինչ պատուական պատմուճան զգեցուսցես ինձ , եւ մի՛ այլուր թաղեսցես ։

Եւ 'ի զարմանալ մօրն՝ թէ զի՞նչ է , զի աղքատս այս իբրեւ երախտաւոր ընտանի խօսի , եւ ոչ ո̃պ օտար կ̃մ աղքատ , հանեալ յովհաննու զաւետարանն՝ ետ 'ի ձեռս նր̃ , եւ ասէ . այդ լիցի թոշակ եւ բաժին աստ եւ 'ի հանդերձեալ Ց̃ին՝ քեզ , եւ ո̃ն իմում՝ առն քում ։

Իսկ մայրն շրջեալ զաւետարանն յայսկոյս յայնկոյս՝ ասէր . զի՞արդ նման է աւետարանս այս աւետարանին՝ զոր արարաք որդւոյն մերում յովհաննու . ընթացաւ 'ի տունն , եւ եցոյց առն իւրում . եւ նա ընդ տեսանելն՝ ասէ . արդարեւ այս է աւետարանն որդւոյ մերոյ . ուրեմն գիտէ դա՝ թէ ու՞ր է որդեակն մեր . եւ 'ի խնդութենէն յարուցեալ հայրն եւ մայրն՝ եկին առ յովհաննէս , զոր օտար աղքատ կարծէին . եւ ասեն ցնա արտասուօք . երդմնեցուցանեմք զքեզ յահաւոր անունն մեծին ա̃յ , զի ասասցես մեզ՝ թէ ուստի՞ եւ կ̃մ յումմէ՞ անկաւ աւետարանս այս 'ի քեզ ։ Յայնժամ խոստովանեալ յովհաննու յոդի իւր , եւ գործեալ 'ի գթոյ ծնողացն , յոգւոց եհան

Հան և ասէ ․ այս այ՛ն աւետարան է , յորմէ ուսայ զփրկագործ ճանապարհն ճշմարտութեան ․ և ունկնդիր եղեալ խրատուց՝ որ 'ի դմա , թողի զա՛մ ինչ , և բարձեալ զխաչն քո՛ի՝ գնացի զկնի նորա , զի արժանի եղէց նմա ․ և ցանկացայ այսմ զգեստու և կրօնաւորական ժուժկալութե՛ վ՛ս փրկութե՛ իմոյ և ձեր , բառնալով զքաղցր լուծն քո՛ի ։ Եւ յորժամ կատարեաց ա՛ծ զխնդրուա՛ծս իմ զայս՝ յորում տեսանէք 'ի վերջին աղքատութե՛ զիս , և վախճան իմ ևս հասեալ է , ահա այժմ ապա յայտնեցից ձեզ ․ Ես եմ որդին ձեր յովհաննէս ․ և այս իմ աւետարանն է , զոր դուք ինձ կազմեցիք և ետուք ։

Զայն իբրև լուա՛ն ծնօղքն , և նկատեալ հայեցան 'ի նա , ծանեա՛ն նշանօքն՝ զոր ունէր որդեակն իւրեանց ․ ձայն արձակեալ աղիողորմ արտասուօք՝ և անկեալ 'ի վ՛ր ն՛ր՝ փարէին զպարանոցաւ ն՛ր , և հառաչելով կողկողէին անպատմելի կսկծմամբ յառաւօտէ մինչև ցօր հասարակ ․ և լու եղև ա՛մ բազմութե՛ քաղաքին , և դեղան անդր արք և կանայք , քահանայք և կրօնաւորք , որք ողբային մեծաւ հառաչմամբ ։ Եւ յովհաննէս անկեալ դնէր 'ի մահիճն ․ և հայեցեալ յերկինս պայծառ դիմօք և զուա՛րթագին խընդութե՛՝ ասէ ․ տ՛ր յ՛ձ քո՛ ընկալ զհոգի իմ ․ 'ի ձեռս քո աւանդեմ զհոգիս ․ և աւանդեաց զհոգին ։

Եւ ո՞վ կարէ պատմել զկսկծալի կոծն և զկականն՝ զոր արարին ծնօղքն և եղբարքն և ազգայ.

գայլինքն և ամ քաղաքն առհասարակ ։ Անդ-
մոռանայր մայրն զպատուհէր որդւոյն իւրոյ
և զերդումն իւր ։ Այլ մերկացոյց 'ի նմանէ
զմազեղէն հանդերձն , և զգեցոյց ոսկեթել
ծանրագին հանդերձ ․ և ահա նոյնժամայն
լուծաւ կիննն , և գօսացան երկոքին ձեռքն ։
Յայնժամ 'ի միտս եկեալ հայրն յովհաննու՝
ասէ ․ զպատուհէր և զհանձոյս որդւոյն մերոյ
արտացուք ․ այլ մի՛ բարկանար սրբդ այ ծնո-
ղինքում ։ Ապա մերկացուցին զպատուհական
հանդերձն 'ի նմանէ , և զգեցուցին նմ զիւր
հին և զպատառատուն մազեղէնն , և պա-
տեալ զսպեցին ․ և նոյնժամայն հոտ անու-
շութե բուրեաց 'ի որ մարմնոյ նր ․ և ելից
զպրտուհեղէն խուղ նր , և զքաղաքն ամ ․ և
յայնժամ ծագեաց լոյս սաստիկ 'ի վր որ
մարմնոյն ․ և նոյնժամայն բժշկեցաւ մայրն ։
Իսկ լուեալ թագաւորն և որ պատրիարգն
( որ է ու հարանց վարուց՝ ոսկեբերանն յո-
հանն յաւուրս ինքնակալացն արկադեայ և
ոնորիոս ) , եկին 'ի թաղումն սրբյն ․ և տե-
սեալ զեղեալսն և զլոյսն՝ փառս ետուն այ ․
և թաղեցին զնա 'ի նմին տեղւոջ՝ յորում էր
խուղ նր , որհնութբ և սաղմոսիւք ։ Իսկ յետ
աւուրց ծնօղք սրբյն շինեցին տաճար աղօ-
թից 'ի վր գերեզմանի սրբյն յանուն նր ․ ուր
և լինէին բժշկութիք բարեխօսութբ նորուն
կենդանի նահատակի ․ և զամ ինչս իւրեանց
ետուն 'ի սպաս պաշտաման եկեղեցւոյն այ-
նորիկ և 'ի պէտս կարօտելոց ․ և ինքեանք
կրօնաւորեալք 'ի նմին տեղւոջ սպասաւո-
րէին

բէին ո՟ք ոսկերաց նր՟՝ մինչև յելս վախճանի կենաց իւրեանց ։ Կատարեցաւ երիցս երանեալ Ճգնաւորն ք՟նի յովհաննէս՝ յամսեանն յունվարի ԺԵ, ՚ի սկիզբն կմ՟ ՚ի մէջն հինգերորդ դարու, առ ժամանակօք սբ՟ց Թարգմանչաց մերոց ։

Իսկ զի վանքն ակումիտաց կմ՟ անհանգստից՝ ուր կրօնաւորեցաւ երանելին յովհաննէս, էր պայծառացեալ յոյժ առաքինի սրբութ՟բ և իմաստութ՟բ, նմին իրի ՚ի կամիլ յունաց մեծարել զն՟րն մեսրոպ՝ որ և մաշտոց, ետուն նմա զանունս ակումիտ. ո՟չ թէ դրիլ նո՟յն յովհաննու և նո՟յն մեսրոպայ ՚ի նմին կարգէ. Իսկ մնացին նշխարք երանելւոյն յովհաննու ՚ի տեղւոջ իւրում ՚ի կոստանդինուպօլիս, մ՟ ՚ի տաճարի նր՟՝ որ և կոչիւր տուն կմ՟ եկեղեցի յովհաննու աղքատի, (Թերևս անդ՝ ուր այժմ բնակիչք վրիպակաւ տուն աւեքսիանոսի առդնեն ՚ի թաղն կէտիկ փաշա կոչեցեալ), մինչև ՚ի ժամանակս առնլոյ փռանկաց զթագաւորեալ քաղաքն յամի տն՟ 1204. և յայնժամ բարձեալ անտի զպատուական գլուխն կամ զսկաւառակն՝ տարան ՚ի վենետիոն բուրգունդիոյ, որ և խռիւսուպօլիս ասի, և եդին ՚ի տաճարի նո՟յն ստեփաննոսի. իսկ այլ նշխարքն յոսկերաց նր՟ յառաջ կմ՟ զկնի ասին բերեալ ՚ի հռովմ. և եդեալ ՚ի տիբերեան կղզի յեկեղեցւոջ՝ որ յանուն նորին նո՟յն յովհաննու գալլիվիդայ ծ՟ հիւղակեցի. որ՟պս և մասն ինչ ՚ի տաճարի սբ՟յն վլասայ, և յայլ տեղիս ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Բաց յօրինակէ հարանց վարուց, զորոյ ունիմք և զձեռագիրս, երկու այլ օրինակք կան առ մեզ վարուց սրբոյն յովհաննու. մին 'ի Ճառընտ. Զ. որ տարբերի 'ի հարանց վարուց՝ միայն քանի մի բառիւք ըստ հին Թարգմանութե., և փոքր մի համառօտելով զքանի մի տողս, ոչ և զերկու և զերիս տողս 'ի յառաջաբանութենէ և 'ի վերջաբանութենէ զանց առնելով. Պակասեալն է մի և նոյն վայրք ըստ սարօք իւրովք: Եւ միւսն է 'ի Ճառընտ. Դ. որ է բովանդակութե նոյն վարուց գլխովին համառօտեալ, բայց պահմամբ ըստ կարևոր պարագայից. այն ևս է եղեալն 'ի Հ. և առ. ըր իէլլ. Թող զզանազանութե գրչութե:

Բերէ և բովանդ. զերկուս օրինակս Թարգմանիչն 'ի լատին 'ի յունականէ. յորոց առաջինն է յետադասելի քան զերկրորդն. զի յառաջին տեղւոջ եղեալն է, որ ասկանի. * Ապաքէն բունաւոր իմն է ծնողացն սէր, և „ կապանք բնութե անլուծանելի, և տենչ մշտաբորբոք՝ „ անշիջանելի բնաւին երբէք ||. և ըստ այսմ մետափրաստեան ոճոյ զըստ ընթացս պատմութեն զարդարել զատանեւս Ճառօրէն խորհրդածութեք և վկայութեք. Թէպէտ և վարքն ողջոյն պարունակի 'ի կարգին ըստ հանգամանօք. ըստ որ երևի առաւել հաւանեալ գիտնաւորն բովանդ. վն գիտնական կայմութենն. այլ մեք զհնութիւն խնդրեմք, և զյստակութե անկեղծ:

Իսկ միւսն է այն՝ զոր բերէ, ոչ սուրիոս 'ի լիպոմանոսէ, նոյնպէս և բովանդ. 'ի նոցանէ և յայլ ձեռագրաց՝ կարծելով գործ մետափրաստեսի. և սակայն իրօք է աղբիւրն մետափրաստեսի և ըստ գրչաց վարուց յովհաննու՝ վայելուչ ոճով յար և նման օրինակի հարանց վարուց, առանց արտաքին զարդուց և ձևոց. և սա միաբանէ ըստ մեզ՝ ունի զտեղի առաջին հեղինակի, կամ գոնէ ժամակից գրչի. ըստ որոյ ունի յառաջաբանն այսպէս. * Զառն արդարոյ և զկատարելոյ զվարս պար-

,, կեչու և մայրութ և սաւպինազարդ, ձեռք միաբան ժո-
,, ղովելոցդ պատմել եղև 'ի մտի. քանզի եկեալ սա-
,, մերոյս ժմկօք... Այր ոմն էր մեծատուն ||, և Ն̃:

Բայց քանզի պատմութիւն յիմսին է մի և նոյն, չէ ինչ նախապատիւ առնել ը̃ ախորժակաց զայս և զայն օրինակ. միայն մնայ ընտրել զմասնաւոր ընթերցուածս կարևորս 'ի միաբանութե ստուգագոյն աւանդութե, և զսխալանս յետնոց 'ի բաց պարուրել, 'ի մասնաւոր պարագայս ինչ պատմութե՝ մանաւանդ ը̃ տեղւոյ և ըստ ժամանակի:

Միաբանի ը̃ մեզ քաջն Բոլլանդ, թէ յովհաննէս ոչ էր հռովմայեցի, այլ 'ի նորոյն հռովմայ կոստանդնուպօլսեցի. ոչ մեկն գնեն ձառընտիրք մեր, և վարք հարանց ը̃ յայսմաւուրաց, և առաջին օրինակն բոլլանդեան ը̃ այլս բազումս. ուստի յայտ է թէ յերկրորդ օրինակն՝ ուր դնի հռովմ, գրչաց զանցառութ̃ պակասեալ է բառդ նոր. յորոյ 'ի դնիլն՝ լինի միաբան ը̃ մեզ. և վայրապար զհետ գնացին այնպիսի սխալագրութե, և ը̃ կամի պեսպես յաւելուածս 'ի վ̃ր ածին յետին մատենագիրք յարևմուտս. զորս չէ հարկ մեզ յառաջ բերել. շատ է՝ զի ուղղագրէ զն̃ս բոլլանդ. և բարւոք ասէ, թէ գուցէ վ̃ն գոլոյ նշխարաց յովհաննու 'ի հռովմ՝ այս կարծիք ծաւալեալ իցէ յարևմուտս. բայց թէ քաջ մտա դնէին 'ի պարագայս անհանգստից վանաց՝ որ է 'ի սահմանս բիւզանդիոյ, և անլուր է յեւրոպիա, դիւրաւ լուծանէին զխնդիրն համաձայնութե հռովմայ կ̃մ թագաւորեալ քաղաքի:

Իսկ վ̃ր ժամանակին ունիմք մի միայն հաստատուն վկայութի 'ի հարանց վարուց, ուր որպէս 'ի սկզբան դնի,
* Յամս ժամանակաց թ̃գրութե արկադեոսի որդւոյ մե-
,, ծին թէոդոսի, և 'ի հայրապետութե ս̃րբն յովհաննու
,, ոսկեբերանին, այր ոմն էր յը̃ծապանծ քաղաքն կոս-
,, տանդինուպօլիս՝ որ կոչեցաւ նոր հռովմ, մեծատուն
,, յոյժ, որոյ անունն եւտրոպիոս կոչեցեալ ||. նոյն-
պէս և 'ի կատարածի դնի. * Կատարեցաւ երից երա-
,, նեալ ձգնաւորն ք̃ի յովհաննէս, յամս ինքնակալաց
,, մերոց թ̃գրաց արկադեայ և ոնորիու ||:

Իցէ՞ թէ և այլ օրինակք կարգէին զժամանակագրութի ինչ՝ նման կ̃մ աննման սմին, որով կարօղ լինէաք դա-

տաս-

տասատան առնել . բայց քանզի լուեն, դաշտ ընդարձակ բացեալ լինի քննչաց՝ որ ոչն գիտեն զայս մեր օրինակ, Է կարծեօք հաւանականօք պէսպէս կարգել զժամանակ սրբոյն, երկուելով զանորոշ կամ զվրիպական ասացուածս ոմանց ոմանց 'ի մատենագրաց . զորս յառաջ բերէ բոլլանդ, և կարծէ պատոյգն գտանել, իբր թէ իցէ կամ 'ի վերջին աւուրս փոքուն Թէոդոսի, և կամ առ մարկիանոսիւ . Թող զառաւել յետոյ գնօղս, որոց էդէպ լինի :

Բայց թէ սխալէ և ինքն բոլլանդ, յայտ առնէ այնու՝ զի կարպեալ է 'ի բանս նիկեփորոսի կալիստոսի և այլոց ոմանց, որք զհիմնարկութեն ակումիտեան կմ անհանգստից վանաց ոչ դնեն յառաջ քան զամն 425 . այն է ժԷ ամ Թէոդոսի փոքու . և սակայն ըստ մեզ յայն ամս արդէն հանդիսացեալ էր կարգն կամ վանքն այն . մինչև զանուն պատուէոյ սրբոյն մեսրոպայ՝ նովին կոչմամբ մեծարեցին յոյնք . ապա գտնէ քսան ամօք յառաջ գոյր այն ուխտ . և այնպէս անկանի յաւուրս արկադեայ հօր փոքուն Թէոդոսի : Ուղղագրեմք և ես ըստ հարանց վարուց ժԷ ամն յովհաննու, որ դնի յոմանց 'ի դնալն 'ի վանս, և ընթեռնումք ժԷ . վյ և բովանդակ ամք կենաց նր լինին ըստ մեզ իԷ . և ոչ ԻԷ, ոպ դնէ բոլլանդ :



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Ալեքսիանոսի կամաւոր աղքատին ։

Հ. Յ. մարտ. 17 ։ Լ. յուլիս. 17 ։ Աւար. նոյեմբ. 3 ։ Ա. արտ հարանց ։ Ճաշուէր ։ Օ. նէգ = նլգ ։ և Ա. ՇԼԲ = ՇԾԵ ։ Եւ և Պ. ճշգ = ճա ։ Բոլլանդեանն դինեոս. 'ի ՃԻ հաս. յուլ. էջ. 238 = 270 ։ Մէն ապաւէներոս 'ի ներէ. ալէքս ։ Մէն յօղւէն յոյն երգաբան ։ Սուրիոս. եւ այլք ։ (1)

ԱՅՐՆ ԱՍՏՈՒԾՈՅ սքանչելի՝ կամաւորութբ աղքատացեալն վն քնի 'ի մեծութե՝ երանելին Ալեքսիանոս, որ եւ այլոց՝ ալեքսիոս, էր հռովմայեցի, որդի մեծի իշխանի և փառաւոր պատրկի եւփիմիանոսի՝ առն ածասիրի, և բարեպաշտուհւոյն ագլայիսայ կին աքիւղայ, զաւակ պարգևական յամուլ արգանդէ, և միամօր որդի ծնողացն, յաւուրս կայսերութե արկադեայ և ոնորիոսի, և 'ի հայրապետութե երանելոյն իննովկենտիոսի առաջնոյ. վոյ է ժամանակակից սրբոյն յովհաննու ակումիտայ, կին փոքր մի յառաջ քան զնա ։

Նա եղև ալեքսիանոս անդստին 'ի մանկութե

ու-

ուսումնասէր յոյժ և ա̃ծասէր անչափ․ ուսաւ
զա̃մ հռետորական և զփիլիսոփայական ի-
մաստութիւն հռովմայեցւոց և հելլենացւոց․
և առաւել յօժարութ̃բ զա̃մ վ̃պութիւնս
ա̃ծային իմաստութ̃ե հին և նոր կտակարա-
նաց․ և օրըստօրէ վառեալ 'ի սէրն ա̃յ՝ զար-
դարեցաւ ա̃մ առաքինութ̃բ, և ոչինչ փոյթ
էր նմա արքայակերպ մեծութ̃ի և երևելի
փառք ծնողացն, այլ բարեպաշտութ̃ե նոցին
հետևօղ լինել և առաւելուլ նկրտէր․ և
էր ն̃ց հնազանդ և հլու, հեզ և խոնարհ,
և իմաստուն յոյժ և խոհեմ, և լի հոգւով
ս̃բվ :

Էր և վայելուչ հասակաւ և գեղեցիկ պատ-
կերաւ և պայծառափայլ դիմօք․ և ունէր
ձայն զօրաւոր և քաղցր իբրև զքնարի․ և էր
յոյժ սիրեցեալ յաչս թ̃րին և հայրապե-
տին և իշխանացն ամենեցուն․ և ծնօղք ն̃ր
զարդարէին զնա իշխանական ճոխութ̃բ, և
բերկրեալ լինէին սիրով ն̃ր 'ի վ̃ր պայծառ-
զաւակին իւրեանց․ և աւագանի դրանն ե-
րանութ̃ի տային հօրն նորա այնպիսի զաւա-
կաւն :

Իսկ երանելին աղեքսիանոս զայն ա̃մ սէր
և գովասանական պատիւ տեսանելով զին-
քեամբ շուրջ պատեալ, թէպէտև ինչ ոչ
ախտանայր նոքօք, բայց երկնչէր՝ թէ գու-
ցէ երբէք յափշտակիցի 'ի փառաց և 'ի մե-
ծութ̃է Տ̃ի․ վ̃յ սակայ աղօթս մատուցանէր
ա̃յ՝ փրկել զնա 'ի խոտորեցուցիչ փառաց և
'ի մեծութ̃է անտի, և տալ նմա լինել առ-

ած անզբաղական կենօք, և ծառայել այն ևեթ ։

Մինչդեռ նա յայսմ խորհրդի էր, ընդ լինել նորա ութևտասան ամաց՝ փութացուցին զհայր նորա թագաւորին և սինկղիտոսն՝ ամուսնացուցանել զմանուկն․ քզի մի զմիով եկեալս առնէին մեծամեծք՝ որք դուստր ունէին, խլել զԱղեքսիանոս 'ի փեսայութի․ բայց ծնօղք նորա բարեպաշտք հայելով յառաքինութի և 'ի սրբասիրութի ցանկալի զաւակին իւրեանց՝ ոչ կամէին տրտմեցուցանել զնա ամուսնացուցանելով․ մանաւանդ զի ասէր նոցա երանելին հայրապետն Իննովկենտիոս, թէ մի կապէք զդա ընդ Ծի․ վն զի տեսանէր 'ի նմա զշնորհս Այ և զգերաշխարհիկ քաղաքավարութի ։ Բայց 'ի բանադատել թգրին և մեծամեծացն՝ խօսեցան նմա 'ի հարսնութի զդուստր մեծի իշխանին թգրազնի․ որ և տեսլեամբ էր յոյժ գեղեցիկ, և ամօթխածութբ զարդարեալ․ և անուն նորա ըստ ամանց՝ մարգարիտ ։

Իսկ 'ի լինել ուրախութե հարսնախօսութե 'ի տան Եւփիմիանոսի ըստ օրինի Ծի, երանելին Աղեքսիանոս խռովէր յանձն իւր՝ եմուտ յեկեղեցի․ անկանէր առաջի այն արտասուօք և ասէր․ Տր ողորմութեց և Ած գթութեց լե՛ր զփափագս իմ որ առ քեզ՝ անբասիր սրբութբ, և մի թողուր զիս ապականութբ Ծիս պատաղիլ և 'ի սիրոյ քո մերժիլ ։ Նորա զգացուցին հօր և մօր նր զպատճառս տրտմութեն, կոչեալ նր զնա՝ խրատէին բազմօք․ մի-

միայն սիրովն այ վառեալ զքեզ ասեն , և այլ մի երկնչիր յունայնութէ Տիս . մի տխրութբ քո քաղցրի՛կ զաւակ տրտմեցուցաներ զսիրտս գերի ծնողացս . այլ խնայրեաւ 'ի կամս մեր , և ան զօրհնութի մծ արժանաւոր հնազանդութե և իմաստութե քո :

Պնի եւ երանելին ալեքսիանոս ցածութբ . ոն կամք եղիցին . և զայն բան բաւական համարեցան ծնօղք նր՝ որպ թէ կամակից եղև նց . իսկ նա մնայր տեսչութեն այ , թէ որվ հնարիւք ազատեսցի 'ի ձեռաց նց և 'ի պատրանաց Տի . և անդադար աղաչէր զՏր ցուցանել նմա զճանապարհ 'ի կատարումն փափագելի խորհրդոյն իւրոյ : Մինչ այս մինչ այն՝ փութացուցին մեծամեծք զհարսանիսն . և արարին թգրական հանդէս հարսանեաց ալեքսիանոսի . և եդին պսակ յեկեղեցւոջ սբյն ոնոփրակիոսի վկայի նահատակելոյ 'ի տարսոն ( որ յետոյ կոչեցաւ և սբյն ալեքսիանոսի ) . և ածին զմանուկն և զկինն իւր 'ի տուն , և խնդութի անպատմելի յօրինեցին . այլ սիրտ ալեքսիանոսի ոչ էր ուրախ . վզի 'ի ժամ խրախութե առանձնացաւ յայլ տուն , և քանի մի հասակակիցք նր ը նմա :

Զայն տեսեալ հօր նր եւփիմիանոսի՝ եկն առ նա և ասէ . որդեակ ընդէ՞ր եկիր այսր . ո՞չ ապաքէն բազմութի քաղաքիս թգրաւն հանդերձ վս քո ժողովեալ են այսօր . արի՛ որդեակ , և խօսեա՛ց ը հարսին և ուրախացի՛ր . և կալեալ զձեռանէ նորա տարաւ առ

կինն նր: Եւ յորժամ ետես երանելին ըզ-
կինն իւր՝ ասէ ցնա. խաղաղուի ը քեզ հարսն
քի երկնաւոր փեսային: Մինի եւ հարսն
պատկառանօք. ողորմութին այ հասցէ քեզ
'ի թիկունս ընտրելոց այ երկնաւոր թգրին:
Եւ 'ի զարմացման եղեւ իմաստուն մանուկն
ը պատշաճաւոր բանն, զոր լուաւ 'ի լծակ-
ցէն իւրմէ իբրեւ յայ ազդել. վոյ ուրախութբ
լցաւ սիրտ նր. եւ տեսեալ ծնողացն զուրա-
խութի փեսային եւ հարսին՝ բերկրեցան 'ի
սիրտս իւրեանց. եւ կատարեցին զհարսա-
նիսն ամ պայծառութբ:

Եւ յորժամ եղեւ ժամանակ, եւ մուծին զնա
յառագաստ, յարեաւ աղէքսիանոս աղօթել,
եւ ասէ. Տէր ած աբրահամու եւ սահակայ եւ
յակոբայ, ո՞ւր են ողորմութիք քո առաջինք,
որ փրկեցեր զդանիէլ 'ի բերանոյ առիւ-
ծուցն, փրկեա եւ զիս ար 'ի գազանէ մարմ-
նոյ. եւ զի փրկեցեր զերիս մանկունսն 'ի մէ-
ջոյ հրոյ հնոցին, փրկեա եւ զիս զտառապեալս
'ի հրոյս յայսմանէ. զի կարիցեմ կեալ առա-
ջի քո ար անզբաղ մտօք: Եւ եթէ հաճոյ է
քեզ ար իմ այս, եղիցին կամք քո. ապա թէ
ոչ՝ յայտնեա ինձ կարօտելոյս զզօրութի քո
ար այցելութբ քով. եւ ցոյց ինձ ողորմութի
եւ ճանապարհ, զի հաստատեցայց 'ի վերայ
միոյ ճպհի. եւ մի թողուր զիս ար, եւ մի ա-
նարգեր զիս, այլ յիշեա ողորմութբ քո ար
զբաղձանս սրտի իմոյ: Զայս ասէր 'ի սրտի,
եւ իջանէր արտասուք նր իբրեւ աղբիւր առա-
ջի ան:

Եւ

Եւ եղև ձայն իմանալի յերկնից յոգւոյն սբ՟ · ե՛լ 'ի տանէ քումմէ , և ե՛կ զկնի իմ աղքատութ՟ն ճանապարհաւ · և ես հանգուցից զքեզ · և մի՛ այլ երկնչիր · զի ես ը՟ քեզ եմ 'ի փրկել զքեզ ։ Յայնժամ լցաւ երանելին ալէքսիոս անճառ ուրախութ՟բ , և օրհնութ՟ մատուցանէր բարերարին այ՟ · ապա առեալ յընչից իւրոց , և ծրարեալ ռետին՝ ետ ցաղջիկն ասելով · ընծակի՛ց իմ և քոյր՝ ա՛ռ զաս աւանդ քեզ · և հանեալ զմատանին 'ի ձեռաց իւրոց՝ ետ և զայն , և ասէ · պահեա՛ զսիրելիքս զայս · և մնա՛ ինձ · քզի երթամ մինչև յեկեղեցին աղօթել , և դառնամ առ քեզ · և ո՞չ հաճոյ է այ՟ , այնպէս արասցուք , և եթէ յամեցից , մի՛ լքանիր · քանզի պա՛րտ է ծառայից այ՟ աղօթիւք առնել զա՟մ ինչ ։ Ասէ ցնա աղջիկն պատկառելով · տէ՛ր իմ ը՟է՞ր երթաս յեկեղեցին · աղօթեա՛ աստ 'ի սենեկին քում , զի և ես աղօթեցից ։ Ասէ երանելին ալէքսիանոս · քաղցր ընծակից իմ և քոյր , պա՛րտ է ինձ առ նա երթալ , որ եկն առ իս շնորհօք իւրովք և լուսաւորեաց զիս ։ Զայս ասացեալ՝ ել և գնաց 'ի դուռն եկեղեցւոյ սբ՟ ա՟ծածնին · եդ ծունր , և ցաւագնեալ սրտի՛ւ և յորդահոս արտասուօք խնդրէր 'ի սբ՟ ա՟ծածնէն՝ կատարել զընթացս իւր անփորձ 'ի թշնամւոյն ։ Եւ իսկոյն ձայն եղև 'ի սբ՟ ա՟ծածնէն յոգւոյն սբ՟ ազդմամբ՝ ասելով · մի՛ երկնչիր , ը՟ քեզ եմ առ 'ի փրկել զքեզ ։

Յայնժամ յարուցեալ գոհութ՟բ ընթացաւ

'ի

'ի ծովեզրն , և եգիտ անդ նաւ պատրաստական . և ասէ ցնաւավարն լուելեայն . գործ իմն ծածուկ թգ՟րական ստիպով եղաւ 'ի վ՟ն իմ , մինչև յառաջ քան զլուսանալ աւուրն մեկնեցայ գնալ վ՟ն յաջողակ հողմոյս . արդ մի՛ այլ յապաղեր , այլ վաղվաղակի արա գնալ : Իսկ նաւավարն երկիւղիւ մեծաւ փոյթ ընդ փոյթ առագաստեաց զնաւն . և մեկնեցան 'ի սահմանաց հռովմայ՝ դէմ եդեալ յարևելս ըստ պատուիրելոյ ալեքսիանոսի : Իսկ իբրև հասին 'ի լատիկ , որ և լաւոդիկէ , ( լիբանան գրեալ յօրինակս ինչ , ) պատուիրեաց , և ասէ սպառնալեօք . մի՛ ոք գիտասցէ զելանելն իմ աստ , թէ ո՞ ոք եմ ես , և մի՛ ոք թշնամութի արասցէ թգ՟րական գործոյն , և պատիժս կրեսցէ ը՟ս արժանւոյն . և հանեալ զթգ՟րակերպ հանդերձն իւր՝ զգեցաւ հասարակաց հանդերձ , և ել 'ի նաւէն :

Փափագէր ալեքսիանոս յե՟մ երթալ՝ տեսանել մարմնաւոր աչօք զտնօրէնութ՟ե տեղիսն ք՟ի . այլ երկեաւ , գուցէ ճանաչիցեն զինքն ուխտաւորք հռովմայեցիք . ասէ . երթեալ տեսից զտ՟ր պատկերն ք՟ի՝ որ 'ի ս՟բ դաստառակին , այն՝ որ գիտէ լնուլ զի՟մ փափագն եհմի . վ՟յ յուղի անկեալ գնաց ը՟ն վաճառականսն 'ի քաղաքն եդեսիա՝ որ է ուռհա . և անդ բաժանեաց աղքատաց՝ զոր ինչ ունէր ը՟ն իւր յընչիցն՝ ծածուկ յիւրերաց , որ մինն զմիւսոյն ոչ գիտէր . և զգեցաւ ինքն զմաշեղէն զգեստ աղքատի . և գնացեալ բնակեաց առ դուռն տաճարի ս՟բ ա՟ծածնին՝ յանձ-

յանձնելով զհոգին նմա . ուխտեաց և ասէ . կենդանի է տր , զի ոչ մոխից յեկեղեցիս , մինչ չև գիտացից՝ եթէ եթող ինձ տր ած զմեղս իմ . և խառնեցի ընդ աղքատսն խնդրել ողորմութի 'ի դուռն եկեղեցւոյն երբէք երբէք : Այս ստացաւ վարս խաչակրօնս խիստս . և 'ի ծածուկ ունէր զերեսն , և հեղուլին արտասուք յաչաց նր անդադարելի . և էր 'ի տարածմանն զգիշերն ամ յառանձինն ինչ տեղւոջ յանքոյթ վայրի դաւթի եկեղեցւոյն : Այս կերակուր նորա էր 'ի շաբաթուն միանգամ երկու ունկի հաց . և նոյն չափով ջուր : Այս ամենեքեան սիրէին զնա իբրև ընտրեալ ոք , և ծառայ այ . քանզի թէպէտև ծածուկ ճգնէր , սակայն իմացեալ լինէր 'ի սիրտս ամենեցուն անուշահոտութի վարուց նորա . բայց զանունն իւր ոչ յայտնեաց նց՝ ցորչափ անդ էր . այլ աղքատ օտարական կարդային զնա , ոմն և զկնի՝ այր այ անուանեցաւ յամենեցունց :

Իսկ գերի կողակիցն նր ժուժկալեալ բազում ժամս , իբրև ետես՝ թէ չիք յոյս դարձի նորա , ձայն ետ լալով 'ի տանն , և ասէ . խնդրեցէք զալեքսիոս , գուցէ այլ ոչ գտանիցէք զնա . և ասաց զամ պատուէրն և զմատանին՝ զոր յիշելիք ետ , և զամ գործ շարժուածոց նր . և սկսան շփոթիլ ամ տանն , և դարձաւ ուրախութի նց 'ի սուգ և յողբ . մինչև լուաւ թգրն և մեծամեծքն , և ահ կալաւ զամենեսին . և զերիս աւուրս խնդրեցին 'ի սահմանս հռովմայ , և ոչ գտին . և

իւ

խմացեր զելսնաւուն՝ որ յայնմ գիշերի, ծա-
նեան սորոյ զփախուստ աւեքսիոսի ։ Ընդ-
էր տեսանել զանկշռելի աղէտս գալարաղի
ծնողացն նր և զազգատոհմին և զամ քաղա-
քին, որք խորև զհրեշտակ մյ պատուէին սի-
րելին զնա ։

Եւ ասէր տիկինն աղախնային՝ որ և աքիւղա.
և արդ ո՞վ աւեքսիանոս՝ զի՞նչ արարեր ընդ
գերի ծնողացս քո. և զիա՞րդ ժուժկալեցեմ
ոչ տեսանելով զքաղցրիկ որդեակդ իմ, զլոյս
աչաց իմոց՝ զփառքդ իմ և զպարծանս իմ.
զոր յոյժ բազում խնդրուածովք առի, և վաղ-
վաղակի վտարեցուցի. և նեղութե և վշտի
և բազում փորձանաց ես պատճառ եղէ, զի
ոչ թողի 'ի կամս անձին սրբութբ կեալ առ
մեզ. և արդ ո՞ւր արդեօք օթևանեալ իցես
որդեակ, 'ի փողոցի՞ թէ 'ի բացօթեայ, որ
'ի գահոյս թագաւորական սնուցեալ էիր ։
Իսկ երանելին Իննովկենտիոս հայրապետն
հռովմայ եկն յապարանս եւփիմիանոսի, և
մխիթարեաց զնս՝ ասելով. թէպէտև փա-
խուցեալ 'ի մեծութէ Տիս՝ 'ի նեղութե և
'ի վշտի և 'ի տանջանս է մարմնով, յաղագս
որոյ լայք աղխողորմ, սակայն նա գիտութբ
արար զայն՝ առիթ լինել նմա փրկութե և
պսակաց ։ Եւ այս այն բան է, զոր ասացի
ձեզ, մի՛ զուգէք զնա ը Տ, այլ ը երկնա-
ւորին. քանզի տեսի զհոգւոյն նր լուսաւո-
րութին. և արդ դուք արարէք՝ որ մերժե-
ցայք յամենամաքուր վարուց նր տեսութէ ։
Եւ զի այն իսկ էր՝ որ վն անմխիթար կո-
ծէին

ծերին ծնօղք նորա , դարձեալ խօսեցեալ ՚ընդ
հայրապետն իննովկենտիոս պապն հռովմայ՝
մխիթարեաց զզօրավարական մայրն , և ասէ .
լո՛ւր ինձ տի՛կին , և հաւատա՛ բանիս , զի
տեսանելոց ես զալէքսիոսն քո յետ ժամա-
նակի ինչ անցելոյ . և նովաւ մխիթարեսցիս
՚ի վերջին աւուրս քո :

Այլ ոչ սակաւ մխիթարութի եղև մարգա-
րէութիս այս ՚ընդ հայրապետին՝ մօրն ալեք-
սիանոսի . բայց սովորական արար զայս , զի
յա̃մ օր միանգամ լայր ը̃դէմ ծովուն , և այ-
նու սակաւ մի մխիթարէր . և ուխտ եդ ան-
ձին իւրում ոչ ելանել ՚ի դրանէ տան իւրոյ ,
մինչև տեսցէ զօտարացեալն իւր : Նմանա-
պէս և կողակիցն երանելւոյն ուխտ եդ ան-
ձին , զի մի՛ այլ ՚ի պատուաւոր տեղւոջ նստցի,
բայց միայն յանկեան ուրեք ՚ի տան յանպա-
տիւ :

Իսկ մեծ պատրիկն եւփիմիանոս՝ զտարի մի
ետ յուզել զա̃մ ծովեզերեայս և զկղզիս . և
իբրև ոչինչ կարացին իմանալ , եկն ՚ի հռովմ
նաւավարն այն՝ որ եհան զերանելին յայն-
կոյս ծովուն . և պատմեաց զա̃մ ինչ՝ որ ՚ի
նաւին , և թէ որպէս այլափոխեալ զինքն՝
հրամայեաց ոչ ումեք յայտնել : Յայնժամ
վաղվաղակի առաքեաց խնդրակս ՚ի ծառայից
իւրոց ՚ի լաւոդիկէ և ՚ի լիբանան կոյս . ուր
լուեալ նց̃ թէ այդպիսի ոք ը̃ն եղեսացւոց
գնաց , եկին յեդեսիա . և անդ հարցաքննեն
բազմաց՝ ոչինչ իմացան . և ՚ի բաշխել ինչ
աղքատաց առ դրուրս տաճարի ՚ընդ ա̃ծածնին՝

ե-

ետուն ողորմութիւն եւ Ալեքսիանոսի . եւ գո-
հացաւ սրբոյն զնորա , զի այնչափ աղքատացաւ
վասն Տեառն , մինչ 'ի ձեռաց ծառայից իւրոց ողոր-
մութիւն ընկալաւ :

Իսկ լուեալ Ալեքսիանոսի զբողոք նորա առա-
ջի տիրամօրն , թէ ընդէր ոչ ողորմեցար գերի
ծնողաց Տեառն մերում Ալեքսիանոսի , գեղուին
աղէք նորա 'ի վերայ ծնողացն խղճի , եւ խնդրէր
յԱստուծոյ մխիթարել զնոսա . միայն ասէ՝ մի՛ յանդի-
մանէր տէր զտառապեալս՝ յայտնելով զոցա
զիս : Ապա դարձաւ երանելին առ ինքն , եւ
ասէ . ո՛վ անարժան Ալեքսիոս , տե՛ս որքան
անտանելի սգով վշտացուցեր զբարեպաշտան
զայնոսիկ . ապա եւ քեզ պարտ է վշտանալ
ներդուք մեծաւ , եւ ո՛չ գտանել հանգիստ ինչ
եւ մխիթարութիւն :

Իսկ յայնմհետէ եւս զանձն յառաւել ճգնութիւն
եւ յառանձնութիւն . եւ ոչ ոք ճանաչել կարէր
զնորա գործոյն մեծութիւն . եւ եթէ հարցանէր
ոք՝ թէ ընդէ՞ր ծածկեալ ունիս զաչս քո , պա-
տասխանէր՝ թէ ցաւի աչքս , յորժամ նայիմ
ընդդէմ լուսոյս այս :

Իսկ այսպէս եկաց երանելին Ալեքսիոս 'ի քա-
ղաքն Եդեսիա ամս իբր տասն , ( զոր ոմանք
գրեն ԺԵ , կամ ԺԷ , կամ ԺԸ ) . եւ երկու ան-
գամ ետես զՏեառն դաստառակն Քրիստոսի զանձեռա-
գործ նկարն . եւ մխիթարեցաւ յոյժ անչափ սի-
րոյն իւրոյ՝ որ առ Քրիստոս : Իսկ յաւել Տէր այց առ-
նել նմա 'ի տառապանս նորա . քանզի եկեալ
հրեշտակաց՝ երեւէին նմա յայտնապէս , եւ
մխիթարէին զնա յամ աւուր՝ խօսակցելով
ընդ

ընդ նմա . և ոչ մեկնեցան 'ի նմանէ մինչև ցվախճան ։

Եւ եղև յաւուրս մեծին րաբուլայ կմ̃ իրաքոսի եպ̃սին եդեսացւոց՝ 'ի միում աւուր 'ի ժամ պաշտաման յեկեղեցւոջ ս̃բ ա̃ծածնի , եղև ձայն լսելի 'ի կենդանակերպ պատկերէ անտի ա̃ծածնին , մուծէք առ իս զայրն ա̃յ . և 'ի վարանիլ ամենեցուն՝ երկրորդեալ լինէր նոյն ձայն ահաւոր յաւուրն երկրորդի . և ո՛չ գիտացին՝ թէ ո՛վ է , և 'ի հիացմանն կային . այլ յերրորդում աւուր՝ յայտնագոյն նշանակեաց , թէ մուծէք առ իս ըզմարդն ա̃յ՝ որ յայս նիշ տեղւոջս բնակէ 'ի գաւթի եկեղեցւոյս ։

Երևեցաւ 'ի տեսլեան ս̃բ կոյսն մարիամ և միում 'ի քահանայից տաճարին , և ցուցեալ նմ̃ զտեղին՝ ուր բնակէր ս̃բն առ փոքր դրան գաւթի եկեղեցւոյն՝ ասէ . մո̃յծ զայրն ա̃յ յեկեղեցիս . զի լսելի եղեն աղօթք նորա առաջի ի̃մ . և բազումս կրեաց նեղութիւ և ճգունս վ̃ն անուան նորա ։ Եւ քահանայն գնացեալ էած ծունր երանելի առն ա̃յ , և ասէ . հրամայեա՛ , կոչէ զքեզ ս̃բ ա̃ծածինն , մուտ յեկեղեցին ։ Իսկ այրն ա̃յ յառաւել խոնարհութ̃էն ասէ հեզաբար . մի՛ տ̃ր , ո՛չ առաքեցար առ իս , զի ես այր մեղաւոր եմ . ո̃չ գիտես՝ զի ես մի յաղքատացն եմ , որ աստ կան ։ Եւ ասէ քահանայն . հաստատու̃ք գիտացեալ եմ , եթէ դու ես , և առ քեզ առաքեցայ 'ի տ̃նէ . եկ ս̃րդ ա̃յ , զի երթիցուք , և առեալ զձեռանէ նորա՝ եմոյծ

յե-

յեկեղեցին․ և ամ ժողովեալ հանդէսն զեղան զնովաւ, տեսանել զնա և խնդրել զօրհնութի նորա․ և ասէին ցնծութբ․ ուրեմն ած այց արար քաղաքիս 'ի բարութի յայտնելով մեզ զսբս զայս ։

Իսկ յետ աղօթիցն աղաչեաց քհնյն զայրն այ՝ անսալ նմա, զի բերցէ 'ի տանէ իւրմէ կերակուր․ զի կերիցես աստ, և զօրասցի անձն քո ։ Իսկ մինչև դարձեալ էր նորա, առնէ ալեքսիանոս ըն միտս իւր․ ո՛չ է պարտ այսուհետև մնալ յեդեսիա և փառաւորիլ, որ ոչ եմ արժանի․ և յուղի անկեալ գնաց 'ի լաւոդիկէ․ բայց և անդ ծանեան զնա եկեալքն յեդեսիոյ․ վոյ եգիտ նաւ, և եմուտ անդր՝ երթալ 'ի տարսոն կիլիկեցւոց․ ասէ․ անդ ոչ ոք կարէ ճանաչել զիս ։

Իսկ իբրև հասին 'ի մէջ ծովուն, ետես տեսիլ իմն․ զի ժողովեալ դևք՝ ասեն ընդ միմեանս․ ո՞վ կարասցէ յաղթել սմա․ զի զօրութի սորա և համբերութի՝ պօրութի վիմաց է․ ասեն ոմանք 'ի դիւաց անտի․ չի՞ք այլ հնար յաղթելոյ սմա, եթէ ոչ ընկեսցուք զդա յիւր քաղաք․ զի ծանուցեալ ծնողացն՝ կորուսցէ զամ գործս բարութե, զոր արար ։ Իբրև զարթեաւ երանելին, յարեաւ աղօթել․ և ահա յանկարծակի եղև մէգ և մառախուղ 'ի ծովու, և մոլորեցան 'ի ճանապարհէն․ ապա յարեաւ սաստիկ մրրիկ հողմոյ․ և նաւավարն յանհնարս մտեալ՝ եթող զնաւն ըն հողմոյն․ և բազում անգամ ջանացին նաւավարքն 'ի կղզի ինչ ձգել ըզ-

նուէն , և ոչ կարացին . մինչև եհաս հանդէպ
հռովմայ . և յակամայ մտին 'ի հռովմ՝ անդ
ձմերել :

Եւ եկեալ աղէքսիանոս 'ի քաղաք իւր՝ խնդրեաց 'ի տնէ բարեխօսութք տր ծառայնին , և ասէ . մի՛ կատարեսցին խորհուրդք թշնամւոյն 'ի վր իմ տր իմ տր . այլ զօրասցի աջ քո , և բարձր եղիցի ձեռն քո տր իմ բարերար . և մի՛ թողուր զիս 'ի ձեռաց քոց : Յայնժամ զօրացեալ տրբ՝ դիմեալ գնաց 'ի դուռն ապարանից հօր իւրոյ . ասէ . մի՛ այլ ումեք ծանրացայց՝ բաց 'ի տանէ հօր իմոյ . ուր ոչ երբեք ճանաչել կարիցեն զիս զօրութբ և խնամով տն իմոյ : Եւ 'ի մերձենալ անդր՝ ետես , զի գայր հայրն իւր մեծ իշխանն եփիմիանոս ելեալ 'ի սեղանոյ թգրին ոնորիոսի պատուով և փառօք . ընթացաւ ընդ առաջ հօրն , և ասէ նուաղ ձայնիւ . լո՛ւր ինձ վս այ ո՛վ ծասէր իշխան . և նա զտեղի կալաւ 'ի ձայն աղքատին , զի յոյժ աղքատասէր էր : Ասէ ցհայրն իւր երանելի այրն այ . յօտար տէ եկեալ եմ և անծանօթ եմ , ընկա՛լ զիս վս օտարացելոյն քո , զոր տեսանել արժանի արասցէ զքեզ ած : Իբրև լուաւ եփիմիանոս զօտարացեալն իւր 'ի բերանոյ աղքատին , լցան աչք նորա արտասուօք . և հրամայեաց զինուորաց իւրոց բերել զաղքատն զայն 'ի պալատն իւր . և ինքն եկեալ պատմեաց կենակցին իւրում , եթէ յոյժ ճմլեաց նա զսիրտ իմ՝ յիշելով զօտարացեալն իմ զաղեքսիանոս . և երկոքեան սկսան լալ , և ասեն . ո՛

որդեակ քաղցրիկ ո՞ւր արդեօք իցես. զի ա-
նուանդ կայ, և դու ոչ երևիս. և հրամայե-
ցին բերել զաղքատն զայն առաջի իւրեանց։
Եւ եկեալ զինուորայն՝ ասեն ցերանելի այրն
ա՟յ. զի՞նչ արարեր ո՛վ աղքատիկ ընդ գերի
ծնողաց տ՟ն մերում, զի զօտարացեալն յիշե-
ցեր. և ահա ո՞ կարէ զնոսա մխիթարել. և
արդ այլ մի՛ յիշեսցես այնպիսի բան. և ե՛կ,
զի երթիցուք, քանզի կոչեն զքեզ։ Իսկ ե-
րանելւոյն աչքն ուռուցեալ էին յարտասուե-
լոյն 'ի տեսանելն զհայրն և զտունն իւր, և
պատկերն այլադունեալ յոյժ 'ի խիստ պա-
հոց և 'ի ձգանց և 'ի նեղու՟եց պանդխտու-
թ՟են. և ոչ էր ճանաչելի ումեք. և ա՟ծ եւս
ծածկէր զնա ը՟ն բաղձանաց սիրելի ծառային
իւրոյ, զի և աստ 'ի դուռն տան հօր իւ-
րոյ կոխեսցէ զգլուխ չար վիշապին զինուորն
իւր ա՟ք։

Եւ խօսեցաւ ը՟ն նմա հայրն իւր, և անկաւ
գութ 'ի սիրտ նորա իբրև 'ի վ՟ր զաւակի իւ-
րոյ. քանզի փոքր մի նման է ասէ նմա. և
յանձնեաց ուլումպիոսի՝ որ սնուցեալ էր զա-
լեքսիանոս 'ի մանկութ՟է, խնամ տանել աղ-
քատին այնմիկ։ ՙՆոյնպէս և տիկինն պատ-
ուիրեաց, և ասէ. լաւագոյն պատի՛ւ արա-
րէք աղքատիդ և դարման, և 'ի սեղանոյ
մերմէ ընդ մեզ կերիցէ. զի աչք ն՟ր նման է
աչից ալեքսիանոսին իմոյ։ Եւ սկսաւ տի-
կինն ողբս առնուլ, իբրև այն թէ այսօր բա-
ժանեցաւ 'ի սիրելի որդւոյ իւրմէ. և Եփի-
միանոս ոչ դադարէր 'ի յիշելոյ արտասուօք

զորդի իւր . և հրամայեաց հանգստարան շի-
նել աղքատին առ դրան տան իւրոյ 'ի տեղի
անքոյթ . և ստէպ կոչէր զնա 'ի սեղան . բայց
ոչ երթայր այրն ա̃յ , ասելով . ոչ գոյ յիս
ստամոքս կերակրոյ , զի ոչ եմ առողջ մարմ-
նով . այլ ծնօղքն ստէպ տեսանէին զնա , և
խանդաղատէին զնովաւ . որով ևս քան զևս
արծարծէր 'ի նս̃ա գութ և կսկիծ , և ձմլէին
աղիք նց̃ . և ոչ կարէին իմանալ զպատճառս
իւրացն , այլ լային զզաւակն իւրեանց :
Իսկ սատանայի զայս նիւթ գտեալ իւր՝ յա-
րոյց պատերազմ 'ի վ̃ր նր̃ն . քանզի տըն-
կեաց ատելութի̃ 'ի սիրտ ընտանեաց և ծա-
ռայից ը̃դէմ առն ա̃յ . մինչև ասել նց̃ , ո՞ւր
և կամ ուստի՞ եկն անիծեալ աղքատս այս՝
չարաբեր տանս այսմիկ . զի զմոռացեր սուգն
տ̃ն մերում ալեքսիանոսի նորեաց կրկին 'ի
սիրտս ծնողաց ն̃ր ամենաչար աղքատս այս .
և եկեալ 'ի վ̃ր սբ̃յն՝ փետէին զմօրուսն , և
քարշէին 'ի հերաց՝ ծածուկ յուղումպիոսէ ,
և յիշոցնատու լինէին նմա : Եւ սբ̃ն ծանու-
ցեալ զփորձութիւն սատանայի՝ գոհանայր
զտուողէն համբերութե̃ . քանզի ուրախ էր
'ի վ̃ր նեղութե̃ցն՝ որ դիպէին նմա . և հրեշ-
տակք ա̃յ երևեալ նմա՝ մխիթարէին զնա . և
այրն ա̃յ փառաբանակից լինէր նց̃՝ օրհնելով
հանապազ զա̃ծ : Այսպէս եկաց 'ի դուռն
տան հօր իւրոյ երանելի այրն ա̃յ ալեքսիա-
նոս ամս ԺԷ̃ , կմ̃ ԺԸ̃ . և կմ̃ տասն՝ ը̃ս չափու
պանդխտութե̃ն :

Յետ այսորիկ առաքեաց առ նա տ̃ր զգաբ-

բիէլ հրեշտակապետն. և եկեալ առ նա՝
ողջոյն ետ նմա, և ասէ. Եկ այսուհետև
հանգի՛ր ՚ի բարձրութիս երկնից առ տ՟ր ա՟ծ
քո այ՛ր ա՟յ, որում ցանկացար ՚ի մանկութ՟է
քումմէ, զի կոչէ զքեզ. եկին և այլ հրեշ-
տակք ն՟ր, և ասէին. ուրա՛խ լեր ա՛յր ա՟յ, զի
կատարումն է պանդխտութ՟ե քո, և հանգիստ
՚ի նեղութ՟է քումմէ։ Ասէ երանելին աղեք-
սիանոս. օրհնեա՛լ է տ՟ր ա՟ծ իմ, զի այց արար
անարժան ծառայիս. այն՝ որ փրկեացն զիս.
և ասէ. աղաչեմ զքեզ տ՟ր հրեշտակապետ,
սակաւ մի համբե՛ր, զի գրեցից զվարս անձին
իմոյ, ո՟պ և հրամայեցաւ ինձ ՚ի տ՟նէ։
Եւ իբրև եկն ուղումպիոս, օրհնեաց զնա
այրն ա՟յ, նոյնպէս և զտ՟րն նորա և զտիկինն
վ՟ն երախտեաց՝ զոր ցուցին առ նա. և ասէ.
արա՛ զոր ասեմս. բե՛ր ինձ քարտէս և մելան,
զի պիտոյ են ինձ. և նա եբեր։ Յայնմ վայ-
րի յաւուր կիւրակէի ձայն եղև յերկնից ՚ի
մեծ՝ եկեղեցին՝ ասելով. յետ երից աւուրց
ընկալայց զհ՟ք այրն ա՟յ առ իս. և հրամայե-
ցաւ ՚ի հայրապետէն հռովմայ ա՟մ ժողովր-
դեան՝ պահել պահս, և առնել խնդրուածս
զերիս աւուրս, զի յայտնեսցէ տ՟ր զհ՟ք այրն
ա՟յ, և մի՛ ոք վրիպեսցի յօրհնութ՟է ն՟ր։
Իսկ երանելին աղեքսիանոս յետ կատարե-
լոյ յաւուրն երրորդի զգիրն՝ ասէ ընդ երեկս
յուղումպիոս. գիտեա՛ դու զայս ո՛վ ուղում-
պիէ, զի վաղի՛ն վախճան է իմոյ տառապա-
նաց. և թուղթս՝ զոր գրեցի, վարք իմ է.
առեալ ընթերցցին, զի գիտութ՟ե հասանի-
ցեն։

ցեն ։ Իսկ նր զարմացեալ էր մարգարէութեն սբյն՝ ոչ կարէր հաւատալ նմա . ասէ դարձեալ երանելին . մանկունքն և ընտանիքն մեր բազմօք նեղէին և տանջէին զիս , զոր քեզ ոչ ծանուցի . թողցէ և նց տր ած , զի անգիտութեամբ գործեցին ։

Իսկ յառաւօտու հինգշաբաթուն՝ յորժամ եկն պատմեաց ուլումպիոս տիկնոջ իւրում աղլայիսայ զբանս սբյն , ասէ տիկինն . ով որդեակ , եթէ նա վախճանի այսօր ըստ բանին իւրոյ , 'ի մեծաց սբց է նա . քանզի և իմ սիրտս գուշակէր զսրբութիւն նր ։ Մինչդեռ նքա խօսէին , եղև դղրդումն 'ի քաղաքին , և ամենեքեան 'ի տուն եփիմիանոսի ընթանային՝ զմարդն այ խնդրելով . իսկ ուլումպիոս ընթացեալ առ սբն՝ ետես , զի այն ինչ աւանդեալ էր երանելին զհոգին իւր առ ած , և յերեսաց նր լոյս բորբոքէր . և եկեալ պատմեաց ողբալով մօրն ալէքսիանոսի , և լային իբրև զնս ոք օտար ։

Եւ ահա եկին զինուորք 'ի տուն անդր՝ կազմել գահոյս թգրին և հայրապետին . քանզի 'ի ժամ պատարագին լսելի լեալ էր ձայն յեկեղեցւոջ . եկայք առ իս ամ աշխատեալք , և ես հանգուցից զձեզ . և դարձեալ երկրորդեալ , թէ խնդրեցէք զայրն այ 'ի տունն եփիմիանոսի . զի եկեալ հանգիցէ այսօր առ իս ։ Եւ ասէր թգրն ոնորիոս ցեփիմիանոս՝ որ ընդ նմա էր յեկեղեցւոջ 'ի տեսանել զպատարագն , զոր մատուցանէր մարկիանոս արքեպսն յառաջիկայութեան հայրապետին . ով

պատուհական պատրիկ՝ ՚ի տան քում այսպէսի ինչ պահեալ ծառայես, և մեզ ոչ ծանուցեր. զի և մեք արժանաւորէաք օրհնութե՟ն ն՟ր։ Ասէ Եփիմիանոս. գիտէ Ա՟ծ, զի ոչ եմ իմացեալ զայնպիսի ինչ իմ ՚ի տան իմում։ Ապա յետ արձակման պատարագին գնացին ՚ի տունն Եփիմիանոսի թ՟գաւորն, և հայրապետն հռովմայ, և երանելի արքեպ՟ն Մարկիանոս ա՟մ իշխանօքն հանդերձ, բազմութ՟բ քահանայից և ժողովրդոց. և իբրև մտին ՚ի տունն, տեսին ճառագայթ լուսոյ. և ը՟ լուսոյն գնացեալ՝ տեսին զմարմին ս՟բյն, զի ո՟պ հուր բորբոքեալ լինէր, և լուսով իւրով ճառագայթէր։ Եւ իբրև ողջագուրեցին, տեսին զթուղթն ՚ի ձեռին ն՟ր. և Եփիմիանոս յահի եղեալ՝ ասէր. ով ս՟բդ Ա՟յ, որ այնպ՟ս աղքատաձև եղեալ՝ առ մեզ բնակեցար. և ոչ ծանեաք զքեզ, զի առաւել հաճէաք զքեզ։

Եւ զթուղթն՝ որք միանգամ կամեցան առնուլ՝ ոչ կարացին. յայնժամ հայրապետն յառաջ մատուցեալ՝ խնդրեաց զայն ՚ի ս՟բյն իբրև ՚ի կենդանւոյ. և նա եբաց զձեռն իւր իբրև կենդանի մարդ. իսկ ՚նք հայրապետն համբուրելով զն՟ք ձեռն ն՟ր՝ էառ զթուղթն. և ետ այետրիոսի ճարտար դպրի իւրոյ՝ ընթեռնուլ ՚ի լուր ամենեցուն ՚ի բարձրաւանդակի. և էր գրեալ սկիզբն գրոյն այսպէս. Օրհնեալ է Տ՟ր իմ Ք՟ս Ա՟ծ, որ ելից զփափագ ըղձանաց իմոց՝ զոր ունէի ՚ի մանկութ՟է իմմէ, և փրկեաց զիս ՚ի ներհակութ՟է թշնամւոյն

ւոյն զօրութ[ե]ն իւրով ․ և հրամայեաց ինձ կոխել զգլուխն վիշապին 'ի տան հօր իմոյ , և առ դուրս ծնողացն իմոց , և 'ի մէջ ընտանեացն իմոց ։

Յայն բան վայեաց ուժգին Եփիմիանոս ․ և ասէ ․ զի՞նչ է այս բան , և ո՞րպէս գրեալ է այս ․ Ես առաւել տիկինն աղլայիս ասէր , վա՜յ ինձ գերելոյս , զի՞նչ գուշակէ բանն այն ․ զի յայնժամ բացան աչք նց , ը որում հանապազ 'ի կարծիս էին , թէ սա ամի՞ նման է որդեկին մերում ։ Իսկ հազի՞ լսեցուցեալ զնա՝ ունկն դնէին գրելոցն , զի ասէր և Ես ․ Ողջո՜յն տր հայրապետին , և ողջոյն մեծ թագաւորին , և ամենեցուն առհասարակ ․ և ողջոյն խաղաղութե բարեպաշտ ծնողացն իմոց ։ Արդ մի՛ շփոթիք աղաչեմ , և մի՛ ամբոխիք ․ զի պա՛րտ է ձեզ ցնծալ առ ած ․ զի ես Ճանապարհ հորդեցի ձեզ 'ի կեանսն յաւիտենից ․ և մի՛ առաւել կոծայք աղաչեմ ։

Իսկ ասէ մայրն սրբյն ․ ո՛վ տր հայրապետ , զի՞նչ ասէ սրբս այս , մի՛ գուցէ որդեակն իմ իցէ ։ Ասէ թգրն ․ համբե՛ր տի՛կին ։ Իսկ իբրև կարդաց զայն , որ ասէր ․ Ե՛ս եմ Աղեքսիանոս որդի մեծի իշխանին Եւփիմիանոսի , և մօրն իմոյ տիկնոջ Աքլուղայ ․ և կենակիցն իմ քոյր իմ է ․ մինչև ցայդ վայր յամեցին , և այնուհետև ոչ կարացին ժուժել ․ գոչեաց իբրև զառիւծ հայրն սրբյն , և ընթացաւ առ սրբն ․ և խնդրեաց զնշան զաւակին 'ի պարանոցին և եգիտ ․ և ձայնեաց , եթէ իմ Աղեք-

սիանոսն է Ճշմարտին. և տիկինն նուաղեալ
անկաւ իբրև զմեռեալ. իսկ Թագուհին և
ամ մեծուհիքն ջրով և ձայնելով իւր ուրեմն
խելաբերեցին զնա, և ածին առ սբ որդի
նր, զոր 'ի գիրկս էր առեալ հայրն, և ե-
դեալ զերեսն 'ի վր համբուրէր: Եւ 'ի խօ-
սել մօրն խանդաղակաթ գորովանօք ընդ որ-
դին՝ դարձեալ նուաղեցաւ. իսկ բազմութիւն
Թողեալ զնըն՝ առաւել զմօրն աղէտն լային:
Եւ ասէն հայրապետն և Թգրն. տիկին մի
հարկաներ զսիրտ քո, մխիթարեա զքեզ 'ի
վր սրբութեն զաւակի քո: Եւ եփիմիանոս
ևս հանդարտեալ զինքն՝ մխիթարէր զնա և
ասէր. խելաբերեա զքեզ և մխիթարեա զդ-
սիրտ քո. զի Թէպէտև կարօտ մնացաք կեն-
դանի տեսանելոյ, սակայն տեսաք, և հաս
սրբութեն առաք 'ի զաւակէս մերմէ. և երա-
նելիք եղաք, քանզի ծնօղ սբյն և մարդոյն
այ գտաք:

Ապա ասէ մայր սբյն. ահա այսչափ ամք
էն, զի աղքատութիւն զգեցեալ է երանելի
և որ զաւակ իմ. բերցի այժմ մեծութիւն ընդ ար-
ժանաւորութեն սբյս իմոյ: Եւ եդին զսբն
'ի փառաւոր դահոյս, և զգեցուցին նմ զիւր
ոսկեհուռ և զմարգարտաշար հանդերձն:
Յայնժամ եկեալ կողակից սբյն՝ ընկեց զմա-
տանին առ ոբն աղէքսիոս, ասելով. ա՛ռ,
ահա յիշեալիքն քո՝ որով յուսացուցեալ էիր
զիս, եթէ միա ինձ՝ մինչև գամ. արդ ո՞յս
էր որ գալուստ քո. այլ ահա այժմ Ճշմա-
րիտ եղէ այրի և անորունչ և անգալուիս: Եւ
ե-

եղև կոծ մեծ և ողբումն ա՟մ ընտանեաց և համօրէն բազմութե՟ն վ՟ն ա՟մ անցիցն անցելոց . միանգամայն և գովէին զա՟ծահաճոյ սրբութի՟ առն ա՟յ, և երանէին նմա : Մանաւանդ յորժամ լուան զա՟մ վարս նո՟ր գրեա՟լ 'ի նմանէ՝ սկսեալ 'ի ծննդենէն . ուր բաց յորոց պատմեցաւն մինչև ցայժմ, նշանակեալ էր և զայն, թէ որպէս խրատէր զնո՟ որք առ նա դիմէին 'ի պանդխտութե՟ն նք՟ և 'ի հռովմ, խրատելով 'ի սէր և 'ի խոնարհութի՟, 'ի քաղցրութի՟, 'ի համբերութի՟, 'ի ժուժկալութի՟, և յա՟մ գործս ա՟ծսիրութե՟ և եղբայրսիրութե՟ :

Եւ մարմին սբ՟յն մնաց 'ի գահոյս զգիշերն ողջոյն, զի հսկեցին զնովաւ պաշտամամբ և օրհնութ՟ք մինչև ցառաւօտն . և տեսանէին՝ զի նշ՟ք մարմինն երբեմն բորբոքէր և հրանայր, և երբեմն հանդարտէր . և հոտ անուշ բուրէր և զմայլեցուցանէր զամենեսեան : Եւ իբրև ծագեաց արեգակն, եկին յա՟մ եկեղեցեաց զարդք և պաշտօնեայք . և այնպէս փառօք և պատուով հանեալ 'ի տանէն՝ տանէին 'ի տաճար ս՟ց առաքելոցն պետրոսի և պօղոսի . մինչև շինեսցեն պայծառ եկեղեցի յանուն առն ա՟յ, և անդ փոխեսցեն 'ի հանգիստ : Իսկ 'ի ճանապարհի յառաջ եկին ախտաժէտք . և 'ի մերձենալ առ սբ՟ն՝ առ ժամայն բժշկեցան . եկին և այսահարք առ ոտս սբ՟յն, և գոչէին, հալածեալ եղաք 'ի սբ՟յ նահատակէս, և 'ի կորուստ մատնեցաք յերևսաց առն ա՟յ . և տեսեալ ամենե-

ցուն՝

ցուն՝ օրհնութ և փառք տային ա՟յ ։ Այլ բե-
րեալ զս՟բ մարմինն եդին արծաթապատ տա-
պանօք 'ի տաճար ս՟բ առաքելոցն ք՟սի ․ և ե-
րկս աւուրս մատչէին 'ի համբոյր նշխարաց
ս՟բյն ա՟մ ժողովուրդ քաղաքին ։ Իսկ ծնօղք
ս՟բյն տեսեալ զփառս ն՟ց՝ որով փառաւորեաց
ա՟ծ զերանելին զաւակն իւրեանց, մխիթա-
րեցան 'ի սգոյ և 'ի տրտմուե՟ց ․ և ցնծային
'ի սիրտս իւրեանց բարեպաշտքն այնոքիկ
հանդերձ սքանչելի կենակցի՟ն ս՟բյն, մո-
ռացեալ զկարօտն և զսուգն իւրեանց ։

Այս շինեցին եկեղեցի վայելուչ հանգստա-
րան ս՟բյ առն ա՟յ ․ և անդ հանգուցին զնա ․
և ինքեանք եղեն սպասաւորք ս՟բ գերեզմա-
նին ն՟ր 'ի նորաշէն եկեղեցւոջն ․ ուր և բար-
ւոք ճգնութ՟բ կացեալք՝ յաւելան առ ս՟բսն
ա՟յ և առ ցանկալի զաւակն իւրեանց ․ և հա-
սին՝ որում անձկացեալ էին՝ ք՟սի ա՟յ տ՟ն մե-
րոյ ․ որում փառք և պատիւ և գոհութիւն
յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

'Ի նշխարաց ս՟բյն ալեքսիանոսի՝ բազուկ մի
նորա յիշատակի լինել 'ի տաճարի ս՟բյն պօ-
ղոսի արտաքոյ պարսպաց հռովմայ, և միւսն
'ի ս՟բ նիկողայոս ․ մին 'ի կողից 'ի ս՟բն պրաք-
սեդա, և այլ մասունք 'ի ս՟բ կեկիլիա յայն-
կոյս տիբերեայ ։ Գլուխ զոր 'ի բոնոնիա, 'ի
վենետիկ, 'ի սպանիա, 'ի գաղղիա, և 'ի
բեղգիոն ։ Այլ առաւել հանդիսացեալ են
նշխարք ս՟բյն գտեալք 'ի հռովմ յեկեղեցւոջ
ս՟բյն վոնիփակիոսի կմ՟ վոնիփատոսի վկայի
( զոր տօնեն հռովմայեցիք 'ի մայիսի ․ 14 ),
ուր

ուր եղև երբեմն պսակ աղեքսիանոսի . որ և կոչի այժմ առաւել եկեղեցի և վանք և տուն սր̅յն աղեքսիանոսի . զի աւանդութի̅ է քաղաքացւոց՝ թէ մօտ էր անդր տունն նր̅, յաւենտինեան կոչեցեալ լերին ։ Կայր անդ և առանձին պատիւ իշխանութե̅ անուանեալ կարդինալութի̅ սր̅յն աղեքսիոսի ։ Ի տաճարի անդ ը̅ աւագ խորանաւ ասի զետեղեալ մարմին երկոցունց սր̅ց՝ վոնիփակիոսի և աղեքսիոսի 'ի վաղ ժամանակաց . և կրկին և երեքկին նորոգութ̅ք բեմին՝ անդանօր եղեն յամի 1218 . և 1595, կամ 1603 . և անտի սփռեցան այլեւայլ մասունք 'ի զանազան տեղիս ։

Այլ քանզի այլք գրեն՝ թէ եկեղեցին այն 'ի տեղւոջ ապարանից աղեքսիանոսի ասի շինեալ յաղլայիսայ, ո̅ր 'ի մօրէ սր̅յն, ունիմք ասել՝ թէ սոյն սա է նորաշէն կոչեցեալ 'ի վարս նր̅ եկեղեցի առն ա̅յ աղեքսիանոսի . և զի բերաւ անդր մասն 'ի նշխարաց սր̅յն վոնիփակիոսի վկայի գտելոց 'ի դամբարանս լատինական Ճանապարհի ( ուր բերեալ էին նշխարք նր̅ յետ նահատակելոյ 'ի տարսոն առ դիոկղետիանոսիւ ), զանուն երկոցունց սր̅ց կրէր այնուհետև ։

Յետ ժամանակաց՝ յամի իբր 1014, յորժամ ը̅ սր̅յն հենրիկոսի կայսեր 'ի հռովմ դեգերէր ս̅րն մէյնվէրկոս եպ̅ս պադեռբորնեայ՝ ջերմ պաշտօնասէր սր̅յն աղեքսիանոսի, ուխտեաց անդ՝ շինել նմա յերկրի իւրում աղօթարան կամ մատուռն, եթէ փարատեսցէ

զախտ

զախտ մահաբեր հիւանդութեան՝ որ շաղախեալ էր 'ի մարդիկ և յանասունս. և ընկալեալ զխնդրելին՝ շինեաց 'ի մուտս քաղաքին պադեռաքորնեայ 'ի տեղին կոչեցեալ սուլիթ, փառաւոր մատուռն առ նոր մենաստանաւ: Այլ իբրև այրեցաւ այն յամի 1058, միւսանգամ շինեցաւ յայլոց. ուր և պատմին հրաշք ինչ բարեխօսութեամբ սրբոյն Աղեքսիանոսի: Թողից նշանակել և զայլ վկայարանս և զխորանս կանգնեալս յանուն նորին յայլևայլ քաղաքս. որպէս և 'ի տեղիս տեղիս կարգեցաւ եղբայրութիւն յանուն սրբոյն Աղեքսիանոսի:

'Ի պաշտամունս յունաց հռչակաւոր են երգք և շարականք սրբոյն յօսեփայ երգաբանի յիններորդ դարու, որ էր աւանդապահ սպասուց մեծի եկեղեցւոյն 'ի կոստանդինուպօլիս յամի իբր 850. և սկզբնատառք տանց եւմոսացն նորա 'ի վերայ սրբոյն Աղեքսիանոսի յօդեն զայս բան. * Օքեզ զայր Աստուծոյ օրհնեցից, ո՛վ երանելի Ա. ուր և բովանդակի վարք նորա ողջոյն՝ գեղեցիկ բանահիւսութեամբ մեծամեծ գովասանութեանց: Իսկ ընթերցուած վարուց նորին Աղեքսիանոսի առն Աստուծոյ՝ բազմաց եղև առիթ հրաժարելոյ յաշխարհէ և կրօնաւորելոյ. որպէս և Աղեքսիանոս ինքնին եղև կատարեալ միայնակեաց 'ի գերագոյն կարգի. վասն որոյ առ յոյնս և առ լատինս կոչի նաև հայր Աղեքսիոս:

Այս և պանծալի ճառ ներբողական 'ի վերայ սրբոյն Աղեքսիանոսի՝ խօսեցեալ 'ի տաճարի նորա 'ի հռոմ 'ի տասներորդ դարու 'ի նորին

ա

ադալբերտոսէ եպ՟սէն բրակայու՝ որ նահա-
տակեցաւ յամի տ՟ն 997 ․ ուր քաղէ զվարս
սր՟յն , և բազմօք մեծացուցանէ զհրաժա-
րումն նորա յոյժ 'ի վեր քան զա՟մ կրօնաւորս ,
ո՟չ և զպատիւ՟ն՝ զոր յա՟յ ընկալաւ կոչմամբքս
այր ա՟յ , կա՟մ ա՟յ մարդ ։ Ծնող և զստանաւոր
վարս նորա լիակատար՝ համաձայն պատմու-
թեամբ յօրինեալ յումեմնէ լատին քերթողէ ։
Գրեաց և այլ ոք զքանի մի 'ի սքանչելեաց
սր՟յն 'ի վանս անդ նորա 'ի Հռովմ իբրև ա-
կանատես և ականջալուր ․ զի՟ թէ 'ի բերել
զմանուկ մի անբուժելի հիւանդութ՟բ 'ի տա-
ճար սր՟յն , իբրև դարձուցին անդրէն 'ի տուն ,
երևեցան նմա սր՟ն ալեքսիանոս և վոնիփա-
կիոս , և ասեն ․ ողջ լեր որդեակ , և ընթա՛
'ի տուն մեր , գոհանալ զա՟յ՝ որով բժշկե-
ցար ․ և նա յարուցեալ զմայրն՝ գնաց ը՟ նմա
ողջամբ յեկեղեցի ։
Այլ վաճառական ոմն հռովմայեցի ըմբռնեալ
'ի հինից ծովու՝ կապեցաւ 'ի շղթայս իբրև
զգերի , և վարեցաւ մինչև 'ի սպանիա ․ և
յետ բազում տառապանաց բանտի՝ 'ի կար-
դալ նորա զանուն սր՟յն վոնիփակիոսի և ա-
լեքսիանոսի , երևեցան նմա սր՟քն այնու
ձևով՝ որով ճանաչէր զնո՟ս այրն 'ի պատկերի
տաճարի նց՟ ․ և ասեն ․ աւասիկ եմք , երթ
ուրախութ՟բ 'ի խաղաղութի ․ և թօթափեալ 'ի
նմէ զշղթայսն՝ հանին 'ի բանտէ ․ և առաջ-
նորդեալ հասուցին փութապէս 'ի հռովմ ։
Սոյնպէս ազատեցին զծառայ մի՝ որ դատա-
պարտեալ էր 'ի մահ ․ և 'ի ծառայել նորա
'ի

'ի վանս սբ̃ցն , և 'ի բերել զջուր սափորով՝ անկաւ 'ի բարձր սանդղոց 'ի վայր սափորն ջրով լի . և յաղաղակել նորա առ սբ̃ոյն՝ ոչ թափեցաւ և ոչ կաթիլ մի ջրոյ . և ասէ պառամօղն , թէ անդ էի և ես 'ի ժամուն . որ արբի 'ի ջրոյ անտի հանդերձ բազմութբ̃ վանականաց՝ փառաւորելով զա̃ծ , որ սքանչելին է 'ի սբ̃ս իւր : Սոյնպէս գրէ և զայլ հրաշս մանրապատում . թող և զոր այլք պատմեն 'ի զանազան ժամանակս :

Գրէ և պետրոս բենեդիկտոս յոհան՝ աղգաւ մառոնի , յամի տն̃ 1725 , 'ի թուղթն առ բոլլանդեանս , թէ * Յաւուրս յայսոսիկ պատմէր ինձ աղեքսանդր սքանտար աւագերէց մառոնեաց , թէ քանի մի ամօք յառաջ՝ մինչդեռ էի ես յեդեսիա , տեսի՝ զի հայք , որ են տեարք եկեղեցւոյն՝ յորոյ 'ի գաւիթս եկաց սբ̃ն աղեքսիոս , մեծարեալ պատուէին յո̃մ աւուր զկնի երեկոյեան ժամու խնկարկութբ̃ զխուղ մի՝ որ կայ 'ի բակն եկեղեցւոյ , առ 'ի յիշատակէ սբ̃յն աղեքսիոսի , զոր նք̃ աղեքսիանոս կոչեն . և հաստատէին՝ թէ անդ էր բնակութի սբ̃յն , և տեղի աղօթից նորա || : Իսկ ասորիք անգիտացեալ զանունն սբ̃յն՝ կոչեն զնա մար ուխշիա , այ̃ տ̃ր իշխան . յորմէ ել և խառն պատմութին այն անանուն որդւոյ թգ̃րի . փոխանակ ասելոյ՝ աղեքսիոս թագաւորազն :

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Հեղինակ վարուց սրբոյն Աղեքսիանոսի՝ նախ ա-
ռաջին է ինքն այրն այ, որ հրամանաւ նորին գրեաց զնմ
անցս իւր 'ի թղթի անդ, զոր ընթերցաւ հռովմ. քա-
ղաք ողջոյն յաւուրս վախճանի նր. մինչ զի՝ որ ինչ միան-
գամ յետ այնորիկ գրեցաւ 'ի հռովմայեցւոց 'ի լատին
բարբառ 'ի դարս դարս՝ եթէ արձակ պատմութ. բազ-
մօրինակ, եթէ 'ի ձև ներբողենի, կմ քերթողական չա-
փաբերութ., 'ի վրյ մի և նոյն հիման շինեցաւ. նոյնպէս
և որ ինչ 'ի յոյն լեզու շարադրեցաւ՝ եթէ պատմողա-
բար, և եթէ գովասանական երգաբանութ., ըստ իսկու-
թեն նոյն գտանի յոր և է դարս: Այլ վայելուչ և ա-
ռաւել հանդիսացեալ օրինակ վարուց սրբյն այն է, զոր
'ի հռովմայեցւոց և 'ի յունաց բաղադրեալ և թարգմա-
նեալ գտանեմք 'ի կարգի հայերէն հարանց վարուց՝ հան-
դերձ կրկնակի յառաջաբանութ. պտ. Եղէ. գծա. զորոյ
զյարգն նա իմանայ, որ բաղդատէ ընդ նմին զայլևայլ
օրինակս հարազատս կամ անհարազատս, որք գտանին
յազգի մերում և առ այլս:

Պլինիոս բոլլանդեան գրէ աստանօր վս լատին օրինա-
կաց այսպէս. * Ձեռագիր օրինակք վարուցս կարի
,, շատ յաճախութ. գտանին ||. և յետ յիշելոյ յանուանէ
իբր տասն մի 'ի զանազան գրատունս եւրոպիոյ՝ յայտ
առնէ, թէ երկու և երեք 'ի նոցանէ են երևելի հնու-
թբ՝ իբր ութ կմ լինն հարիւր և կամ հազար ամօք յա-
ռաջ գրեալք. թող զժամանակ պէսպէս շարագրութե-
նց անյիշատակ հնութբ. վրյ և մեղադիր լինի բաբեպ-
րոքայ, * որ կարի աղատաբար խօսեցաւ || ասէ, ոչ
թէ հին վարք սրբյն չկայցէ: Եւ ապա ասէ պլինիոս, որ
է խնդրելին մեր. * Զայս ինչ մարթ է ասել ընդ-
,, հանրապէս զնմ օրինակաց վարուց սրբյն՝ եթէ զձե-
,, ռագրաց, և եթէ զտպագրաց, զորս ես ինձէն տե-
,, սի, և արդարև բազումս յոյժ տեսի. իբր զի յամե-
,, նեսին է մի և նոյն գոյացութ. պատմութե. որ 'ի

,, մի

,, մի և 'ի նոյն աղբիւր հայի, և 'ի նոյն ուշիմութիւն գրչի,
,, և 'ի կարգ իրաց, և 'ի համեմատութիւն մասանց. զնոյն
,, խմն և զուտանաւոր ձեռագիր վարուց ||. զոր և տպագրէ՝ իբրև նորագիւտ ինչ՝ ըստ միում համառօտ օրինակի արձակ շարագրութիւն 'ի կարգէ հնոց. որ չէ ինչ ընդհատ 'ի սուրիսեան օրինակէ: Եւ 'ի յունաց 'ի մէջ առնու միայն զբանս սրբոյն յովսեփայ երգաբանի. և աւելորդ համարի զայլ յունական վարս տպագրել. զի և այլայլս օրինակք նոցա ասէ ըստ իմաստից նոյնանան ընդ լատինականս. և չիք զանազանութիւն էական, այլ միայն պատահական:

Կամեցեալ աշխատասէր և խուզարկու առն ակնարկել և յայլ արևելեան աւանդս՝ թշուառաբար հանդիպեալ է յոռեգոյն օրինակի միում արաբացւոց. և ձախողակի խորհրդով յանձն առեալ է տպագրել զայն՝ հանդերձ երկար և ձանձրալի տեղեկութեք 'ի նախածանօթս. մինչև պղտորել անձամբ զանձն և զայլս, և դնել հետևողութե այնր անպիտան օրինակի՝ ըստ հանուր վերնագիր այսպիսի. * Յաղագս սրբոյն աւետիսանի խոստովանողի,
,, որ 'ի հռովմ, կամ որպէս այլ վարք պատմեն, յեդեսիա
,, յերկրին ասորւոց ||: Կարէր դնել ըստ այդմ, նաև 'ի կոստանդնուպօլիս. զի կան և այնպիսի վարք. կարէր դնել և որդի թագուորի, որպէս ասեն ոմանք, զի և լատին քերթողն կոչէ զհայր սրբոյն՝ * թագաւորաց հաւասար ||: Ոչ ապաքէն պարտ էր առն իմաստնոյ որոշել զհարազատ օրինակս յանհարազատաց. որպէս որ 'ի մէզ ընթեռնու զբուն վարս աւետիսանոսի՝ որ կայ յընթացս հարանց վարուց, և զմիւս այլ յանուն անանուն որդւոյ թագաւորին հռոմոց 'ի վերջն հարանց վարուց, որչափ և տխմար ոք իցէ՝ որոշէ, թէ մին է հարազատ՝ համաձայն յն. և լտ. և միւսն անհարազատ՝ թարգմանեալ յասորւոց, զոյգ ընդ անհարազատ վարուց յովհաննու՝ կոչմամբ ներսէհ որդի թագաւորին հռովմայ. որպէս և յիշատակարանն վկայէ, թէ * ես հայր գագիկ թարգմանեցի զպատմու-
,, թիս զայս զորդւոյ թագաւորին երկոցունց՝ յասոր-
,, ւոց 'ի մերս ||: Եւ ահա զնոյն զայն անհարազատ պատմութի զփոխանցեալն առեալ երկարաբանութ յասորւոյ յարաբացին առեալ է 'ի ձեռս պլնիոս. ուր այրն նոյ անանուն՝ ասի փախճանեալ յեդեսիա, և մարմին

Նր̃ անյայտացեալ կամ վերափոխեալ յաւուրս Ռաբուլայ եպսին եդեսիոյ ։

Իցէ՞ թէ 'ի ձեռս բերել զհարազատ օրինակն հայերէն. զի յայնժամ յայտ միտս լինէր. կամ գոնէ միջական օրինակաց հանդիպել՝ որ թարգմանեալ 'ի յունէ և յասորւոյ. ոմ̃ 'ի ճառընտ. Ջ. և Ժ. զի և 'ի լոկ թարգմանութե̃ սո̃ իմանայր զստոյգն. որ̃ 'ի Ջ. գրի, * Վարք
,, և ճգնութի̃ Նր̃ երանելոյ առնն Ա̃յ ։ Սա էր մի էր 'ի
,, հռոմ քաղաքին մեծատուն յոյժ. և էր անուն Նր̃ Եփ-
,, միանոս. և էր երրորդ յիշխանաց քաղաքին հռոմայ.
,, և անուն կնոջ Նր̃ Աղլայիս. և յոյժ սիրէին զաղքատ-
,, սիրութի̃ ||. ԵՆ ։ Որ 'ի Ժ. գրեալ է այսպէս. * Պատ-
,, մութի̃ յաղագս որդւոյ Թ̃րին հռովմայեցւոց, որոյ
,, անուն կոչի այր Ա̃յ ։ Սա էր ոմն Թ̃ր 'ի հռոմ քաղաք.
,, և անուն Նր̃ Եփոմիանոս. և անուն կնոջ նորա Նախ-
,, լայիս. և յոյժ սիրէին զաղքատասիրութի̃ ||. ԵՆ ։ Յորս մի և նոյն պատմութի̃ է ծայրէ 'ի ծայր՝ յար և նման սուրիոսեան օրինակի, կամ համառօտ վարուց՝ զոր 'ի կիր արկանէ 'ի լատինն պինիոս. միով այսուհիկ տարբեր, զի լատին օրինակն զանուն սր̃յն գրէ աղեքսիոս. իսկ այս օրինակք՝ զորս միջականս կոչեմք, առ չգիտելոյ զանուն սր̃յն՝ գրեն ըս̃ ասորւոցն աւանդութե̃, թէ 'ի ծնանիլն՝ հայր նորա * անուանեաց զանուն մանկանն
,, այր Ա̃յ. զի պահօք և աղօթիւք խնդրեցաք զդա յԱ̃յ ||։
Որ է յայտնի նշան, թէ որովհետև սր̃ն ոչ յայտնեաց զանուն իւր յեդեսիա, յորժամ կոչեցաւ անդ 'ի ձ̃նէ կամ 'ի խորանօրն ձայնելոյ՝ այր Ա̃յ, կարծեալ են ասորիք՝ թէ այն անուն է նր̃. և զի իրազեկ եղեն զկնի, թէ թագաւորազն ոք էր նա, կոչեցին ոչ միայն կայսրառ' ալլահա, ըս̃ այր Ա̃յ, այլև մար ռիշիա, ըս̃ տր̃ իշխան, կամ սր̃ թ̃րազն (ասոր. ռիձալ)։ Եւ այսպէս միաբանի պատմութին, և ստանայ նաև այս միջին օրինակ հեղինակութի̃ մեծ, ըս̃ որում վկայէ ասեմանն՝ թէ անսեալ է զօրինակ այնպիսի 'ի սկիզբեան վանս նիտրիոյ ասորի գրով գրեալ 'ի վեցերորդ դարու. ուստի առեալ է և արաբացի օրինակն՝ պատճառաւ̃ անալի երկարաբանութեց, մուծանելով և զայն անհեթեթ պարագայ վն փախչանելոյ սր̃յն յեդեսիա և անգիւտ լինելոյ մարմնոյն. զի այդ է մակաբերութի̃ ռամկաց 'ի փախչելոյ ան-

տի սր̅յն, և յաներևութանալոյ յեդեսիոյ ։ Ոչինչ Է̅ հաստատ է յանհարազատ օրինակէ անտի արարացուց և օրինակն գտեալ 'ի Ճառըն. Պ. ուր թէպէտև չկայ այն առասպել, բայց բովանդակ կազմութն է տխմարական ոճով և անշնորհ բանիւք պատուհասեալ 'ի վ̅ր հարազատ օրինակին. թող զի յետ ասելոյ՝ թէ եր յաւուրս ոսկեբերանի, փոխանակ գրելոյ զանուն արկադեայ արքայի, գրէ՝ հերակլեայ ։

Զայսոսիկ նշանակեցաք առ 'ի ցուցանել, թէ ո̅ր յայտնի է տարբերութի հարազատ և միջակին և անհարազատ օրինակաց, նոյնպէս և քննութե պինիոսի բոլլանդեան և այլոց կրկնոց՝ խառն է 'ի հարազատ և 'ի միջասահման և յանհարազատ ուղղագրութեց. մինչ զի որչափ և ուղղագրեն զսխալանս այլոց, նոյնչափ և ինքեանք ուղղագրութե կարօտին. զոր տացուք ձեռամբ շօշափել ։

Ուղիղ է նախ՝ պնդելն պինիոսի և այլոց գիտնականաց, թէ սր̅ն աղեքսիանոս՝ որ և աղեքսիոս կմ̅ աղեքսիս, եր հռովմայեցի, և ո՛չ կոստանդնուպօլսեցի, ո̅ր կամեցաւ երկբայել տիլլեմոնտ բանախնդիրն, ը̅ խմբք և բաբեպրոք համարձակախօսն. որոց ո՛չ դք գտանի ձայնակից, բայց անպիտան օրինակն Ճ. Պ. և այլ խառնաբնդոր գրիչք ոսկեփորիկ անուանեալ ժողովածու գրոց. զոր գտանեմք և 'ի Հ. ը̅ հասարակ օրինակաց, այլ ո՛չ ըստ ընտրելագունից. զի մ̅ր իէլն թէպէտև հեաւօղ միջին օրինակաց՝ պարզապէս հռովմայեցի դնէ. իսկ որք կոստանդնուպօլսեցի գրեցին՝ յայտ առնեն զնորութի իւրեանց, դնելով 'ի սողմբօլ կմ̅ 'ի ստամբօլ. որ է հընչևն յետին դարուց. և այս մուծեալ է 'ի ռամկաց, որք առ մեօք իսկ տուն աղեքսիանոսի կոչեն զտեղի մի 'ի կէտիկ փաշայն կոստանդնուպօլսոյ, խառնելով ընդ նմանակցի նր̅ յովհաննու կամաւոր աղքատի ։

Ուղիղ է ը̅ նմին և յաղթահարելն պինիոսի զտիլլեմոնտ, որ անպատճառ կամեցաւ խարբալել զմիտս լսողաց տգիտաց՝ ասելով, թէ գուցէ յովհաննէս և աղեքսիանոս իցեն նոյն, զի կոյ ասէ նմանուն 'ի վարս ն̅ց ։ Ընդդէմ որոյ յերկար ցուցանէ պինիոս, թէ փոքր և թեթև է նմանութիւն ը̅ կերպի կամաւոր աղքատութե և ը̅ մերձաւորութե ժամանակին, ուր այլով ամ̅ն աննմանութի է 'ի պատմութեն ն̅ց ծայրէ 'ի ծայր. * Եւ արդարև

,, (ասէ

,, (ասէ 'ի վերջոյ) անյարիրս խօսի, որ ոք զերկուս սերս
,, շփոթէ միով նմանող լինելոյ նդ 'ի քաղաքավարութե․ զի
,, յուսապէս լինէր շփոթել զսբն սիմէոն սալոսն, և
,, զսբն թէոդորոս սալոսն, և զսբն թովմաս սալոսն,
,, որ էր ժամանակակից սիմէոնի (աղօտաւ կծ յիմար
,, ձեւացելոյ վասն քի)․ Թողեց և զայլ բազում օրի_
,, նակս ||:

Ուղիղ է և հաստատելն պինիոսի ըստ նմ օրինակաց, թէ սբն աղէքսիանոս էր յաւուրս ոնորիոսի կայսեր և իննովկենտիոսի պապին 'ի սկիզբն Ե դարու․ որպէս և խոստովանի է չորրորդն զորոշ ժամանակ ծննդեան սբյն և փեսայութե և վախճանին․ զի ոչ միօրինակ գրի յամենեցունց տարեգրութե այսց միջոցաց, այլ՝ ոմն յաւուրս ծննդեան, ոմն յաւուրս փեսայութե, և ոմն յաւուրս վախճանին յիշէ զանուն կայսերն և քահանայապետին․ ուստի և ոմանք յայն նմ միջոցս յիշեն զնոյն անուանս:

Սուտի երեւի շփոթ խօսել և ինքն պինիոս․ բայց դժրա է ասել անշփոթ և անսայթաք խուզարկութե, թէ ծննդ սբյն անկանի յառաջին ամս թգրելոյ արկադեայ իբր զաւակից ը մեծին թէոդոսի․ և փեսայութին՝ որ ասի լինել 'ի ժէ ամաց հասակի, անկանի յառաջին ամս իննովկենտիոսի պապին՝ որ նստաւ յամի տն 402․ այն ամ ութերորդ էր թգրութե երկուց եղբարց՝ արկադեայ և ոնորիոսի: Իսկ վախճան սբյն՝ եդ 'ի վերջին ամս ոնորիոսի կայսեր, որ թգրեաց ամս իը, կմ իթ, և մեռաւ յամի 424․ յորում ժմկի մեռեալ էր 'ի վաղուց իննովկենտիոս․ վսյ 'ի հարազատ օրինակս յիշի ոնորիոս 'ի փոխման սբյն, այլ ոչ յիշի անուն քհնյապետին․ որ էր կամ վոնիփակիոս, և կմ կեղեստինոս՝ որ նստաւ յամի 423, Եւ ըս այսմ դժրա է ընտրել զստոյգ կարծեցեալ օրինակս, որք ոչ միօրինակ ունին զամս պանդխտութե սբյն, և զամս կալոյ 'ի դուռն տան հօր իւրոյ․ միայն ըս նմցն՝ աւելի քան զամս տասն պանդխտեցաւ, և նոյնչափ եւս 'ի դրան հօր իւրոյ․ ը նմ՝ ամս իբր լէ աղքատութե կեցեալ․ որ վրիպակաւ գրի արդեօք 'ի հարանց վարս լէ: Այս նմ է ընդունելի մեզ և պինիոսի և նմ ճշմարտասիրի:

Բայց չէ՛ մեզ ընդունելի, մանաւանդ թէ անտանելի իսկ է, նախ՝ այն եպերանք պինիոսի, որով յարձակի ընդդէմ

վարուց սբ̄յն 'ի պատճառս դաստառակին քնի՝ որ յիշի յոմ̄ հարազատ օրինակս. քանզի ասէ. * Իբրուամէք
,, կծանէ գալեսինիոս, թէ գրեալն յայս վարս վն̄ պատ-
,, կերին առաքելոյ 'ի քնէ մ̄նէ մերմէ առ աբգար, ը̄
,, անյայտս ('ի գրոց) է համարելի ||. վն̄յ և ոչ հաւանի պլինիոս ը̄ նշանակել բարոնիոսի 'ի տարեգր. յամի մ̄ն 31. զայն դաստառակ. և ջանայ այլով մասամբ կուսակից լինել առնուլ զբարոնիոս՝ վն̄ ասելոյ նր̄ 'ի ծան. վկ. հա. վն̄ այսր վարուց, թէ * յիրս իրս ուղղագրելի է ||: Եւ յայսպիսի պատճառանաց լցեալ պլինիոսի ոչ երկիւղածուը̄, այլ երկչոտուը̄ յերեսաց այլոց անգուռն բերանոց՝ ասէ, ես ոչ կամիմ խօսել 'ի բերանոյ իմմէ, այլ ասեմ՝ թէ կրիտիկաց ոչ են հաճոյ այսպիսի բանք կմ̄ այսպիսի վարք: Տեսե՞ր, թէ ուստի՞ մ՞եր խոտորին միտք պլինիոսի և նմանեաց նր̄: Այլ որս պլինին մեր այս է. ոչ կարէ չկամութեան իւրեանց խախտել զաւանդուն ազգիս վն̄ սը̄ դաստառակին՝ առեալ 'ի գիճանաց անտի եդեսիոյ ը̄ խորենացւոյն, և պաշտեալ յոմ̄ գարս. և վկայեալ 'ի բազում մատենագրաց յունաց, և հաստատեալ նաև 'ի վարուց սբ̄յն ալեքսիանոսի յոմ̄ ազգաց՝ սկսեալ 'ի հռովմայեցւոց. որ և ցարդ 'ի հռոմ̄ պահեն զայն դաստառակ սը̄, կմ̄ գո՞նէ զնմանութիւն նր̄. և այսպէս ոչ եթէ պատմութեն դաստառակին անը̄ունելի առնէ զվարս ալեքսիանոսի, այլ առաւել ը̄ունելի գոլ հաստատէ. և անդրադարձեալ՝ վարք ալեքսիանոսի է հաստատութեն աւանդութեն դաստառակին, և որ մեծն է՝ խորենացին, որ փոքր մի յետոյ էր քան զաւուրս ալեքսիանոսի, այսպէս գրէ. Է. 32. * Զայս
,, թուղթ եբեր անան սուրհանդակ աբգարու, ը̄ որում
,, և զկենդանագրութեն փրկչական պատկերին, որ կայ
,, յեդեսացւոց քաղաքին յաւուհայ, մինչև ցայսօր ժա-
,, մանակի ||: Թո՛ղ գալեսինիոս և պլինիոս և այլ երեկեան մարդիկ զի՛նչ և կամին՝ քրթմնջեսցեն: Այլ ես զարմանամ, զի ինքն իսկ պլինիոս բերէ վկայութեն յազգէն հայոց 'ի հաստատել, թէ արդարև սբ̄ն ալեքսիանոս բնակեցաւ յեդեսիա 'ի դաւթի եկեղեցւոյն. որ վասն ասէ՝ զտեղի տաղաւարի սբ̄յն զոր ոմ̄ նկարկուը̄ պատուճէն հայք. այլ մեք յե՛ս զարմանալի քննութեն առն կրիտիկի հայեցուք:

Եւ

Կերեւմք պլինիոսի, եթէ արժան իցէ ներել, զի թո-
ղեալ զօրինակս վարուց սրբոյն զհինս՝ որ առ լատինս, և
ոչ արժան համարեալ տպագրել զյունական օրինակ
ինչ, շատացաւ տերեւաթափ և համառօտ օրինակաւ
միով 'ի լատինացւոց՝ հանդերձ ոտանաւորաւ իւիք, և
արաբացի անհարազատ օրինակաւ. և գովեմք, զի 'ի
յունաց ընտրեաց զերգաբանն զյովսէփ՝ որ 'ի Թ դա-
րու. բայց ոչ կարեմք գովել, զի զյովսէփ արար փոխ-
ձայնքար իւր ըստ քննութեան իւրոց. այլ զի զոր ինչ ոչ գտցէ
յերգս նր՝ անըմբռնելի համարեցի : Լուր զհետ բանից
պլինիոսի՝ 'ի խօսելն զծննդեանց սրբոյն զեւփիմիանոսէ և
զաղլայիսայ. * Յովսէփ երգաբանն, կմ այլ ոք համա-
,, նուն՝ զանուանս նց ոչ բացայայտէ. իբր զի կամ ոչ
,, եգիտ 'ի պատմութե և 'ի վարս անդ՝ յորմէ հիւսեաց
,, զիւր երգն, և կմ եթէ եգիտ անդ զնոսին, ստուգիւ
,, ոչ հաւանեցաւ. ուստի գուցէ խիթալի կարեն լինել
,, անուանք եւփիմիանոսի և աղլայիսայ ||. և այսպէս
Ջուր պղտոր արբեցուցեալ ընթերցողաց անձոռնի և
մասստակուէ՝ սկսանի ստուգաբանել զանունս եւփիմիա-
նոս յունարէն՝ բարեհամբաւ, զոր ոչ ոք անգիտանայ 'ի
լեզուագիտաց. և զաղլայիսն՝ որ և գրի ասէ աղլիս,
կմ հաքլայիս կամ աղլահիա, պայծառ թարգմանէ. այլ
եթէ գիտէր՝ թէ 'ի հայումս գրի ըստ յունաց աղլայիս,
և ըստ հռոմայեցւոց ագիւղա կմ ագիւլա, զներքինս զայս
առաւել ընտրէր խրատամբք :

Դարձեալ տեսանէ պլինիոս, զի յոյն երգաբանն ոչ յիշէ
զոնորիոս կայսր և զինոկենտիոս պապ, և անդրէն
զաւածանի 'ի նոյն անձեռնարկելի ձեռնարկ, թէ ու-
րեմն տարակուսելի իմա անուանքս. և ահա այսպէս
աեօք եզրակացուցանէ զայս ստութի, թէ բանք երգա-
բանին ոչ են նման վարուց սրբյն. ապա ուրեմն տկա-
րանայ պատմութի վարուցս : Եւ ո՞ 'ի տգիտաց անգամ
ոչ գիտէ, թէ տաղասացք և երգիչք շարականաց ոչ են
պատմաբան, այլ գովեստաբան. մա եթէ գտցի 'ի նս
նշմար ինչ համաձայն պատմութեց, շատ է 'ի հաստա-
տութի պատմական. արդ հարցանեմք զպլինիոս, խօսի՞
արդեօք յովսէփ երգաբանն ինչ ինչ նման վարուց սրբյն.
ապաքէն այնչափ ինչ խօսի, մինչև զգոյացուն պատմու-
թեն յայտնի կացուցանել. զի թէ էր միամօր ծնունդ

տան մեծատուն. թողեալ զմեծութիւն և զհարստանիս՝
կրեաց զաղքատութիւն կամաւոր և զօտարութիւն, և առ
գուրս ծնողաց ճգնեցաւ յանծանօթս. եւն. և զմինչ այլ
խնդրէ նորախնդիր քննիչն: Մինթէ կարէ՞ ոք ասել,
թէ ՚ի շարականէ եւստրատիոսեանց պարտ է հանել
զվարս նոց. և մինթէ ոչ պարտի ը հեղինակն ասել, թէ շա-
րականն հիմնեալ է ՚ի վր վարուց նոց, հաւաստարիմ
համարեալ զայն. ապա խոսքի պլինիոս, զի որով կամի
խախտել զպատմութիւն՝ նովին ամրապնդէ. զի թէ կա-
միցի, և եթէ ոչ, սբ յովսէփ երգաբանն արժանահաւ-
աստ գտանեալ զբուն վարս առն այ աղեքսիանոսի՝ ՚ի վր
նոյն պատմութե հիւսեաց զշարական իւր. որ է արդարև
լի ջերմեռանդն տաղացուածովք առ սբն աղեքսիանոս,
և առ որ ընծածինն պաշտպան նր:

Այլ պլինիոս խորով սուտ սկզբամբ, ՚ի թողուլ անդ-
գլոանական պատմութիւն հարազատ, և յառնուլ ՚ի ձեռս
զերգ յունաց եւեթ, անկանի և յայլ անհեթեթ վրի-
պակ: Սորախանոյ, զի յովսէփ երգաբանն ոչ յիշէ ըղ-
հայրապետն հռովմայ. ուր * գրիչն յունական վարուց
,, յետին անտեղուր բանդագուշէ (ասէ). այնչափ տգէտ
,, գոլով իրաց և ժամանակաց, զի ՚ի թարգմանութ սբյն
,, բերէ զընթացն զոռն հռովմայ՝ զտապէս սոսյոգ,
,, սառեղծեալ ՚ի խելաց իւրոց կմ յուղղոյ նոյնպիսի ա-
,, ռասպելաբանի ||. քանզի ընթերցեալ է պլինիոս ՚ի
յունարէնն այսպէս. * արքեպսն մարկիանոս զեկեղե-
,, ցական աթոռն հռովմայ վարող ||. զայս եդեալ՝ սկսա-
նի ծաղրել և այպանել ծանր ծանր բանիւք զյոյն պատ-
մաբանն, զի ոչ գիտէ ասէ՝ թէ չէք պապ հռովմայ մար-
կիանոս անուն: Իսկ ոչ գիտէ այրն կրիտիս, թէ ինքն
է այպանելի. որ ոչ կարաց իմանալ, թէ յօրինակէ իւր-
մէ անկեալ է շաղկապս և. և պարտ է ընթեռնուլ.
* արքեպսն մարկիանոս, և հայրապետն հռովմայ ||.
ստգ ուղիղ գրի հանդերձ նախադասութբ ՚ի թարգմա-
նութե մերում՝ որ ՚ի յունականէն. * թեքրն, և հայ-
,, րապետն հռովմայ, և երանելի արքեպսն մարկիա-
,, նոս ||. որոյ անուննն ուրոյն եւս յիշի յառաջադոյն, թէ
մարկիանոս եպսն արքի՝ մատուցանէր այն օր զպատա-
րագն, խմմ յառաջիկայութե թեքրին և հայրապետին
հռովմայ: Աստի ունիս իմանալ, թէ որպէս անխորհր-

գաւթար յարձակին այսպիսի քննիչք յըմբռնել զսուտս այլոց, եւ ոչ գիտեն՝ թէ ինքեանք ըմբռնին 'ի Ճշմարտութենէ, եւ ըմբերանին ։ Թող զայլ օրինակագիրս, զոր բերէ ինքն ալինիոս, թէ փոխանակ մարկիանոսի ոմանք ունին իննովկենտիոս ․ զոր եւ մեք չհաւանիմք ․ զի պարտ է պահել զմարկիանոս եպս, եւ զհայրապետն հռովմայ ուրոյն, որ էր մին 'ի յաջորդաց իննովկենտիոսի, զի բոնիփակիոս կմ կեղեստիանոս ։

Թողեալ եւ զայլ բանս ալինիոսի մեզ անպէտս՝ զարմանամ, զի զերկիւղածութիւն կարծէ ցուցանել նախ՝ այնու, զի ասէ՝ թէ թէպէտեւ ընդխմուէք ինչ նշմարեցին 'ի պատմական բանս, * այլ ոչ հետեւի ստուգիւ յայտ_
,, մանէ, թէ այս նմ բանք սուտ իցեն ․ քանզի կարէ
,, լինել, թէ պատմիչն կամեցեալ իցէ ինչ ինչ որոշ եւ 'ի
,, մասնաւորի նշանակել, եւ ինչ ինչ թողուլ խմանալ
,, ընթերցողաց ․ ոմն եւ այլուր յուշ արարաք, թէ հան_
,, դիպին այսպիսի իրք || ։

Երկր՝ այնու, զի ասէ, թէ այսպիսի բանք ոչ վնասեն պտուղ բարի հանելոյ 'ի վարուց սրբոցն ․ որպէս ասէ՝ 'ի յնեան ընկերութեն մերում յակոբ գերոստեդ սրբակրօն քահանայ՝ յալէքսիանոսի վարուց ընթերցմանէ շարժեցաւ 'ի կրօնաւորիլ, եւ եհաս 'ի մեծ կատարելութե ․ նոյնպէս եւ երանելին մաւրիտիոս հունգար 'ի կարգի քարոզչաց ։

Այլ ես յուշ առնեմ բոլլանդեան առն յիշել զհոգին բոլլանդայ, թէ որպէս վարի նա 'ի քննութե վարուց սրբոյն յովհաննու կամաւոր աղքատի, հիմն դնելով յօրինակէ սրբոյն ալէքսիանոսի՝ բանիւքս այսոքիւք ․ * Զար_
,, մացաւ հռովմ ընդ ալէքսիոս ․ որ առ ոտն կոխեալ զմե_
,, ծութիւս, արհամարհեալ զփառս եւ զպատիւ, թողեալ
,, զլծակիցն, կամաւորութ վտարանդի եղե ․ եւ ապա 'ի
,, տան հօր իւրոյ օտարական ցուցաւ, 'ի մեծ Ճոխութե
,, տնանկ կարօտեալ, նորահրաշ իմաստասիրութե գտակ,
,, 'ի սկզբան հինգերորդ դարուն քնի, յաւուրս ա ին_
,, նովկենտիոսի քհնյապետին, եւ ինքնակալացն ոնորիո_
,, սի եւ արկադէոսի ։ Զզուգահաւասար գործոց օրինակ
,, եռես՝ իբր յիսուն ամօք զկնի ( ը մեզ՝ 'ի նոյն իսկ
,, աւուրս ) կոստանդինուպօլիս՝ նոր հռովմ ||, 'ի յով_
հաննէս կամաւոր աղքատն ։

Իցէ՞ թէ ՚ի ձեռս նորին բոլլանդայ անկանէր և հատորն ալեքսիանոսի. զի յայնժամ իմանայր բոլլանդեանն այլնիւս զյարգ վարուց սրբոյն՝ առաւել քան զոր ծանեաւն : Եւ չասիցէ պինիոս, թէ վարք ալեքսիանոսի առաւել զարդարեալ է կսկծագին բանիւք ՚ի դրչաց. վասն զի զայդ իսկ տանէր վիճակ նր̃ գերագոյն քան զյովհաննու : Եւ արդարև՝ եթէ ծանօթ ոք մեզ առ մեօք կրէր զայսպիսի օտարուն և զկամաւոր աղքատուն, զի՞նչ ոչ ասէաք սրտցաւութ̃բ, և զի՞նչ ոչ գրէաք ՚ի նկարագրել զառաքինութիւն իւրացն՝ ը̃ կրից ծնողաց և ազգականաց եւն. այլ գործ է գտանել գրիչ հօգեսէր և արժանահաւատ, վայելչաբան և ճշմարտախօս միանգամայն. և պարզաբար՝ ը̃ ոճոյ կրիտիկաց խօսելով, բնական ոճով պատգապատում. և միթէ չէ՞ այսպիսի գրիչ վարուց ալեքսիանոսի առն այ̃. եթէ առ այլս պակասիցի այս կատարելութի̃, ՚ի մեր օրինակն՝ որ ՚ի հարանց վարս, տիրապէս տեսանի. ապա թէ ոչ՝ առ ը̃վայրաքնինս ունի ասել գրիչն. * փողս հարաք ձեզ, և ոչ կաքաւեցիք. „ ողբացաք, և ոչ լացիք ‖ : Երանի՛ որ լայ ը̃ ալեքսիանոսի և ը̃ ալեքսիանոսի առն այ̃. զի մի՛ յետոյ ՚ի զուր լացցէ տարօրինակ :

Ծանի՛ր և զայն, զի տօն սրբոյն ալեքսիանոսի՝ որ ՚ի սկզբան կատարիւր ՚ի վանս նր̃ եւեթ ՚ի հռովմ՝ յաւուր անդ վախճանի նր̃, յետ ժամանակաց տարածեցաւ յամ եկեղեցիս՝ ՚ի զանազան օր վերածել. իսկ ՚ի մեզ վայելչապէս կարգեցաւ զոյգ ը̃ նմանւոյ իւրում յովհաննու յայսմ միջոցի, եթէ՛ ը̃ յարմարութե̃ ճգնաւորական և միակեցական վարուց՝ մօտ ՚ի տօնն սբ̃ց հարց եգիպտացւոց, և եթէ ը̃ յարմարութե̃ անուանց սբ̃ց եղելոց յայսմ միջոցի՝ տառիւքս մ. յ. ն. որք են մնասեանք, յովհաննիսեանք, նիկողայոս. յակոբ՝ մծբ. եւն. վնզ իսկ արդեօք յառաջ դնի յովհաննէս, և ապա ալեքսիանոս. այլ յետագայ տօնն նախ ունի զբարթուղիմէոս իւրամբք, և ապա զգործակից նորա զյուդա. մանաւանդ զի գիւտ նշխարաց սրբոյն բարթուղիմէոսի եղև յաւուրս թարգմանչաց ՚ի դեկտեմբերի 12. վա̃ յայս միջոց կարգեցաւ հաստատուն տօն նր̃ ը̃ յուդայ թադէոսի :

ՎԱՐՔ

# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սր̃յն Բարթողիմէոսի առաքելոյ ։

Հ . դեկտ . 8 . և փետր . 25 ։ Տր̃էէլ . դեկտ . 19 ։ Յ . յունիս . 11 ։ Լ . օգոստ . 25 ։ Պ փետր և եթովպ . յունիսի 18 . և նոյեմբ . 20 ։ Ղ՛ատինա . Ր . ճլէ = ճխէ ։ Բոլլանդեանն ատէլանէնգ . 'ի Է հատ . օգոստ . էջ . 7 = 108 ։ Խորէն . պատմ . և թղթ . առ սահակ արծր ունի . և այլք 'ի հնոց և 'ի նորոց ։ (1)



ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ հայր հոգևոր , և սկիզբն հաստատութ̃ե քրիստոնէական ճշմարտութ̃ե 'ի տունն արևելեան առհասարակ՝ ս̃բ առաքեալն Բարթողիմէոս ( որ և գրի բարդողոմէոս ) , էր մի յերկոտասանից ընտրելոց . Ո̃ յոլովիցն կարծեաց համարել նոյն ինքն Նաթանայէլ՝ որ 'ի կանայ գալիլեացւոց , վկայեալ 'ի Տ̃նէ , թէ ահա արդարև իէ̃լացի՝ յորում նենգութ̃ի ոչ գոյ ։ Արդ թէպէտև բազմապատիկ են պատմական աւանդութի̃ք առ իւրաքանչիւր ազինս յաղագս քարոզութ̃ե և կատարման սր̃յն բարթողիմէի , այլ առաւել անստգիւտ և ընդունելի գտանի՝ որ ինչ գտանի առ մեզ զսեպհական

ա-

առաքելոյ Քրիստոսի մերոյ 'ի հին ճառընտիրս , միաբան ընդ խորենացւոյն և այլոց պատմագրաց՝ ըստ օրինակիս ըստ այսմիկ ։

Յետ իջանելոյ հոգւոյն սրբոյ 'ի վերնատունն , յորժամ վիճակեցան առաքեալքն յազգս ազգս ընդ հանուր լեզուաց , և սփռեցան յաշխարհ ամենայն՝ քարոզել զբանն կենաց , և լուսաւորել ծննդեամբ որք աւազանին , գնաց և երանելի առաքեալն բարթողիմէոս առաջնորդութեամբ և վերակացութեամբ հոգւոյն սրբոյ 'ի վիճակ առաքելական ընտրութեան իւրոյ յարևելս կոյս՝ սկսեալ 'ի հայոց և 'ի մարաց և 'ի պարսից ըստ ամենայն պարթևաստան մինչև 'ի հնդիկս , ուղեկցութեամբ սրբոյն թովմայի առաքելոյ . և անդրէն դարձ արար քարոզութեամբ մինչև 'ի հայս ։

Արդ 'ի սկզբան քարոզութեան իւրոյ եղև մտանել նմա 'ի քաղաքն եդեմ կոչեցեալ մերձ 'ի սահմանս հնդկաց . և 'ի բաժանիլ 'ի նմանէ թովմայի՝ անցեալ բարթուղիմէայ ընդ չինամէջ քաղաքին՝ նստաւ առ աղբիւր մի , յորում ազդմունք դիւթականք և յայտնութիւնք դիւաց լինէին 'ի բաջաղինս պատիր խաբէութեան մոլար պաշտաման . և նուէրք և զոհք մատուչէին յանուն աղբերն , առասպելաբանելով հեթանոսաց՝ իբրև այն թէ ինքնիշխանութիւն ունիցի զեղխումն , և սնուցանողական զօրութեամբ իցէ մայր ամենայն բուսոց և տնկոց և սերմանց և ծառոց և ծաղկանց . և անուանէին զանուն աղբերն դուստր ներոսի ։

Եւ իբրև օր մի լինէր , յորում բազմութիւն քաղաքին հասանէր 'ի զոհել՝ հանդերձ մեծածախս

ծախ ընծայիւք, թարգման արձակեն դիւացն
ը ակն աղբերն՝ ՚ի վեր մղէին զջուրն պղպջա-
կաձև, և եռանդն հրոյ ցուցանէին սաստիկ
հնչմամբ հողմոյ. և յայն աւհաւրաց պակու-
ցեալ ամբոխին՝ կարգային առ աղբիւրն իբ-
րև առ ած բարերար և պարգևատու. և
ժխորեն հոլանեն արք և կանայք կայտռէին
խլրտէին ՚ի տղմուտ վայրս իբրև զզազրատե-
սիլ զեռունս ՚ի պատիւ աղբերն՝ պատրանօք
կեղծաւորութե դիւաց։

Իսկ որ առաքեալն կայր հիացեալ և զարմա-
ցեալ ը միտս իւր՝ ըմբռնեալ ՚ի տրտմութի
մեծ վն մոլորութե նց և աղտեղի գործոյն.
ապա դիմեաց երանելի առաքեալն ՚ի մէջ նց
՚ի վր աղբերն. և հանեալ զաղաբողն իւր՝
պարզեալ ձգեաց ըդէմ ջրոյն. և կարդաց
յանուն տն յի քի, և ասէ ՚ի ձայն մեծ. Ջուրս
այս ցամաքելով ցամաքեսցի, և մի ամենևին
կացցէ ունել ոյժ խոնաւութե։ Եւ առժա-
մայն ցամաքեցաւ վտակն յորդահոս ջրոյն,
և եղև իբրև զվէմ ապառաժ. և ձայն որոտ-
ման և փայլիւն կերպարանեն լուսոյ կորեաւ
և դադարեաց. մինչև ձիչ բառնալ դիւաց
մեծակական ողբովք, և ասել. ո՛վ յն նազով
բեցի մինչև յերբ շտապ տագնապի հասու-
ցանես ՚ի վր մեր, և յամենայն երկրէ հալա-
ծականս առնես զմեզ խաչիւ քով, և ՚ի ձեռն
աշակերտաց քոց։

Յայնժամ որ առաքեալն սաստեաց ՚ի նս, և
ասէ. ո՛վ պիղծք՝ դժնեայք և մարդատեացք՝
թշնամիք արդարութե, և վնպք մոլորութե,

ա

ահա հրամայեմ ձեզ յանուն տն մերոյ յի քի , մի կարիցէք մնալ 'ի տեղւոջս յայսմիկ . և իսկ և իսկ կորեան և ջնջեցան 'ի միջոյ , իբրև զմոմ՝ զի ոչ կարասցէ կալ առաջի հրոյ՝ այնպէս վատնեալ և պակասեալ ։ Զայն տեսեալ բազմակոյտ ամբոխին՝ անկան ահի մեծաւ առաջի նրյ առաքելոյն . և կէսք ընթացեալ շուրջ զկողմամբքն՝ հուչակէին զմեծ և զզարմանալի գործն՝ որ եղև 'ի ձեռն բարթուղիմեայ . և գային ամենեքեան 'ի տեսիլ սքանչելեացն . և տեսեալ զի աղբիւրն՝ որում 'ի բազում ժամանակաց հետէ ձօնէին , յական քթթել ցամաքեալ սպառեցաւ , յապուշ կրթէին ։

Այլ իբրև սկսան նեղել 'ի ծարաւոյ բազմութիւն քաղաքին , առեալ փիրղս 'ի ձեռս՝ կամէին արկանել 'ի վր առաքելոյն . և հարեալ քարամբք զմիմեանս սատակէին . և 'ի խուռն քարանց յանդուգն ձգելոց մեռան ոգիք իբրև երեսուն ։ Իսկ մերձեցեալ նր առաքեալն 'ի մեռեալսն՝ եդ ձեռն , և աղօթս արար 'ի վր նց . և ահա դարձան ոգիք նց 'ի նս , և կանգնեցան կացին կենդանիք ։ Զոր տեսեալ ամենեցուն՝ սքանչացան . և փութացեալ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ՝ բերէին զնեղեալս 'ի պէսպէս ախտից և 'ի ցաւոց , և զանդամալոյծս և զկոյրս և զկաղս և զլուսանոտս և զդիւահարս . և բժշկեաց նր առաքեալն զամենեսին յանուն տն ։ Իսկ սկսաւ այնուհետև քարոզել նց կարգաւ զաւետարանն մատթէոսի , զորոյ զօրինակն առեալ

էր

էր ԺԲ իւր . և լուեալ բազմութեանն՝ խնդութբ Ճ̄ունէին զքարոզութի ն̄ք աւետարանին :

Իսկ եկեալ ն̄ք առաքեալն յեզր քաղաքին 'ի տեղի մի դաշտական յապաւածուտ վայրս՝ եկաց յաղօթս, և գոհանայր զշնորհացն ք̄նի՝ որ եբաց զմիտս մարդկանն ընդունել զբանն կենաց . և արարեալ զնշան խաչին առաջի բազմութե̄՝ կարդաց 'ի ձայն մեծ . և անդէն ահեղ շարժմամբ պատառեցաւ տեղին, և բղխեաց նոր աղբիւր ջրոյ յորդահոս և քաղցրահամ վտակօք . և սկսան ուրախ լինել մարդիկն : Իսկ իջուցեալ զն̄ն 'ի ջուրն՝ մկրտեաց, և լուսաւորեաց հոգւով ս̄բվ . և կատարեալ զխորհրդական պատարագն՝ հաղորդեցոյց զն̄ն կենդանարար մարմնոյ և արեան որդւոյն ա̄յ . և հաստատեալ զն̄ն 'ի հաւատս ճշմարտութե̄՝ ձեռնադրեաց ն̄ց երիցունս 'ի սպանելոց անտի՝ որք կենդանացան :

Իսկ ինքն առաքեալն եկն 'ի կողմանս մարաց և եղիմացւոց . և անընդունակ եղեալ 'ի նոցանէ՝ ոչ կարաց անդ կատարել զօրութիս . բայց սակաւուց ոմանց քարոզեալ զաւետարանն մատթէոսեան՝ աշակերտեաց ըզնոսա . մինչև թողուլ ն̄ց զն̄մ ինչս Յ̄իս , և զհետ գնալ առաքելոյն՝ ուր և երթայցէ :

Իսկ անտի դարձեալ՝ եմուտ 'ի բուսոր քաղաք խորին ասորւոց՝ այն է կելեսիւրիա . և ահա բարձեալ տանէին 'ի թաղումն պատանի մի մեռեալ՝ որդի անդրոնիկոսի հազարապետին բուսորացւոց՝ երկոտասանամեայ , բազում լալականօք հանդերձ՝ որք կոծելով

մի

մրմնջէին և արտասուս յոյժ հեղուին ։ Յայնժամայն ընթացեալ առաքեալն ը՟ մէջ հրապարակին՝ ձգեաց զձեռն իւր ՚ի դագաղն , և ասէ . պատանի՛ դու քեզ ասեմ, արի՛ կա՛ց յանուն տ՟ն մերոյ յ՟ի ք՟ի ։ Եւ առ ժամայն կանգնեցաւ մեռեալն . և տեսանէր ա՟մ բազմութիւն , զի հուր ցոլացաւ ՚ի բերանոյ ն՟ր առաքելոյն, և եմուտ ՚ի բերան պատանւոյն . և այնպէս կենդանացաւ ։ Յայնժամ աղաղակեցին միաբան , և ասեն . ա՟ծ ո՟մն երևեցաւ ՚ի միջի մերում . և բուռն հարեալ երիտասարդայն զո՟ք առաքելոյն՝ բարձին ՚ի վ՟ր բազկաց իւրեանց . և այլքն զոհս և պատարագս փութացուցանէին մատուցանել նմա ։ Իսկ ն՟ր առաքեալն փախեաց ՚ի ձեռաց ն՟ց , և փախեաւ յամբոխէ անտի . աղաղակեաց և ասէ . ես ծառայ տ՟ն ամենակալի եմ, և որդւոյ ն՟ր յ՟ի ք՟ի , և հոգւոյն ս՟բյ , յորոյ անուն կենդանացաւ պատանիդ այդ մեռեալ . և առաքեցայ ես առ ձեզ՝ քարոզել զաւետարանն արքայութե՟ . զի ընկալեք ձեր զբանն կենաց՝ կեցջիք , և դարձջիք յը՟ունայն պաշտամանէդ ձերմէ՝ զոր պաշտէքդ առ տգիտութե՟ ձերոյ ։ Եւ մինչև յաւուրս երիս հազի՛ լռեցոյց զժողովուրդն ՚ի չզոհելոյ իւր . և քարոզել ծանոյց ն՟ց զմիայն ճշմարիտն ա՟ծ զարարիչն երկնի և երկրի ։

Յայնժամ հաւատաց հազարապետն՝ հայր մանկանն ա՟մ տամբ իւրով . և առեալ առաքելոյն՝ մկրտեաց զնոսա , և կոչեաց զանուն պատանւոյն յարուցելոյ մատթէոս ըստ անուան

ուսանողք յաւետարանչին ․ և գրեաց նոցա զմատ-
թէոսեան աւետարանն՝ զոր առեալ էր օժան-
դակ ՚ի քարոզութեան ․ և այս կամ յեղլով ՚ի
բարբառ երկրին ասորւոց, և կամ զի իմանայ-
յին և նոքա զեբրայական գրութիւն աւետարան-
չին՝ ոչինչ օտար յասորի բարբառոյ պաղես-
տինացւոց ։ Այլ յաւելան որ քան զոր հաւա-
տացեալք ՚ի տէր, մանաւանդ որոց տեսեալ
էր զյարութիւն պատանւոյն ․ և մկրտեցան յօ-
ժարութեամբ ՚ի ձեռն առաքելոյն ։

Այլ էին ՚ի քաղաքին յայնմիկ եօթն բագինք ․
և ՚ի նոսա կուռք ձուլածոյք և քանդակեալք
՚ի նմանութիւն մարդոյ՝ յանուն արեսի և արա-
մազդայ, յոսկւոյ և յարծաթոյ և ՚ի պղնձոյ ․
զորս հազարապետն ըստ հրամանի առաքելոյն
խորտակեալ կործանեաց, և բաշխեաց աղ-
քատաց ։ Այլ բազում այլ զօրութիւնս կատա-
րեաց անդ առաքեալն ՚ի վերայ հիւանդաց և
ամենայն ախտացելոց, և դևս բազումս եհան, և
արար հալածական ՚ի քաղաքէն յայտնի տե-
սողացն ։ Այլ ամս քանի մի արարեալ անդ,
և ուղղեալ սեզան՝ եթող զմի ոմն յաշակեր-
տացն՝ քահանայանալ նոցա ․ որ և զպատա-
նին մատթէոս արժանի արար ձեռնադրութեան
յամի ութուտասներորդի առաքելական քա-
րոզութեան իւրոյ ․ և պատանին իսկ կարծի լի-
նել յայնժամ ութ և տասն ամաց լցեալ հոգ-
ւով սրբով ։

Այլ եղև իբրև հաստատեաց առաքեալն բար-
թուղիմէոս զկողմանսն զայնոսիկ ՚ի հաւատս
կրօնից սրբութեան՝ ել գնաց յայն գերմանի-

կեց-

ու ս̃ջյն , և յանհերևութանալոյ յեղեսիոյ ։ Ոչինչ ը̃հաստ է յանհարազատ օրինակէ անտի արաբացւոց և օրինակն գտեալ 'ի Ծառընտ ․ Գ․ ․ ուր թէպէտև չկայ այն առասպել , բայց բովանդակ կարմունն է տխմարական ոճով և անշնորհ բանիւք պատուհասեալ 'ի վ̄ր հարազատ օրինակին ․ թող զի յետ ասելոյ՝ թէ էր յաւուրս ոսկեբերանի , փոխանակ գրելոյ զանուն արկադեայ արքայի , գրէ՝ հերակլեայ ։

Զայսոսիկ նշանակեցաք առ 'ի ցուցանել , թէ ո՞րչափ յայտնի է տարբերութի հարազատ և միջական և անհարազատ օրինակաց , նոյնպէս և քննութե պլինիոսի բոլլանդեան և այլոց կրիտիկաց՝ խառն է 'ի հարազատ և 'ի միջասահման և յանհարազատ ուղղագրութեց ․ մինչ զի որչափ և ուղղագրեն զսխալանս այլոց , նոյնչափ և ինքեանք ուղղագրութե կարօտին ․ զոր տացուք ձեռամբ շօշափել ։

Ուղիղ է նախ՝ պնդելն պլինիոսի և այլոց գիտնականաց, թէ ս̄ն աղէքսիանոս՝ որ և աղէքսիոս կմ աղէքսոս , էր հռովմայեցի , և ոչ կոստանդնուպօլսեցի , ո՞չ կամեցաւ երկբայել տիլեմոնտ բանախնդիրն , ըստ իմիք և բարեպորք համարձակախօսն ․ որոց ոչ ոք գտանի ձայնակից , բայց անպիտան օրինակն Ծ․ Գ․ ․ և այլ խառնաբնդոր գրիչք ոսկեփորիկ անուանեալ ժողովածու գրոց ․ զոր գտանեմք և 'ի Հ․ ըստ համառակ օրինակաց , այլ ոչ ըստ ընտրելագունից ․ զի ո̄ր իէլն թէպէտև հետևօղ միջին օրինակաց՝ պարզապէս հռովմայեցի դնէ ․ իսկ որք կոստանդնուպօլսեցի գրեցին՝ յայտ առնեն զնորութի իւրեանց , դնելով 'ի սաղմբոլ կմ 'ի ստամբոլ ․ որ է հռչչևն յետին դարուց ․ և այս մոլեալ է 'ի ռամկաց , որք առ մեզ իսկ տուն աղէքսիանոսի կոչեն զտեղի մի 'ի կէտիկ փաշայն կոստանդնուպօլսոյ , խառնելով ընդ նմանակցի ն̄ր յովհաննու կամաւոր աղքատի ։

Ուղիղ է ըստ նմին և յաղթահարելն պլինիոսի զտիլեմոնտ, որ անպատճառ կամեցաւ խարբալել զմիտս լսողաց տգիտաց՝ ասելով , թէ գուցէ յովհաննէս և աղէքսիանոս իցեն նոյն , զի կայ ասէ նմանութի 'ի վարս ն̄ց ։ Ընդդէմ որոյ յերկար ցուցանէ պլինիոս , թէ փոքր և թեթև է նմանութին ըստ կերպի կամաւոր աղքատութե և ըստ մերձաւորութե ժամանակին , ուր այլով ամ̄ք աննմանութի է 'ի պատմութեւս ն̄ց ծայրէ 'ի ծայր ․ * Եւ արդարև

,, (ասէ

,, (առէ 'ի վերջոյ) անյարիրս խօսի, որ ոք զերկուս սբս
,, չփոխէ վն նմանող լինելոյ նցա 'ի քաղաքավարուէ. զի
,, յոռեպէս լինէր չփոխել զսբն սեմէոն սալոնն, և
,, զսբն թէոդորոս սալոնն, և զսբն թովմաս սալոնն,
,, որ էր ժամանակակից սեմէոնի (աղօթաւ կծ յիմար
,, ձևացելոյ վասն քի). Թողից և զայլ բազում օրի-
,, նակս ||:

Ուղիղ է և հաստատեալն պլինիոսի ըստ ամ օրինակաց, թէ սբն աղէքսիանոս էր յաւուրս ոնորիոսի կայսեր և իննովկենտիոսի պապին 'ի սկիզբն Ե դարու. որպէս և խոստովանի է չորոշելն զօրոշ ժամանակ ծննդեան սբյն և փեսայուէ և վախճանին. զի ոչ միօրինակ գրի յամենեցունց տարեգրուէ այսց միջոցաց, այլ՝ ոմն յաւուրս ծննդեան, ոմն յաւուրս փեսայութե, և ոմն յաւուրս վախճանին յիշէ զանուն կայսերին և քահանայապետին. ոմն և ոմանք յայն ամ միջոցս յիշեն զնոյն անուանս:

Ուստի երևի չփոթ խօսել և ինքն պլինիոս. բայց պարտ է ասել անշփոթ և անաչառ խուզարկուե, թէ ծնունդ սբյն անկանի յառաջին ամս թգւրելոյ արկադեայ իբր զաւակից Բ մեծին թէոդոսի. և փեսայուին՝ որ ասի լինել 'ի ԺԵ ամաց հասակի, անկանի յառաջին ամս իննովկենտիոսի պապին՝ որ նստաւ յամի տն 402. այն ամ ութերորդ էր թգւրուէ երկուց եղբարց՝ արկադեայ և ոնորիոսի: Իսկ վախճան սբյն՝ եղև 'ի վերջին ամս ոնորիոսի կայսեր, որ թգւրեաց ամս ԻԸ, կմ ԻԹ, և մեռաւ յամի 424. յորում ժմկի մեռեալ էր 'ի վաղուց իննովկենտիոս. վսյ 'ի հարազատ օրինակս յիշի ոնորիոս 'ի փոխման սբյն, այլ ոչ յիշի անուն քհնյապետին. որ էր կամ վոնիփակիոս, և կմ կեղեստինոս՝ որ նստաւ յամի 423, Եւ ըստ այսմ պարտ է ընտրել զստոյգ կարծեցեալ օրինակս, որք ոչ միօրինակ ունին զամս պանդխտութե սբյն, և զամս կալոյ 'ի դուռն տան հօր իւրոյ. միայն ըստ ոմանց՝ աւելի քան զամս տասն պանդխտեցաւ, և նոյնչափ ևս 'ի դրան հօր իւրոյ. ըստ ոմ՝ ամս իբր ԺԷ աղքատութե կեցեալ. որ վրիպակաւ գրի արդեօք 'ի հարանց վարս ԺԷ: Այս ամ է ընդունելի մեզ և պլինիոսի և ամ ճշմարտասիրի:

Բայց չէ՛ մեզ ընդունելի, մանաւանդ թէ անտանելի իսկ է, նախ՝ այն եպերանք պլինիոսի, որով յայտնակի ընդդէմ

վարուց սորին 'ի պատճառս դաստառակին քնի՝ որ յիշի յոմ հարազատ օրինակս․ քանզի ասէ․ * Իբրաւամբք
,, կծանէ գալեսինիոս, թէ գրեալն յայս վարս վս պատ-
,, կերին առաքելոյ 'ի Քսէ ինքն մերձ առ աբգար, և
,, անյայտս ('ի գրոց) է համարելի ||․ վսյ և ոչ հաւա-
նի պլինիոս և նշանակել բարոնիոսի 'ի տարեգր․ յամի
ին 31 · զայն դաստառակ․ և ջանայ այլով միասամբ կու-
սակից իւր առնուլ զբարոնիոս՝ վս ասելոյ նր 'ի ծան․
վկ․ հա․ վս այսր վարուց, թէ * յիրս իրս ուղղագրե-
լի է ||: Եւ յայսպիսի պատճառանաց լցեալ պլինիոսի ոչ երկիւղածութ, այլ երկչոտութ յերեսաց այլոց ան-
դուռն բերանոց՝ ասէ, ես ոչ կամիմ խօսել 'ի բերանոյ իմմէ, այլ ասեմ՝ թէ կրիտիկաց ոչ են հաճոյ այսպիսի բանք կմ այսպիսի վարք: Տեսե՞ր, թէ ուստի՞ մեր խո-
տորին միոջ պլինիոսի և նմանեաց նր: Առ որս պլինին մեր այս է․ ոչ կարէ չկամութն իւրեանց խափանել զա-
ւանդութն ազգիս վս սր դաստառակին՝ առեալ 'ի գի-
ճանաց անտի եդեսիոյ ըստ խորենացւոյն, և պաշտեալ յոմ դարս․ և վկայեալ 'ի բազում մատենագրաց յու-
նաց, և հաստատեալ նաև 'ի վարուց սորին ալեքսիանո-
սի յոմ ազգաց՝ սկսեալ 'ի հռովմայեցւոց․ որ և ցարդ 'ի հռովմ պահեն զայն դաստառակ սբ, կմ գոնէ զնմա-
նութն նր․ և այսպէս ոչ եթէ պատմութն դաստառակին անընդունելի առնէ զվարս ալեքսիանոսի, այլ առաւել ընդունելի գոլ հաստատէ․ և անդրադարձեալ՝ վարք ա-
լեքսիանոսի է հաստատութն աւանդութն դաստառակին, և որ մեծն է՝ խորենացին, որ փոքր մի յետոյ էր քան զաւուրս ալեքսիանոսի, այսպէս գրէ․ Բ․ 32․ * Զայս
,, թուղթ երբեր անան սուրհանդակ աբգարու, ըստ որում
,, և զկենդանագրութն փրկչական պատկերին, որ կայ
,, յեդեսացւոց քաղաքին յուռհայ, մինչև ցայսօր ժա-
,, մանակի ||: Թո՛ղ գալեսինոս և պլինիոս և այլ երե-
կեան մարդիկ զինչ և կամին՝ քրթմնջեսցեն: Այլ ես զարմանամ, զի ինքն իսկ պլինիոս բերէ վկայութն յազգէն հայոց 'ի հաստատել, թէ արդարև սբն ալեքսիանոս բնակեցաւ յեդեսիա 'ի գաւթի եկեղեցւոյն․ որ վասն ասէ՝ զտեղի տաղաւարի սրյն զօր ոմ նկարկուէ պատ-
ուէն հայք․ այլ մեք յէս զարմանալի քննութիւն առն կրիտիկի հայեսցուք:

Նե-

Ներեսցուք պիներոսի, եթէ արժան իցէ ներել, զի թողեալ զօրինակս վարուց սրբյն զհինս՝ որ առ լատինս, և ոչ արժան համարեալ ապագրել զյունական օրինակ ինչ, շատացաւ ակրևաթափ և համառօտ օրինակաւ միով 'ի լատինացւոց՝ հանդերձ ռռանաւորաւ իւրք, և արարացի անհարազատ օրինակաւ. և գովեմք, զի 'ի յունաց ընտրեաց զերգաբանն զյովսէփ՝ որ 'ի Թ դարու. բայց ոչ կարեմք գովել, զի զյովսէփ արար փորձաքար իւրն ամ քննութեան իւրոց. ոչ զի զոր ինչ ոչ գտցէ յերգս նր՝ աննըունելի համարեսցի։ Նաւր զձև բանից պիներոսի՝ 'ի խօսելն զծնողաց սրբյն զեւփիմիանոսէ և զաղլայիդայ. * Յովսէփ երգաբանն, կմ այլ ոք համա-
„ նուն՝ զանուանս նց ոչ բացայայտէ. իբր զի կամ ոչ
„ եգիտ 'ի պատմութն և 'ի վարս անդ՝ յորմէ հիւսեաց
„ զիւր երգն, և կմ եթէ եգիտ անդ զնոսին, առուգին
„ ոչ հաւանեցաւ. ուստի գուցէ խնթալի կարեն լինել
„ անուանք եւփիմիանոսի և աղլայիսայ‖. և այսպէս ճիւր պղտոր արբեցուցեալ ընթերցողաց անձուանի և մատուցուր՝ սկսանի ստուգաբանել զանունս եւփիմիանոս յունարէն՝ բարեհամբաւ, զոր ոչ ոք անդիտանայ 'ի լեզուհագիտաց. և զաղլայիս՝ որ և գրի առէ աղլիս, կմ հաքլայիս կամ աղլահիս, պայծառ թարգմանէ. այլ եթէ գիտէր՝ թէ 'ի հայումս գրի ըստ յունաց աղլայիս, և ըստ հռովմայեցւոց ագիւղա կմ ագիւլա, զվերջինս զայս առաւել ընտրէր իրաւամբք ։

Դարձեալ տեսանէ պիներոս, զի յոյն երգաբանն ոչ յիշէ զծնողիւս կայսր և զիննամկենոնիոս պապ, և անդրէն զառածանի 'ի նոյն անձեռնարկելի ձեռնարկ, թէ ուրեմն տարակուսելի իւրն անուանքս. և ահա այսպիսեօք եզրակացուցանէ զայս ստութին, թէ բանք երգաբանին ոչ են նման վարուց սրբյն. արդ ուրեմն տկարանայ պատմութին վարուցս։ Եւ ո՞ 'ի ողիտաց անդամ ոչ գիտէ, թէ տաղասացք և երգիչք չարականաց ոչ են պատմաբան, այլ գովեստաբան. վասն եթէ գտցի 'ի նս նշմար ինչ համաձայն պատմութեց, շատ է 'ի հաստատութին պատմական. արդ հարցանեմք զպիներոս, խօսի՞ արդեօք յովսէփ երգաբանն ինչ ինչ նման վարուց սրբյն. առաջքէն այնչափ ինչ խօսի, մինչև զգոյացուն պատմութեն յայտնի կացուցանել. զի թէ էր միամօր ծնունդ-

սան մեծատան. թողեալ զմեծութիւն և զհարստանիս՝ կրեաց զաղքատութիւն կամաւոր և զօտարութիւն, և սա գուրս ծնողաց ճգնեցաւ յանծանօթս. եւն. և զի՞նչ այլ խնդրէ նանրախնդիր քննիչն: Միթէ կարէ՞ ոք ասել, թէ 'ի շարականէ եւստրատիոսեանց պարտ է հանել զվարս նց̃. և միթէ ոչ պարտի ե̃ հկ̃կն ասել, թէ շարականն հիմնեալ է 'ի վ̃ր վարուց նց̃, հաւատարիմ համարեալ զայն. ապա խաբի պլինիոս, զի որով կամի խախտել զպատմութիւն՝ նովին ամրապնդէ. զի թէ՛ կամիցի, և եթէ ոչ, սե̃ յովսէփ երգաբանն արժանահաւատ գտանել զբուն վարս սան ս̃յ ալեքսիանոսի՝ 'ի վ̃ր նոյն պատմութե̃ հիւսեաց զշարական իւր. որ է արդարելի ջերմեռանդն տաղացուածովք առ ս̃րն ալեքսիանոս.

և առ ոք ծածկինն պաշտպան նր̃:

Այլ պլինիոս իւրով սուտ սկզբամբ, 'ի թողուլ անգգլուխական պատմութիւն հարազատ, և յառնուլ 'ի ձեռս զերգ յունաց եւեթ, անկանի և յայլ անհեթեթ վրիպակ: Յերախմանս, զի յովսէփ երգաբանն ոչ յիշէ ըղհայրապետն հռովմայ. ուր * գրիչն յունական վարուց
,, յետին անուղղութ̃ բանդագուշէ (ասէ), այնչափ ագետ
,, գոլով իրաց և ժամանակաց, զի 'ի թաղումն ս̃ր̃յն
,, բերէ զք̃հնյապետ զոմ̃ն հռովմայ՝ զոտապէս սուտյօդ,
,, սուեղծեալ 'ի խելաց իւրոց կմ̃ յուղղոյ նոյնպիսի ս-
,, ուտապէլաբանի ||. քանզի ընթերցեալ է պլինիոս 'ի յունարէնն այսպէս. * արքեպս̃ն մարկիանոս զեկեղե-
,, ցական աթոռն հռովմայ վարօղ ||. զայս եդեալ՝ սկսանի ծաղրել և այպանել ծանր ծանր բանիւք զայն պատմաբանն, զի ոչ գիտէ ասէ՝ թէ չէք պապ հռովմայ մարկիանոս անուն: Եւ ոչ գիտէ այրն կրիտիս, թէ ինքն է այպանելի. որ ոչ կարաց իմանալ, թէ յօրինակէ իւրմէ անկեալ է շաղկապս և. և պարտ է ընթեռնուլ. * արքեպսն մարկիանոս, և հայրապետն հռովմայ ||. այդ ուղիղ գրի հանդերձ նախադասութ̃ 'ի թարգմանութե̃ մերում՝ որ 'ի յունականէն. * թգ̃րն, և հայ-
,, րապետն հռովմայ, և երանելի արքեպս̃ն մարկիա-
,, նոս ||. որոյ անուանն ուրոյն եւս յիշի յառաջագոյն, թէ մարկիանոս եպս̃ն արչի՝ մատուցանէր այն օր զպատարագն, իմա՝ յառաջիկայութե̃ թգ̃րին և հայրապետին հռովմայ: Աստի ուսնիս իմանալ, թէ որպէս անխորհը-

դաւթար յարձակեին այսպիսի քննիչք յըմբռնել զուսուս այլոց, և ոչ գիտեն՝ թէ ինքեանք ըմբռնին 'ի Ճշմարտութեն, և ըմբերանեն։ Թող զայլ օրինակագիրս, զոր բերէ ինքն պլինիոս, թէ փոխանակ մարկիանոսի ամանք ունին իննովկենտիոս. զոր և մեք չժունիմք. զի պարտ է պահել զմարկիանոս եպս, և զհայրապետն հռովմայ ուրոյն, որ էր մին 'ի յաջորդաց իննովկենտիոսի, ցր վոնիփակիոս կմ կեղեստինոս:

Թողեալ և զայլ բանս պլինիոսի մեզ անպէտս՝ զարմանամ, զի զերկիւղածութն կարծէ ցուցանել նախ՝ այնու, զի ասէ՝ թէ թէպէտև ժդխմուէք ինչ նշմարեսցին 'ի պատմական բանս, * այլ ոչ հետևի ստուգիւ յայտ-
,, մանէ, թէ այս ամ բանք սուտ իցեն. քանզի կարէ
,, լինել, թէ պատմիչն կամեցեալ իցէ ինչ ինչ որոշ և 'ի
,, մասնաւորի նշանակել, և ինչ ինչ թողուլ իմանալ
,, ընթերցողաց. ոմ և այլուր յուշ արարաք, թէ հան-
,, դիպին այսպիսի իրք ||:

Երկրդ՝ այնու, զի ասէ, թէ այսպիսի բանք ոչ հասեն պտուղ բարի հանեալ 'ի վարուց սբյն. որպս ասէ՝ 'ի յնեան ընկերութն մերում յակոբ գերտուդ սրբակրօն քահանայ՝ յալեքսիանոսի վարուց ընթերցմանէ շարժեցաւ 'ի կրօնաւորել, և եհաս 'ի մեծ կատարելութե. նոյնպէս և երանելին մուրիտիոս հունգար 'ի կարգի քարոզչաց:

Այլ ես յուշ առնեմ բոլլանդեան առն յիշել զհոգին բոլլանդայ, թէ որպէս վարք նա 'ի քննութե վարուց սբյն յովհաննու կամաւոր աղքատի, հիմն դնելով յօրինակէ սբյն աղեքսիանոսի՝ բանիւքս այսոքիւք. * Զար-
,, մացաւ հռովմ ըն աղեքսիոս. որ առ տան կոխել զմե-
,, ծութս, արհամարհեալ զփառս և զպատիւ, թողեալ
,, զըծակիցն, կամաւորութ փառաբանդի եղև. և ապա 'ի
,, տան հօր իւրոյ օտարական ցուցաւ, 'ի մեծ Ճոխութե
,, անանկ կարօտեալ, նորահրաշ իմաստասիրութե զօտակ,
,, 'ի սկզբան հինգերորդ դարուն քսի, յաւուրս ու ին-
,, նովկենտիոսի քհնյապետին, և ինքնակալացն ոնորիո-
,, սի և արկադէոսի: Զզուգահաւասար գոգցես օրինակ
,, եուես՝ իբր յիսուն ամօք զկնի ( ըն մեզ՝ 'ի նոյն իսկ
,, աւուրս ) կոստանդինուպօլիս՝ նոր հռովմ ||, 'ի յով-
հաննէս կամաւոր աղքատն:

Իցէ՞ թէ 'ի ձեռս նորին բոլլանդեայ անկանէր և հատորն ալեքսիանոսի. զի յայնժամ խնայր բոլլանդեանն պինիոս զայդ վարուցս սբյն' առաւել քան զոր ծանեաւն : Եւ չասիցէ պինիոս, թէ վարք ալեքսիանոսի առաւել զարդարեալ է կսկծագին բանիւք 'ի գրչաց. վասն զի զայդ իսկ տանէր վիճակ նր գերագոյն քան զյովհաննու : Եւ արդարև' եթէ ծանօթ ոք մեզ առ մեօք կրէր զայսպիսի ստորութիւն և զկամաւոր աղքատութիւն, զի՞նչ ոչ ասէաք սրտցաւութեամբ, և զի՞նչ ոչ գրէաք 'ի նկարագրել զստուգութիւն իւրացն' ընդ կրից ծնողաց և ազգականաց նն. այլ գործ է դտանել գրիչ հոգեսէր և արժանահաւատ, վայելչաբան և ճշմարտախօս միանգամայն. և պարզաբար' ընդ ոճոյ կրիտիկայց խօսելով, բնական ոճով ստուգապատում. և մի թէ չէ՞ այսպիսի գրիչ վարուց ալեքսիանոսի առն այ. եթէ առ այլս պակասիցի այս կատարելութիւն, 'ի մեր օրինակն' որ 'ի հարանց վարս, տերապէս տեսանի. ապա թէ ոչ' առ ընդվայրաքննինս ունի ասել գրիչն. * փողս հարաք ձեզ, և ոչ կաքաւեցիք. „ ողբացաք, և ոչ լացիք ‖ : Երանի՜ որ լայ ընդ ալեքսիանոսի և ընդ ալեքսիանոսի առն այ. զի մի՛ յետոյ 'ի զուր լացցէ տարօրինակ :

Ծանի՛ր և զայն, զի տօն սբյն ալեքսիանոսի' որ 'ի սկզբան կատարիւր 'ի վանս նր ևեթ 'ի հռովմ' յաւուր անդ վախճանի նր, յետ ժամանակաց տարածեցաւ յամ եկեղեցիս' 'ի զանազան օր վերածել. իսկ 'ի մեզ վայելչապէս կարգեցաւ զոյգ ընդ նմանւոյ իւրում յովհաննու յայսմ միջոցի, եթէ ընդ յարմարութեն ճգնաւորական և միակեցական վարուց' մօտ 'ի տօնն սբց հարց եգիպտացւոց, և եթէ ընդ յարմարութն անուանց սբց եղելոց յայսմ միջոցի' տառիւքս մ. յ. ն. զր են մնասեանք, յովհաննիսեանք, նիկողայոս. յակոբ' մծբ. ևն. վնկ իսկ արդեօք յառաջ դնի յովհաննէս, և ապա ալեքսիանոս. այլ յետադայ տօնն նախ ունի զբարթուղիմէոս իւրաւամիքք, և ապա զգործակից նորա պյուդա. մանաւանդ զի դիւտ նշխարաց սբյն բարթուղիմէոսի եղե յաւուրս թարգմանչաց 'ի դեկտեմբերի 12. վնյ յայս միջոց կարգեցաւ հաստատութե տօն նր ընդ յուդայ թադէոսի :

ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բարթուղիմէոսի առաքելոյ ։

Հ · գերկա · 8 · և փետր · 25 ։ Տօնէլ · գերկա · 19 ։ Յ · յաւնիս · 11 ։ Լ · օգոստ · 25 ։ Պ փոխ և եթովպ · յաւնիսի 18 · և նոյեմբ · 20 ։ Ղաւբին · Բ · ճղէ = ճխէ ։ Բուլլանդեանն ասելովէնգ · ’ի Է հար · օգոստ · էջ · 7 = 108 ։ Խորէն · պատմ · և թղթ · առ սահակ արծր անի · և այլք ’ի հնոց և ’ի նորոց ։ (1)



ԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ հայր հոգևոր , և սկիզբն հաս-տատութե քնական ճշմարտութե ’ի տունն արևելեան առհասարակ՝ նք առաքեալն Բարթուղիմէոս ( որ և գրի բարդողոմէոս ) , էր մի յերկոտասանից ընտրելոց ։ Ըստ յոլովից կարծեաց համարեն նոյն ինքն նաթանայել՝ որ ’ի կանայ գալիլեացւոց , վկայեալ ’ի տնէ , թէ ահա արդարև իսրայելացի՝ յորում նենգութի ոչ գոյ ։ Արդ թէպէտև բազմապատիկ են պատմական աւանդութիք առ իւրաքանչիւր ազինս յաղագս քարոզութե և կատարման սբյն բարթուղիմէի , այլ առաւել անստգիւտ և ընդունելի դատանի՝ որ ինչ դատանի առ մեր զսեպհական ա-

առաքելոյ Տեառն մերոյ 'ի հին Ճառընտիրս , միաբան ընդ Խորենացւոյն և այլոց պատմա-

գրաց՝ ըստ օրինակիս ըստ այսմիկ ։

Յետ իջանելոյ հոգւոյն սրբոյ 'ի վերնատունն , յորժամ վիճակեցան առաքեալքն յազգս ազգս ընդհանուր լեզուաց , և սփռեցան յաշխարհ ամենայն՝ քարոզել զբանն կենաց , և լուսաւորել ծննդեամբ 'ոք աւազանին , գնաց և երանելի առաքեալն Բարթողիմէոս առաջնորդութեամբ և վերակացութեամբ հոգւոյն սրբոյ 'ի վիճակ առաքելական ընտրութեան իւրոյ յարևելս կոյս՝ սկսեալ 'ի Հայոց և 'ի Մարաց և 'ի Պարսից ըստ ամենայն Պարթևաստան մինչև 'ի Հնդիկս , ուղեկցութեամբ սրբոյն Թովմայի առաքելոյ . և անդրէն դարձ արար քարոզութեամբ մինչև 'ի Հայս ։

Արդ 'ի սկզբան քարոզութեան իւրոյ եղև մտանել նմա 'ի քաղաքն Եդեմ կոչեցեալ մերձ 'ի սահմանս Հնդկաց . և 'ի բաժանիլ 'ի նմանէ Թովմայի՝ անցեալ Բարթուղիմեայ ըստ շինամէջ քաղաքին՝ նստաւ առ աղբիւր մի , յորում ազդմունք դիւթական և յայտնութիւնք դիւաց լինէին 'ի բաջաղանս պատիր խաբէութեան մոլար պաշտաման . և նուէրք և զոհք մատչէին յանուն աղբերն , առասպելաբանելով հեթանոսաց՝ իբրև այն թէ ինքնիշխանութեամբ ունիցի զբղխումն , և սնուցանողական զօրութեամբ իցէ մայր ամենայն բուսոց և տնկոց և սերմանց և ծառոց և ծաղկանց . և անուանէին

զանուն աղբերն դուստր Նեղոսի ։

Իսկ իբրև օր մի լինէր , յորում բազմութիւն քաղաքին հասանէր 'ի զոհել՝ հանդերձ մեծա-

ծախ

ծախ ընծայիւք, բարբառ արձակէր դիւացն
ը̅ ակն աղբերն՝ 'ի վեր մղէին զջուրն պղպջա-
կաձև, և եռանդն հրոյ ցուցանէին սաստիկ
հնչմամբ հողմոյ. և յայն արհաւրաց պակու-
ցեալ ամբոխին՝ կարդային առ աղբիւրն իբ-
րև առ ա͞ծ բարերար և պարգևատու. և
ժխորել հոլոնել արք և կանայք կայտռէին
խլրտէին 'ի տղմուտ վայրս իբրև զզազրատե-
սիլ զեռունս 'ի պատիւ աղբերն՝ պատրանօք
կեղծաւորութե͞ն դիւաց :

Իսկ ս͞բ առաքեալն կայր հիացեալ և զարմա-
ցեալ ը̅ միտս իւր՝ ըմբռնեալ 'ի տրտմութե͞ն
մե͞ծ վ͞ն մոլորութե͞ն ն͞ց և աղտեղի գործոյն.
ապա դիմեաց երանելին առաքեալն 'ի մէջ ն͞ց
'ի վ͞ր աղբերն. և հանեալ զաղաբողն իւր՝
պարզեալ ձգեաց ը̅դէմ ջրոյն. և կարդաց
յանուն տ͞ն յ͞ի ք͞ի, և ասէ 'ի ձայն մեծ. ջուրս
այս ցամաքելով ցամաքեսցի, և մի ամենևին
կացցէ ունել այժ խոնաւութե͞ն : Իսկ առժա-
մայն ցամաքեցաւ վտակն յորդահոս ջրոյն,
և եղև իբրև զվէմ ապառաժ. և ձայն որոտ-
ման և փոյլիւն կերպարանէր լուսոյ կորեաւ
և դադարեաց. մինչև ձիչ բառնալ դիւաց
մեծականկան ողբովք, և ասել. ով յ͞ս նազով-
րեցի մինչև յե՞րբ շտապ տագնապի հասու-
ցանես 'ի վ͞ր մեր, և յամենայն երկրէ հալա-
ծական առնես զմեզ խաչիւ քով, և 'ի ձեռն
աշակերտաց քոց :

Յայնժամ ս͞բ առաքեալն սաստեաց 'ի ն͞ս, և
ասէ. ով պիղծք՝ դժնեայք և մարդատեացք՝
թշնամիք արդարութե͞ն, և վ͞րպք մոլորութե͞ն,

ա

ահա հրամայեմ ձեզ յանուն տն մերոյ յի քի , մի կարիցէք մնալ 'ի տեղւոջս յայսմիկ . և իսկ և իսկ կորեան և ջնջեցան 'ի միջոյ , իբրև զմոմ՝ զի ոչ կարասցէ կալ առաջի հրոյ՝ այնպէս փախնեալ և պակասեալ ։ Զայն տեսեալ բազմակոյտ ամբոխին՝ անկան ահիւ մեծաւ առաջի նըյ առաքելոյն . և կէսք ընթացեալ շուրջ զկողմամբքն՝ հռչակէին զմեծ և զզարմանալի գործն՝ որ եղև 'ի ձեռն բարթուղիմեայ . և գային ամենեքեան 'ի տեսիլ սքանչելեացն . և տեսեալ զի աղբիւրն՝ որում 'ի բազում ժամանակաց հետէ ձօնէին , յական քթթել ցամաքեալ սպառեցաւ , յապուշ կրթէին ։

Այլ իբրև սկսան նեղիլ 'ի ծարաւոյ բազմութի քաղաքին , առեալ փիրգս 'ի ձեռս՝ կամէին արկանել 'ի վր առաքելոյն . և հարեալ քարամբք զմիմեանս սատակէին . և 'ի խուռն քարանց յանդուգն ձգելոց մեռան ոգիք իբրև երեսուն ։ Եւ մերձեցեալ նր առաքեալն 'ի մեռեալսն՝ եդ ձեռն , և աղօթս արար 'ի վր նց . և ահա դարձան ոգիք նց 'ի նս , և կանգնեցան կացին կենդանիք ։ Զոր տեսեալ ամենեցուն՝ սքանչացան . և փութացեալ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ՝ բերէին զնեղեալս 'ի պէսպէս ախտից և 'ի ցաւոց , և զանդամալոյծս և զկոյրս և զկաղս և զլուսնոտս և զայսահարս . և բժշկեաց նր առաքեալն զամենեսին յանուն տն ։ Եւ սկսաւ այնուհետև քարոզել նց կարգաւ զաւետարանն մատթէոսի , զորոյ զօրինակն առեալ

էր

էր ը̃ իւր ․ և լուծեալ բազմութենն՝ խնդութ̃
ը̃ունէին զքարոզութի̃ն նր̃ աւետարանին ։
Եւ եկեալ նր̃ առաքեալն յեզր քաղաքին ՚ի
տեղի մի դաշտական յապառաժուտ վայրս՝
եկաց յաղօթս , և գոհանայր զշնորհացն քր̃ի՝
որ եբաց զմիտս մարդկանն ընդունել զբանն
կենաց ․ և արարեալ զնշան խաչին առաջի
բազմութե̃՝ կարդաց ՚ի ձայն մեծ ․ և անդէն
ահեղ շարժմամբ պատառեցաւ տեղին , և
բղխեաց նոր աղբիւր ջրոյ յորդահոս և քաղց
րահամ վտակօք ․ և սկսան ուրախ լինել մար
դիկն ։ Եւ իջուցեալ զն̃ ՚ի ջուրն՝ մկրտեաց ,
և լուսաւորեաց հոգւով սր̃վ ․ և կատարեալ
զխորհրդական պատարագն՝ հաղորդեցոյց
զն̃ կենդանարար մարմնոյ և արեան որդւոյն
ա̃յ ․ և հաստատեալ զն̃ ՚ի հաւատս ճշմար
տութե̃՝ ձեռնադրեաց նց̃ երիցունս ՚ի սպա
նելոց անտի՝ որք կենդանացան ։
Եւ ինքն առաքեալն եկն ՚ի կողմանս մա
րաց և եղիմացւոց ․ և անընդունակ եղեալ
՚ի նոցանէ՝ ոչ կարայ անդ կատարել զօրու
թիս ․ բայց սակաւուց ոմանց քարոզեալ զա
ւետարանն մատթէոսեան՝ աշակերտեաց ըզ
նոսա ․ մինչև թողուլ նց̃ զա̃մ ինչս Յի̃ս , և
զհետ գնալ առաքելոյն՝ ու̃ր և երթայցէ ։
Եւ անտի դարձեալ՝ եմուտ ՚ի բուստր քա
ղաք խորին ասորւոց՝ այն է կելեսիւրիա ․ և
ահա բարձեալ տանէին ՚ի թաղումն պատա
նի մի մեռեալ՝ որդի անդրոնիկոսի հազարա
պետին բուստրացւոց՝ երկոտասանամեայ ,
բազում լալականօք հանդերձ՝ որք կոծելով
մե

մրմնջէին և արտասուս յոյժ հեղուին ։ Յորժա-
ժամայն ընթացեալ առաքեալն Տր մէջ հրա-
պարակին՝ ձգեաց զձեռն իւր ՚ի դագաղն ,
և ասէ . պատանի՛ դու քեզ ասեմ, արի՛ կա՛ց
յանուն Տն մերոյ յի քի ։ Եւ առժամայն
կանգնեցաւ մեռեալն . և տեսանէր ամ բազ-
մութին , զի հուր ցոլացաւ ՚ի բերանոյ սր ա-
ռաքելոյն, և եմուտ ՚ի բերան պատանւոյն .
և այնպէս կենդանացաւ ։ Յայնժամ աղա-
ղակեցին միաբան , և ասեն . ած ոմն երևե-
ցաւ ՚ի միջի մերում . և բուռն հարեալ երի-
տասարդայն զսբյ առաքելոյն՝ բարձին ՚ի վր
բազկաց իւրեանց . և այլքն զոհս և պատա-
րագս փութացուցանէին մատուցանել նմա ։
Իսկ սր առաքեալն վազեաց ՚ի ձեռաց նց , և
փախեաւ յամբոխէ անտի . աղաղակեաց և
ասէ . ես ծառայ Տն անմահականի եմ, և որդ-
ւոյ նր յի քի , և հոգւոյն սրյ , յորոյ անուն
կենդանացաւ պատանիդ այդ մեռեալ . և
առաքեցայ ես առ ձեզ՝ քարոզել զաւետա-
րանն արքայութեն . զի ընկալեալ ձեր զբանն
կենաց՝ կեցջիք , և դարձջիք յընունայն պաշ-
տամանէդ ձերմէ՝ զոր պաշտէք առ ագի-
տութե ձերոյ ։ Եւ մինչև յաւուրս երիս հա-
զիւ՛ լռեցոյց զժողովուրդն ՚ի զոհելոյ իւր .
և քարոզել ծանոյց նց զմիայն ճշմարիտն ած
զարարիչն երկնի և երկրի ։
Յայնժամ հաւատաց հազարապետն՝ հայր
մանկանն ամ տամբ իւրով . և առեալ առա-
քելոյն՝ մկրտեաց զնոսա , և կոչեաց զանուն
պատանւոյն յարուցելոյ մատթէոս ըստ ան-
ուան

ոհաննէսյ աւետարանչին . և գրեաց նմա զմատ-
թէոսեան աւետարանն՝ զոր առեալ էր օժան-
դակ 'ի քարոզութեան . և այս կամ յեղլով 'ի
բարբառ երկրին առուց , և կամ զի իմանայ-
ին և նք զեբրայական գրութեն աւետարան-
չին՝ ոչինչ օտար յասորի բարբառոյ պաղես-
տինացւոց ։ Եւ յաւելան օր քան զօր հաւա-
տացեալքն 'ի տր , մանաւանդ որոց տեսեալ
էր զյարութեն պատանւոյն . և մկրտեցան յօ-
ժարութբ 'ի ձն առաքելոյն ։
Եւ էին 'ի քաղաքին յայնմիկ եօթն բագինք .
և 'ի նոսա կուռք ձուլածոյք և քանդակեալք
'ի նմանութի մարդոյ՝ յանուն արեսի և արա-
մազդայ , յոսկւոյ և յարծաթոյ և 'ի պղնձոյ .
զորս հազարապետն ըստ հրամանի առաքելոյն
խորտակեալ կործանեաց , և բաշխեաց աղ-
քատաց ։ Եւ բազում այլ զօրութիւս կատա-
րեաց անդ առաքեալն 'ի վր հիւանդաց և
ամն ախտացելոց , և դևս բազումս եհան , և
արար հալածական 'ի քաղաքէն յայտնի տե-
սողացն ։ Եւ ամս քանի մի արարեալ անդ ,
և ուղղեալ սեղան՝ եթող զմի ումն յաշակեր-
տացն՝ քահանայանալ նմ . ոմ և զպատա-
նին մատթէոս արժանի արար ձեռնադրութե
յամի ութուտասներորդի առաքելական քա-
րոզութեն իւրոյ . և պատանին իսկ կարծի լի-
նել յայնժամ ութ և տասն ամաց լցեալ հոգ-
ւով սբվ ։
Եւ եղև իբրև հաստատեաց առաքեալն բար-
թուղիմէոս զկողմանսն զայնոսիկ 'ի հաւատս
կրօնից սրբութե՝ եւ գնաց յերն գերմանի-
կեց-

կեցուցող քս է ամն կրմանաց . և 'ի մտանել նր
անդր՝ ել համբաւ զնմանէ ըն ամ գաւառն
վն բազմութեն նշանաց և արուեստից , որք
կատարէին 'ի ձեռն նր առաքելոյն . և օր-
ըստօրէ բերէին առ նա զամ ախտաժէտս , կմ
դնէին յանդս ճանապարհին . և ամենեքին
բժշկէին : Եւ եղև իբրև լուաւ թգր նոցա
զլուր անչափ սքանչելեաց նր , խանդացաւ
յոյժ՝ ոչ թէ յինքն արկանէ զժողովուրդն .
և առաքեաց զծառայս իւր , կալաւ և եդ 'ի
բանտի : Եւ յետ աւուրց հնգից նստաւ յա-
տենի հանդերձ մեծամեծօք իւրովք և գլխա-
ւոր իշխանօք գերմանիկեցւոց . և հրամայ-
եաց ածել զնա : Իբրև չոգան 'ի բանտն ,
գտին բազմութիւն շուրջ փակեալ զտեղեօքն .
և լոյս սաստիկ ծագեալ արտաքոյ բանտին
իբրև զարեգական 'ի միջօրէի . և ահ կա-
լաւ զարսն , և ոչ իշխեալ տանել զնա յա-
տեան 'ի տեղի խոշտանգանաց , դարձան ան-
դրէն և պատմեցին թգրին և որոց ընդ նմա
զմեծամեծ սքանչելիսն՝ զոր տեսին :

Յայնժամ ցասմամբ մեծաւ հրամանետ թա-
գաւորն իւրովքն խորհրդակցօք՝ հրկէզ առ-
նել զբանտն , և ըն նմին այրել զառաքեալն .
իսկ նա աղօթս առնէր զամ աւուրս 'ի բան-
տին , զի գթացեալ ած յարարածս իւր՝ տա-
ցէ նց դառնալ 'ի մոլորութէ անտի իւրեանց :
Եւ ահա մինչդեռ ատեանն չարիս խորհէր
զսրբյն , եղև յանկարծակի ահեղ որոտումն
և ձայթումն յամպոց հրացան փայլատակ-
մամբք , և հարան կուրութբ , և անկան յեր-

կէր թագաւորն և իշխանք իւր , և յապուշ կրթեցան միտք նց՟ , և եղեն իբրև յանգգայս յանհնարին հարուածոց ։ Եւ բացաւ ինք-նին դուռն բանտին . և որք առաքեալն ելեալ արտաքս՝ եկն ետես զն՟ա , և գթացեալ եդ ձեռն ՚ի վ՟ր միոյ միոյ ՚ի նոցանէ . և կազդու-րեցան կացին ՚ի վ՟ր ոտից իւրեանց , և միտք իւրեանց դարձան ՚ի ն՟ս . և խնդրէին ՚ի ս՟րբյն գտանել ողորմութի ՚ի տ՟նէ ա՟յ ՚ի ձեռն ն՟ր . զի գիտացին եթէ առաքեալ է ա՟յ , և վ՟ն ն՟ր հասին այն հարուածք ՚ի վ՟ր նց՟ ։

Նաև ս՟րբն ա՟յ ասէ . որոց բաց են աչք մարմ-նոյս , զլոյս Յի՟ս միայն տեսանեն , այլ ոչ զլոյսն Ճշմարիտ՝ որ լուսաւորէ զոգիս մարդ-կան . արդ եթէ հաւանիք բանից իմոց , և հաւատասջիք քարոզութե աւետարանին փա-ռաց միածնի որդւոյն ա՟յ , զոր ես ձեզ աւե-տարանեմ , ընդունիջիք զկատարեալ բժշկութի հարուածոցդ , զոր հայցէք ՚ի տ՟նէ ՚ի ձեռն իմոյ բարեխօսութե . և կեցցեն անձինք ձեր , և լինիջիք ժառանգորդք անստուեր լուսոյն և անանց կենացն յաւիտենից ։ Պ՟խնի ետուն և ասեն . հաւատամք յա՟ծն քո՝ յոր դու հա-ւատացեալ պատմես մեզ . միայն կեցցեն ան-ձինք մեր , և լուսաւորեսցես զմեզ ։

Եւ առաքեալն՝ ո՟պ յա՟մ տեղիս , նոյնպէս և անդ քարոզեաց զաւետարանն մատթէոսի , ը՟ն նմին և զմարգարէութին եսայեայ , մեկ-նելով նոցա զձառս խորինս և զառակս գրոց ս՟րց , և յայտ առնելով՝ թէ ՚ի ձեռն մկրտու-թե լինի նց՟ փրկութի և բժշկութի հոգւոց

և մտրմնոց ։ Այլ անդէն ստիպել սկսան զՏր առաքելոյն թշքրն և մեծամեծքն, և ասեն. փութամ կատարեա՛ 'ի մեզ զքարոզումն աւետարանին աւետեաց, զորմէ ասացեր՝ մկըրտութը հասանել թողութեն մեղաց, և երկնից արքայութե. զի եղիցի բժշկումն և հարուածոցս հասելոց 'ի վր մեր. արդ մի՛ դանդաղիր՝ զօգուտն որ վն մերոյ փրկութե տալ մեզ. զի գիտացաք այժմ և ծանեաք, եթէ ած քո նա է ած, և չիք ոք բաց 'ի նմանէ. և մեք նմա ծառայեսցուք և հնազանդեսցուք ։

Յայնժամ Տր առաքելոյն ած զնս 'ի վտակն՝ որ իջանէր 'ի փոքր ձորակէ 'ի հարաւակողմ կուսէ. և իջուցեալ 'ի ջուրն՝ մկրտեաց զնս. և նց բացան աչք, և տեսին զհոգևոն Տր, զի շրջէր 'ի վր ջուրցն քաղցր օդով և պարզ լուսով, և լուսաւորեալ զնս՝ զգեցուցանէր նց զլոյսն իբրև զհանդերձ. և իսկևիսկ ուղղեաց սեղան, և կերակրեաց զնոսա յերկնաւոր հացէն և յարենէ որդւոյն այ։ Այլ աղօթս արարեալ եդ ձեռն 'ի վր նց, զի կացցեն հաստատուն 'ի հաւատսն՝ զոր ընկալան, և լուսաւորեցան 'ի լոյս հոգւոյն սբյ ։

Այլ նք աղաչէին զՏր առաքելոյն լինել առ նս, և հովուել զնոսա, զի անքակ լիցին 'ի նմանէ ։ Իսկ նա պլնել ասէ. և այլոց գաւառաց և քաղաքաց պարտ է ինձ աւետարանել. որպէս ասաց քս, գնացէք յամ հեթանոսս, մկրտեցէք զնս յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ. արդ լինքն քս՝ յոր հաւատա-

ցիք

ցիք , և լուսաւորեալ կնքեցայք հոգւովն՟ , նա եղիցի ընդ ձեզ . և մեք՝ զի յանձն առաք մեզ զհեթանոսս , մի՛ ստուգանեսցուք հրամանի նր՟ . և ունկնդիր եղեալ՝ թոյլ ետուն նմա ։

Իսկ յետ թողլոյ բարթուղիմէի անդ երիցունս փոխանակ իւր , դէմ եդեալ գնաց յերկիրն պարթևաց առ սահմանօք պարսից . և 'ի քարոզել նր՟ զբանն կենաց՝ բազումք 'ի պարթևաց դարձան 'ի տր՟ զօրութեց՝ նշանօք և պէսպէս բժշկութբ՟ , զոր ընկալան 'ի նր՟ առաքելոյն։ Իսկ լուսաւորեալ անդ զբազումս՝ եմուտ 'ի պարս յերկիրն մոգուց , քարոզելով զսովորական վճպութ՟ մատթէոսեան աւետարանին . և որ ինչ վն՟ մոգուցն համգամանք էին՝ եդ առաջի նց՟ . իմա՛ յայտ առնելով զմոլար աղանդս և զդիւական հնարս պատիր մոգութն՟ արևապաշտից և կրակապաշտից , և ը՟ հկ՟նկն զուղիղ դիտողութ՟ ընթացից երկնից՝ որով լուսաւորեցան ը՟ գրելոյ աւետարանին մատթէոսի՝ երջանիկ մոգք եկեալ յարևելից առաջնորդութբ՟ աստեղն յերկրպագութի քրի՟ . որոյ եսն եմ աստ ծառայ և առաքեալ ։ Ապա հասեալ մինչև 'ի տեղի պաշտամանն կրակարանի՝ զոր պաշտեին պարսիկք օրինօք մոգութե՟ , արար անդ նր՟ առաքեալն նշան երևելի ը՟դէմ հրոյ և արևու՝ անուանմբ տն՟ և զօրութբ՟ պատկերի տիրամօրն . զորմէ գրէ սբ՟ն մովսէս խորենացի 'ի թուղթն առ սահակ արծրունի , և գեղեցիկ ընելուցանէ զբանս իւր ը՟ առաջիկայս

պատմութեն Ճառընտրին ։

Արդ՝ ասէ, բարթողոմէոս առաքեալ մի յերկոտասանիցն ոչ գոյր ընդ նոսա 'ի զուգահաւաքման նոցին 'ի փոխումն կուսին . վն զի կամք էին տն այսմ այսպէս լինել, զի ընդ Թովմայի 'ի հնդիկս էր երթեալ։ Իսկ եկեալ նա յետոյ յառաքեալսն՝ բանագրօսեաց զնս՝ ցուցանել նմա զգանձն ածային զմարմինն ամենօրհնեալ կուսին յերրորդ աւուր Թաղման նր 'ի գեթսեմանի ։ Իսկ յօժարեալ նք լնուլ զփափագ տենչանաց եղբօրն իւրեանց, բացեալ այնուհետեւ զդր գերեզմանին՝ գտին ունայն յածակիր մարմնոյն . և հիացեալք իմացան, թէ 'ի դադարել օրհնութեն հրեշտակացն և սաղմոսերգութեցն՝ զկնի երից աւուրց՝ 'ի նոյնանէ փոխադրեցաւ մարմինն տր 'ի ձեռն նոցին հրեղինաց դասուցն ։

Ապա յոյժ սգացեալ բարթողոմէոս, զի ոչ ժամանեաց նա տեսութեն տր կուսին, և ոչ լուաւ զօրհնութիւն վերջին՝ ոմ զայլ առաքեալսն և զաշակերտսն տն, և ոչ 'ի գերեզմանին եգիտ, տրտմէր առաւել քան զառաւել ։ Զայն տեսեալ երանելի առաքեալքն, մխիթարել զեղբայրն իւրեանց կամեցեալ, ետուն նմա զպատկեր տիրամօրն՝ ընտրեալ զօրութեն . այն էր նկարաձեւեալ 'ի կիպարիս փայտի 'ի յովհաննէ աւետարանչէ, և եդեալ 'ի մօրէ տն 'ի վր երեսաց իւրոց, և օրհնեալ և սրբեալ՝ 'ի մխիթարութի հաւատացելոց և 'ի բժշկութի հիւանդաց ։ Զոր առեալ բարթողոմէոսի՝ զուարճացաւ . և իբրև

ընդ

ընդ կենդանւոյ համարեալ՝ այնպէս նայէր
ընդ նա ։

Ապա մեծաւ փութով եւ ՚ի հայս հրամանաւ սր՟ հոգւոյն . զի զԹադէոս առաքեալ սպանեալ էր սանատրուկ արքայ յարտազ գաւառի հայոց ։ Իսկ նա եկեալ ՚ի հայս . և հաստատեալ զաշակերտեալսն ՚ի Թադէոսէ՝ իբրև ետես զխստասրտութի սանատրկոյ , եանց գնաց ՚ի ժամուն յերկիրն մոգուց և պարսից . և եհաս ՚ի քաղաք Թագաւորութե նոցա՝ որ այժմ ասի խորասան բարբառովն իւրեանց ։ Եւ արար ը՟ մէջ կրակարանին սուն լուսոյ հրեղէն . և կալեալ զն՟ր պատկերն ընդդէմ արեգականն՝ արգել զճառագայթս նր՟ . և խաւարեցոյց զվեց ժամն ։

Այս բանք են խորենացւոյն՝ ոչինչ ը՟հատ ՚ի ճառընտրէն , որ ասէ . և համբարձեալ բարԹուղիմեայ զձեռս իւր յարևելս ը՟դէմ արեգականն՝ զոր մոգքն պաշտէին , արգել զնա , և զզօրութի ճառագայթից նր՟ պակասեցոյց մինչև զվեց ժամս աւուրն . և նշան յերկնից սուն հրոյ եկաց ը՟ մէջ կրակարանին՝ յանդիմանել զմոլորութի նց՟ արհաւրօք և սաստիկ հիացմամբ . փոխանակ զի սպաս տանէին հեղիու ( այ՟ արեգական ) , և սեփայ ( այ՟ վիշապ օձի) , և արեսի ( այ՟ հրատի) , և պուենայ ( այ՟ կրակի ) ։

Այլ և զոր համառօտէ խորենացին զկնի այսպէս , * Եւ ոչ հաւատային՝ բայց միայն ութ ՚ի մոգուցն յայնցանէ , որք երկրպագեցին փրկչին , և եկեալ մկրտեցան յառաքելոյն .

զօրս հանեալ՝ ը՟ իւր 'ի միջոյ ամպարշտացն , և բերեալ 'ի հայս Ա, այն իսկ է՝ զոր աւանդէ Ճառընտիրն մեր բանիւքս այսորքիւք ։

Այլ Թէպէտև այնչափ մեծ սքանչելիք և նշան զարմանալի ցուցան 'ի վերուստ , սակայն ոչ զանգիտեցոյց զն՟՝ դառնալ յերկրպագութի՟ տարերցն , և յոր վրիպեալ էին սնոտի առասպելաբանութը՟ և բարձրայոն պարծանօք . բայց միայն ոգիք ութ . զոր աւեալ լուսաւորեաց . և հանեալ զն՟ 'ի միջոյ կործանելոցն խուժադուժ ազգին , և անցեալ գնաց 'ի գողթն գաւառ հայոց . և փութացաւ հասանել 'ի վիճակ Թադէոսի ըստ հրամանի հոգւոյն ս՟բյ . և քարոզեաց անդ զբանն կենաց ( այս է 'ի կողմանս գողթնեաց և աղբակայ և նախջուանայ՝ ոչինչ հեռի յարտազ գաւառէ ) . և նոքա ընկալեալ խնդութը՟ և մեծաւ յօժարութը՟՝ հաւանեցան և հնազանդեցան , և լուսաւորեցան մկրտութը՟ աւազանին ։

Յայնժամ եթող անդ նշ՟ առաքեալն երիցունս 'ի մոգուց անտի , որ աշակերտեցան նմա . և բազում զօրութիւնս կատարէր ա՟ծ 'ի ձեռն արանցն այնոցիկ յա՟մ տեղիս , ուր և հասանէին ոտք նշ՟ . և զբազումս դարձուցին 'ի տ՟ր 'ի սնոտի պաշտամանէն . և շնորհք առաքելականք եղեն 'ի վ՟ր նշ՟ ։

'Ի քսանևիններ՟դի ամի սանատրկոյ Թագաւորին ( ասէ Ճառընտիրն , զոր և երկրորդեն այլք 'ի պատմագրաց ) եմուտ ս՟բ առաքեալն բարթողոմէոս ը՟ հրամանի հոգւոյն ս՟բյ 'ի

հայք

Հայք, որ ընտրեաց զնա յառաքելութիւն կոչմանն հեթանոսաց ։ Եւ Թովմայի ըն̄ վերակացութե̄ առաջնորդութե̄ն իւրոյ գրեալ առ սա, զի մի զանց արասցէ զնորքօք՝ քարոզել զաւետարանն արքայութե̄, այլ եւ յիւ̄մ տեղիս, փոխանակ Թադէոսի առաքելոյն՝ որ էր յեօթանասնից անտի ։ Եւ եկեալ ն̄ք առաքեալն ՚ի բլուրն Արտաշու կմ̄ Արտաշատու, հանդիպեցաւ այլ ումն յերկոտասանիցն յուդա յակոբեան (այն է ղեբէոս՝ որ անուանեցաւ Թադէոս) ։ և կանգնեցին ՚ի տեղւոջն՝ ուր պատահեցան միմեանց, զնշան տ̄րունական խաչին ։ և հրաժարեցին ՚ի միմեանց մեծաւ ուրախութ̄բ ։

Եւ գնացեալ յուդայի յիւր տեղիսն, բայց բարթողոմէոս գնացեալ եմուտ ՚ի հեր և ՚ի զարեւանդ գաւառ հայոց ։ և արար նշանս և արուեստս ՚ի մ̄ջ հիւանդաց, և դեւս բազումս եհան ։ և լուսաւորեալ անդ զբազումս, և մխիթարեալ բանիւ վ̄դպութ̄բ ն̄ք աւետարանին, և եդեալ ն̄ց վկայութի, զի կացցեն հաստատուն ՚ի հաւատսն՝ զոր ընկալան, և հաւատարիմ եղեն, և եդեալ միոյ միոյ ձեռն՝ յանձն արար զն̄ս շնորհացն այ̄ ։

Յայս միջոց ժամանակի հայր և մնացուած բանից խորենացւոյն՝ որ մ̄ն դնելոյ առաքելոյն զպատկեր տիրամօրն ՚ի հոգւոց վանս, ե̄ւ որում՚ի հերայ և ՚ի զարեւանդայ խաղաց ն̄ք առաքեալն ՚ի կողմանս անձեւացեաց ։ քանզի ասէ խորենացին այսպէս ։ Եւ եկեալ յՏ̄ն անձաւացեաց՝ ՚ի համբաւ քարի միոջ ։ քան-

զի դեռ բազումք բնակեալ էին անդ, և պատ-
րէին զմարդիկ տեղւոյն, տուեալ յայնմ
տեղւոջէ դեղս ախտականս առ 'ի կատարել
զպղծութիւն ախտից, կռանաձայնս դարբ-
նաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին.
յորս մարդիկ ծին սովորեալք՝ անդ առ քրայ-
լին դեգերէին, առեալ 'ի չնծոցն ծրարս թա-
րախածորս 'ի պատիր ախտիցն՝ ոչ զծրարսն
կիպրիանոսի առ 'ի պատիր յուստինեայ կու-
սի. և անուանէին զանուն տեղւոյն այնորիկ
դարբնաց քար։

Հասեալ նր առաքեալն այ անդ՝ հալածեաց
զդարբինսն զգործօնեայս չարին, և զկուռսն
փշրեաց՝ որ յանուն անահտայ էր։ Յոր ժո-
ղովեալ բազմութի դիւացն 'ի վր լերինն բար-
ձու 'ի հիւսիսոյ կողմանէ՝ քարաձիգս առնե-
լով անթիւ բազմութե յոյժ, և ձայնս և ձիչս
և գոչիւնս սաստիկ արձակէին։ Իսկ նր ա-
ռաքեալն նշնագրեաց խաչ մի փոքրիկ, և
կանգնեաց 'ի վր քարի լերինն. և անդէն
դևքն չիք լինէին. զոր յետոյ նր հայրապետն
գրիգորիոս զխաչն առաքելական ը իւր շր-
ջեցուցանէր՝ մինչև 'ի թողուլ նր զծս. իսկ
յետ ժամանակի եդաւ 'ի վր գերեզմանին
տրդատայ արքային հայոց։

Իսկ է տեղին այն՝ յորում դևքն էին, լեռնա-
մէջ վիմաց, 'ի վր գետոյն մեծի՝ որ կոչի տիգ-
րիս, հուպ 'ի բերդն ամուր՝ որ կոչի կանգ-
ուառ. և միւսոյն՝ ագռաւաց քար. ուստի
ջուրք բազումք հոսին 'ի լերանց ամրոցին ըն
դարնանային մասանցն, զան անցանեն ընդ
հի.

Հիմունս տաճարի տիրուհւոյն , և խառնեալ օժանդակեն զգետն մեծ տիգրիս ։ Նոյն հիմնարկեալ սբ առաքելոյն զհիմն տաճարի սըրբուհւոյն իւրովք իսկ ձեռօքն , շինեալ եկեղեցի փոքրագոյն ․ և անուանեաց զնա սբ ա̃ծածին ․ և եդ 'ի նմա զպատկեր տիրուհւոյն ։

Եւ տայ զնա սբ կանանց ․ և գլուխ կացուցանէ անդ զքոյր յուսկանն , և զքոյր որմըզդատայ և զմաքովտրի ․ և զայլ կանայսն ընդ ձեռամբ նց կացուցանէ , շինէ խրճիթս վանիցն ․ և տեսուչ հրամայէ լինել հաւատացելոցն ․ և քահանայ կացուցանէ անդ յիւրոց աշակերտացն ․ և անուանէ զտեղին հոգեաց վանս՝ յանուն տիրամօրն և սբ կուսին ․ զի բազում սքանչելիս կատարէր ա̃ծ 'ի ձեռն սբ կուսին ՚յայնմ տեղւոջ ։ Եւ ինքն սբ առաքեալն եկեալ աւետարանել 'ի հայս ( 'ի վերնակողմանս ) ․ և կատարեցաւ յուրբանոս քաղաքի , 'ի բարմ անուանեալ տեղւոջն յանուն առաքելոյն ։ Եւ ահա ճառընտիրն իսկ յետ խօսելոյ զքարոզութե̃ն բարթուղիմէոսի 'ի հեր և 'ի զարևանդ՝ ըստ այսմ օրինակի անցանէ 'ի պատմութի̃ կատարման սբյն ։

Եւ ինքն սառաքեալն գնացեալ ( ասէ ) եկն յուրիանոս ( որ և ուրբանոս կոչի արևբանոս գրի ) քաղաք հայոց ․ և գային առ նա ամ ներղեալք 'ի պէսպէս ցաւս և 'ի տանջանս ․ և բժշկեաց զամենեսեան ․ և լուսաւորեաց մկրտութե̃ սբ աւազանին ։ Յոճաւ զնմանէ ոգոհի քոյր թագաւորին սանատրկոյ , որ էր

որ-

որդի քեռ աբգարու. եւ եկն առ նա 'ի ծածուկ. եւ լուեալ 'ի նմանէ զբանն կենաց՝ հաւատաց 'ի տէր յիսուս քրիստոս ինքն եւ իւրքն տամբ. եւ զգեցեալ հանդերձ կուսութեան, 'ի բաց մերկացեալ զփառս աշխարհի, եւ աշակերտեալ առաքելոյն՝ շրջէր զհետ նորա :

Իսկ լուեալ թագաւորին զիրսն՝ որ եղեն, եւ զայրացեալ մեծաւ ցասմամբ իբրեւ զգազան կատաղեալ արիւնարբու, յղեաց զհազարապետն տերտիոս (կամ տերենտիոս) եւ որք ընդ նմա. Իսկ իբրեւ եկն առ նա հազարապետն ընդ հրամանի թագաւորին, տեսեալ զսուրբն աստուծոյ՝ գթացաւ 'ի նա. եւ նա սկսաւ քարոզել նմա զաւետարանն արքայութեան. եւ տէր եբաց զմիտս նորա՝ անսալ բանից նորա. եւ ինքն անկեալ էր յախտ բորոտութեան : Իսկ առեալ զնա սրբոյ առաքելոյն 'ի գիշերի մկրտեաց. եւ ահա ամպ լուսաւոր հովանի եղեւ 'ի վերայ տեղւոյն, եւ լոյս հրոյ շուրջ փակեալ զաւազանն սրբարար. եւ եղեւ ընդ ելանել նորա 'ի ջրոյն՝ անկաւ 'ի նմանէ մորթն խստացեալ իբրեւ զկեղեւ ծառոյ, եւ իբրեւ զտերեւ որթոյ, եւ լոյս զգեցաւ իբրեւ զհանդերձ. եւ տեսեալ զսքանչելիսն՝ որ եղեն, բազումք հաւատացին 'ի տէր :

Իսկ եղեւ իբրեւ եհաս լուր սքանչելեացն առ թագաւորն, առաւել զայրացեալ անհանդուրժելի բարկութեամբ՝ փութացաւ յղեաց զայլ ոմն 'ի նախարարացն հանդերձ զօրականօք՝ բերել զնոսա, զի փութով զրաւ արասցէ նոցա. եւ մի թուլասջիք ասէ միայն տեւել յունկրնդրութի բանից նոցա : Իսկ նոցա առեալ զնոսա առաքեալն

քեղն հանդերձ կուսիւքն և հազարապետաւն և այլովք աշակերտելովք ածին յատեանն ։ Հրաման ետ թգ՟րն , և տանջեցին զն՟ք առաքեալն քքօք իբրև ժամ մի արք վեց ․ ուր այլք ասեն , մորթեցերծ արարին , և ապա բրածեծ ․ և համարէին զնա մեռեալ ․ վ՟յ քարշեցին ընկեցին զնա արտաքոյ քաղաքին ․ բայց ն՟ք առաքեալն կայր կենդանի՝ զօրութ՟բ և ուժով ա՟ն իւրոյ ,յոր յուսացեալն էր ։

Եւ այսպէս անկեալ դնէր իբրև ժամս երիս ․ և ժողովեալ էին զնովաւ բազմութի յոյժ ՚ի քաղաքէն և յամ՟ սահմանաց նորա ։ Եւ յետ անցանելոյ երից ժամուցն՝ խլրտեաց ձեռամբն ․ և ձգեալ բուռն հարին զնմանէն ․ և յարեաւ նստաւ կանգուն ․ և համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ ․ Տ՟ր ա՟ծ հայր ա՟ն մերոյ յի՟ քի՟ , մի՛ թողուր ՚ի ձեռանէ զվիճակս զայս՝ խնդրուածովք Թադէոսի և Թովմայի և յուդայի և իմ բարթողոմէոսի , որ հոգացաք վ՟ն Ս՟իս այսորիկ ․ և մի՛ տանհար լիցի ՚ի թշնամւոյն ․ այլ տո՛ւր սոցա զշնորհս ողորմութե՟ , և դարձցին յերկրպագութե՟ կռոցն սնոտեաց , որ զուր և տարապարտ մոլորեալ են ՚ի ազախութե՟ անհաւատութե՟ ․ և տո՛ւր սոցա հոգի՛ և առաջնորդ , զի ծանիցեն ըզքեզ միայն Ճշմարիտ ա՟ծ , և զոր առաքեցեր զյ՟ս ք՟ս ։ Եւ զիս ընկալ տ՟ր իմ , և զհաւատացեալքս ՚ի քեզ պահեա՛ ։

Զայս իբրև ասաց , շարժեցաւ տեղին ․ և ահա կամար լուսեղէն եկեալ եկաց ՚ի վ՟ր սր՟յն ․ և նր՟ հայեցեալ ՚ի վեր յերկինս՝ աւանդ

ւանդեաց զՀոգին . և բուրեաց հոտ անուշութեան : Եւ ս՟բ առաքեալն Թադէոս՝ որ բազում ամօք յառաջ փոխեալ էր յերկինս , իբրև այն թէ մարմնաւոր տեսլեամբ գայր ը՟դ առաջ հոգւոյ ս՟բ առաքելոյն Բարթուղիմէի . և դարձան ը՟դ նոյն ճանապարհ երկնից՝ ուստի եկն ս՟բն ՚ւյ Թադէոս : Եւ ահ կալաւ զամենեսեան . և հաւատացին յաւուր յայնմիկ ոգիք երկու հազարք . և ամենեքեան փառաւոր առնէին զա՟ծ ՚ի վ՟ր եղելոցն . և եկաց լոյսն կամարաձև ՚ի վ՟ր մարմնոյն զաւուրս երկոտասան :

Իսկ զերանելին Ոգոհի և զհազարապետն սպան սրով Սանատրուկ արքայ , և զայլս բազումս ը՟դ նմ՟ : Ապա առեալ հաւատացելոց զմարմինն ս՟բ առաքելոյն՝ փոխեցին ՚ի հանգիստ ՚ի նմին տեղւոջ . նոյնպէս և զայլոց վկայիցն : Բայց յերկարեաց շարժումն և որոտումն և արհաւիրք ահագին , մինչև ՚ի փախուստ աճապարել ոստիկանաց և դահճաց անհաւատից . և քրիստոնէից գտանել պարապ և ամփոփել զս՟բ նշխարս : Իսկ իբրև եղև որոտումն , լռեան խուլքն և բժշկեցան . տեսին կոյրք զփայլատակումն և լուսաւորեցան . և համրքն խօսեցան . և ամենեքեան յիւրաքանչիւր ախտից բժշկեցան . որք և հաւատացին ՚ի տ՟ր մեր յ՟ս ք՟ս ՚ի ձեռն ս՟բյ առաքելոյն Բարթողոմէոսի , որ ՚ի կենդանութեան և ՚ի մահուան եղև պատճառ լուսաւորութեան հոգւոց բազմաց :

Եւ համբարձեալ զձեռս իւրեանց միաբան

հա

Հաւատացելոցն 'ի մի բերան փառաւորէին զՏր մեր Յս Քս · ընդ որում Հօր և Հոգւոյն սբյ վայելէ փառք, իշխանութի և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · ամէն ։

Զայս վայր հին վկայաբանն Ձառընտրայ մերոց, որ երևի մին 'ի սբց Թարգմանչաց · եթէ ոչ խորենացին, ում յերիցագոյն աշակերտակցացն էր, ստուգագէտ հնութե յօրինել զպատմութիւն՝ կէս մի թարգմանութե արդեօք 'ի յունաց և յասորւոց, և կէս մի յարադրութե հաստատուն աւանդութեց հայաստանեայց ։

Արդ ըստ կարգի վկայաբանութեանս կատարումն սբյն բարթուղիմէոսի առաքելոյ անկանի յերեսներորդ ամն սանատրկոյ արքայի, այն է ամն տն 67 · միով ամաւ զկնի կատարման սբց առաքելոցն պետրոսի և պօղոսի 'ի հռովմ, և իբր քսան ամաւ զկնի կատարման սբյն թադէոսի և սանդխտոյ 'ի հայս ։ Թադէոս յարտազ գաւառի կատարեցաւ, ուր էր յայն ժամ սանատրուկ մօտ 'ի մեծն աղբակ · իսկ բարթուղիմէոս յարևբանոս կամ յուրբանոս քաղաքին, որ ասի լինել յաղբակ փոքր մօտ 'ի սալամաստ և յորմի 'ի մեծն հայս՝ ուր էր արդեօք սանատրուկ իբրև 'ի ձմերոց արքունի, և կմ 'ի ստորին հայս 'ի կողմանս միջագետաց, ըստ որում արքունիք սանատրկոյ էր յայնժամ 'ի նորաշէն քաղաք իւր մծբին ։ Թող զի այլք զարևբանոսն կամ զաղբակն շփոթեալ ընդ ալբանայ, կմ ընդ աղուանս՝ յայն կողմանս համարեցան զտեղի կատարմանն սբ-

ա-

առաքելոյն ․ այլ ամենեքին միաբան հաւատացեն՝ թէ ՚ի հայս կատարեցաւ ։

Նաեւ ըստ այսմ իրաւամբք ճանաչի եկեղեցի հայաստանեայց աշակերտ հարազատ երկոցունց ՚նց առաքելոցս՝ բարթողիմէոսի, որ մին է յերկոտասանից, եւ թադէոսի՝ որ էր յեօթանասնից ․ եւ հայրապետութի հայոց՝ կոչի եւ է աթոռակալութի, ՟ք յաջորդութի աթոռոյ ս՟րյն բարթողիմէոսի եւ թադէոսի ․ զի թէպէտեւ ՚նց լուսաւորիչն մեր ՚ի կեսարիա ձեռնադրեցաւ, այլ նստաւ յաթոռ ՚նց առաքելոցս, ՟ք ՚ի միջնակ ՚նց, որ է հայաստան ☉ ․ ուր ոչ երբեք պակասեաց յաջորդութի քրիստոնէութե, ոչ միայն յեդեսիա, որ յետ միանգամ լուսաւորուէ՝ միշտ ունէր զհօտ հաւատացելոց ՚ի ծոցի իւրում, այլեւ ՚ի մեծն հայս ․ ուր կային քրիստոնեայք սակուեալք աստ եւ անդ հալածանօք հանդերձ ․ յորոց եւ զբազումն նահատակեաց խոսրով արքայ հայոց՝ հայրն տրդատայ, ըստ դպրոյ խորենացւոյն ․ իսկ առ տրդատաւ յարոյց ՟ած լուսաւորիչ հանօրէն տանս հայոց զերանելին զգրիգորիոս պարթեւ՝ ո՟ք պարգեւական զաւակ կենդանի նշխարաց ս՟րյն թադէոսի եւ բարթողիմէոսի, եւ առաքելական հոգւովլ արժանաժառանգ աթոռոյ ՚նց առաքելոցս ։

## Գիւտ նշխարացն Բարթողիմէոսի առաքելոյ՝ յաւուրս Թարգմանչաց մերոց, ըստ Ճառընտրին ։

Յամս Յազկերտի փոքու (յա̄ առաջնոյ, և ոչ երկրորդի՝ որ մեծ կոչի) պարսից արքայի, այր ոմն մարութայ անուն (այն է՝ որն մարութա եպս), ազգաւ ասորի, քրիստոնեայ ճշմարիտ բարեպաշտօն և վկայասէր՝ այր սքանչելի, առաւել հմուտ և տեղեակ քննաւոր աւետեաց աւետարանին, նախանձաւոր վարուց առաքինութե̄. որ և արժանի եղեալ վերին շնորհացն՝ առնել նշանս և արուեստս ՚ի վերայ հիւանդաց, և իւրաքանչիւր ցաւոց շնորհել առողջութի̄ ։ Նա խնդրեալ յարքայէ շինեաց քաղաք մարտիւրոսաց՝ Նփրկերտ կոչեցեալ, որպէս կայ ՚ի պատմութեն իւրում. և ժողովել հաւաքեաց անդ զնշխարս մարտիւրոսաց, զորս եգիտ ՚ի պարսս և յասորիս՝ երկերիւր և ութսուն հազար. (զորմէ տես ՚ի ա̄. հատ. երես. 605. և 616.) և եդ ՚ի ներքս ՚ի քաղաքին յանուն վկայիցն ։

Այլ եղև ՚ի խնդիր վս̄ Բարթողոմէոսի առաքելոյ Հայոց մեծաց, և բազում ցանկութե̄ եւ ՚ի Հայք. և հասեալ անդ՝ արար աւուրս երկոտասանս. և զի էին նշխարք սրբոյն ՚ի պահեստի՝ ծածկել ՚ի բեմբի անդ, որ յիւր անուն շինեալ էր եկեղեցին, և ոչ կարէր համարձակել յայտնի, և ընուլ զփափաքումն տենչմանն, ապա զաւուրս երկոտասանս ըզ-

ցայգ

ցայգ և զցերեկ աննուաղութբ անցուցանէր , մեծաւ աշխատութբ յաղօթս ապաւինեալ՝ երկու եւս Ձգնաւոր արամբք որ ընդ իւր . և խնդրէին 'ի քսէ , զի լուիցէ աղօթից նց , և յայտնեսցէ , և ցուսցէ զտեղին՝ ուր կային նշխարք սրբյն , և լցցէ զբարեպաշտութի ցանկութն նց՝ առանց խռովութն Ծիս Հայոց : Եւ լուաւ տր աղօթից նց . զի զկամս երկիւղածաց իւրոց առնէ տր , աղօթից նց լսէ , և կեցուցանէ զնս :

Եւ զկնի երկոտասան աւուր յանկարծակի եղև շարժումն 'ի մէջ գիշերի . և պատառեցաւ տեղին՝ յորում կայր գանձ մծութն ծածկեալ . և լոյսն է փայլար պատառուածին արտաքս ելանէր : Իսկ երանելին մարութայ մեծաւ երկիւղիւ և ցնծալից ուրախութբ տարածեալ զնափորտն , և ձգեալ զձեռն իւր 'ի ներքս ընդ տեղին պատառեալ՝ ժողովեաց զնշխարսն 'ի կապերտն , թողեալ 'ի տեղւոջն մասն ինչ . և նոյնժամայն ծածկեցաւ տեղին իբրև զառաջինն . և ոչ ոք գիտաց զիրսն՝ որ եղև՝ բց տեսչութն այ :

Եւ ելեալ փութանակի 'ի քաղաքէն 'ի մէջ գիշերի , և հրեշտակ այ առաջնորդեալ նմա իբրև յանուրջս՝ 'ի նոյն ժամ միոյ գիշերոյն եկն 'ի քաղաք իւր ( 'ի Նփրկերտ ) : Եւ իբրև եմուտ ընդ դուռն քաղաքին , ծագեաց լոյս , և բուրեաց հոտ անուշութե . և լի եղև քաղաքն 'ի լուսոյն և յանուշահոտ բուրմանէն . և ըստուցեալ 'ի քնոյն բազմութիւն քաղաքին՝ հասին փաղփաղակի ըս հայեցման


լու

լուսոյն յեկեղեցին . և ստուգեալ վ՟ն իրացն եղելոց , և եթէ որպէս գործեցաւ առաջնորդութ՟ն Ճանապարհին յերթալ և 'ի դառնալ նորա , ամենեքեան իբրև 'ի մի բերան փառս 'ի վեր առաքեցին ք՟սի ա՟յ հօր և հոգւոյն՝ այնպիսի բարեաց պարգևողին . և բազումք ընկալան զառողջութ՟ն ախտից . և լոյսն առ փոքր փոքր նուաղեցաւ մինչև 'ի ծագել արևուն ։

Նու ա՟յ դալ արեգականն փութանակի գործեցին տապանակ յոսկւոյ , և եդին 'ի ներքս զնշխարս ս՟բ առաքելոյն . և զտապանակն եդին 'ի մարմարիոն վիմի , զոր փորեցին ըստ չափոյ պիտոյիցն . և զօրն զայն տօնախմբեցին մեծաւ ցնծութ՟բ՝ 'ի դեկտեմբերի , որ օր տասնևերկու էր ամսոյն ( յամի տ՟ն իբր 415 , կմ՟ 420 ), փառաւորելով զս՟բ երրորդութ՟ին . որում փառք , իշխանութ՟ի և պատիւ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

Արդ որչափ և ստոյգ երևի այս պատմութ՟ի հին , թէ մասն ինչ նշխարաց ս՟բյն բարթուղիմէոսի մնաց 'ի հայս 'ի թաքնութ՟է իւրում , և մասն ինչ 'ի ձեռն ս՟բյն մարութայի հրաշապէս բերեալ ամփոփեցաւ 'ի նփրկերտ քաղաքն մարտիրոսաց՝ որ յ՟Ձին ծոփաց , նոյնչափ և ստոյգ դատելի է՝ թէ այն , որ յետ դարուց փոխադրեցաւ յարևմուտս , հանդերձ տապանակօք այլոց վկայից սքանչելապէս , էր նոյն մասն՝ որ գտաւ 'ի նփրկերտ առանձին տապանակաւ . և եթէ պատմիչք

յունաց և հռովմայեցւոց յազգէն հայոց առեն լինել և զայս վերջին փոխադրութիւն, ոչ է սուտ. զի և Նփրկերտ էր 'ի մասին ազգին հայոց. որպէս և յայտ է: Արժան է արդ լսել և ըզ-պատմութիւն այսր փոխադրութեան յարևմուտս:

## Փոխադրութիւն նշխարաց սրբոյն Բարթողիմէոսի յանաստասուպօլիս, 'ի Լիպարիս, և 'ի Բենեւենտ, ևս և 'ի Հռոմ:

Գրէ Թէոդորոս վերծանօղ յոյն մատենագիր ժամանակակից 'ի վեցերորդ դարու, թէ Անաստաս կայսր շինեաց զդարա քաղաք 'ի Միջագետս. որ և յանուն նորա Անաստասուպօլիս կոչեցաւ. * Այս շինեալ (ասէ)՝ տեսանէ 'ի տեսլեան զԲարթողիմէոս առաքեալ, զի ասէր՝ թէ որպէս ինքն յանձին կալաւ զպահպանութիւն քաղաքին. վասնորոյ առաքեաց, և անդ եդ զնշխարս նորա ||. և այս համարի լինել յամի տեառն իբր 510. զի շինութիւն քաղաքին դնի յամի 507. 'ի ժէ ամի թագաւորութեան Անաստասայ:

Այլ Պրոկոպիոս գրէ յիւրում ժամանակի 'ի նմին դարու (Է. 12. յղ. շին. յուստ.), թէ յուստինիանոս մեծն 'ի կարգի բազմապատիկ շինութեանց՝ շինեաց 'ի դարա կոչեցեալ յանաստասուպօլիս եկեղեցի յանուն սրբոյ առաքելոյն Բարթողիմէոսի. և 'ի պաշարել քաղաքին միանգամ և երկիցս 'ի պարսից՝ ազատեցաւ: Այլ ոչ յայտ է 'ի պատմագրաց զկնի եկե-

լոց

լոց 'ի նոյն դար, յետոյ ուրեմն առին պար-
սիկք զդարա 'ի տասներորդ ամի յուստինոսի
փոքու՝ յամի տ՟ն 574 . այն է ժամանակ կրկին
վրդովման Ցին հայոց յաւուրս վարդանայ
մամիկոնէի երկրորդի . որ նշկահեաց զպար-
սիկս, և պատոնեցաւ 'ի յունաց : Եւ ահա
յայն աւուրս բազում չարիս գործեցին պար-
սիկք ը՟դէմ քրիստոնէից 'ի սահմանս միջա-
գետաց և հայաստանեայց . և աւերեալ զե-
կեղեցիս՝ ցրուեցին զնշխարս սրբ՟ց . և զորոց
ոչն կարացին բառնալ զտապանս՝ ընկղմեցին
'ի ջուրս . Է՟ որս և զտապանակ նշխարաց սրբ՟յն
բարթուղիմէոսի և չորից այլ սրբ՟ց՝ ուր և դը-
տին՝ գետընկեց կի՟ծովընկեց արարին . որք
և սքանչելեօք ելին յարևմուտս . ոմ՟ միօրի-
նակ պատմեն յոյն և լատին մատենագիրք :
'Ի լատինացւոց ժամանակակից գրիչ է սբ՟ն
գրիգոր տուրոնեցի եպ՟ս՝ նախ քան զվախ-
ճան վեցերորդ դարու, որ 'ի գիրսն յաղագս
փառաց վկայից (գ՟. 33) ունի այսպ՟ս . * Յետ
անցանելոյ ամաց բազմաց 'ի կատարմանէ
անտի բարթուղիմէոսի առաքելոյ՝ յորժամ
վերստին հալածումն 'ի վ՟ր հասանէր քրիս-
տոնէից, և տեսանէին հեթանոսք՝ զի ժողո-
վուրդն ա՟մ խուռն ընթանայ 'ի գերեզմանն
ն՟ր՝ մատուցանելով նմին անդադար աղօթս
և խունկս, մոլեգնեալ նախանձու՝ բարձին
զմարմին նորա, որ էր եդեալ 'ի տապանակ
արճճեայ ('ի մէջ քարեղէն տապանի), և
'ի ծով ընկեցին, ասելով . մի՛ ևս այլ մոլո-
րեցուսցէ զժողովուրդս : Այլ 'ի ձեռն տեա-

չութենն այ ըստ գաղտնեաց գործոց նր՝ կապա-
րեալ տապանն 'ի տեղւոջէ անտի ամբարձեն
'ի վր ջրոց՝ բերեալ եղև 'ի կղզին, որ կոչի
Լիպարիս, (որ է մէջ Սիկիլիոյ և Նէապօլսոյ.)
և յայտնեցաւ քրիստոնէից՝ զի ժողովեսցեն
զնա. և ժողովեալ թաղեցին, և շինեցին 'ի
վր եկեղեցի մեծ. յորում այժմ յօգնակա-
նութի կարդացեալ՝ յայտնի առնէ զձեռն-
տուութի իւր ժողովրդոց բազմապատիկ զօ-
րութիք և բարերարութիք ։

Այլ Ճոխագոյն և պանծագոյն պատմէ զայս
սմ՝ սբն Թէոդորոս ըստուդիտ կմ ստուդե-
ցի միայնակեաց յունաց, փայլեալ յութե-
րորդ դարու, և վախճանեալ 'ի սկիզբն ին-
ներորդին յամի 826. 'ի կարգի ներբողենի
իւրոյ 'ի սբն բարթուղիմէոս՝ բանիւքս այսո-
քիւք. * Մեծն պետրոս ըստ կոչմանն քնի 'ի
վր ծովու ընթացաւ. և ածայինն բարթողո-
մէոս նոյնօրինակ տայ զօրութի տապանակին՝
որ կրէր զմարմին նր, գնալոյ ընդդէմ կոհա-
կաց. ով մեծի սքանչելեացս, ով մեծագործ
հրաշիցս. Քանզի խաղացեալ տապանակին
'ի կողմանցն Հայոց՝ ընդ այլ չորից վկայիցն
արկեղաց, որք վս նոյնպէս հրաշագործ գո-
լոյն արկան ընդ նմա 'ի ծով, ուր չորեքին սք
ընդ այնչափ տարածութի ծովու շրջէին և յա-
ռաջընթաց լինէին՝ ոչ այն թէ սպասահար-
կու լինելով առաքելոյն, եկին 'ի վերջին
սահմանս Սիկիլիոյ, 'ի կղզին Լիպարիս ան-
ուանեալ. և 'ի ձեռն յայտնութեան ցուցեալ
եղեն սբյն աղաթոնի եպիսկի տեղւոյն ։ Ո-
րոհաւ

լռեաւ զայսպիսի մեծ նշան . սքանչելիք 'ի սքանչելիս . . . .

Նոյն յայսոր ամի վր՟՝ ուր պաշտօնեայս գոգցես զկնի թողոյր առաքելոյն զոմն 'ի վկայից աստ , և զոմն անդ . զպապիանոս 'ի մելաս քաղաքն սիկիլիոյ , և զղուկիանոս 'ի մեսսինա . և զայլ երկուսն 'ի կաղաբրիոյ ցամաքն ուղղէ ( հանդէպ սիկիլիոյ կղզ՟ մեսսինայ՝ 'ի նէապօլսոյ 'ի վայր) . զս՟ գրիգոր 'ի քաղաքն գոլումնա ( ռէճիա ասացեալ՝ մօտ 'ի ռէճիօ , կամ 'ի հռեգիոն ) , և զակակիոս 'ի քաղաքն՝ որ կոչի սկիլլակէ . ( ռամկ . շիլլա կմ՟ սքիլլա ) . որպէս զի մի մի 'ի նոցանէ յիւրաքանչիւր քաղաքի հովանի լինիցի բնակչաց . որ և մինչև ցայսօր փայլեն շնորհօք նց՟ :

Իսկ ինքն ( բարթողոմէոս ) ոչ թագաւոր և ոչ զիւր հանգստարան ընտրեալ՝ գնաց 'ի քաղաքն ( լիբարայ ) , յո դէմ եղեալն էր . որում ընդառաջ ելին ամենեքին մոմեղինօք և խնկօք՝ հանդերձ երգովք և ցնծութ՟ : Այլ ոչ 'ի վեր ելանէր տապանակն . զի ումանք ձգէին , այլք լային , կէսք յաղօթս կային . և նա կայր անշարժելի . բայց 'ի վր՟ եկն տրտմութե՟՝ ուրախութի՟ . զի իբրև բազում լալիւն եղև 'ի ժողովրդեան , ստացօղ եղեն այնմ՝ զոր գտինն . զի մերձ է տր՟ առ ամենեսեան՝ որ կարդան առ նա :

Երդ պատուով բարձեալ անտի զտապանակն հանդերձ ոք՟ գանձիւն՝ որ 'ի ծոց նր՟ , հանգուցին 'ի տեղւոջ անդ , ուր փութով շինեցաւ սք՟ տաճար նր՟ : Նոյն 'ի կատարմանն եղև

և այս նշան երևելի . քանզի լեառն բուակա-
նոս ( որ և բառականոս , կամ վուլկանոս ) , որ
գրեթէ կից էր կղզւոյս , և մխասակար լե-
ներ մերձաբնակ եղելոց' ( հրաձգութ՟բ ) ,
յայնժամ աներևոյթ շարժմամբ 'ի բաց մեկ-
նեցաւ , որ՟պս եօթն ասպարիզօք կախեալ 'ի
մէջ ծովու . մինչզի' մինչև ցօրս ցայս իսկ
երևի տեսողաց ոմ՟ 'ի ձև կերպարանաց հրոյ
փախուցելոյ . ( այն է փոքր հրաբուղխ լեառն
վուլկանիկ կոչեցեալ , և թերևս զկնի ան-
յայտացեալ , որիշ 'ի մեծ կղզւոյն հերայ
վուլկանոսի , որ կայր և յառաջնումն ) : Այլ
թէ քանի՞ և ո՞րչափ այնուհետև ներգոր-
ծեաց հրաշս 'ի վ՟ր նեղելոցն յազգի ազգի
ցաւոց և 'ի հիւանդութեց , որք հաւատով
'ի նա ապաւինին , ոչ է մեզ ասել առ երկա-
րութ՟ն ճառիս , և ոչ լսելեաց անհաւատալի
ունի երևիլ , ունելով 'ի միոյ աստի առհա-
ւատչեայ հաւատարմութ՟ն և այլոց սքանչե-
լեացն առհասարակ :

Արդ ուրախ լեր երանելի՛դ երանելեաց' ե-
րի՛ցս երանեալդ բարթուղիմէ . . . . ուրախ
լեր բազմօրինակ տենչալի գեղեցկութիւնդ
հայաստանեայց . ուրախ լեր լիբարեայ ազա-
տարար' և պարծանք պարծանաց երկրպագե-
լի . ուրախ լեր' որ զծով սրբեցեր քաջընթաց
հետովքդ . ուրախ լեր' որ զցամաք ծիրանա-
զարդեցեր երանգօք անարատ արեանդ . ու-
րախ լեր' որ զօդս լցեր 'ի հոտ անուշից բուր-
մամբ սրբութ՟ն ա՟ծային բանից քոց . ուրախ
լեր' որ յերկինս սլացար , և 'ի միջակին ա՟ծա-

հոյլ

Հոյլ ակմբիւք գեղեցիկ փայլես 'ի շող անմատոյց փառացն լուսոյ, և յանյագ զուարճութեն անանց ցնծութե։ Անտի 'ի մեզ գթածիրաբար նայեսցիս. անտի օրհնեսցես զայնոսիկ՝ ոյք օրհնեն զքեզ ||։

Զնոյն երկրորդէ պատմութի և յովսէփ ներբողասաց յոյն 'ի նոյն դարս՝ ըստ ոմանց ոք յովսէփ երգաբանն կարծեցեալ, 'ի գովեստ ոք առաքելոյն բարթուղիմեայ արձակ բանիւ. ուր և 'ի բերանոյ լիպարիս կղզւոյն այսպէս բարբառի առ առաքեալն մեր. * Դու՝ որ բազում լուսով ես պայծառացեալ, և ածայինն այն ելիցն արևու ճշգրիտ բարեկամ, զի՞ եղև՝ զի այսքանոդ և այսպիսոդ իջևանեսցիս յաղքատին իմ մուտս արևու, 'ի կողմանց արևելից խաղացեալ, և ած ծովեզերեայ ծոցս մեզ ցուցեալ։ Հա արդ մեծատուն եղէ. երբեմն աղքատս գանձ մեծ այսօր գտի. ոչ ևս եմ այսուհետև սաորին և քան զհռովմ քաղաք մեծապանծ, որ ունի իւր բնակիչս զերանելի առաքեալսն զպետրոս և զպօղոս. քանզի և ինձ բնակիչ սասցայ զբարթողոմէոս։ Խնդակից ինձ լերուք կղզիք ած. քաղաքք ած՝ որ ընդ տիեզերս՝ ցնծացէք ը իս. 'ի ձեզ յոլովից 'ի սրբց ամբարեալ կան նշխարք. ինձ շատ է մինս այս փոխանակ ամենեցուն։ Այլ ով երիցս երանելի և զուգահրեշտակդ առաքեալ, ո՞ պատմեսցէ զն արժանույն զպանծալի պանծալե գործսքո ||. և այլն՝ որ 'ի կարգի։

Արդ այս սքանչելի փոխադրուե, զոր և այլ

վկայաբանք և մատենագիրք միաբան յիշատակեն, եղև յամի տն իբր 580. և մնաց մարմին սբ առաքելոյն անդ 'ի Լիպարիս աւելի քան զերկերիւր ամ. և ապա փոխադրեցաւ 'ի Բենեւենտ. զորմէ այսպէս գրէ ժամանակակիցն սբ Բերթարիոս աբբայ Կասինեան վանաց, կամ անստոյգ գրապետ հռովմայ՝ զկնի Ձառին Թէոդորոսի նախանշանակելոյ. * Ո այսոսիկ յաղագս երանելոյն Բարթուղիմէի գովութեանց, և յաղագս հրաշալի գալստեան նր 'ի Լիպարիս՝ հաւատարիմ պատմութբ բացադրեաց Թէոդորոս՝ նշանաւոր համբաւով սրբութե և քհնյական պատուով։ Այլ թէ յի՛նչ առթէ, կմ որո՛վ կարգաւ փոխադրեցաւ 'ի կղզւոյ անտի 'ի Բենեւենտ, ոյր վասն կատարի տօնախմբութի՛ն՝ որ յաւուր յայսմիկ, ժամ է ասել աստանօր։

Արդ մինչդեռ 'ի Լիպարիսեան կղզւոջ անդ հանգչէր մարմին նորին երանելի առաքելոյն Բարթուղիմէոսի մինչև ցամն մարդեղութե տն 838, յարձակեալ սարակինոսաց 'ի վերայ կղզւոյն՝ յաւարի առին զայն, և վէր 'ի վայր արարին. և խորտակեալ զգերեզմանն երանելւոյն Բարթուղիմեայ՝ ցրուեցին զոսկերս նր այսր անդր։ Իսկ և իսկ յետ մեկնելոյ նց՝ երևեցաւ առաքեալն քնի 'ի տեսլեան ումեմն յոյն միայնակեցի, որ պահապան լեալ էր եկեղեցւոյն, և ասէ ցնա. արի և ժողովեա՛ զոսկերս իմ զցրուեալս։ Նա ետ պտխնի. և առ 'ի մէ՞ իցէ զոսկերսդ ժողովել,

կմ

կամպատրիմ ինչ քեզ առնել, ուր դու թողեր զմեզ և զժողովուրդս զայս 'ի ձեռս հեթանոսաց՝ ջնջել զմեզ, և ոչ հասեր մեզ 'ի թիկունս օգնականութեան ։

Իսկ նա ասէ. Ընդ երկար ամաց ընթացս աղաչեցի զքեզ վասն ժողովրդեանս այսորիկ. և իմովս աղօթիւք շնորհեաց դոցա Տէր՝ զի աներկեան կացին մնացին ցայդ վայր. այլ զի բազմացան չարիք նոցա, և յաճախեաց յոյժ անօրէնութիւն, այնուհետև 'ի զուր եղեն աղաչանք իմ. և այնպէս 'ի վերայ եհաս կորուստ ապականութեան ։ Այլ դու արի և ժողովեա զոսկերս իմ, և ամփոփեա ուր քեզ պատուիրեմ ։

Ասէ միայնակեացն. և զիարդ կարացից գտանել զնա, զի ոչ գիտեմ ուր ցրուեալ իցեն ։ Ասէ ցնա առաքեալն. գիշերի երթ 'ի հաւաքել զնա. և ուր ուրեք տեսանիցես ինչ հրափայլ, բարձ զայն՝ զի յոսկերաց իմոց է ։ Եւ նա յարուցեալ վաղվաղակի՝ գնաց 'ի տեղին, և եգիտ զնոսին՝ ըստ ասելոյ առաքելոյն, և ժողովեաց առանց երկուանալոյ, և հաւաքեալ յանօթ ինչ՝ թաքոյց. և թողեալ անդ զընկեր իւր՝ գնաց ։

Եւ եղև 'ի գալ անդր նաւուց լոնգոբարտացւոց՝ որք զհետ էին սարակինոսաց, առին զկրօնաւորն՝ որ անդ գտաւ, և զմարմին սրբոյ առաքելոյն, և մեկնեցան անտի ։ 'Ի վերայ հասին սարակինոսք, և 'ի մէջ առին զնաւն՝ որ բարձեալ տանէր զսուրբ մարմին առաքելոյն, մինչև չմնալոյ յուսոյ ազատութեան ։ Եւ ահա

յան-

յանկարծակի խաւար թանձրամած պատէր զնաւս սարակինոսաց, և ոչ գիտէին՝ թէ յո՛ երթիցեն. և այնպէս ապատեցաւ նաւն այն. այլ մինչդեռ էին 'ի վրդ ծովու, զոմն 'ի նաւավարաց անտի՝ որ վշտացեալ էր 'ի ծանր հիւանդութէ, առողջացոյց տէր աղօթիւք առաքելոյն ։ Եւ ելեալ 'ի ցամաք՝ ածին ընդ պատուով զսրբ մարմին առաքելոյն այ 'ի բենեւենտ, և հանգուցին 'ի խորանի՝ յամի 'ի մարդեղութն անտի ութն ութհարիւրորդի երեսներորդի իններորդի, որ օր քսանևհինգ էր ամսեանն հոկտեմբերի ‖ ։

Զնոյն պատմութի աւանդեն և այլ բազում յիշատակագիրք բենեւենտացւոց, և այլք 'ի մատենագրաց. և այս եղև սաեն սատարութե սիկարտոսի իշխանին բենեւենտու, և ուռսոսի եպսի տեղւոյն ։ Զնոյն աւանդէ և նիկետաս յոյն պաղփագոնացի ։ Եւ եղան զառաջինն նշխարք սրբ առաքելոյն 'ի մայր եկեղեցին սրբ ածածնի. ուր շինեցաւ առանձին մատուռն յանուն սրբյն բարթուղիմէոսի. և յայնմ հետէ գրեցաւ առաքեալն պաշտպան բենեւենտու ընդ սրբյն գեննարիոսի վկայի՝ եպսի այնր քաղաքի ։ Եւ 'ի յաջորդ դարու՝ յամի 969. յովհաննէս ժգերորդ՝ հռովմայ հայրապետ 'ի ժողովի իւրում ամբարձ զեպսն բենեւենտու 'ի պատիւ արքեպսութե, սաելով 'ի կոնդակին. * վն զի սրբ աթոռ է, ուր հանգչի մարմին երանելւոյն բարթուղիմէոսի առաքելոյ ‖ ։ Եւ 'ի բենեւենտեան ժամագիրս եղաւ այս բան պանծալի առ սրբն

բար-

բարթուղիմէոս ։ * Հայաստան [illegible] քարոզէ զփառս քո ։ լիպարիս զուգանչելիս ։ բենեւենտ զգովութիւնս քո՝ ով երանելիդ բարթուղիմէ ։ և ամ՟ արարածք զշնորհս քո ‖ ։ զի յամ՟ տեղիս ցուցան զօրութիւնք սբ՟ առաքելոյն ։

Իսկ յամի 1338 ։ շինեցաւ հոյակապ եկեղեցի յանուն բարթուղիմեայ 'ի բենեւենտ՝ առընթեր մայր եկեղեցւոյ ։ և անդր փոխադրեցան նշխարք նր՟՝ կրկին տապանաւ, որ ագուցեալ 'ի մէջ իրերաց՝ պղնձի և քարեղէն ։ Այլ 'ի քայքայիլ տաճարին 'ի շարժմանէ յամի 1688, վերստին շինեցաւ ։ և անդ 'ի նոյր եկեղեցին եդաւ մարմին սբ՟յն յամի 1698, հանդերձ քննութ՟ ժողովոյ բազմութ՟ եպ՟սաց՝ աւելի քան զքսան և չորից ։ որոց գլուխ էր ուրսինոս կարդինալ՝ արքեպս՟ բենեւենտու ։ որ և 'ի կոնդակի իւրում ընդարձակ պատմէ զայս ամ՟ ։ Այլ այլք 'ի ժմկակից արանց գրեն, թէ նա ինքն ուրսինոս ետես զլոյս հրաշալի 'ի վր՟ նշխարաց սբ՟ առաքելոյն ի կամիլն բանալ զտապանն, և թուել զոսկերս նր՟ ։ զորս և որոշեալ ի մանր և ի խոշոր և ի փոշիացեալ մասունս՝ հանդերձ ծովային աւազովք և թեփովք կամ փշովք ձկանց, ամփոփեաց յայլեայլ անօթս ։ և զգլխաւոր մասունս զետեղեաց 'ի տապանակին ։

Այլ է և աւանդութիւն ոմանց 'ի հռովմայեցւոց ընդ բարոնիոսի, թէ յամի տն՟ իբր 980, կամ 1000, օթոն կայսր 'ի բենեւենտոյ 'ի հռովմ փոխադրեալ իցէ զմարմին սբ՟յն բար

թու

Թուղիմէոսի. զոր բազումք ջանացան ըստ ուրսինոսի 'ի դերև հանել. և արդարև կան կոնդակք հայրապետաց հռովմայ յետ այնորիկ յամի 1048, և 1058, և 1337, եւն, յորս տակաւին յիշատակի մարմնն առաքելոյն լինել 'ի բենեւենտ. վասն և սրբն անտոնինոս եպիսկոպոս փլորենտիոյ քաջ գիտակ այսմ անլուծանելի խնդրոյ, այսպէս ասէ (պատմ. մաս. ա. բերդ. 6. գլ. 12). * Հաստատակօրէն մարմինն նորա համարեալ լինի գոլ 'ի բենեւենտ. Թէպէտև հռովմայեցիք ասեն զայն առ իւրեանս ունել ||:

Ոչինչ ապա պարտ է ասել զայլևայլ նշխարաց սրբոյն բարթուղիմէայ, որք կան ըստ վկայելոյ և այլոց 'ի հայաստան, 'ի յունաստան, յիտալիա, 'ի գերմանիա, 'ի բեղգիոն, 'ի սպանիա և յանգղիա. և այն զի՝ զաջն կամ զբազուկն ասեն ունել ոչ սակաւք: Յայտ է թէ նախ զմանր մասունս իբրև ամբողջ նշխարս նշանակեն ամենեքին՝ ըստ որում են եղեալ յերևելի անօթս պատուականս 'ի ձև աջոյ եւն: Իսկ երկրորդ՝ շփոթեն բազումք զհամանուն սրբս՝ բարթուղիմէոս անուանեալս. յորս յետ սրբոյն բարթուղիմէոսի առաքելոյ հայոց՝ քաջայայտ է և սուրբ բարթուղիմէոս աշակերտ՝ մի յեօթանասնից. որ էր գործակից և չարչարակից սրբոյն փիլիպպոսի առաքելոյ 'ի յերապօլիս. և զի սա ևս պարզապէս առաքեալ կոչի որպէս զայլ աշակերտս, նմին իրի մեծ մասն մատենագրաց շփոթէ ոչ միայն զնշխարս, այլև զվարս նորա ըստ մեծին բարթուղիմէոսի.

որպէս

ոչ տեսցի և 'ի ծանօթութիւն :

Ընդ նշխարս սորին Բարթուղիմէոսի առաքելոյ համարել պարտ է և զօրհնակն Մատթէոսեան աւետարանի, զոր եթող նա 'ի Հնդիկս. ուր և յետ ժամանակաց երթեալ (յամի Տն իբր 185) պանտենոս իմաստասէր և քարոզ բանին՝ եգիտ անդ. ոչ պատմէ Եւսեբի. (պատմ. եկեղ. Ե. 10.) և այլք ընդ նմա :

Այս աստի առեալ արդեօք հին աղանդաւորաց՝ իշխեցին հանել սուտ աւետարան նաև յանուն Բարթուղիմեայ՝ ընդ յիշելոյ Հերոնիմոսի ('ի յառաջաբ. մեկն. Մատթ.) : Իսկ 'ի գիրս դիոնեսիոսի արիսպագացւոյ կայ նշան, թէ գոյին երբեմն և հարազատ գրուածք ինչ առաքելոյն. քանզի գրէ 'ի խորհրդական աստուածաբանութեան այսպէս. * Ապաքէն այսպէս ասէ աստուածայինն Բարթողոմէոս. և՛ շատ գոլ զաստուածաբանութիւն, և՛ նուազ. և զաւետարանն՝ ընդարձակ և մեծ, միանգամայն և համառօտ || :

Ուր գրէ սորին մաքսիմոս, թէ * Նշանակեա՛ և աստուսա, թէ այսորիկ են անկեղծութիւն աստուածային շարագրութիւնք մեծին դիոնեսիոսի. զի որ յառաջին բանսն զոմանց կենակից եղելոց ընդ առաքելոյն յիշատակ արար պիտոյից, այժմ նմանապէս զաստուածայնոյն Բարթուղիմէոսի 'ի մէջ ածէ զպէտս. ոչ յայտ առնէ տեղդ. զի թէ անգիր էր ուսուցեալ, ասացեալ էր արդեօք, ասէր || :

Այս և Նիկետաս պափղագոնացի գրէ 'ի ներբողեանն իւր առ սորին Բարթուղիմէոս. * Կեցցես ա՛յրդ երանելի, մեծագործ և սքանչե-

չե-

չէլի, որ ուսուցեր մեծ և փոքր, ընդարձակ և անձուկ գոլ զփրկական աւետարանն: Մեծ, զի գեր ՚ի վերոյ է քան զամենայն միտս և զհանճար բանաւորաց. և փոքր, զի բազմօք զիջեալ ՚ի փառաց անտի իւրոց՝ որ քան զերկինս է բարձրագոյն, պատկանեցոյց զանձն ՚ի խոնարհութիւն և ՚ի նմանութիւն երկրածնաց: Կամ, մեծ վասն մեծվայելչութեան աստուածութեանն, և փոքր վասն յետին նուաստութեան մարդկայինս բնութեան. որոց նոր խառնումն և զօդումն կացուցանէ զաւետարանին զբովանդակութիւն: Միանգամայն և ընդարձակ, վասն զի զարձակածաւալ և զանբաւ խորութիւն յինքն փակէ զհանճարոյ և զիմաստութեան ՚ի խորհուրդս գաղտնիս. իսկ անձուկ, զի զհամառօտն և զհակիրճն պարունակեալ ուսանդէ բան զոյ: Խնդամ և ուրախ լեր գերապայծառդ Բարթուղիմէ, որ զիւացեալդ այ, և արքունի զարդարեալ պատուով. քանզի աթոռ քեզ պատրաստեալ է յերկինս առ փառաց Թագաւորին քոյ, յորում նստցիս ընդ ծերս բանին՝ ընդ նախկին հետեւօղս քոյ, դատել զԻսրայէլ. որպէս և ունի աստուածայինն խոստումն յաւիտենից ճշմարտութեան ||:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Հաստատութե՟ ունիմք և ստուգութե՟ 'ի Ճառընտրի մերում զվկայաբանութե՟ նը՟ առաքելոյն մերոյ բարթուղիմէոսի՝ քան զայլ ամ՟ վկայագիրս այլոց ազգաց. որք բազմօք անմիաբան են յինքեանս, այլ յերկուս գլխաւոր իրս միաբանին ը՟ մեզ. նախ՝ թէ բարթուղիմէոս զառաջինն գնաց քարոզութե՟ մինչև 'ի հնդիկս ը՟ թովմայի. և երկրորդ՝ թէ յետ շրջելոյ յարևելս ը՟ բազում տեղիս՝ եկն 'ի հայաստան աշխ՟, և 'ի հայս կատարեցաւ և թաղեցաւ. այլ թէ ո՞րպէս, ոչինչ աւանդեն ստուգութե՟, և կարօտին մերումս վկայաբանութե՟: Եւ զայս տացուք իմանալ յընթացից քննութե՟ բոլլանդեան առն յովհաննու ստիլտինգայ, որ բազմօք աշխատասիրեաց յայսմ մասին, զառաջին երախայրիս վաստակոց իւրոց ընծայելով 'ի պատիւ սր՟յն բարթուղիմէոսի: Եւ այս կարգ է երկարապատում քննութե՟ց նր՟:

Սկիզբն առնէ 'ի խնդրոյ անտի, թէ բարթուղիմէոս է մականուն նաթանայէլի, և նոյն ընդ նմա. և առ այս ասնդէ նախ, թէ նաթանայէլ էր մի յերկոտասանից. զի թէպէտև օգոստինոս և մեծն գրիգոր չընդունին զայդ, բայց այլք 'ի հարց լինին ձայնակից. և երկ՟՝ թէ ոչ այնչափ սիմոն կանանացին է նաթանայէլ, ո՟ր յոյնք հնրկօրէն կարծեն (զուլաւէլ և զհայս), որչափ բարթուղիմէոս. և զայս հաստատէ եթէ բանաւոր պատճառօք, և եթէ վկայութե՟ ասորւոց և քաղդէացւոց (ը՟ որս խառնէ և զհայս). 'ի նոյն միտս է և 'ի յունաց նիկէտաս: Այսպիսի մեզ ընդունելի. բայց ոչ ունիմք հաւաստիս 'ի գրոց մերոց:

Այլս մերժէ իրաւամբք զառասպելեալ կարծիս ոմանց յասորւոց՝ յանուն սուտ դամասկացւոյն, ո՞չ թէ բարթուղիմէոս իջէ ազգաւ ասորի և թգ՟րազն. թերևս 'ի զփտոց առեալ, ստուգաբանելով զբարթողոմէոսն որդի պտղոմէոսեանց թգ՟րաց եգիպտացւոց: Լո՛ւր զառասպելն պարզարեալ ևս քան զևս ը՟ յառաջբերելոյ

պէտ-

պետրոսի Նատաղեայ. * Գրի 'ի պատմութեան իմիք, թէ
,, պէտէ յանդայտից կարգի, թէ յորժամ պատանեակ էր
,, բարթողոմէոս՝ եղբօրորդի անորդի թ̃գրին տարուոց,
,, լուեալ վն վ̃դպուն և սքանչելեաց ք̃ի՝ որ 'ի հրէաս-
,, տան, առաքեաց առ նա ասել՝ թէ սիրով աշակեր-
,, տէի քեզ, եթէ շնորհ մի շնորհեսցես ինձ. քանզի
,, լուաւ՝ թէ աշակերտք նր աղքատք էին և գձուձ հան-
,, դերձիւք շրջէին. վ̃յ ասէր, եթէ թողուցուս ինձ
,, ծիրանազգեաց մնալ միշտ՝ 'ի պատիւ արքունի շքոյս,
,, հետեւօղ քո եղէց յամ 'ի կեանս իմ: Եւ ք̃ն ներեաց
,, նմա զխնդրելին. միայն ասաց՝ ասել պատգամաւորին
,, յիւրմէ կողմանէ ցբարթողոմէոս, թէ որ չառնու
,, յանձն 'ի բաց դնել զգլամիդն արտաքին, հանդեր-
,, ձեալ է վն սիրոյ իմոյ 'ի բաց հանել յանձնէ զընաւո-
,, րականն հանդերձ, ը̃ զմորթ մարմնոյ իւրոյ: Եւ այս-
,, պէս ք̃ն ընկալաւ զբարթողոմէոս յաշակերտութիւն. և
,, նա միշտ պահեաց զծիրանազգեստ ձև յանձին ||:
Թո՛ղ զյաւելուածն այլոց, թէ 'ի պատճառս նր եղև
հակառակութն յընթրիս, եթէ ո՞ 'ի նոցանէ լինիցի մեծ:
Արդ 'ի հերքել ստիլսինգայ զայսանի առասպելս՝ ոչ
'ի միտ առնու, թէ նաև հին առասպելացդ հաստա-
տեալ է յերկուս անստոյգ աւանդս. առաջինն է ստո-
րական առ յոյնս և առ լատինս յետինս, թէ քերթեալ
իցէ մորթ սբյն բարթուղիմէոսի. զոր ոչ ճանաչէ ճա-
ռընտիրն մեր. և երևի առեալ կամ 'ի հարուածոց սբյն,
որով թերևս հերձոտեցաւ մարմինն, կամ 'ի բժշկելոյ
նր զհապարապետն՝ յորմէ անկաւ մորթն ողջոյն իբրև
զկեղև ծառոյ: Եւ երկրդն է աւանդն անհիմնելի՝ որ
կայ յանհարազատ պատմութն աբդիասայ, թէ բարթո-
ղոմէոս էր ծիրանազգեաց. ոչ̃ տեսցի զկնի. զոր և ոչ
ստիլսինգ ընդունի:

Իրաւամբք յերկբայս թողու քննիչն և զայն բան հաւ-
բերդոսի, զոր կարէր կոչել և մնացածին. ը̃ թէ որով-
հետև բարթողոմէոս մարթի թարգմանիլ ասորերէն՝
որդի ջրհանի, իսկ նաթանայէլ՝ է եբրայեցերէն պար-
գև ա̃յ, գուցէ նաթանայէլն բարթողոմէոս կոչեցեալ
իցէ՝ յորժամ տ̃րն զջուրն 'ի գինի փոխարկեաց 'ի հար-
սանիս կանայ գալիլեացւոց: Աւաւել հաւանական է
քան զայս՝ կարծիք սբյն եպիփանու, զոր չկամի ընդ-

գունել տոմարինգ, թէ նաւթանայել էր մի յաշակեր-
տաց գնացելոց յեմմաուս՝ ցի ընկեր կղէովպայ:

Մատուցեալ այնուհետեւ քննիչն 'ի բուն խնդրելին մեր վն վիճակի քարոզութե բարթուղիմէի առաքելոյն՝ քաջ հաստատէ նախ միաբան ը գրելոցս առ մեզ, թէ գնաց մինչեւ 'ի բուն հնդիկս. եւ թէ սխալեն՝ որք գնեն, թէ միայն 'ի հնդիկս եթէովպիոյ կմ երջանիկ արաբիոյ երթեալ իցէ: Բայց անդէն եւ ինքն տոմարինգ սխալէ ը նովին, որք կարծեն՝ թէ առաքեալն բարթողոմէոս եկեալ իցէ ընդ փիլիպպոսի առաքելոյ 'ի յերապօլիս, եւ անդ 'ի խաչ ելեալ, եւ ազատեալ 'ի խաչէ. եւ արդարեւ յայս սխալանս են բազումք 'ի յոյն եւ 'ի լատին մատենագրաց հնոց եւ նորոց. վն զի խառնեն զբարթուղիմէոս աշակերտ՝ զմի յեօթանասնից, ը բարթուղիմէոսի առաքելոյ՝ միոյն յերկոտասանից. վասն զի առ նախնիս երկոքին եւս առաքեալ կոչին անխտիր. ուր ճառընտիրք մեր գեղեցիկ որոշեն զերկոսեան. որպէս յայտ է 'ի վարուց փիլիպպոսի առաքելոյ, իսկ յայսմաւուրքն՝ է՛ զի որոշէ զերկոսեան, եւ է՛ զի շփոթէ:

Գտայ այնուհետեւ տոմարինգ 'ի հաստատել զգալուստ եւ զկատարումն առաքելոյն բարթուղիմէոսի 'ի հայս. եւ իբրեւ ծարաւի յարձակեալ 'ի տեղեկութե պատմութե եւ աւանդութե բնիկ ազգին հայոց՝ գտեալ է զերկուս աղբիւրս զարմանալիս, որք հազի՛ւ չիթ մի ունին ջրոյ յայսմ մասին, ցի են կղէմէս գալանոս, եւ յովսէփ սիմոն ասսեման: 'Ի գալանոսէ իմանայ զայն եւեթ, թէ հայք առաքեալ իւրեանց ճանաչեն զբարթուղիմէոս. բայց թէ ո՛րպէս եւ որո՞վ հնարիւք, ո՛չ գալանոս ուսոյց, եւ ո՛չ տոմարինգ ուսաւ: Իսկ յասսեմանայ լուեալ, թէ ասորի եւ քաղդէացի եւ նեստորական գրիչք միաբան աւանդեն շրջել առաքելոյն քարոզութբ 'ի միջագետս, 'ի հայս, յասորեստան եւ 'ի պարսս, խայտայ՝ ասելով, թէ ահա զխնդրելին մեր հաստատեն * հայ մատենագիրք ,, յառաջ բերեալք յասսեմանայ ||. եւ կրկին սխալանօք երկրորդէ, թէ այսպէս գրէ եւ * ամրոս հայ ||. որ ո՛չ է հայ, այլ նեստորական. ո՞չ եւ այլքն՝ ասորի, կամ քաղդանի:

Աստի իմանաս, թէ ո՛րչափ կարօտ էր քննիչն հարազատ պատմագրաց հայոց եւ ճառընտրին մերում. եւ զայս

կարօտութիւն իւր քաջ և ս յայտ առնէ այնու, զի 'ի վե՛ բերէ, թէ ոչ բարւոք արարին ուսուցարդ, ազնիւ, փիլոփոս, որք համարեցան զբարթուղիմէոս 'ի հնդկս նահատակեալ. այլ և փիլոբենտոնինիոս` է զի 'ի հնդկս ասաց, և է զի 'ի պարսս. վասն զի ասէ, * Յողովագոյն
,, հեղինակք զմեծն հայս ասեն պայծառացեալ մահ_
,, ուամբ առաքելոյն. որոց ձայնակցին և վկայագիրն
,, և ժամագիրքն հռովմէական ||: Եթէ չատանայր այ_
սու, բարւոք առնէր. բայց քանզի յառաւելն մխի յան_
գէտս` զհետ երթալով անգիտագոյն առաջնորդի, սխա_
լէ` գրելով այսպէս:

* Աւ 'ի չերկարել զբանս` մի առ մի կոչելով զհեղի_
,, նակս (մն կատարման բարթուղիմէայ 'ի հայս), եդից
,, զբանս տիլլեմոնտի, որոյ կարծիքն ինձ հաճոյ թուի.
" Ամ՛ նոր մատենագիրք յունաց և լատինացւոց միա_
,, ձայն ասեն, թէ մարտիրոսացաւ 'ի քաղաքն ալբանոյ
,, կամ ալբանուպօլիս ասացեալ, և երբեմն վրիպակաւ
,, ուրբանուպօլիս գրեալ, զոր դնեն լինել 'ի մեծն կամ
,, 'ի հնդկային հայաստան, ըստ կոչելոյ իւրեանց: Կար_
,, ծեմ, թէ գուցէ ալբանս քաղաքն իցէ` որ յալբանիա
,, (որ յաղուանս), յեզր կասպից ծովու, որ սահմանա_
,, կից է հայաստանի": Հաճոյ է ինձ ասեմ այս կար_
,, ծիք.... (զոր և այնպէս մակաբերութիւք յերկարէ
տիլլոմոնտ. և յարէ). Բայց թէ ոք զլաւագոյնս նշա_
,, նակեսցէ, ուսանել մանաւանդ ասա կամիմ, քան ու_
,, սուցանել: Իսկ զոր գրէ նիկեփորոս կալլիստոս.
,, Գիրք. Բ. Գլ. 10. թէ նահատակեալ իցէ յուրբանու_
,, պօլիս 'ի կիլիկիա, միոյ առն է բան. և չիք ոք այն_
,, չափ հեղինակութիւն, զի պարտ իցէ մեզ յամենալ 'ի
,, նմին ||:

Արդ քանզի խոնարհութիւ` ըստ ճշմարտութիւ` ուսանել քան ուսուցանել կամեցաւ քաջն տիլլոմոնտ, այսպէս ուղ_ ղագրելի են ասացեալքն 'ի նմանէ և 'ի տիլլեմոնտայ: Նախ` ոչ է սխալագրութի առ նմ, որք ուրբանուպօլիս գրեն, այլ առ նմ` որք ալբանուպօլիս գրեցին, այլ և Յն. բս. աւանուպօլիս: Քանզի այլ անսաք, խոտե_ նացին 'ի թղթ. առ սահակ արծր. գրեալ. * կատարե_
,, ցաւ յուրբանոս քաղաքի, 'ի բարմ անուանեալ տեղ_
,, ւոջն յանուն առաքելոյն ||: Նոյնպէս պարտ է խմա_

նալ

նալ զընթերցուածն ճառընտրի յուբիլանոս , զի յուբրլա-
նոս · և զխորեն · 'ի պատմ · Բ · 34 · * Վ՝իճակեցաւ հայոց
,, և բարդողիմէոս առաքելոյ , որ և կատարեցաւ ա-
,, մեզ յուբրանոս ( կմ՝ յարեբանոս կմ՝ յարևբանոս ) քա-
,, ղաքի || : Նոյնպէս և Նիկետաս յոյն գրէ · * 'ի քաղա-
,, քի միում հայոց մեծաց , զոր ուրբանուպօլիս կոչեն || :
Երկդ՝ ալբանն կամ ալբանուպօլիսն է վրիպակ , ոչ 'ի
տեղի անուանս աղուանք , այլ փոխանակ գրելոյ՝ աղ-
բակ · և զի կայ աղբակ մեծ , և աղբակ փոքր , բարւոք
գնի 'ի Հ · փոքրն աղբակ , որ առաւել մերձ է 'ի հոգւոց
վանս՝ ուր եկն առաքեալն Թ խորենացւոյն , և Թ նմին
մերձենայ նաև 'ի միջագետս՝ կմ՝ 'ի մծբին , ուր նստէր
սանատրուկ արքայ հայոց նահատակիչ սբյն · ուստի ա-
ռեալ է և սխալանքն նիկեփորայ՝ որ դնէ 'ի կիլիկիա
զուրբանուպօլիս : Այսոցիկ նպաստէ և պատմութիւն
գիւտի նշխարաց առաքելոյն · զի սբն մարտուրոսոյ 'ի
նփրկերտոյ դիւրաւ կարէր անցանել 'ի մծբին , կմ՝ ան-
տի նաև յաղբակ փոքր , քան թէ յաղուանս · և անաս-
տաս կայսր դիւրաւ կարէր բերել տալ 'ի դարա կամ
յանաստասուպօլիս միջագետաց զնոյն նշխարս 'ի նփրր-
կերտոյ , կմ՝ զայլ մասն 'ի հայաստանէ :

Եւ զի այսոքիկ այսպէս , ընդ վայր ջգնի այնուհետև
ստիպողին յերկարել զքննութիւն իւր առանց տեղեկու-
թեն պատմութեն հայոց՝ թէ յումմէ և որպէս նահատա-
կեցաւ առաքեալն բարթուղիմէոս · և որ մեծն է , բե-
րէ վկայութիւն 'ի յոյն և 'ի լատին օրինակագրաց՝ ընդու-
նելով զնս , և մերժէ ոչ առասպել վարքիւրն նց զար-
դիւս , ոչ և է իսկ կամ մերժելի և կմ՝ ուղղագրելի ·
ոչ և ընդունելի կարծեցեալ մատենագիրք՝ փոքր մի ո-
ղորկելով զարդեան պատմութն հետևին նմին · այլ
ժամ է տեսանել նախ զառաջնորդն , և ապա զհետևօղս
նորա :

Արդ ծանիր , զի ստիպողին ոչ գտեալ ուրեք առ ու-
մեք զհարազատ վարս սբյն բարթուղիմեայ՝ հարկի 'ի
մէջ առնուլ զանհարազատն · այն է գործ ընծայեալ
կեղծ անուան աբդիայ ումեմն առաջին եպսին բաբե-
լոնի՝ յառաքելոց անտի ձեռնադրելոյ · զորոյ զգործն
յեբրայականէ 'ի յոյն թարգմանեալ լինէ եւտրոպիոս
աշակերտ նր , կմ՝ յուլիոս ափրիկանոս · և այն վս ժմ

առաքելոց ուրոյն ուրոյն ։ Եւ աՀա զգրեալսն վն բարթուղիմեայ տպէ սոկլոինգ ամբողջ, եդեալ խորագիր այսպիսի . * Գործ առաքելայօք՝ յանուն սուտ
,, աբդիայ բաբելոնացւոյ || . զոր և մեզ Հարկ է քաղել
աստանօր ։

Քաղուած անՀարազատ Վարուց Բարթուղիմէոսի ։

* Հնդկաց Յ երրեակ ասի լինել 'ի պատմագրաց .
,, առաջինն՝ որ յեթեովպիա ձգի . երկրորդն՝ որ 'ի
,, մարս . երրորդն՝ որ եզր առնէ, 'ի միոյ կողմանէ ու-
,, նելով զերկիրն խաւարի |, և 'ի միւսմէ զովկիանոս
,, ծով · Արդ յայս Յ Հնդկաց եկեալ առաքեալն բար-
,, թողոմէոս՝ եմուտ 'ի մեՀեանն, յորում էր կուռք աս-
,, տարովթ անուն . և ոչ օտարական անդ կալեալ զչնա-
,, կութն ||: Եւ էր ասէ բռնեալ 'ի բագնի անդ դև՝ որ Հարկանէր զմարդիկ պէսպէս ցաւօք, և ապա պատճառ՝ զի եկեսցեն 'ի զոՀել, և ինքն խոստանայր բժշկել . այլ 'ի գալ բարթուղիմեայ՝ պապանձեցաւ դևն, և ոչ կարէր տալ պխնի, կամ բուժել զՀարուածեալս յիւրմէ . վոյ չոքան մարդիկն յայլ քաղաք, և Հարցին զկուռքն բերիթ կոչեցեալ, թէ ընդէր լռեաց աստարովթ . և նա ասէ . բարթուղիմէոս առաքեալն կապեաց զնա . զի ինքն է բարեկամ այ ամենակալի, և եկեալ է այսր 'ի բառնալ զդիս ։ Ասեն . և ո՞ւր գտցուք զայրն ։ Եւ նա ասէ . է սևաՀեր և գանգուր, սպիտակ մարմնով, մեծակն, ունչք ուղղաձիգ, երկայնամօրուս՝ ալեխառն, միջաՀասակ, կողոբաւոր, ծիրանազգեաց, սպիտակ կրկնոցաւ՝ ընդ ամ անկիւնս ունելով գոՀարս ծիրանիս . որ 'ի իէ ամաց Հետէ զգեցեալ ունի զայն Հանդերձս, և ոչ աղտեղանան և ոչ Հնանան . նոյնպէս և սանդալք ոտիցն անՀնանալի ։ Հարիւրիցս ծունր կրկնէ 'ի տուէ, և Հարիւրիցս 'ի գիշերի յաղօթս կայ առ այծ . և ձայն նր զօրաւոր իբրև զփողոյ ։ Հրեշտակք այ են միշտ առ նմա, որ ոչ թողուն նմա քաղցնուլ կմ ծարաւիլ . ամի կանխագէտ է, և ամ լեզուաց գիտակ . և 'ի խնդրել ձեր զնա՝ եթէ կամի՝ ցուցանէ զանձն, ապա թէ ոչ՝ գտանել զնա ոչ կարէք . այլ աղաչեմ զձեզ,

եթէ

եթէ գտջիք զնա՝ խնդրեսջիք վն̄ իմ, զի մի՛ զնոյն անցս անցուսցեն ը̄ իս հրեշտակք նր̄, զոր անցուցին ը̄ աս֊տարովթ:

Ապա խնդրեցին զնա զաւուրս երկու, և ոչ գտին. մինչև յաղաղակել սնեւստխոսի դիւահարի, այրեն զիս աղօթքք քո առաքեա՛լդ այ Բարթուղիմէոս, յայտնի եղև ամենեցուն: Լուաւ. Թգ̄ր քաղաքին և գաւառին պո֊ղիմիոս, որոյ դուստրն էր լուսնոտ. կոչեաց զԲար֊թուղիմէոս, և նա բժշկեաց զաղջիկն. յայնժամ ետ Թգ̄րն բառնալ յուղտս ոսկի և արծաթ, ականս պատ֊ուականս և պատմուճանս, տանել ՚ի բնակութի̄ սր̄յն. և ոչ գտին զնա: Այլ ՚ի գիշերի եկն եկաց առաքեալն դրօքն փակելովք ՚ի սենեակն արքունի. և ասէ. ո՛չ խնդրեմ զմարմնաւոր գանձս, այլ ծանի՛ր զՃշմարտու֊թի̄ն. և սկսաւ քարոզել նմա՝ սկսեալ ՚ի կուսական ծնն֊դենէ (որ դրի յերկար). ը̄ նմին և զփորձիլն յոյլ ՚ի սատանայէ (երկայնագոյն բանիւք. ուր և մանաւանդ ձեռնայ ոտ̄ դև անձնաւոր փորձիչ. և այլ ձևք խօսից կարօտք քննութե̄ կրխոխսաց). և ապա ծանոյց զպատ֊րանս կռոց, և զկապելն դիւին աստարովթայ յիւրմէ. և եթէ կամիս ասէ, տաց նմա խոստովանել զակարութի̄ և զչարութի̄ իւր առաջի քո: Եւ Թգ̄րն ասէ. ը̄ առա֊ւօտն եկից և ես ՚ի ժամ զոհին. և տեսից:

՚Ի վաղիւն անդր յառաւօտուն պահու եբեր սկսան քուրմք զոհել, աղաղակեաց դևն աստարովթայ. դադարեցէք, զի ես կապեալ եմ հրեղէն շղթայիւք ՚ի հրեշտակաց յոյ քն̄ի խաչելոյն ՚ի հրէից. որ պերեաց զմահ՝ որ է մեր թագուհին, և զայրն մահու զիշխանն մեր կապեաց հրե֊ղէն շղթայիւք. և յերրորդ աւուր յարեաւ յաղթօղ մա֊հու և սատանայի. և ետ զնշան խաչին իւրոյ առաքե֊լոց իւրոց, և առաքեաց զնս̄ յա̄ աշ̄, յորոց մի է և սա՝ որ կապեալ ունի զիս. արդ աղաչեցէք զնա թողուլ զիս երթալ յայլ տեղի: Եւ ՚ի բռնադատել առաքելոյն զդևն՝ խոստովան եղև և զայն, թէ այդ ա̄մ ախտաժետք էն ՚ի մէնջ ՚ի դիւաց հարուածեալ ը̄ մարմնոյ, զի հար֊կեսցին զոհել մեզ առ ՚ի խնդրել զբժշկութի̄. յայնժամ մեք տիրեմք ՚ի վ̄ր հոգւոց նց̄, և ապա թողումք զմար֊մինս. իսկ մարդիկ կարծեն՝ թէ առողջութի̄ տուաք նց̄: Յայնժամ ասէ Բարթուղիմէոս ցամբոխն. տեսի՞ք զանօ֊

տի պաշտամունս ձեր , զի են խաբէութիւնք սատանայի .
և եթէ կամիք՝ զի ես բժշկեցից զձեզ անուամբ տն̄ իմոյ,
կործանեցէք զկուռսդ , և հաւատացէք ՚ի ճշմարիտ ա̄ծն՝
զոր քարոզեմ: Եւ յանկարկել Թ̄գրին՝ արկին պարանս՝
ձգել զկուռս ՚ի վայր , և ոչ կարէին : Իսկ առաքեալն
ասէ ցնս̄ . Թողէք զպարանսդ . և ցդեւն ասէ . եթէ կա–
միս չերթալ յանդունդս , ե՛լ ՚ի բագնէ այտի , և խոր–
տակեա՛ զդա , և երթ յանապատ տեղի ամայի : Եւ դեւն
նոյնժամայն փշրեաց զաստարովթ , և զայլ ա̄մ փոքրիկ
չա̄ծս որ ՚ի մեհենին , և անհետ արար զպատկերս կռոց :
Եւ ժողովուրդն աղաղակեաց միաբան . մի է ա̄ծ ամե–
նակալ , զոր բարթուղիմէոս քարոզէ :

Յետ այսորիկ ՚ի կալ յաղօթս առաքելոյն յերկար՝ ե–
րևեցաւ հրեշտակ թևաւոր արփիափայլ . և թռուցեալ
է̄ չորս անկիւնս տաճարին՝ դրոշմեաց մատամբ իւրով
խաչ ՚ի քառակուսի քարինս . և սրբեալ զտեղին ՚ի սուտ
ա̄յ՝ բժշկեաց և զա̄մ ախտաժէտս . և ուսոյց նց̄ նոյնի̄մս
խաչակնքել ՚ի ճակատս իւրեանց . եցոյց և զնմանութի̄ն
դիւին զայլր տեսլեամբ՝ ձեռս յետս կապեալ . և իբրև
անհետ եղև չարն , ապա և հրեշտակն վերացաւ յեր–
կինս : Յայնժամ հաւատաց և մկրտեցաւ Թ̄գրն պողե–
միոս ա̄մ տամբ իւրով և զօրօք և ժողովրդովք . և ՚ի բաց
եդեալ զթագն և զծիրանիս՝ ոչ մեկնէր յառաքելոյն :

Յայնմ վայրի ժողովեալ քրմաց ա̄մ մեհենից՝ գնացին
առ աստիագէս կ̄ծ̄ աժդահակ արքայ ուրդ եղբայր նր̄ ,
և ասեն . եղբայր քո աշակերտեցաւ կախարդի միոյ , որ
զմեհեանս մեր յափշտակէ , և զա̄ծս մեր խորտակէ : Եւ
նա առաքեաց զօրականս հազար մի . որք կալան զբար–
թուղիմէոս , և բերին յատեան նր̄ կապանօք . և մինչ–
դեռ խօսէր ընդ առաքելոյն սպառնալեօք , դուժկան
եհաս առ աստիագէս՝ թէ ա̄ծն քո բաղդատ անկաւ և
փշրեցաւ . վ̄յ ետ գանել զբարթուղիմէոս գաւազանօք .
և ապա հրամայեաց գլխատել : Եւ եկեալ ժողովուրդք
երկոտասան քաղաքաց՝ որք հաւատացեալ էին ՚ի նա
հանդերձ պողեմաւ արքայիւ , բարձին զնա , և շինեալ
մատուռն մեծ՝ անդ հանգուցին :

Իսկ յաւուրն երեսներորդի յափշտակեալ ՚ի դիւէ աս–
տիագէս Թ̄գրն՝ եկն ՚ի գերեզման սր̄յն . և ա̄մ քրմա–
պետք դիւահարեալք՝ յետ խոստովանելոյ զառաքելոյ–

թն

թէ նր՝ մեռան անդէն: Վնյ յանհի եղեն անհաւատք, և բազումք 'ի նոցանէ հաւատացին, և մկրտեցան յերի_ցանց կարգելոց 'ի բարթուղիմեայ: Եւ ըստ յայտնութե միաբան հաւանութեք ամենեցունց եպս կարգեցաւ պղ_ղեւմիոս թշիրն, և սկսաւ յանուն տն նշանս գործել. և կացեալ յեպսութե ամս ի՝ տմ բարեկարգութ հանդերձ, փոխեցաւ առ տր. որում պատիւ և փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Արդ որչափ և կամի տրկլարինդ, ընդ վայր հարցէ զայս առասպելախառն պատմութի, մեզ չէ փոյթ. զի ուր մեք զհարազատն ունիմք 'ի ձեռին, անհարազատն ինք_նին հալածական լինի առաջի նր: Բայց անաչառ խօսե_լով պարտ է և աստ ուսուցանել տրկլարինդայ ուսում_նասիրի ինչ ինչ. նախ՝ թէ չէ մարթ նմա ուրանալ, զի այս անհարազատ վկայաբանութի սփռեալ է յարե_մուտս, ըստ իմիք և առ յոյնս. զի 'ի հռովմէական ժամա_գիրս ընթեռնուն լատինք 'ի տօնի սբյն բարթուղիմէո_սի այսպէս. *Եկն 'ի մեծն հայս. անդ զթշիրն պողիւ_
,, միոս և զկին նր, եւս և զերկոտասան քաղաքս էած 'ի
,, հաւատս քի. ընդ որ 'ի նախանձ բորբոքեալ յոյժ քրմ_
,, մաց ազգին՝ այնչափ վառեցին ընդդէմ առաքելոցն պա_
,, տիագէս զեղբայրն պողիւմեայ, մինչ զի հրամայեաց
,, կենդանւոյն հանել զմորթ նր անողորմաբար, և ապա
,, գլխատել. և այսպիսի վկայութ աւանդեաց զհո_
,, գին ||: Սմին նման գրեն և այլք 'ի լատին վկայա_գրաց, զմի եւեթ պարագայ յաւելլով 'ի վր պատմութե աբգարեայ՝ ոչ տեսանես. զի փոխկ զանից՝ մորթեզերծ լինել ասեն: Նոյնպէս խօսի և սբն թէոդորոս յոյն, բայց միանգամայն աւ ասելով. իսկ յովսէփ և նիկետաս զխաչելն յաւելուն՝ խառնելով ընդ չարչարանաց միւս բար_թուղիմեայ աշակերտի. զնոյն առնէ և Յն. բս: Վնյ ասելի է և եւս:

Երկրդ՝ թէ չէ մարթ տրկլարինդայ և այլոց կրկնակաց գտանել զելս իրաց, եթէ ոչ խոստովան լիցին, թէ ոչ սխալեն այս տմ պատմիչք լատինացւոց և յունաց՝ զհետ երթալով պատմութենն աբգարեայ պէսպէս օրինակաւ, նոյնպէս և ինքեանք քննիչք սխալին՝ ոչ գիտելով, թէ երկու են բարթուղիմէոսք, մին 'ի ժբից, և միւսն յեօ_թանասնից. և աբգարեայ և հետևողք նր՝ խառնելով զեր_

կոսին՝ խառնակեցին և զվարս նց̄, ոչ և զնշխարս նց̄ ։ զոր այսպէս ունին որոշել, իբր զի բարթուղիմէոս աշակերտ՝ գործակից փիլիպպոսի առաքելոյ՝ յետ խաչակից լինելոյ նմա 'ի յերապօլիս, ազատեցաւ ի̄ ճառընտրաց, և գնաց ը̄ քեռ նր̄ մարիամնեայ 'ի լիկայոնիա. և զի ասեման այնդէ ը̄ բազմաց՝ թէ յեթովպեան հնդիկս կամ յերջանիկ արաբիա գնաց մեծն բարթուղիմէոս, և ստիլտինգ՝ թէ ոչ անդ, այլ 'ի բուն արևելեան հնդիկս, ունի ոք ասել, թէ ոչ մեծն բարթուղիմէոս գնաց 'ի բուն հնդիկս ը̄ թովմայի՝ ի̄ ճառընտրաց և ի̄ խորենացւոյն և ի̄ եւսեբի կեսարացւոյ, գուցէ և փոքրն բարթուղիմէոս 'ի միւս հնդիկս իցէ երթեալ. և անդ գլխատեալ, եթէ մորթեղերծ լեալ իցէ կամ ոչ՝ մին կամ միւսն. զի զայդ ոչ հարազատ և ոչ անհարազատ վկայաբանութիւք աւանդեն. այլ երևի հոմաձայնութենէ հարուածոց գանից՝ որ քքով կամ գաւազանաւ, զայնպիսի միտս ընծայեցուցեալ ումանց, և 'ի նմէ յայլս տարածեալ ։ Աւելի ինչ քան զայս ասել ոչ ունիմք ։

Միայն դիցուք աստ և զքաղուածս երից յունական ներբողենից ստէպ յիշատակելոց. յորս կան հետք հարազատ և անհարազատ վկայաբանութեց միանգամայն, կամ ինչք ինչք չփոթումն բարթուղիմէոսի առաքելոյ ը̄ աշակերտի. իսկ զամբողջ ճառս նոցա ունին տեսանել բանասէրք առ ստիլտինգայ բոլլանդեան ։

ա. Ս̄ն թէոդորոս 'ի յառաջաբան ներբողին իւրոյ մեծայուցանէ զփառս առաքելոց երկոտասանից. և զբարթուղիմէոս վեցերորդ կամ եօթներորդ թուէ ը̄ դրոց՝ գովէ իբրև միջաձայն 'ի քնարս, և ոչ բազմախորհուրդ թիւ վեցեակ և եօթնեակ. այս ը̄ պետրոսի և յովհաննու ցուցեալ արժանի գովութե, ասէ. * Պետրոս
,, ուսուցանէ զազգս, և բարթուղիմէոս զնոյնպէս.
,, գեղեցիկ են ոտք պետրոսի աւետարանչի բարութեց,
,, և բարթուղիմէոսյ նոյնպէս պանծալիք՝ որ բարձրա-
,, գոյնս խօսի զայս. պետրոս գործէ նշանս մեծամեծս,
,, այլ և բարթուղիմէոս առնէ սքանչելիս զօրաւորս ։
,, Պետրոս գլխ 'ի վայր խաչի. այլև բարթուղիմէոս այլ-
,, օրինակ տանջանաց ժուժկալեալ՝ յետ կենդանւոյն
,, մորթեղերծ լինելոյ գլխատի . . .
,, Արդ՝ ով յառաքելոց աստ, և ով անդ կոչեաւ զմասն

,, տիե-

,, տխեղերաց 'ի քարոզութ աւետարանին . . . զի կացուս-
,, ցես զնա՝ ասէ գիր՝ իշխանս ը ամ երկիր : Եւ որում
,, յարդիս գովի հռչակաւ, վիճակ և բաժին եղև հայ-
,, աստան Ց, ձգեալ յեւրոպայ մինչև ցգաբաւոն՝ 'ի
,, բաղում ազգս և 'ի քաղաքս բաժանեալ . . . . Իսկ թէ
,, որչափ ինչ արար անդանօր, և որչափ ինչ կրեաց,
,, բանս նկարէ . յորոց ինչ ինչ ը աւանդութ հինպա-
,, մութե գործեցեալք, և ինչ ինչ ը կարդի աւետա-
,, րանական վիպութ ներգործեալք գտանին : Զի եթէ
,, լոյս է Ցի, ապաքէն զգործս լուսոյ եցոյց 'ի չեւես
,, լուսաւորեալս . եթէ աղ երկրի, ը նմին . . . և եթէ
,, մշակ, նոյնպէս . . . զի որ պհասարակացասի, և ըստ
,, միոյ միոյ 'ի նոցանէ է իմնալ . . . .
,, Եւ ըհանուր բանիւ ասել, կուրացն աչաց եղև լու-
,, սաւորիչ, բորոտաց սրբիչ, տենդից փարատիչ, կա-
,, ղաց գնացուցիչ, խլից ունկն տուօղ . . . Նոյն ինքն
,, չինօղ և Ճարտարապետ անձեռագործ չինուածոյն,
,, տաճարացն ասեմ ցոյ՝ որ կազմին հոգւով և Ճշմար-
,, տութե, և կատարին 'ի ժողովուրդ սեպհական՝ նա-
,, խանձաւոր գործոց բարութե : Տես ինձ զքաղաքս և
,, զընակութիս՝ զերբեմն անհաւատութե ապստամբեցե-
,, լոյ ժողովրդեան . . . այնուհետև դաշտս ծաղկաւէտս,
,, այգիս տնկախիտս, դրախտս անուշաբուրիչս . . . .
,, Այլ զո՞ր արդեօք վարձս փոխարինաց հատուցին
,, իւրեանց դարմանողի . . . փոխանակ պարգևաց պա-
,, տուհաս, և փոխան ը կենաց հանդստեան՝ մահ դառ-
,, նութե : Վն զի ասի զնմանէ, թէ յետ կրելոյ զբազ-
,, մապատիկ և պանհանդուրժելի տանջանս՝ մորթեզերծ
,, լեալ իցէ յամպարշտաց ոմ զկեղև . (այլք թարգմա-
,, նեն՝ ոմ փուք, կմ տիկ, կմ տերև .) և ապա գլխա-
,, տեալ : Յետ այնորիկ 'ի հաւատացելոց մարմին նորա
,, դնի 'ի տապանի . որ և որոց 'ի կեանս իւր եղև խնա-
,, մակալու, նաև յետ մահուան դատաւ քարոզ մեծ ոյ . . .
,, Եւ զի՞նչ պէնի գործեն (անհաւատք) . մոլեգնին ը-
,, դէմ սը մարմնոյն . . . և ընկենուն զհրաշագործ տա-
,, պանն 'ի ծով համատարած, ոմ թէ ոչինչ բարեգոր-
,, ծեալ իցէ 'ի նմ այնպիսի առաքելոյն . քանզի այս ախտ
,, է յաչաղկոտաց, զի 'ի կամաւոր կորստեան անձանց՝
,, և ոչ զայլոցն փրկութ հանդուրժեսցեն տեսանել . . .

,, Մեծն

„ Մեծն պետրոս || այլովքն հանդերձ, զոր եդաք 'ի
պատմութեան փոխադրութեան նշխարաց ։

Ը. Յովսէփ Ճառաբան՝ կարծեցեալ ս̃բ Յովսէփ երգաբանին յունաց, յետ յառաջաբանական պանծալի բանից՝ ասէ զՍ̃բ առաքելոյն Բարթուղիմէայ (չփոթելով ընդ Բարթուղիմէի աշակերտի), թէ գնաց ը̃ Փիլիպպոսի առաքելոյ 'ի յԵրապօլիս՝ որ երբեմն Ափիորիւմէ կոչիւր, և բնակիչք նորա օձապաշտք. անդ խաչեցին ասէ զՓիլիպպոս. իսկ Բարթուղիմէոս անցեալ գնաց քարոզել այլոց քաղաքաց. և 'ի քաղաքի ուրեք զնա ևս 'ի խաչ դատապարտեցին ։ Եւ խօսի 'ի բերանոյ ն̃ր զայնպիսի բանս՝ զորս խօսեցաւ Անդրէաս 'ի տեսանել զխաչն պատրաստեալ վ̃ն իւր. և ապա աղաչեաց ասէ Բարթուղիմէոս զդահիճսն, զի գլխիվայր խաչեսցեն զինքն (ո̃պ պետրոս). և այնպէս քարոզելով 'ի խաչին՝ աւանդեաց զոգին ։ Այս գրէ զմարմնոյն փոխադրութ̃է 'ի Լիպարիս՝ յետ ժամանակաց ծովընկէց լինելով, յոր և նման բանից Թէոդորոսի՝ առաւել մեկն և պարզ. և զկնի յօրինէ ներբող գեղեցիկ յոյժ ։

Թ. Նիկետաս պափլագոնացի այսպէս կարգէ զՃառ իւր վայելչական. * Տենչ վառեալ, այլ հանճար տկար.
„ սէր բորբոքեալ, այլ բան նուաստ ('ի գովել զառաքեալս Ք̃ի)... Քանզի այսօր մեծն զմեզ Բարթուղի-
„ մէոս 'ի տարևոր յիշատակի իւրում համախմբեաց
„ 'ի հռչակել գովութ̃բ զիւրոց շնորհաց զպայծառութ̃ի.
„ առաջի առնելով և զսրբութ̃է իւրոյ զգերապանցութ̃ի,
„ և զնշանս ազգի ազգի, ո̃չ և զչարչարանս և զխաչն՝
„ որում համբերէր 'ի սէր խաչելոյն, զմերս վառէ յինքն
„ զսէր. . . .

„ Սա 'ի մանկութ̃է բոլորովին ա̃յ նուէրական, ձևով
„ բարեպաշտութ̃է, կրօնիցն պաշտամամբ, օրինացն խոկ-
„ մամբ, պատուիրանացն պահպանութ̃բ՝ 'ի կատարեալն
„ հանդերձեցաւ ճշգրտութ̃է... Արդ յորժամ սկիզբն
„ և կատարումն հաւատոց երևեցաւ Ք̃ս... և ժողովէր
„ զոչխարսն ի̃էլի զկորուսեալս, յայնժամ և զարդարև
„ ի̃էլացին կոչեաց զԲարթողոմէոս ||։ Եւ յետ երանե-
լոյ բազմօք զառաքեալն վ̃ն լինելոյ աշակերտ և բարե-
կամ յ̃սի, և զկնի գովելոյ բազմօրինակ զառաքելական վաստակս ն̃ր 'ի քարոզութ̃ե՝ յիշէ զչարչարակիցն լինել

ն̃ր

Նր է փիլիպպոսի 'ի յերապօլիս · և ապա ասէ , թէ չըր-
քեցաւ յերջանիկ կոչեցեալ տրաբայխս , յետ այնորիկ և
'ի հնդիկս , և յարևելեան եթէովպացիս , հալածելով
զդևս և փարատելով զամ ցաւս , յարուցանելով զմե-
ռեալս , և դարձուցանելով և մկրտելով զբազումս · և
ապա 'ի ծերութե գիւղաց անդր՝ ուր կատարելոցն էր :

* Արդ որ այն իցէ ( ասէ ) առիթ կատարմանն · սեա-
,, ցուք , թէ որպէս և այն արժանի քնի · կայր 'ի քա-
,, ղաքի միում հայոց մեծաց՝ զոր ուրբանուպօլիս կո-
,, չեն , սրբազան տաճարանն · և մեծահրաշ և տաճարեալ
,, օրինակաւ ընդ սովորութե իւրում · · · զամ քարոզէր
,, զճշմարիտ , զամ կատարեալ , զմիայն սրբն · · · և զմարմ-
,, նացեալ 'ի սբ և յանարատ կուսէն և մարդացեալ · · · ·
,, Կէսք հաւատացին · · · և կէսք ընդդէմ դարձան , և
,, մատնեցին մեծամեծաց քաղաքին · · · · և նոքա գա-
,, ւազանօք հարեալ զնա՝ 'ի խաչ հանեն , իրաւունք են
,, ասելով , զի քահանայն խաչեցելոյն՝ մահու խաչի մե-
,, ռանիցի :

,, Իսկ նա զուարթ հոգւով երթայր 'ի փայտն , և ու-
,, րախութբ հեղուեալ լինէր 'ի խաչի : Յայնմ վայրի
,, հրեշտակք յերկնից 'ի վր նր իջանէին և ելանէին ,
,, ելս նմա հանդերձելով օդաստափառ · · · և նա յետ
,, գոհութե արձակեալ 'ի մարմնոյ · · · փոխի առ տր փա-
,, ռօք · · · և գերագոյն և առաջին պատուոյ հասանէ
,, ընդ պետրոսի և պօղոսի առ ծայրագոյն թգրին ան-
,, նեցուն : Այլ արդ առ քեզ դառնամ ով պատուա-
,, կանդ առ այ և ամենամբ գլուխ ||, եւ , ներբողական
բան առ սբն բարթուղիմէոս :

Արդ ո՞ ոչ տեսանէ , թէ անմիաբանութե մատենագրաց
վս եղանակի կատարման առաքելոյն յայտ առնէ , զի
խառնելով նց զմեծն բարթուղիմէոս ը փոքու , զառա-
քեալն ընդ աշակերտի՝ որ և առաքեալ կոչի 'ի հարց ,
ումն այսու և ումն այնու մահուամբ դնեն զնա նահատա-
կեալ · վսյ ոչայ ամենեցուն ապաստան լինել 'ի մեր
վկայաբանութե , որ հնագոյն է քն զամենեցուն , և ստու-
գագոյն :

Իցէ՞ թէ և յայսմաւուրք մեր պահէր յամի զհետս Ճա-
ռընտրաց , և ոչ ընթանայր յերկուս հետս · զի յետ զնե-
լոյ զատոյգ վկայաբանութե մեր 'ի դեկտ · 8 · ապա 'ի
փետր·

փետր. 16. 'ի վերայ յուդայ թադէոսի կամեցեալ է միա-
բանել և զանազանս այլոց՝ խառն բանիւքս այսորիւք ,
որք իցէ՞ թէ սուտգեացին. * Բարդողիմէոս գնաց յաղ-
,, բանկ. ուր մորթին հանաւ ոտին , և ոչ մեռաւ. և յետ
,, այնորիկ 'ի խաչ հանին , և ոչ այնու կատարեցաւ սքն
,, առաքեալն բարդողիմէոս. և ապա որք վեց քերքով
,, հարին զնա , և այնու կատարեցաւ սքն առաքեալն 'ի
,, քս ||: Ինչ մի միայն կարեմք ասել. եթէ ճշմարիտ
իցէ մորթեզերծ լինել առաքելոյն նախ քան զգլխով
հարկանիլն , որպ բազմաց էն կարծիք , անկեալ է ատղ
մի 'ի ճառընտրէ մերմէ : Բայց խաչիլն է ոչ նր , այլ
բարթուղիմէայ աշակերտի՝ գործակցին փիլիպպոսի.
որպ ուղիղ գրէ նա ինքն Հ. 'ի նոյեմբ. 17 :

Իսկ վն փոխադրութէ նշխարաց առաքելոյն բարթուղի-
մէայ ըն մասին յարևմուտս , զի 'ի լիպարիս կղզի սքան-
չելապէս , որպ և զկնի 'ի բենեւենտ , հարկ է անսալ
միաձայն վկայութէ յոյն և լատին մատենագրաց. որպէս
մեկն աւանդէ զնոյն և Յ. բս. և ժմ: Եւ եթէ տիլե-
մոնտ գժուարահաւան հրաշից՝ կամիցի կրկտել և սաս
պէսպէս պատճառանս , 'ի դէմս ածէ նմա սախլաինգ
զնորուն իսկ զասացուածն 'ի յառաջաբանի. հատ. ա. ե-
րես. 25. զի թէ՝ * Խոստովան լինիմք , զի 'ի բովանդակ
,, յայս գործ առաւել զհետ գնացաք հեղինակութե՝
,, քան տրամաբանութէ : Յաղթահարեալ եղաք 'ի բազ-
,, մութէ օրինակաց , թէ իրք՝ որ երևին մեծապէս ան-
,, հաւանական , սակայն է՛ զի ճշմարիտ գտանին ||:



ԱՒԱՐՏ

# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Յուդայի առաքելոյ՝ Թադէոս կոչեցելոյ ։

Հ. փետր. 16 ։ Յ. յունիս. 19. և մայ. 22 ։ Ն. հոկտ. 28 ։ Ճառընտ. 'ի վարս Բարթողոմ. ։

ԵՐԿՈՒ ԵՆ ՅՈՒԴԱՅՔ առաքեալ՝ մի յերկոտասանից, էր որդի Կղէոփայ եղբօր Յովսեփայ խնամօրին, վասն և կոչի եղբայր տն կմ խնամեղբայր՝ համգոյն աւագ եղբօր իւրում Յակոբայ արդարոյ, և ազգական քնի՝ զոյգ է այլ եղբարց իւրոց Սիմոնի և Յովսեայ. և առ որոշելոյ 'ի Յուդայէ իսկարիովտացւոյ՝ կոչի Յուդա ոչ իսկարիովտացի. կոչի և Յուդա Յակոբեան՝ յանուն եղբօր իւրոյ երիցու, որ և անձամբ զանձն պարծանօք անուանէ 'ի կաթուղիկէի իւրում,
* Յուդա յի քի ծառայ, և եղբայր Յակո-
,, բայ ‖ ։ Կոչի և Ղեբէոս, որ անուանեցաւ Թադէոս. վասն առ զանազանելոյ 'ի Թադէոսէ առաքելոյ Հայոց՝ որ մի էր յեօթանասնից, սա՝ որ 'ի դասէ երկոտասանից՝ կոչի և նա Յուդա Թադէոս, որ և կատարեցաւ 'ի սահմանակցութեն երկրին Հայոց և պարսից ։

'Ի

Ի համաձայնութիւն սորա եղև բազմաց շփոթել զպատմութիւն երկուց Թադէոսից, սկսեալ 'ի Հերոնիմոսէ՝ որ զեւսեբի զբանս յայտնիս երկդիմի իմացեալ, զայն թէ *յետ վերանալոյն Յի առաքեաց յուդայ Թովմա զԹադէոս առաքեալ մի յեօթանասնից (առ աբգար յեդեսիա) ‖, այսպէս գրեաց 'ի մեկնութիւն մատթէոսի. գլ. Ժ. * Ո Թադէոս առաքեալ՝ եկեղեցական պատմութիւն աւանդէ առաքեցեալ յեդեսիա առ աբգար արքայ խոսրհենայ (կամ Ուռհայու 'ի միջագետս). որ 'ի ղուկայ աւետարանչէ յուդա յակոբեան կոչի. և այլուր ղեբէոս, որ թարգմանի սրտիկ. արժան է հաւատալ՝ թէ եռանուն է ‖ : Իսկ ահա զմին յերկոտասանից խառնէ ընդ միոյն յեօթանասնից, զոր քաջ որոշէ եւսեբի յեկեղեցական պատմութեան անդ 'ի բազում տեղիս. և պատճառ շփոթութեան է այն, զի Թովմաս առաքեալն ևս կոչիւր յուդա, մինչ զի ըստ ոմանց բուն անունն էր յուդա, և մականունն Թովմաս կամ դիդիմոս, որ է երկուորեակ. և զի եղբայր սորա Թադէոս առաքեցաւ առ աբգար, կարծեալ է հերոնիմոս՝ որում զհետ չոքան և յոլովք, թէ նոյն իցէ ընդ յուդայ թադէոսի. այլ սակայն ճշմարտեալ է 'ի բազում գլխոց ընդ եւսեբի և ընդ խորենացւոյն, թէ որիշ են 'ի միմեանց Թադէոս եղբայր Թովմայի՝ մի յեօթանասնից, առաքեալ Հայոց տիրապէս, և յուդա Թադէոս յակոբեան՝ որ և ղեբէոս՝ մին յերկոտասանից. զորմէ ստուգագոյն աւանդ ըստ ճառընտրաց և ըստ յայսմա.

մաւուրաց մերոց՝ ունի օրինակ զայս ։

Սբ առաքեալն քսի յուդա Թադէոս եղբայր տն եւ յակոբայ արդարոյ՝ վառեալ զինու հոգւոյն սբյ քարոզեաց զաւետարանն արքայուէ յերկրին եդոմմայեցւոց, արաբացւոց, ասորւոց, հայոց, մարաց եւ պարսից. եւ առնէր սքանչելիս մեծամեծս 'ի հիւանդս եւ 'ի նեղեալս. դարձուցանէր զբազումս, եւ մկրտէր զհաւատացեալս. շինէր եկեղեցիս. եւ կարգէր քահանայս եւ պաշտօնեայս ։

Գրեաց զԹուղթն կաթուղիկեայց առ հեթանոսս աշակերտեալս աւետարանին առ 'ի զգուշացուցանել զնս 'ի հայրենաւանդ գնացից եւ 'ի խառնակեցիկ գործոց հեթանոսութէ, եւ յանուղղայ մարդոց անզգամաց՝ որք զանուն ունին հաւատացելոյ, եւ գործովք քարոզեն զանհաւատուի կմ հերձուածս յարուցանեն չարուէ. կեղծաւորին արտաքուստ սբ եւ օրինապահ, եւ 'ի ներքոյ լի են ամ պղծուԹբ. զորս եւ կոչէ շնչաւորս, եւ ոչ հոգեւորս ։ Երկու իրք են նշանաւորք յառաքելական Թղթի անդ, զի 'ի վկայուի ածէ զանգիր կմ զծածկեալ մարգարէուին Ենովքայ նահապետի. եւ յայտնէ զաներեւոյթ վիճումն հրեշտակապետին միքայելի ըդ բելիարայ. եւ այնպէս խորին՝ միանգամայն եւ յայտնի բանիւք հաստատէր զաշակերտեալսն 'ի հաւատս ճշմարտուէ եւ 'ի վարս ածպաշտուէ ։

Իսկ մինչդեռ շրջէր սբն յուդա 'ի մեծն հայս, պատահեցաւ առաքելոյն բարթուղիմէոսի 'ի սահմանս աղբակայ՝ 'ի բլուրն արտաշու կմ

ար-

արտաշատու. և եղև ուրախութի յոյժ երկո֊
ցունց 'ի տեսանելն զմիմեանս. և 'ի տեղին՝
ուր զմիմեանս տեսին, խաչ կանգնեցին. և
զգիշերն անդէն աղօթեցին, և օթեցան 'ի
տեղին. ուստի եղև աւանդութին այն գրեալ
'ի յայսմաւուրս բանիւքս այսոքիւք. * Մյ
խաչն՝ օթեաց խաչ կոչեցաւ. զոր մատամբ
'ի վիմին դրոշմեցին. և օրհնեցին օծմամբ
իւղոյն սրբութ, զոր ունէին ը ինքեանս զա֊
ւանդեալն 'ի քնէ. զոր օրհնեաց տէրն մեր
զիւղն օծութ, և ետ յառաքեալսն այնու
օծանել զհիւանդս, և բժշկել յանուն տն
զօրութեց : Ապա յայտ է թէ 'ի սպառիլ նա֊
րուն՝ ինքեանք առաքելք օրհնէին զիւղն, և
այնու օծանէին զհիւանդս յետ իջման հոգ֊
ւոյն սբյ, և 'ի քարոզութ:

Իսկ եղև 'ի վաղին անդր որոշեցան սբ առա֊
քեալքն 'ի միմեանց. բարթուղիմէոս գնաց
յաղբակ, ուր և կատարեցաւ իսկ. իսկ ա֊
ռաքեալն յուդա գնաց 'ի պարսկահայս, և
անդ քարոզեաց զքս գործակցութբ սիմոնի ա֊
ռաքելոյ կանանացւոյ. և բազում ճգանց և
նեղութեց համբերեալ՝ կատարեցաւ 'ի կող֊
մանս հերայ և զարեւանդայ՝ 'ի քաղաքն որ֊
մի. և անդ թաղեցաւ. ուր և ասի լինել աղ֊
բիւր բժշկութեց յեկեղեցին շինեալ զկնի յա֊
նուն նր. իսկ մարմին առաքելոյն յետ դա֊
րուց ասի բերեալ յարեւմուտս:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբ̃ և փառաւորեալ Ճգնազգեաց վկայիցն՝ Եւստրատիոսի, Եւգինէոսի, Աւքսենտիոսի կամ Օգսենտիոսի, Որեստի կամ Որեստեսի. և Մարդարիոսի, որ և Մարդայր, կամ Մարտայր (յ̃ն այր արի):

Դ. Յ. Ա. փետր. 13: Ղուկաս. Ա. յծ = յհէ: Մեկնիչք. առ ընթերցմանսն, և առաւօտուն. հատ. Է. երես. 975 = 986. և այլք:



ՀՆԳԻՆ ՍՈՒՐԲ ՓԱ-ռաւորեալ վկայք՝ պարծանք Հայաստանեայց, էին 'ի սահմանաց Ծիրին՝ մեծ և փոքր կոչեցեալ Հայոց: Պարագլուխ սոցա սրբն Եւստրատիոս՝ (որ յունարէն նշանակէ բարի զինւուոր, կամ քաջ զօրական), Հայրենական անուամբ պատուոյն Տ̃ր յուսիկ կարգացեալ, և 'ի Հելլենացւոց և 'ի Հռովմայեցւոց՝ առ չկարելոյ ուղղախօսել՝ Գիւխիկէոս, կամ չիախիչէս վերածայնեալ, էր Հայրենեօք յարաբրակ քաղաքէ մօտ յեկեղեաց գաւառ (որ և արաւրակ, կամ արօրկայ), այր առաքինի և քաջ, զինուորեալ 'ի գունդն կայսերական՝ որ յարևելս, յաւուրս Դիոկղետիանոսի և Մաք-

սիմիանոսի , և հաստեալ յաստիճան իշխանա-
կան արութբ քաջութե . որ և իւրով օրինակաւ
ձգեաց զնահատակակիցս իւր 'ի հանդէս
վկայութե վն անուան տն մերոյ յսի քի : Նոյ-
ունի պատմութի սքանչելի կատարման նց՝
միաձայնութբ ճառընտրաց հայոց , յունաց և
հռովմայեցւոց՝ օրինակ զայս :

'Ի Թգրել ամպարշտին և անօրէնին դիոկղե-
տիանոսի՝ ամ հռոմայեցւոց իշխանութին լցեալ
լինէր ամ հեթանոսական պաշտամամբքն՝
բազմատեսակ կռոցն մոլորութբ . և ամ մարդ
բարեպաշտութի զամպարշտութին համարելով՝
անզգայապէս 'ի չար կրօնսն յորդորեին , մա-
նաւանդ թէ գրաւորական հրամանաց ինքնա-
կալացն՝ 'ի մեծութի բարեաց հասուցանել
զփութացեալսն 'ի զոհս և 'ի նուէրս դիւոց .
իսկ զհեղգացեալսն յայնպիսի պաշտամանց՝
օտարացուցանել 'ի տանց և 'ի ստացուածոց .
նա և բազումք հանդերձ բազում պատուհա-
սիւք մձիռ մահու ընդունելին . քանզի այսպի-
սի հալածանք , և ամպրոպ խռովութե , և
սաստ պատուհասից տարածեալ լինէր ընդ
ամ երկիր :

'Ի սոյն իսկ ժմկի համբաւ իմն հասանէր 'ի
լսելիս անօրէն իշխանին , իբրու թէ ամ Քն
հայաստանեայց և կապադովկիա ընդդիմա-
մարտ եղեն Թգրական հրամանին , և միա-
բանութբ յապստամբութի իմն թեւակոխեն ,
զկնի գնալով քնական հաւատոցն , և անփո-
փոխ ունելով զմիտս իւրեանց 'ի յն ամն , զոր
և ամ քարոզեն : Օյսոսիկ լուեալ կայսրն
դիոկ-

դեոկղետիանոս՝ խառնեցաւ 'ի սրտի իւրում, և ցասմամբ մեծաւ առլցեալ՝ վարանէր. և նոյնժամայն հրամայէր կոչել զաւագանին և զխորհրդականս յիմաստնոցն հելլենաց-ւոց. և զերիս աւուրս 'ի խորհուրդ մտեալ հաստատեցին փոխել զկաղմնակալս կարգելս 'ի վն երկաքանչիւր Ազգացն այնոցիկ, պա-շտօնէրս և անարիս զնն կարգալով:

Այս փոխանակ նր առաքեաց Թղթն երկուս՝ որք եկեալ էին 'ի հելլենացւոց գաւառէն վարժք և կիրթք յարտաքին ուսմունս հե-թանոսաց, և խորամանկք խորագիտութբ քան զամ դասս սինկղիտոսաց: Անուն միոյն լիւսիաս, կարգեալ 'ի դքսութի համօրէն սահ-մանացն այնոցիկ իբրև մարզպան կուսակալ և զօրավար՝ որ 'ի հռովմայեցւոց կոչէր տուքս լիմիդանէուս, որպէս թէ սահմանապետ. և անուն երկրորդին ագրիկողայոս, որում տուեալ էր դատաւորական իշխանութի այն Ազգաց. պատուէր ունելով՝ զի ձեռնտու լինի-ցի սոցա և զինուորութի նմ արքունի գնդիցն, որ 'ի միջերկրեայսն և 'ի մերձակայ գաւառսն բնակեալ էին, և կոչէին ձեռն լիմիտացի, զր սահմանագունդ:

Արդ 'ի հասանել սոցա անդր՝ ոչ ըստ պատշա-ճառւոր պատճառի ածել 'ի վն վկայիցն նոյ զօրհասական մահն խորհէին, այլ փոքր ինչ մնասու և դաւանութբ՝ որպէս և հանդիպէր, կամ 'ի թշնամեայ մատնութե, կմ 'ի չարանա-խանձ արանց բանսարկութէ 'ի կորուստ մատ-նեալ լինէին անթիւ բազմութի ժանեօք

արիւնարբու գազանացն ։ Նոյնուհետեւ լիւսիաս դուքսն զբնակութի իւր 'ի սատաղացւոց քաղաքին առնելով, զորս գտանէր 'ի գաւառին յայնմիկ ոք արս կամ կանայս, յետ բզմ հարցափորձութեանց եւ դառն տանջանաց՝ հաստատունս 'ի քս տեսեալ զնս, արձակէր կապանօք զգուշութեամբ առ ագրիկողայոս դատաւոր 'ի մայրաքաղաքն սեբաստացւոց՝ զվախճան սոցա 'ի նմանէ ընդունել ։ Նոյնպէս եւ անօրէնն ագրիկողայոս զըմբռնեալսն 'ի սեբաստիոյ արձակէր 'ի սատաղացւոց քաղաքն առ դուքսն լիւսիաս՝ զպատուհաս մահու կրել 'ի նմանէ . զի մի՛ լինիցի պատժաւորաց դարման ինչ գտանել յընտանեաց կամ յազգականաց 'ի հայրենական գաւառն իւրեանց, նա՛ զի ոչ եւս մարմինք նց օրինաւոր թաղման հասանելով՝ պատշաճաւոր դիցին 'ի գերեզմանի ։

Սուստրատիոս ոմն էր իշխան յամին յայնմիկ 'ի գաւառն լիւսիայ բդեշխին, այր ածապաշտ եւ երկիւղած յայ, եւ անպարսաւելի քաղաքավարութբ կացեալ զաւուրս ժամանակաց իւրոց ։ Սորա տեսեալ զդառնաշունչ մրրիկ անօրէն իշխանին՝ տխրէր օր ըստ օրէ 'ի վր եղելոցն . զի տեսանէր հանապազ նորօրինակ իմն սաստ պատուհասից 'ի վր քրիստոնէից . եւ արտասուագոչ պաղատանօք եւ պահօք պնդութբ անդադար աղօթս մատուցանէր 'ի տուէ եւ 'ի գիշերի առ փրկիչն մեր քս, զի թերեւս հաշտեսցի ընդ ծառայից իւրոց, եւ հայեսցի 'ի ժողովուրդ իւր՝ զոր գնեաց ա-

արեամբն իւրով , և փրկեաց 'ի ձեռաց անօ-
րինաց ։ Զանկայր և ինքն ըղձալի տենչմամբ
զհաւատար սրբոցն դնել զջան նահատակութեան ,
և արժանանալ ընդ նոսին մեծի վկայութեան ․ այլ
զդաւաճանութիւն խորամանկութեան անօրէն իշ-
խանին տեսանելով՝ փոքր ինչ զանգիտէր յա-
ռաջիկայ մրցմանէն , և սակայն այսպիսի իմն
վրձակաւ զփորձ առնէր իւրացն ։

Նա ինքն կոչէ զմի ումն 'ի հաւատարիմ ծա-
ռայից իւրոց , և զիշխանական զգեստն տայ
ցնա , զի տարցէ յեկեղեցի քաղաքին արքու-
կայ կամ արաւրակացուց , ուստի էր ինքն ե-
կեալ 'ի զինուորութիւն , պատուէր տուեալ
զայս ինչ առնել նմա ․ մուտ ասէ յեկեղեցին
ծածուկ յամենեցուն , և դիր զգօտի իմ 'ի
վերայ սեղանոյ նորա ․ և դու զանձն քո թաքու-
ցես յեկեղեցւոջն ։ Եւ եթէ տեսանիցես ,
զի Աւքսենտիոս առ 'ի բազմաց վկայեալ և
պատկառելի քահանայն նորա բարձրելոյ՝ մտեալ
յեկեղեցի նորա զսովորական աղօթսն մատու-
ցանել՝ առցէ զգօտի իմ 'ի սեղանոյ անտի ,
թողցես առ նմա զանխլաբար , և առ իս
դարձցիս ․ ապա եթէ այլ ոք առցէ 'ի ժա-
ռանգաւորացն , մի թողացուցես նմա ։

Զայս խորհեցաւ երանելին Եւստրատիոս ,
զի եթէ երանելի երէցն Աւքսենտիոս առցէ
'ի սուրբ ձեռս իւր զգօտին , անօրէնութիւն իմն
իցէ ընծայլին՝ ազդելով նմա զցանկալի վկայ-
ութիւն , և ինքն իշխեսցէ մտանել յառա-
ջարկեալ նմին հանդէս մրցմանցն ․ ապա եթէ
այլապէս օրինակաւ հանդիպեսցի , գիտաս-

ցէ և իւրքն լուել և դադարել զանխլաբար , և ոչ համարձակիլ յանդգնաբար 'ի մարտ ճգնուն մտանել յայնպիսում ժամանակի ։

Մերթ յետ աւուրց ինչ անցանելոյ դառնայր ծառայ երանելոյն եւստաթիոսի՝ կատարել զհրամայեալսն . և պատմէր , եթէ է մտանել իմում յեկեղեցի անդր , և 'ի դնել զիշխանական պօտին քո 'ի վր սեղանոյ՝ թաքուցեալ իմ յեկեղեցւոջն՝ տեսի , զի 'ի նմին ժամու եկն եմուտ սրբազան աւքսենտիոս քահանայն 'ի տաճար անդր , և ոչ առաքեալ յումեքէ՝ ինքնին մտեալ 'ի խորան անդր՝ յինքն առնոյր զպօտին քո ։

Զայսոսիկ լուեալ 'ի ծառայէն իւրմէ երանելին եւստաթիոս , լի եղև անճառ խնդութբ . նոյնժամայն առեալ է ինքեան յապարանից անտի իշխանին զնմ բարեկամս իւր՝ 'ի ժամու ճաշոյն եկն է նս 'ի տուն իւր ուրախութբ մեծաւ , զուարթ և բերկրալի ըղձէմսն ցուցանելով . մինչև 'ի զարմացման լինել նմ ծանօթից նր է անսովորական կերպարանին . զի ոչ երբէք տեսեալ էր նր զնա այնպիսի զուարճալի երեսօք ։

Յայնժամ մի ոմն 'ի բազմելոցն է նմա , որ էր հասակակից նր՝ փոքր ինչ կրտսեր , և սիրելի բարեկամ և քաղաքակից , անուն նորա Լուդինէոս ( յն ազնուազգի , կմ բարետոհմիկ ) , համարձակեալ հարցանէր զնա՝ ասելով . ով բարիոք վարդապետ մեր և պատուական եւստաթիոս , միթէ վն հրամանի իշխանին մերոյ իցէ այդ քո զուարճութի , զի

հան

հանդերձեալ է ’ի վաղիւն ’ի հանդէս հանել
զա̃մ տանջանարանս պատրաստեալս ը̃դեմ
քրիստոնէից . վ̃ս այդորիկ Թերևս լի ես ու-
րախութ̃՝ ակնունելով շահիլ ինչ ’ի նոցանէ :
Զայս ասէր , զի Եւստրատիոս էր յամին
յայնմիկ ոստիկան կալանաւորաց , և գլուխ
զօրականին իբրև համարակալ և դպիր յիշա-
տակաց՝ կոչեցեալ ’ի հռովմայեցւոց գօմմէն-
տարիէնզիս : Յայնժամ ս̃րբն Եւստրատիոս
պ̃ինի եա , և ասէ . բարւոք ասացեր զայդ
սիրելի՛ եղբայր . քանզի եթէ յառաջեցից ո̃ք
իմով ’ի բարիսն յայնոսիկ , ակնունիմ և ես
մեծամեծ ինչ շահիլ յայնպիսի անապական
և անկողոպտելի գանձուցն :

Արդ ը̃ այգանալ առաւօտուն ’ի միւսում ա-
ւուրն , հրամայեր դուքսն լիւսիաս ’ի մէջ
քաղաքին բեմս բարձրագոյնս պատրաստել ,
և ա̃մ բազմութ̃ քաղաքացեացն միահամուռ
անդր ժողովիլ . և ինքն եկեալ ’ի թէատրոնն՝
նստէր ’ի բեմին . և հրամայէր զայնոսիկ՝ որ
’ի բանտին արգելեալ քրիստոնեայքն էին՝
ածել ’ի հարցափորձութ̃ տանջանաց . ը̃ որս
էր և երանելին աւքսենտիոս քահանայ , զոր
’ի նոյն աւուրս զբռամբ ածեալ էր դուքսն ,
և յաղթեալ յիմաստութ̃ն ն̃ր՝ ը̃ պատժաւորս
էր գրեալ :

Իսկ ս̃րբն Եւստրատիոս փութանակի հասա-
նէր ’ի բանտն իբրև ոստիկան , և աղաչէր
զս̃ք վկայսն՝ վ̃ս ինքեան աղօթս առնել . զի
և ես ասէ յաւուր յայսմիկ անձկալի տենչ-
մամբ բերիմ կցորդակից լինել չարչարանաց
ձե-

ձերոց ։ Յայնժամ ամենեցուն տարածեալ զձեռս իւրեանց առ Ա(ստուա)ծ՝ մեծաւ պաղատանօք 'ի վ(եր)այ Ն(ո)ր(ա) աղօթս մատուցանէին ․ և իբրև կատարեցին զաղօթս, և ասացին զամէնն, վաղվաղակի գնացին ընդ կողման դքսի զկնի երանելոյն եւստաթիոսի՝ ըմբռնեալ 'ի զինուորացն, և մինչ կային յատեան դատաստանին առաջի իշխանին լիւսիայ ․ և նա հրամայէր մի ըստ միոջէ մերձ կացուցանել զնոսն առաջի բեմին իւրոյ, սկսեալ յաւքսենտիոսէ ։

'Ի նմին ժամու յառաջ մատուցեալ եւստաթիոս զօրական անյաղթ Թ(ա)գ(աւ)որին ք(րիստոս)ի՝ ասէ մեծաւ համարձակութ(եամ)բ ցիշխանն լիւսիաս ․ Ապաքէն գրաւորական հրաման ինքնակալին դարձեալ վերծանեցաւ 'ի յանցելում աւուրս 'ի դատաստանի աստ, այն՝ որ հրամայեալ է զԱ(ստուա)ծ քրիստոնեայս 'ի հարցափորձութիւն տանջանաց մատնել ․ և յայնժամ աւքսենտիոս երևելի բախտիւ մեծութեան և ընտրեալ քաղաքավարութ(եամ)բ՝ առաւել քան զհանդիսացեալս քաջ արիութ(եամ)բ 'ի մարտ պատերազմայ՝ անմահական ջանիւ նահատակեցաւ առաջի քոյոյդ բեմի՝ որպէս քաջ զինուոր Թ(ա)գ(աւո)րին ք(րիստոս)ի, և զքոյդ վրդովեալ կշտամբեալ զանաստուածութիւնդ բանիւք իմաստութեան ընդ այ ․ և համբերութեան գործովք զքոյդ 'ի յետս նահանջեաց զկարծեցեալ խորհեմութիւնդ ։ Իսկ քանզի յօրէ յայնմանէ մինչև ցայսօր 'ի հանդիսական բանտին գոլով Ն(ո)ր(ա)՝ հրամայեցեր այսօր զարի և զմեծ նահատակն հանդերձ որքովք

ժո-

ժողովրդովքս ածել 'ի ք͞ննութիւն, ո՛րդ աւա-
սիկ կան ամենեքեան հանդերձ ինև առաջի
քոյոյ դատարանի . զի և ես զինուորել իմ
իմում անմահ և անվախճան թ͞գւորին ք͞ի ,
չարչարակից լինելով ս͞ց իմով կամայորդոր
յօժարութ͞բ՝ 'ի շիջուցանել զքոյդ բազմահը-
նար մեքենայս , զոր հայր քո սատանայ ար-
մատացոյց 'ի սրտի քում . և ո͞վ իմով յամօթ
առնեմ զբանսարկուին բռնութիւն :

Յայնժամ զարհուրեալ դուքսն լիւսիաս ը͞ն
անկարծելի բանս և ը͞ն համարձակութ͞ առնն,
և շառագունել երեսօք, և մահացու ակամբ
հայելով ը͞ն նա՝ որոտաց ձայնիւ մեծաւ , և
ասէ թունալի ցասմամբ . Պո՛ռն , միանգա-
մայն և պայծառ և հռչակելի եղև ինձ այս-
օր դատարանս . Իբրու զի՝ հայրենի հելլե-
նական իմաստութ͞բ լցեալս հանդիպեցայ չա-
րաբարոյ հռետորիս այսմիկ և դահճի . որ
շարժեաց զարժանասաստ և զարդարադատ
իրաւունսն և զհրամանս թագաւորացն ո՛չ
միայն 'ի վ͞ր իւր , այլև յո͞մ ապստամբելոցն
'ի բարերարութ͞ե ո͞ծոցն , և ստունգանողացն
զպատուէր ինքնակալացն :

Ապա ամպարիշտն լիւսիաս հրաման ետ զի-
նուորացն մերկացուցանել զեւստրատիոս ,
և ասէ , արդ նախ կողոպտեսցի՛ առաջի իմ
յիշխանական պատմուճանէն և 'ի քղամդէն
և յոսկեհուռ հանդերձիցն և 'ի պատուականն
գօտւոյն . և այսպիսի օրինօք յայտնի՛ լիցի
ամենեցուն օտարացեալ գոլ 'ի պատուո՛յ զի-
նուորութենէ . և ապա մերձ կացուցեալ մերկ
մարմ

մարմնով և լարիւք պարզեալ յոտից և 'ի ձեռ-
ռաց պրկեցի , և տարածեալ քառակուսի
ձգմամբ յերկիր մահանիցի ըստ յանդգնա-
գոյն հրապարակախօսութեան իւրոյ . և
զահիճքն վաղվաղակի կատարէին զհրա-
մայեալսն :

Յայնժամ ասէ ցնա դուքսն . ով եւստա-
տիոս , եթէ ոչ զղջացեալ դարձցիս 'ի չարա-
կրօն յամառութեցդ , մի՛ ակնկալցիս ապրել 'ի
ձեռաց իմոց՝ յաղագս կորստեան խորհր-
դոցդ , զոր սկսարդ : Սմին եւստատիոս ա-
սաց . ով լիւսիէ , զղջանալ այնոցիկ պարտ
է՝ որ 'ի բարեացն 'ի չարութիւն ընթանան ,
այլ ո՛չ որ զվատթարութիւնն արհամարհելով
զկնի ճշմարտութեան հետևին . ոչ և ես 'ի
սկզբանէ զհետ երթեալ եմ արդար օրինացն
ճշմարիտ այ իմոյ :

Դուքսն ասէ . նախ պատմեա՛ ինձ յառաջ քո
զտանջանս իւկ՝ զբախտ և զանուն և զհայ-
րենիս քո , և զգաւառն՝ յորում ծնեալ ես .
և զնորոգումն կրօնիցդ՝ որ զանխլացեալ էր
'ի քեզ . զոր ծանն մեզ ստուգութ : Սմին
եւստատիոս ասաց . յարաւրակայցոյ քաղա-
քէն եմ ես՝ ազգաւ և տոհմիւ . և անուն իմ
եւստատիոս կոչի . և ըստ հայրենի բարբա-
ռոյ հայկազանցս՝ Տէր Յուսիկ ձայնեն , զոր
յոյնք Կիռ իւսիկ ( կամ գիռ իսիգէս ) կար-
դան : Այլ ծառայ եմ ես ածն իմոյ այ՝ արա-
րողին զերկինս և զերկիր , և խոստովանող
որդւոյ նր յոր քոր և ամենասբ հոգւոյն՝ 'ի
տղայական տիոց , և 'ի մայրական խանձար-
րոց

րոց զպաշտօնս զայս ուսեալ եմ, և երկրպա-
գեալ:

Իսկ դուքսն հարցանէր զմ̃ գունդս զինուո-
րացն, թէ քանի՞ ևս ամէ կացեալ նր̃ յիշխա-
նութեն, և պարգևս ընկալեալ 'ի թգ̃րացն: Յայնժամ որ 'ի սկզբանէ ատեղեակք էին քա-
ղաքավարութե նր̃, ասեն ցդուքսն. քսան և եօթն ամ լցեալ լինի 'ի մերձենալ տարւոյս այսորիկ, որ 'ի գործ զինուորութե մտեալ է դորա. զի յառաջ քան զայն մանուկ տիօք գոլով նր̃՝ զեքսկեփտորի պէտսն ընէր: Սա է ը̃ն հռովմայեցւոց էքսէփդօռ, որ է դպիր կոմնոտար ատենի՝ գրիչ բանից թելադրելոց նմա 'ի զօրագլխէն կամ յատենակալէն:

Դուքսն ասէ ցն̃ն. արդ այժմիկ տեսանե-
լով եւստաթիէ զհասեալդ 'ի վ̃ր քո վիշտ տանջանաց, դարձի՛ր յամպարհաւան մտաց քոց. քանզի և մեք ողջախոհութե կամս 'ի մտ արկաք վ̃ քո, եթէ դու թօթափեսցես զքեզ յապառումն և 'ի վայրենի բարուցդ, և 'ի զգաստութի եկեալ՝ զբարեյաղթ դ̃ցն զմարդասիրապէս զօրութի՛ւն կարդասցես, և հրամանի յինքնակալաց մերոց հպատակ գտցիս:

Ս̃ն եւստաթիոս ասաց. չարաբարոյ դի-
ւաց և խուլ դրօշելոց ես ո՛չ զոհեմ, որ 'ի մարդկանէ կազմեալ և արարեալ են. զի բե-
րանք գոն նց̃, և ոչ խօսին. ականջք են, և ոչ լսեն. աչք են, և ոչ տեսանեն. ձեռս ունին, և ոչ շօշափեն. ոտս ունին, և ոչ գնան. և ոչ գոյ բարբառ 'ի կոկորդս նոցա.

վ̃յ

վ՟յ մարգարէն ասէ, նման նց՟ եղիցին ամե-
նեքեան՝ որք արարին զն՟ս, և որք յուսացեալ
են 'ի ն՟ս. զի ա՟ծք՝ որ զերկինս և զերկիր ոչ
արարին, կորիցեն 'ի ներքոյ երկնից։
Դուքսն ասէ. տեղի տալով իմով ներողութ՟
քում շաղակրատ ճոռոմաբանութե՟դ՝ զանըմ-
բռնելիս մտաց և զանճահս բարբառեցար 'ի
դատարանիս իմում, զանմահ և զբարերար
ա՟ծն մեր հայհոյելով և մահկանացուս զնա
կարդալով. մինչև 'ի ցասումն զմեզ շարժել.
վ՟յ պարտ է վրէժս պահանջել 'ի քէն ը՟ս յա-
մառութե՟ քում, և ը՟ս այնմ օրինաց հռով-
մայեցւոց, թէ պարտ է յա՟ծամարտից վրէժ-
խնդրող լինել։ Բայց ա՛ղէ ասա՛ դու ցիս.
մարդ՝ որ մտաց իշխան իցէ և իմաստուն խոր-
հրդով, զիա՞րդ իշխէ՝ ա՟ծ անմահ կոչել զայն-
պիսին՝ որ 'ի պոնտացւոյ պիղատոսէ խաչե-
ցաւ, և 'ի դասուց եբրայեցւոցն անարգաբար
ճաղեցաւ. այն՝ որ ոչ կարաց զանձն իւր փր-
կել, այլ իբրև զչարագործ 'ի վ՟ր փայտի կա-
խեալ եղև. զոր դու անհանճար մտօք զնա
արարիչ ա՟մ եղելոց անուանես։
Պ՟խնի ետ ս՟բն եւստրատիոս, և ասէ. ո՛վ
լիւսիաս, եթէ չէր ոգիդ քո հողանիւթեայ
զանգուածով ախտից խաւարեալ, և միտքդ
թմբրեալ բանսարկուին խորհրդովք, ցու-
ցանէի թերևս քեզ զխաչելեալն՝ ո՟ր և փր-
կիչ ա՟մ արարածոց, և յառաջ քան զյաւի-
տեանս որդի մշտնջենաւորին հօր, ճառա-
գայթ և կերպարան անսկզբանն՝ անապական
ծնողին իւրոյ. որ էջ անճառ խոնարհութ՟ 'ի
ծո.

ծոցոյ նր, և մարմին զգեցաւ մարդկապէս
յանարատ և միշտ կուսէն մարիամայ. և
զնմ կիրս կարեաց մերոց կրեաց՝ բաց 'ի մե-
ղաց. և չարչարանօքն իւրովք և նծահրաշ
Թաղմամբն և սքանչելի յարութ՟ին կանգ-
նեաց զանկեալ և զկործանեալ ազգս մարդ-
կան 'ի չար բանսարկուին խաբէութ՟է : Որ
եթէ 'ի ստայօդ և 'ի յերազապատիր պաճու-
ճանացդ քոց և 'ի սնոտի պաշտամանցդ հրա-
ժարէիր, և 'ի միտ առնուիր զմեծամեծ սքան-
չելիսն նյ, և զխնո՛րէիր իմում Թգւորին
քնի, իբրև զիս ժառանգորդ լինէիր անա-
պական և անվախճան կենացն յաւիտենից.
զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ
մարդոյ ոչ անկաւ. զոր պատրաստեաց նծ
սիրելեաց իւրոց :

Յայնժամ 'ի ցասումն սրտմտութ՟ բորբոքեալ
յոյժ անօրէնն լիւսիաս՝ ասէ ցդահիճսն.
բարձրացեալ լիցի յերկրէ լարիւք արխա-
գոյնդ այդ և ճոռոմդ 'ի պխնատոնուհի սնո-
տի բանիւդ. և հուր 'ի ներքոյ տարածեսցի,
և 'ի վր Թիկանց արբցէ գան սաստիկ. և ա-
սացէք դմա՝ հնազանդ լինել հրամանաց Թագ-
նակալին, և ոչ հայհոյել զզօրութի և զփառս
ածոց մերոց : Նա սպասաւորքն վաղվաղակի
կատարէին զհրամայեալսն 'ի բռնաւորէն.
ձգլի 'ի բազում ժամս տարածանէին 'ի ներ-
քոյ լանջաց և որովայնի նր զհրատ բոցոյն,
և այրէին խորովէին զնմ մարմինս վկային
մինչև 'ի ներքսին անդամսն. և դժնդակ տան-
ջանօք զԹիկունս նր չարչարէին՝ հարեալ փշա-

լից

լից գաւազանօք. մինչև պատառ պատառ մարմինք նր̃ յերկիր անկանէին ։ Իսկ յայսմ ամի ոչ զձայն նորա լուեան, և ոչ այլայլեալ գտին զգոյն երեսաց նր̃. այլ էր տեսանել և կարծել ամ̃նեցուն, իբրև թէ օտար մարմնով կրիցէ զպատուհասն ։

Յայնժամ զարհուրեալ բռնաւորին ըն̃ համբերութ̃ն սր̃յ վկային, և զարմացեալ ըն̃ միտս ոգւոյ նր̃ 'ի նմա, հազիւ ուրեմն հրամայէր դահճացն դադարել 'ի տանջելոյ. և ծիծաղելով ասէ ցսր̃բ վկայն. ասա ինձ ով Եւստատիէ, որպէս է խոհեմութ̃ քո. ախորժեա՞ս և այլ ևս տանջանս կրել, զի հրճուեալ ուրախասցիս. զոր և փառս անձին քում համարիս ։ Եւստաթէոս ասաց. յոյժ ըղձամ և փափագեմ այնմ ցանկալի փառացն, յոր հասուցանել զիս խոստացար. զի գրեալ է, ոչ են արժանի չարչարանք ժամանակիս հանդերձելոց փառացն՝ որ յայտնելոցն է 'ի մեզ։ Ասէ դուքսն ցմերձակայ զօրականսն իւր. յոմ̃ տանջանարանաց՝ զոր դա ախորժէ, պատշաճ վարկանիմ արկանել 'ի վր̃ չորաքասու մարմնոյ սորա աղ և բորակ խառնեալ ըն̃ քացախոյ, զի մորմոքեսցին հերկիզեալ վէրք դորա. տարածեսցի և 'ի գետնի խեցի և տատասկ փշոց, և այնպէս շրջ շրջեսցի 'ի վր̃ նր̃ սաստկապէս, մինչև քանցիլ ջլաց և ոսկերաց դորա. զի յագեսցի պարգևօքն զոր խնդրէ 'ի մէնջ ։ Իսկ սպասաւորքն չարին յոյժ փութային հասուցանել սր̃յն զպատուհաս չարչարանացն. իսկ նահատակն քր̃ի տակաւին

ևս

եւ մեծաւ ուժով կայր եւ ժուժկալէր. եւ ոչ հեծ ինչ՝ եւ կամ բարբառ լսելի լինէր. այլ միայն 'ի սրտի իւրում գոհանայր զՏնէ վասն կրից տանջանացն :

Աշխանին ասէ. զարմացեալ եմ կարի քաջ, թէ որպէս իբրեւ զխաղալիկ համարի զամեկեալսն 'ի վՐ իւր զինուորդ նազովրեցւոյն, եւ զմերովքս քամահէ զտանջանարանօք : Արդ այժմիկ գոնէ ասասցէ, թէ յայսմ հետէ ըզգաստացաւ, եւ հաւանի՞ մեծաց ածոցն երկրպագուԹ մատուցանել ըս հրամանի ինքնակալաց. եւ ընկալցի պատիւ եւ մեծութիւն 'ի մենջ եւ 'ի Թգրաց :

Եւստատիոս ասէ. սակս ածոց ձերոց սնոտեաց՝ յորոց երկնչիս, զայս պատուհաս ածեր 'ի վՐ իմ, տգիտացեալ ով դատաւոր, եթէ տանջելով զմարմինս՝ զհոգիս իմ զօրացուցեր, եւ անպատում բարութեց երկնից արժանի զիս արարեր. եւ հորդեցեր ինձ ճանապարհ փրկութե՛՝ ելանել 'ի մարմնոյս ամբծութե՛, եւ մտանել առ որ անձկացեալն եմ, եւ վայելել 'ի մշտնջենաւոր եւ յանանց բարութիւնն ընդ կամարարս անուանն իւրոյ : Արդ զոր ինչ առնելոց ես՝ արա վաղվաղակի. զի զածսն քո գարշելի եւ պիղծս համարիմ. եւ զՏմ զմեծութիւն Ծի եւ զփառս իբրեւ զաղբ անպիտան վարկանիմ. ապականացու եւ խոտան երեւին ինձ այդոքիկ, զի զքո՞ չահեցայց. եւ զուարթերես կացից առաջի նր 'ի հանդերձեալ յաւիտենին :

Դուքան ասէ, ով աղաջուր դու, եւ չարի

բախ-

քախտի հանդիպեալդ և թմբրեալդ արբե-ցութք անմիտ խորհրդոց, ընդէ՞ր կորուսանես իսպառ զպատիւ և զմեծութիւն ընտրութեանդ, և դառնութք զրկեալ 'ի քաղցր լուսոյ Այ՝ կամաւ իջանես 'ի դժոխս. և կի՞մ զի՞նչ իցեն փոխարէնք հատուցմանցդ՝ որոց ակնածես:

Ունի ա երանելին Եւստաթիոս. յայս հանդերձելոցն՝ զոր ունիմք, անճառ է, և ոչ բերանով պատմի. և չիք նը օրինակ յերևելի և յապականացու արարածոցս. և ոչ զայն Ած անպատում բարիս խոստացաւ Ած կամարարաց իւրոց սիրելեաց, այնպէս և անհաւատիցն՝ որ իբրև զքեզդ իցեն, և ուրացողացն զճշմարտութի, գանձեալ պահի հուր գեհենին մշտնջենաւոր և անշէջ, կրճատումն ատամանց, և լալ աչաց, և որդն անքուն, և աղջամղջին խաւարն արտաքին. զի այս Ած պատրաստեալ է սատանայի, և կատարողաց զհաճոյս կամաց նորա: Ու մեք յուսով բարեաց աներկիւղ տանիմք զանազան և դառն տանջանաց՝ որ 'ի ձէնջ գան 'ի վր մեր. զի փրկեսցէք յորոգայթից բանսարկուին՝ զուարթերես կացցուք առաջի բեմին Քի:

Լուսխաս ասէ. եթէ հնար գոյր Այն քո՝ ոչ դու ասես, և կարէր վաղվաղակի անմահութեն իւրոյ կցորդ առնել զքեզ, փրկէր յառաջագոյն 'ի տանջանացն, զոր պատրաստեալ է իմ քեզ. վա՜յ լուր ինձ, և զանապատակ կամս քո մերժեա՛ 'ի քէն, և եկ յուղղութի:

Ակաւ խօսել երանելին, և ասէ. ո՛վ խաւարասէր, և չարին գործակից՝ հեռացեալ

՚ի կենացն յաւիտենից. արդ հայեաց և տես
զիս, զոր դու մեռեալ և կորուսեալ կարծէիր
այնչափ ժամանակօք. և ահա ոչինչ անհնար
եղև Տն̃ իմոյ կրկին նորոգել զիս և կեցու-
ցանել, ողջացուցանելով զքո̃ւմ վէրս և զցաւս
մարմնոյ իմոյ:

Յայն բան սորին՝ մինչդեռ ա̃մ բազմութի̃ քա-
ղաքին պշուցեալ հայէին, ինքն յանկարծա-
կի իբրև կեղևանք ինչ ծառոյ ՚ի բաց անկա-
նէին ՚ի մարմնոյ անտի. և սո̃ն ողջանդամ
երևէր ա̃մ բազմութե̃ն. ոչ̃ զի ոչ սպի ինչ կամ
վէրք երևէին ՚ի նոր մարմինն նր̃. վ̃ոյ միաբան
յոքնախուռնմբ ռամիկ քաղաքին փառաւոր առ-
նէին զա̃ծ ՚ի վ̃ր սքանչելեացն, զոր եցոյց առ-
նը վկային իւր. և դուքսն ափիբերան լինէր:
Յայնմ վայրի մի ոմն ՚ի զօրականացն, այն է
եւգինէոս քաղաքակից սորին եւստաթիոսի,
և իշխանական պատուով ՚ի նորուն դասուցն,
տեսեալ զնր̃ անշարժ համբերութիւն՝ որ վն̃
քն̃ի, աղաղակեաց ՚ի ձայն մեծ, և ասէ. յի-
սուս յիսուսիս, և ես քրիստոնեայ եմ՝ ծա-
ռայ տ̃ոյ բարձրելոյ՝ արարողին զերկինս և
զերկիր. և զկրօնս քո նզովեմ, և զդ̃ծսն քո
արհամարհեմ. և ը̃ քո և ը̃ ամպարիշտ թա-
գաւորացն կամս հակառակիմ իբրև զն̃րս
իմ եւստաթիոս: Իսկ անօրէն իշխանն յամօ-
թոյ նախատանաց իւրոց առաջի բազմամբոխ
հրապարակին խոնարհեցուցեալ զգլուխ իւր՝
ը̃ երկիր պշուցեալ հայէր. ապա ետ քարոզ
կարդալ, և ասել. Ո̃ չարաբախտս այսօ-
րինկ և նորագոյն երևելոյս ը̃երկար հարցա-

փորձուե̃ց և քննուե̃ց պէտք են . զի այժմիկ ոչ ժամանեմք , այլ 'ի հանդիսական իրողութ̃իս զօրացն փութ̃ամք ը̃ մերոց սովորուե̃ց . և զկախարդասարս զայսոսիկ՝ զեւստռատիոս հանդերձ եւգինէոսիւ̂ համախոհիւ̂ իւրով 'ի բանտ հրամայեմ արկանել , և անուր երկաթի 'ի պարանոցս և յոտս նց̃ դնել , և ըզգուշութ̃բ պահել հանդերձ այլովք մահապարտօքն . զի 'ի պարապորդ և 'ի պատշաճ ժամու ը̃ օրինին դատեցայց զնս̃ . և զայս ասացեալ յարեաւ յատենական աթոռոյն :

Արդ քարշեալ զինուորաց զերանելիսն կապանօք ը̃ հրամանի իշխանին՝ եդին 'ի ներքնում 'ի խաւարչտին տեղւոջ բանտին: Իսկ երանելիքն մեծաւ ցնծութ̃բ և ուրախութ̃բ օրհնէին զա̃ծ . և սաղմոսէին միաբան ձայնիւ̂ . ահա զի՞ բարի և զի՞ վայելուչ , զի բնակին եղբարք 'ի միասին . և հանէին կալանաւորքն ա̃մ ը̃ նս̃ զա̃մ գիշերն 'ի գլուխ յաղօթս ա̃յ . և ուսանէին 'ի սր̃յն եւստռատիոսէ զհանդէս նահատակութ̃ե մարտին , և զհամբերութ̃ն ժուժկալութ̃ե , և զփոխարէն անճառ բարեացն՝ զոր պատրաստեաց ա̃ծ սիրելեաց իւրոց :

Իսկ ը̃ առաւօտն 'ի ծագել արեգականն յարուցեալ դուքսն փութայր գնալ 'ի քաղաքն նիկոպօլսացւոց . և նախ գայր իւրովքն 'ի բանտն՝ յորում է̃ր վկայքն էին . և միայն զերանելին եւստռատիոս հրամայէր արտաքս հանել . և յորժամ եկն , ծիծաղելով և խնդալից դիմօք լրբութ̃ե ասէ ցն̃ա վկայն . ո՞ղջ լեր

լեր սիրելի՛ Եւստրատիէ ։ Ունի եւ սբն ․ տծն ամենեցուն՝ զոր պաշտեմ՛ ի մանկութենէ իմմէ, նա ողջունեսցէ զքեզ արժանապէս ով լուսիկա ։

Դուքսն ասէ ․ յաղագս այն քո ինձ ոչինչ փոյթ է ․ այլ դու յառաջիկայ ժամս զտուե՛ր զքեզ հողաթափդ արկցես յոտս քո ․ զի այդու դիւրընթացիկ լինիցիս զկնի մեր յուղեկցութիւնս ճանապարհին ։ Եւ հողաթափքն այն էին տատասկեալք երկայն եւ ստուարասուր բեւեռօք, մինչեւ անցանել ը̃ ներբանս ոտից ։ Արդ զինուորացն բերեալ ագուցին զհողաթափսն յոտս երանելոյն զերկաթեղէնսն, եւ ի միասին խրացիւք սեւեռեալ պնդեցին ․ եւ իշխանն կնքեաց մատանեաւ իւրով ․ զի մի՛ ոք գթացեալ ի վր̃ սր̃յն հանցէ զայն ի բաց ի գարշապարաց նորուն ․ եւ պատուիրեաց դահճացն հարկանելով եւ քարշելով ածել զնա զճանապարհայն՝ հանդերձ այլ եւս ընկերօքն, որ էին ի բանտին ։

Եւ ինքն չուեալ հանդերձ բազմութբ̃ զօրացն՝ գայր հասանէր յետ երկուց աւուրց, եւ բանակէր մերձ առ դղեկին՝ որ է հուպ ի քաղաքն արաւրակացւոց ․ եւ ի հասանել սրբցն անդր՝ ամ̃ բնակիչք քաղաքին այնորիկ ելանէին ի տեսանել զերանելիսն ։ Բայց ոչ ոք յազգականաց կմ̃ ի բարեկամաց սիրելեաց երանելոյն Եւստրատիոսի իշխէր մերձենալ առ նա վս̃ երկիւղի իշխանին ․ զի մի՛ եւ նոքա ըմբռնեսցին ։

Մարդարիոս ոմն, որ եւ Մարդայր ասի, ռա-

մին գոլով՝ լցեալ առաւելք և քաղաքավարեալ արդարութ[եամբ] ,յուսովն յայնոսիկ չինէր յարկս բնակութ[եան] իւրեանց . և 'ի տանեաց անտի՝ մինչ դեռ ծածկէր զձեռնունս տանն՝ հայեցեալ գիտէր և տեսանէր զորս վկայսն որ , զի կապանօք անցուցանէին ընդ պողոտայն , որ էր մերձ 'ի գեօղն յայն : Նաեւ 'ի մէջ սոցին զերանելին եւստատիոս կապեալ ձեռս յետս , և ծանեաւ վազվաղակի . և փութացեալ էջ անտի . և առ ցկին իւր զհրամարտութիւն 'ի բարբառ հայերէն . Մի կին տեսանես զորն մեր եւստատիոս՝ անուանեալն որ յուսիկ , կամ կիւրիսիկ , զի չխամն որ շրջաբնակութեան մերոյ . զի 'ի բաց լքեալ արհամարհեաց զգերապատիւ զայնքան և զայնպիսի մեծութիւն և զփառս ցիս , և զոր երևելի փարթամութիւն ընչից և ստացուածոց և ազգի և տան , և զքաղցրամարտիկ զինուորութիւն՝ զոր ոչ ոք ունէր նման նմա 'ի մէջ երկրէս այսքս որ . և ահա է այժմ կալանաւորն երթայ 'ի տեղի հանդիսի վկայական կատարման . զի զկնի ցանկալի կենցաղավարութեան իւրոյ զյաւիտենականն ժառանգեսցէ զարքայութիւն :

Ով սքանչելի և պարկեշտ կին նոր առէ ցնա . զի՞նչ խափան լինիցի և քեզ երթալ և ուղեկից լինել ընդ նմա , և հետևիլ ընդ երկնաչու ճանապարհն , և հաղորդ լինել չարչարանաց նորա . այն՝ որ զյաւիտենական զանապականութեան վերաբերեցանէ զերաքինսն . և պաշտպան փրկութեան լինիցիս ինձ և երկուց մանկանցս , և բնաւին ազգատոհմին քո :

Յայն

Յայնժամ ցանկալի այլն այն և բարենշան՝ վառեալ հրով հոգւոյն փութայ խառնիլ ըղձալի տենչմամբ 'ի գունդս սբց վկայիցն քյ. և առժամայն գիրկս արկեալ զպարանոցաւ մանկանց իւրոց՝ համբուրեաց զնս, և ասէ. Խաղաղութիւն ընդ ձեզ սիրելի որդեակք իմ. և տարածեալ զձեռս իւր յաղօթս առ տր՝ ասէ արտասուհագոյ պաղատանօք. Տէր ած հայր ամենակալ երևելեաց և աներևութից, որ 'ի ձեռն սիրելի որդւոյ քո յսի քսի և ամենասբ հոգւոյդ նորոգեցեր զմս արարածս, և ծանուցեր զածութիւնդ քո ամ որդւոյ մարդկան, և բացեր մեզ զճանապարհ փրկութե 'ի կենանան յաւիտենից, ուր անապական բարութեանց պարգևք պահին յուսացելոց 'ի քեզ. Վսյ աղաչեմ զամենագութ ողորմութի քո՝ հեղ յիս զշնորհ բարերարութե քո, և առաջնորդեաւ ինձ աներկևան սրտիւ և կատարեալ սիրով ընթանալ 'ի հանդէս մարտիրոսութե. զի եղէց պատարագ ընդունելի ածութեդ քո: Այլ դու՝ որ հայրդ ես որբոց, և տր ամ յուսացելոց, պահեաց զմանկունսն իմ խաղաղութբ, և ամբիծ 'ի հաւատս ճշմարտութե ամենազօր աջով քո. նոյնպէս և զկենակից ամուսին իմ, որ եղև հանդիսադիր ինձ այսմ երանաւէտ կոչմանս, յոր հրաւիրեցայ 'ի քէն տր: Այլ առաքեա զհրեշտակ խաղաղութե քո, զի առաջնորդեսցէ ինձ 'ի բարութի. և թողութի շնորհեա իմոց յանցանաց, որ 'ի չարին պատրանաց մերձեալ է առ իս. զի քեզ ամ ինչ կարելի է. և օրհնեալ է անուն քո

յաւիտեանս ։

Եւ զայս ասացեալ երթայր զկնի ս՟րցն զե-
րանաւէտ ճանապարհն . և հանդիպեալ ու-
մեմն մեծատան՝ որ էր այր երևելի և երկիւ-
ղած 'ի տ՟նէ , 'ի նմին գեղջ ունելով զբնա-
կութի՟ իւր , և անուն նո՟ մուսատարիոս (կմ՟
մուսատոր կմ՟ մուգարոր ) , ասէ ցնա երանե-
լին մարգարիոս . Ահաւասիկ գնամ ես առ
սիրելին քո և ազգակիցն մ՟ր յուսիկ եւս-
տաթիոս , զի կամելով ա՟յն մերոյ՝ նահա-
տակակից եղէց նմա՝ վկայեալ վ՟ս ճշմարտու-
թե՟ն . արդ յայսմհետէ քեզ յանձն եղիցի
տուն իմ հանդերձ մանկամբք և ընտանեօք .
և ես խնդրեցից 'ի տ՟նէ՝ վարձահատոյց լի-
նել քեզ 'ի հանդերձեալ յաւիտենին ։

Պ՟խնի ետ այրն և ասէ ցնա . երթ 'ի խաղա-
ղու՟թ զանձկալի և զգեղեցիկ ճանապարհդ .
և զընթացս քո կատարեա՛ ը՟ս հաճոյից տ՟ն ա՟յ
մերոյ . և վ՟ս որոյ պատուիրեցերդ ինձ , ե-
ղիցի քեզ՝ ո՟պ և կամիս ։ Յայնժամ երանե-
լին մարգարիոս ողջոյն տուեալ նմա՝ հասա-
նէր ս՟րց վկայիցն ա՟յ առ դղեկաւն . աղաղա-
կեաց 'ի ձայն մեծ , և ասէ . Տէր իմ եւս-
տաթիէ , ո՟պ անձկացեալ ոչխար հօտից՝ ըն-
թանայ առ հովիւն , այնպէս և ես ընթա-
ցեալ հասի առ քեզ մեծաւ փափաքմամբ՝
կամելով ճանապարհակից լինել քեզ ։ Արդ
ընկալ զիս 'ի թիւ ս՟ր ժողովոյդ՝ որ ը՟ քեզդ
են հանդիսացեալք 'ի վկայական ասպարէզ
նահատակութե՟ցդ . զի թէպէտև անարժան
եմ, սակայն վկայ քո՟ լինելոց եմ ։

Եւ

Աւ իբրեւ ասաց զայս, 'ի ձայն բարձր աղաղակեաց եւ ասէ. քրիստոնեայ եմ իբրեւ ըղպատուական մրս իմ Եւստրատիոս. լուարուք զայս՝ ամ պաշտօնեայք սատանայի: Յայնժամ ըմբռնեալ զնա զինուորացն՝ կապեցին ը այլ եւս կալանաւորաց սրբոցն. եւ արկին 'ի հանդիսական բանտ դղեկին այնորիկ. եւ վաղվաղակի հասուցին զբանն յունկն իշխանին լիւսիայ:

Զայն իբրեւ լուաւ դուքսն, իբրեւ զառիւծ մռնչեալ՝ նստաւ յատենին. եւ բերեալ ընէին երանելիքն առաջի նր կապեալ կրկին կապանօք՝ ձեռս յետս, եւ անուր 'ի պարանոցի, մերկացեալք յամ հանդերձից իւրեանց. եւ սրբն Աւքսենտիոս քահանայ կայր 'ի մէջ սրբոցն զուարթերես եւ պայծառ դիմօք, եւ ուրախ սրտիւ վառէր զընկերս իւր 'ի սէրն քսի: Ասէ ցնա դուքսն. Աւքսենտիէ, այժմ ծանո մեզ, եթէ յետ այնչափ չարչարանաց եւ ներղուեց բանտի զգաստացար եւ 'ի բաց կացեր արդեօք 'ի սնոտի պաշտանաց կորստեան, եւ մերձեցար առ բարերարուին ածոցն, եթէ տակաւին 'ի նմին յամառութե կաս:

Պատասխանի ետ սրբն Աւքսենտիոս. ով լիւսիաս, երդուեալ իմ քեզ 'ի վր տեսչութե իրաւանց Ճշմարտին այ, զի անփոփոխելի են կամք սրտի իմոյ 'ի հաւատոցն քսի. եւ ած գիտեմ զնա՝ ծնունդ անծնելին հօր, եւ զամենակալ հոգի նորա բղխումն մշտնջենաւոր. անճառ անքննելին յամի մի ածութե. յոր հաւատացեալ եմ, եւ պաշտեմ 'ի մանկութէ իմմէ. եւ եթէ

բիւրս ածիցես 'ի վ̃ի իմ տանջանս և զանս պատուհասից առաւել քան զառաջինն , և ը̃ ա̃մ տեսակս տանջանաց անցուցանես զիս , ոչ կարիցես զմիտս խոնարհեցուցանել յերկնից բարձրութե̃ն . արդ զոր ինչ խորհեալ ես՝ արա՛ վաղվաղակի :

Յայնժամ դուքսն վճիռ մահու հատանէր այսպէս 'ի վ̃ի ն̃ի . Ով աւքսենտիոս՝ որ յետ բազում տանջանաց ոչ եկն յուղղութի̃ , և ո՛չ հպատակ եղև ինքնակալին , 'ի ձեռն սորա հրամայեմ գլխատել յանապատ տեղւոջ . զի յօրինաւոր թագմանէ զրկեալ լինի չարաբաստ մարմին ն̃ի : Իսկ զայսպիսի դատավճիռ ընկալեալ երանելոյն ուրախութ̃՝ փութանակի հասանէր 'ի տեղի կատարմանն . և խոնարհեցուցեալ ծունր՝ կայր յաղօթս :

Ո՛վ յաւիտենական , տ̃ր և արարիչ ա̃մի , անճառ լոյս , բա՛ց զդուռն ողորմութե̃ քո առ անարժանութիս , որ կամ առաջի քո 'ի ժամուս յայսմիկ , յորում զա̃մ կենցաղական պատաղմունս զկնի իմ թողում , և ծարաւի ոգւով ընթանամ 'ի կէտ կոչման՝ ը̃ս ա̃ծապատում անսուտ հրամանի քո , որ յաւետարանական քարոզութե̃ն , թէ որ ոչ առնու զխաչ իւր և գայ զկնի իմ , չէ̃ ինձ արժանի . և արդ առ քեզ գամ . արա՛ զիս արժանի՝ աչալրջութ̃ և զուարթերես կալ առաջի քո բեմիդ : Իսկ պահեա՛ անարատ զդասս ս̃ց վկայիցն՝ որ ը̃ իս կցորդ եղեն չարչարանօք վ̃ա քո , և արժանաւորեա՛ հասանել մասին վիճակիս այսորիկ . և շնորհեա՛ խաղաղութի̃ եկեղեցւոյ քում ս̃բյ .

և

և քեզ փառք յաւիտեանս . և ասացեալ զա-
մէնն՝ կատարեցաւ 'ի տեղւոջն ։

Յետ այսորիկ անօրէնն լիւսիաս խնդրէր յա-
ռաջ մատուցանել զսբն մարգարիտս, զի դա-
տեսցի և զնա առաջի բազմամբոխ հրապա-
րակին . և զինուորացն լուծեալ զնա 'ի շղթա-
յիցն որ 'ի պարանոցին՝ փութանակի բռնա-
բար ձգէին զնա 'ի թէատրոնն ։ Իսկ երանե-
լին ասէ . տէր իմ եւստրատիէ՝ աղաչեմ ըզ-
քեզ վն իմ աղօթս առնել . և ուսո՛ ինձ, թէ
զի՞նչ տաց պխնի յատենի անդ ապականիչ և
չար դաւանին այնորիկ ։ Պխնի ետ և ասէ
սբն եւստրատիոս . եղբա՛յր իմ մարգարիտէ,
բնաւ ամենեւին՝ զոր ինչ հարցանէ զքեզ՝ այլ
ինչ մի՛ տացես նմա պխնի . բայց միայն ասա՛,
թէ քրիստոնեայ եմ, և քնի ծառայ . և մի՛
փոխեսցիս 'ի բանիցս յայսցանէ ։

Արդ իբրև ածին կացուցին դահիճք զերա-
նելին առաջի իշխանին, սկսաւ խօսել դուքսն
և ասէ ցնա, ա՛յ երիցս թշուառական և ա-
տեցող բարեաց, և օտարացեալդ 'ի բարե-
բարուէ ա՟ծոցն, ասա՛ վաղվաղակի զանուն քո
և զգաւառ, և զաստիճան ազգատոհմին քո,
թէ որպիսի պաշտօն ունիս ։ Պխնի ետ սբն
մարգարիտս, և ասէ ցիշխանն . զայդ ամն՝
զոր հարցանես, ինձ ոչինչ է փոյթ . քանզի
ես քրիստոնեայ եմ, և քնի ծառայ ։ Նա յա-
ռաջ մատուցեալ սպասաւորաց ատենին՝ ասեն
ցնա . եղկելի՛ և թշուառական քան զամ մար-
դիկ, ո՞չ գիտես զկարգ ատենիս . տո՛ւր պխնի
ըս օրինակի հարցման ատն մերոյ ։ Պխնի ետ
երա-

երանելին և ասէ. ասացի՝ և դարձեալ ասեմ. քրիստոնեայ եմ, և քո՛ւ ծառայ :

Յայնժամ տեսեալ դքսին զհաստատութին հաւատոցն նորա և զանփոփոխելի միտս, զայրացին ցասմամբ ասէ ցդահիճսն. ծակեցի՛ն պճղունք ոտից դորա, և չուան 'ի ներքս անցեալ՝ կախեցի 'ի ձողոյ. և շամփուրս հրացեալս մերձեցուցի՛ք 'ի թիկնամէջս դորա. և կիզեցի՛ն ամենայն անդամք մարմնոյն բոլորովին, թերեւս եկեսցէ 'ի զգայութի, և զարժանն տացէ ըստ հարցուածոց մերոց. և վաղվաղակի զամ հրամայեցեալսն կատարեցին սպասաւորք անօրէն իշխանին :

Իսկ երանելին մարգարիտոս ոչինչ տայր պատասխանի 'ի տանջանսն. այլ միայն աղաղակէր և ասէր, քրիստոնեայ եմ և քո ծառայ. արդ 'ի բազում ժամս տանջեալ զնա 'ի կախաղանի անդ՝ կարմրագոյն շամփրօք, զոր առեալ փոփոխէին, հրկիզութին զմարմին սրբոյ վկային. և նա 'ի ձայն բարձր կարդաց, և ասէ. Տէր Յիսուս քեզ յանձն առնեմ զհոգի իմ. ընկա՛լ զսա խաղաղութեամբ. և արժանի՛ արա զիս հասանել մասին ժառանգութեան սրբոցն 'ի լոյս. զի քեզ փառս վերառաքեցից այժմ և միշտ և յաւիտեանս, ամէն : Եւ զայս ասացեալ՝ աւանդեաց զոգին. և իջուցեալ զերանելին 'ի կախաղանէն՝ քարշէին արտաքս, զի կերակուր լիցի շանց :

Այնուհետև ամպարիշտն լիւսիաս՝ որ հրճուեալ էր և ցնծայր ընդ չարչարանս վկային, ասէ ցգլխաւորսն. քարշեա՛լ լիցի յատեանս մերկ

մերկ մարմնով և որ 'ի Սատաղացիսն էր Եւգի-
նէոսն այն, որ ը̅ Եւստատիոսին 'ի հարցա-
փորձութե կայր. և նոյնժամայն փութանա-
կի ածին կացուցին զերանելին մերկ կողո-
պուտ 'ի հանդերձիցն առաջի դքսին: Սա
հայեցեալ 'ի նա դառնութբ և զայրագին ցաս-
մամբ՝ ասէ. ով ամենապիղծ և չարագև այր
դու՝ զիա՞րդ իշխեցեր այդչափ յանդգնութբ
գալ 'ի համարձակութի անդր, ոչ զի առ ոչ-
ինչ համարեցար զանյաղթ և զանպարտելի
ինքնակալին զհրաման. և 'ի վր ամի ժպր-
հեցար անարգանս դնել մեծամեծաց ածոցն,
զոր պաշտեն և պատուեն ինքնին Թագա-
ւորքն մեր:
Պտխնի ետ սբն Եւգինէոս, և ասէ ցԼիւսիաս.
ածն իմ՝ զոր պաշտեմ 'ի մանկութէ իմմէ, յոր
և յուսացեալն եմ, նա զօրացոյց զիս, և շնոր-
հեաց ինձ համարձակութի, զի Թքանիցեմ 'ի
կուռս քո, և արհամարհիցեմ զսուտ և զա-
պականիչ կրօնս քո: Յայնժամ բորբոքեցաւ
Լիւսիաս անհնարին ցասմամբ, և ասէ ցդա-
հիճսն. նախ 'ի բաց հատցի անարգօղ և հայ-
հոյիչ լեզու դորա, և զրկեսցի յերկոցունց
ձեռացն. և բրօք դալարօք բարձաբեկ լիցի.
և ջախջախեսցին սրունք ոտից դորա. և փշա-
լից գաւազանաւ հորցին Թիկունք նր: Զայս
ամ իբրև արարին դահիճք, ոսկր և մարմին
սբյն կային մածեալ ը̅ միմեանս, և այնպէս
'ի դառն տանջանս աւանդեաց քաղցրութբ
զոգին:
Իսկ իշխանն անօրէնութե իբրև կատարեաց
զայս

քո բեմիդ . 'ի դատելն զիս մի՛ մերժեսցի յիս
ձեռն իշխանի աշխիս այսորիկ՝ ձգել զիս 'ի խորս
անդնդոց . այլ դու տր մե՛րձ լեր առ իս, և կե-
ցուցիչ և օգնական և պաշտպան իմ լե՛ր . Քզի
մարմնաւոր չարչարանքս՝ որ հասին 'ի վրս իմ,
ուրախութի և ցնծութի եղև ծառայիս քո :
Ողորմեա՛ ինձ տր ած, շաղախեալ մեղօք ան-
ձին, և մաքո՛ւր ընկալ զիս . զի կեալն ինձ
քև է, և մեռանելն վս անուանդ քո փառա-
ւորելոյ՝ Ճոխութի անապական գանձուց և ան-
կողոպտելի մեծութի ստացուածոց :

Ած ճշմարտութե և հայր ողորմութե, և հոգի՛
բարութե և զօրութե և իմաստութե, գոհանամ
զքէն, զի զանարժանութիս իմ արժանի համա-
րեցար անապական բարութեցդ քոյ : Խաղա-
ղութե նաւահանգիստ, ընկա՛լ զիս՝ որ ծփեալ
եմ յանդնդապտոյտ յորձանս ծովու մեղաց
կենցաղոյս՝ պատրանօք յաւիտենիս : Առ քեզ
կարդամ և խնդրեմ 'ի քէն, տո՛ւր համբերութի
'ի նեղութես, զի յաղթեցից բանսարկուին . զի
դու ես ած ճշմարիտ, որ զբանն կենաց տա-
րածեցեր յաշխի, և հալածեցեր զմիրիկ անօ-
րէնութե, և զարդարութի քո ծագեցեր առ իս .
որ միշտ ապրեցուցանես զյուսացեալսն 'ի քեզ .
տո՛ւր ինձ արժանաւորս նահատակելով առաջի
քո՝ արժանանալ յաւիտենական կենացն : Եւ
որք հաւատով կատարեն զյիշատակս մեր, և
յիշեսցեն զմեզ 'ի նեղութե՝ կարդալով առ
քեզ տր ած մեր 'ի բարեխօսութի անձանց իւ-
րեանց, դու ով բարերար ած և մարդասէր,
լուիցես և փրկեսցես զնոսա յամ վտանգից

հոգւոյ և մարմնոյ. և մի՛ թողուր 'ի ձեռանէ քումմէ զեկեղեցի քո Տ՟ր. ընկա՛լ և զոգի իմ խաղաղութ՟բ ը՟ն ամ՟ս՟րբս քո. և քեզ փառք յաւիտեանս:

Եւ յորժամ ասաց զամէնն, ձայն եղև յերկնից. եղիցին խնդրուածք քո. և նոյնժամայն կնքեալ զինքն նշանաւ Տ՟ե խաչին՝ եմուտ 'ի մէջ հնոցին: Եւ հուրն բորբոքեալ առագաստաձև շուրջ պատէր զմարմնով երանելի վկային, և բոցն բարձրացեալ 'ի բարձունս ելանէր. և այնպէս կենդանախարուկեալ 'ի մէջ հրոյն վկայն Ք՟սի՝ հանդերձ օրհնութ՟բ աւանդեաց զհոգին: Եւ տեսին՝ զոր արժանին արար Տ՟ր, զհոգի ս՟րբոյն, զի իբրև զճառագայթ փայլատականց լուսոյ փայլեալ ելանէր 'ի բարձունս: Իսկ յետ կատարման վկային՝ անօրէնն Ագրիկողայոս յարուցեալ գնաց յապարանս իւր. և խրախութիւն մեծ արարեալ՝ ընթրիս տայր բարեկամաց իւրոց, քաջութ՟ն մեծ համարելով զգործն՝ զոր գործեաց. և ամ՟ն ամբոխ քաղաքին սփռեցան յիւրաքանչիւր տեղիս. և ոչ ոք իշխէր մերձենալ, և ձեռն արկանել 'ի նշխարս ս՟րբոյն՝ յաղագս սպառնալեաց դատաւորին:

Իսկ եպ՟ս քաղաքին, Վլասիոս կամ Պետրոս, առեալ ը՟ն իւր արս երկիւղածս 'ի ժառանգաւորաց եկեղեցւոյն, եկն 'ի գիշերի՝ ամփոփեաց զնշխարս ս՟բց վկայիցն, զՈվրեստին և զԵւստրատիոսին. և եդեալ 'ի փայտեղէն արկղագործ տապանին՝ պահէր ժամանակս ինչ. և ապա յինքնին բարձեալ տանէր 'ի հայ-

րե.

րենի գաւառն Խուրեանց՝ 'ի քաղաքն արաւրա-
կացւոց, փոխեալ 'ի Հանգիստ՝ 'ի տեղւոջն,
զոր սբյ վկայլն նշանակեալ էր 'ի կտակի անդ
խւրում։ Իսկ յետ դադարման Հալածանացն՝
շինեաց վկայարանս 'ի վերայ հանգստարանի
սբցն հնգեցունց անյաղթ վկայիցն քի,
աւգսենտիոսի, մարդարիոսի, եւգենիոսի,
ովրեստի, և մեծին եւստրատիոսի. մեծա-
պայծառ խնդութբ և փառաւորել հանդիսիւ
ամ յամէ կատարելով զօր յիշատակի նցյ ե-
րեքտասաներորդի ամսեանն դեկտեմբերի,
'ի փառս քի այ մերոյ՝ յորմէ ընկալան զա-
ներծուն և զանապականուն պսակն. որում
լիցի և մեզ հաղորդս լինել՝ բարեխօսութբ
սբցս և այլ ընտրելոց, շնորհօք և մարդասի-
րութբ տն մերոյ և փրկչին յի քի. որում վայել
է փառք՝ իշխանութի և պատիւ ը̄ հօր և հոգ-
ւոյն սբյ՝ յաւիտենից յաւիտեանս ամէն. (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

(1) Գեղեցիկ միաբանութբ՝ զոր ինչ ընթեռնումք 'ի պատուական մեծ Ճառընտրի մերում Ա., յաղագս սբց Եւստրատիոսեանցս, զնոյն ծայրէ 'ի ծայր տեսանեմք և 'ի Ճառընտրի յունաց, զոր յանուն մետափրաստեսի բերեն լիպոմանոս, սուրիոս, և այլք՝ լատին ևեթ թարգմանութբ։ Մեք սովորաբար զմեր ընթերցուած պահեցաք՝ յակն արկանելով և զոր առ այլս՝ 'ի սաստր պարզութե 'ի խրթնութիս ինչ, կմ 'ի սխալագրութիս գրչի։ Քաղաքն սբյն եւստրատիոսի, որ 'ի Ճ. կոչի արաւրակ (կամ արաբրակ), և կամ արաւրակացւոց քաղաք, և 'ի լտ. արաւկենայ, կմ արաբրակինաց, 'ի Հ. ասի. արօրակայ, կմ արօրկացւոց քաղաք. որ է արգըն-ցիք.

ցեք, կմ՛ որ արդ. կոչին արգընցեք:

Պատուով իշխանութ էր սենեւստատիոս՝ ըստ մետափր. կմ՛ ըստ սուրիոսի, գօմմենդաթէնդին. որ ասի զմիշատա_կաց դպրէ, զատենադպրէ, պդահճապետէ, և զայլ է_րեւելի իշխանաց ատենի, կմ՛ զհամարակալ հազարապե_տէ գնդի. վմյ 'ի Ծ. դնի պարզապէս՝ իշխան զօրաց. և Հ. եդեալ է, * պատուով 'ի դքսական կարգէն 'ի
„ հարկաւորացն ||. և ըստ ինչ. * պատուով սկենարիս
„ 'ի դքսէ 'ի մեծ կարգէ ||. կմ՛ ըստ Հ = Յ. * սկեւռինա_
„ րիոս պատուով 'ի դիքսական կարգէն 'ի հարկաւո_
„ րացն ||. ուր կամ՛ պարտի լինել սեկռետարիոս, ըստ ատենադպիր. և կամ՛ է աղաւաղումն պաշտաման նըջ 'ի պատանեկութ, իբր զի էր էքսկէփտոր կմ՛ էքսչէփդօռ. ըստ դպիր՝ որ գրէ զբան ատեանն 'ի բերանոյ այլոյ. ա_պա եթէ յունարէն ստուգաբանեսցուք, սկինարիոս մարթի լինել վրանապետ. այլ զայս ոչ ունիմք այլուստ ստուգել:

Սատաղիա կմ՛ սատալիա. 'ի Հ. = Յ. նոյնպէս ուղիղ գրի առ ըստ ինչլի ըստ Ծ. և մետափր. սատաղացւոց կմ՛ սատալացւոց քաղաք. այլ վրիպակ է եդեալն 'ի Հ. սատաղիա: Թողումք Տադրաց, թէ չատախ՝ որ 'ի զա_նազան տեղիս դնի, իցէ՞ նոյն ընդ հնչմանս սատաղիա:

Որ յամենեցունց գրի Թորդոմէիոս, Հ. = Յ. ունի միշտ Մորդոյը. և այս երևի ընիկ հնչումն հայերէն. զոր յոյնք հելլենացուցանելով գրեցին մարտարիոս. (որ և լինի մարտայր. իբր այր մարտի կամ՛ արի). և 'ի մեզ անդրէն փոխանցեալ եղև մարդարիոս: Նոյնպէս և զովբեստէսն հայացուցեալ առաւել՝ գրէ Հ. = Յ. առեստիոս, կմ՛ առեստէս:

Որ թաղեացն զսէս, էր վկայնիոս. այլ զի պետրոս եպս յիշի 'ի Ծ. սա լինի չինող վկայարանին:

Կամեցաք նշանակել և զայլ տարբերութիս ինչ ընթերց_ուածոց՝ որ ընդ Ծ. և ընդ մետափր: Այլ առ այժմ և այսչափ ինչ չատ համարեցայ վկայաէր ընթերցասիրաց. զի որ այսքանեօք ոչ շատանայ, և ոչ առաւելեօքն յագեսցի: Այլ իցէ՞ թէ ոչ այնչափ նուաստական տեղեկութք, որ_չափ հոգեւոր արդասեօք պարարեսցին հոգիք վերծանո_ղաց զվարս և զվկայաբանութիս սբց. զի լաւ է մերձե_նալ առ սոսա՝ վարուք, քան բանիւք:

ՑԱՆԿ

# ՅԱՆԿ
## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
որ 'ի հատորս. Թ.

---

ՎԱԽՃԱՆ

Հատորիս ։

ԱԳ

